

Հակոբ Մանանդյան

# Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության

## Հատոր Բ

### Բ մասի նյութեր

Մարզպանության հաստատումից Հայաստանում մինչև Բագրատունյաց թագավորության անկումը

Երևան Հայպետհրատ 1960

*Հանգուցյալ ակադ. Հակոբ Մանանդյանի «Հայ ժողովրդի պատմության» ներկա հատորը ընդգրկում է հեղինակի անտիպ նյութերը և տպագրված այն աշխատությունները, որոնք վերաբերում են հայ ժողովրդի պատմական անցյալին, սկսած մարզպանության հաստատումից Հայաստանում [428 թ.] մինչև Բագրատունյաց թագավորության անկումը։*



Я. А. Манандян

# Критический обзор истории армянского народа

## Том II

### Материалы к III части

От утверждения марзбанства в Армении до падения Багратидского царства

ЕРЕВАН АРМГИЗ 1960

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ԱՌԱՋԱԲԱՆ

Ակադեմիկոս Հ. Մանանդյանը իր «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության» աշխատության երկրորդ հատորի առաջին մասը վերջացնելուց հետո, իր ծրագրած «Քննական պատմությունը» ամբողջացնելու նպատակով, սկսել էր աշխատել այդ երկրորդ հատորի երկրորդ մասի վրա, որը ընդգրկելու էր հայ ժողովրդի պատմությունը՝ սկսած մարզպանության հաստատումից Հայաստանում մինչև Բագրատունյաց թագավորության անկումը։

Դեռևս 1925, 1926 և 1930 թվերին Պետական Համալսարանում այդ ժամանակաշրջանին վերաբերող իր դասախոսությունները կարդալու ընթացքում, նա այդ շրջանի պատմությունը ուսումնասիրել ու մշակել էր, և համառոտակի ձևով գրանցել էր իր ուսումնասիրության արդյունքները, որտեղ նա նշել էր՝

1. Տվյալ ժամանակի պատմական իրադարձություններին վերաբերող, սկզբնաղբյուրներից քաղված կարևոր և արժանահավատ վկայությունները.

2. Պատմական տարբեր դարաշրջանների և օտարազգի տիրապետությունների ընդհանուր բնույթը՝ իր ձևակերպումներով և ընդհանրացումներով.

3. Տեղի ունեցած պատմական անցքերի, իր կողմից ճշտված տարեթվերը, որոնք գրանցված են նաև առանձին տետրակներում իր, ստուգմանը վերաբերող հաշվարկումներով.

4. Տվյալ նյութին վերաբերող հայ և օտար սկզբնաղբյուրները, նրանց համառոտ բովանդակությունը ու բնութագիրը և գրականությունը։

Իր ուսումնասիրությունների ընթացքում նա հատկապես մեծ կարևորություն էր տալիս տեղի ունեցած պատմական իրադարձությունների ժամանակի որոշմանը։ Այդ աշխատանքը նա կատարում

էր՝ համադրելով աղբյուրներում եղած ժամանակագրական տվյալները և պատմաբանասիրական գրականության մեջ տրվող կարծիքները, իր մշակած եղանակով։

1951 թվի աշնան ամիսներին, իր մահվանից մի քանի ամիս առաջ նա սկսել էր վերանայել իր գրանցած նյութերը՝ լրացումներ կատարելու, քարտեր կազմելու և մշակելու համար։ Դժբախտաբար, վերահաս մահը նրան հնարավորություն չտվեց լրիվ կերպով իրականացնել իր ծրագրած մեծ գործը և գրել նաև իր «Քննական պատմության» այդ մնացող մասը, որը նա թողել էր ամենից վերջը, որովհետև գտնում էր, որ այդ պատմական շրջանը զգալի չափով արդեն ուսումնասիրված է՝ թե հայ և թե օտար պատմագիտության կողմից և բացի այդ, կան նաև ժամանակակից հավաստի սկզբնաղբյուրներ, որոնց միջոցով հեշտությամբ կարելի է ճշտել և տալ այդ շրջանի Հայաստանի պատմության իրական պատկերը։

Նկատի առնելով ակադ. Մանանդյանի գիտական ժառանգության մեջ մնացած վերոհիշյալ անտիպ նյութերի կարևորությունը, որը տալիս է տվյալ ժամանակաշրջանի պատմական իրադարձությունների ընդհանուր պատկերը խտացած ձևով, մենք անհրաժեշտ գտանք քաղվածորեն հրատարակել նաև այդ անտիպ նյութերը, որը անշուշտ կարևոր ներդրում է լինելու՝ հայ ժողովրդի այդ ժամանակաշրջանի պատմության լուսաբանության համար։

Բացի հիշված անտիպ նյութերից, ակադ. Մանանդյանը գրել և հրատարակել է 12 այլ աշխատություններ՝ հայ ժողովրդի պատմության այդ շրջանին վերաբերող խնդիրների մասին։

Ներկա հրատարակության մեջ մենք, իբրև կարևոր լրացում, անհրաժեշտ համարեցինք վերոհիշյալ անտիպ նյութերի հետ միասին վերահրատարակել նրա տպագրված այն աշխատությունները, որոնք իրենց բովանդակությամբ կազմում են, փաստորեն, «Քննական պատմություն» երկրորդ հատորի երկրորդ մասի կարևորագույն գլուխները, և որոնք հրատարակված են եղել մեծ մասամբ տարիներ առաջ, փոքր տպաքանակով և վաղուց արդեն սպառված են։

Այդ աշխատություններն են՝

1. Քաղվածքներ «Համառոտ տեսություն հին Հայաստանի պատմության» աշխատությունից.

2. Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում.

3. Յուստինիանոսի նոր օրենքները հայերի ժառանգելու կարգի մասին.

4. Հերակլ կայսեր պարսկական արշավանքների ընթացուղիները.

*5. Արաբական արշավանքները Հայաստանում (ժամանակագրական դիտողություններ).*

*6. Ժողովրդական ապստամբությունները Հայաստանում արաբական տիրապետության դեմ.*

*7. Նյութեր հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության I.*

*8. Նյութեր հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության II.*

*9. Հատվածներ* «О торговле и городах Армении» *1954 թվին հրատարակած աշխատությունից, հայերեն թարգմանությամբ.*

*10. Հայաստանի քաղաքները 10—11-րդ դարերում։*

*Անհրաժեշտ ենք գտնում նշել, որ սկզբնաղբյուրների վերաբերմամբ իր ձեռագիր նյութերի մեջ գրանցված դիտողություններում ակադ. Մանանդյանը ցույց է տվել, որ տվյալ ժամանակաշրջանի պատմական իրադարձությունների լիակատար ու ճշգրիտ պատկերը կարելի կլինի տալ, երբ հրատարակվեն և լույս տեսնեն մատենագրության համար անհայտ մնացող արձանագրությունները։ Այդ գործը նա համարում էր հայ պատմագիտության հերթական ու անհետաձգելի խնդիրներից մեկը։ Պետք է նաև ասենք, որ ներկա հրատարակությամբ լույս տեսնող գրականության ցանկի մեջ չեն հիշված այն աշխատությունները, որոնք լույս են տեսել 1930 թվից հետո և ինքը դեռևս չէր գրանցել։*

*Ակադ. Մանանդյանի հակիրճ գրանցված անտիպ ձեռագիր նյութերը, ամփոփումները և ընդհանրացումները ժամանակագրական կարգով դասավորելիս, մենք քաղվածորեն վերցրել ենք իր գրածները միանգամայն անփոփոխ, իր տված ձևակերպումներով, այնպես, ինչպես որ գրանցված են ձեռագիր նյութերում, և ըստ ամենայնի պահպանել ենք հրատարակվող նյութերը բնագրին հարազատ։ Ռուսերեն գրված աշխատությունների թարգմանությունը կատարված են իմ կողմից։*

ԱՐՍԵՆ ՄԱՆԱՆԴՅԱՆ

# ՀԱՄԱՌՈՏ ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ, ԸՆԴՀԱՆՐԱՑՈՒՄՆԵՐ ԵՎ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐԻՑ ՔԱՂՎԱԾ ԿԱՐԵՎՈՐ ՎԿԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՄԱՐԶՊԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՍՏԱՏՈՒՄԻՑ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՄԻՆՉԵՎ ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՆԿՈՒՄԸ

*Արշակունյաց թագավորության վերացումից հետո Սասանյան Պարսկաստանը նպատակ է ունեցել և աշխատել է կուլտուրապես անջատել Հայաստանը արևմտյան ազդեցությունից։*

*Պարսկաստանի այդ ձգտումը պարզ կերպով արտահայտված է Հազկերտ II-ի [438/9—457] հրովարտակում, որ բերված է Ղազար Փարպեցու հետևյալ վկայության մեջ՝ Փարպեցի, ԻԱ, էջ 119՝*

> *«Վասն զի դուք ինքնին գիտէք և ամենայն Արիք՝ զաշխարհն Հայոց, թէ որպէս մեծ է և պիտանի, և մօտ և սահմանակից է կայսեր իշխանութեանն. և զօրէնս և պաշտօն զնոյն ունի, զի կայսր զիշխանութիւն նոցա ունի։ Եւ եթէ և մերոց օրինաց ընտանեցուցանէք զնոսա, և ընտելնուն, և կարեն ճանաչել, եթէ ցայժմ մոլորեալք էին, և արդ ի ճանապարհ եկեսցեն, այնուհետև զձեզ սիրեն և զԱրեաց աշխարհս, և ի կայսերէ և յօրինաց նորա և յաշխարհէն մերժին և հեռանան ի բաց։ Եւ լինի այնուհետև աշխարհն ընդ մեր սերտ սիրով և միաբանութեամբ։ Եւ յորժամ Հայք սերտիւ մեր լինին, Վիրք և Աղուանք այնուհետև մեր իսկ են»։*

*Հայաստանը Արևմուտքից անջատելու իր ձգտումը Հազկերտ II-ը ուզեցել է կատարել նախարարական տոհմերի կրոնափոխության միջոցով։ Մոգության կրոնը ընդունողներին նա պատվում էր, տալիս էր պարգևներ, կալվածքներ և իշխանություն։*

*Ինչպես Եղիշեն վկայում է՝ [էջ 29]*

> *«Սկսաւ այնուհետև յառաջ կոչել զկրտսերս ազգաց և*

ղանարգս ի պատուականաց, կոգէտս ի գիտնոց և զանարիս ի քաջ արանց»։

Այնուհետև Հայաստան է ուղարկվում Դենշապուհը՝

«Աշխարհագիր առնել»

1. «զազատութիւն եկեղեցւոյ արկանէր ի ծառայութիւն».
2. միայնակեացք — ընդ աշխարհագրաւ».
3. զհարկ աշխարհին ծանրացոյց».
4. յամենայն տան արար խռովութիւն».
5. հազարապետ աշխարհին — պարսիկ».
6. մոգպետ—դատաւոր աշխարհին»։

Տվեց հրաման՝ «Կամաւ և սիրով յանձն առնել մազդէական կրօնն»։

Ըստ Փարպեցու վկայության [էջ 123]՝ «Եւ ընկալեալ զայսպիսի հրովարտակ ամենայն Հայոց աւագանոյն»։

Այնուհետև նախարարները և սեպուհները կարգադրություն են ստանում անմիջապես գնալ արքունիք, որտեղ նրանք ընդունում են մազդեական կրոնը և վերադառնում։

Իսկ Հայաստանում, ինչպես վկայում է Եղիշեն՝

«Յետ աւուրց քսան և հնգից գալստեան մոգուց ի Հայս մոգպետն ինքնին հասանէր քակել զդրունս եկեղեցւոյն, իսկ սուրբն Ղևոնդ երէց ոչ ետ թոյլ»։

Փարպեցի՝ «մոգուցն գունդք բռնադատէին տանել զկրակս ի տաճար սրբութեանց Տեառն»։

Մեջ բերված վկայություններում հիշվող քաղաքական և կրոնական խստությունների հետևանքը եղել է Վարդանանց ապստամբությունը [450—451 թ.] և Ավարայրի կռիվը 451 թվի փետրվարի 17-ին, որը թեև վերջացել էր ապստամբության մասնակցող նախարարների պարտությամբ, սակայն ունեցել է որոշ դրական արդյունքներ։ Ավարայրի կռվից հետո Հայաստան է ուղարկվել Վասակ մարզպանի փոխարեն Ատրորմիզդը և, ինչպես վկայում է Փարպեցին, տեղի է ունեցել երկրում պարսից քաղաքականության որոշ մեղմացում։

Փարպեցի, խ, էջ 215 —«Յանձն առնէր [Ատրորմիզդ] հրովարտակով զմարդիկն Հայոց՝ չընտրստուցանել, այլ սիրով նուաճել և զպաշտօն քրիստոնեութեանն համարձակապէս առնել ամենեցուն»։

Փարպեցի, 216 —[Ատրորմիզդ] «Բազում թուղթս խաղաղութեան առնէր ի տեղիս տեղիս Հայոց աշխարհին. թէ եկայք շինեցարուք աներկիւղութեամբ, և մի՛ ինչ զարհուրիք. յորս

գրէր և կնքէր ուխտաւոր բանս, չնորհել ամենեցուն զկարգ քրիստոնէութեան, որպէս և կամիցի ըստ իւրանքանչիւր կամաց»։

Ինչպես պատմիչների վկայություններից երևում է, Պարսկաստանը ուզեցել է մազդեական կրոնը մտցնել Հայաստան նախարարների աջակցությամբ, բայց ոչ բռնությամբ։ Եվ նախարարական տոհմերի վերաբերմամբ հետագայում էս, ինչպես վկայում է Փարպեցին, շարունակվում էր նույն անարդարամիտ ու դաժան քաղաքականությունը։

Փարպեցի—«Ի ժամանակն յայնմիկ և Պարսկաց զտանուտէրութիւնն գնեալ էին ուրացութեամբ ըստ անարժանութեանն, և ոչ տիրացեալք աստուածպաշտութեամբ իբրև զարժանաւորս, այք անմիտք և վնասակարգ, վատք և ոչ քաջք»... «Եւ էր տեսանել այնուհետև յաշխարհիս Հայոց զլաւութիւն հեռացեալ, զիմաստութիւն կորուսեալ, զքաջութիւն հեռացեալ և մեռեալ, զքրիստոնէութիւն թաղուցեալ»...

Փարպեցի, 340 —«Իսկ լաւ ոք այր յանկարծ և կամ արժանաւոր թէպէտ և էր ի ժամանակին, որպէս լաւ այր Բաբիկն Սիւնի և կամ սքանչելին Առնակն Ամատունի, և կամ այլ ոք նման նոցին, ի հոգեսպանութենէ մոլեկան թագաւորին և ի կատաղութենէ ամբարշտեալ ժամանակի իշխանացն՝ որպէս նապաստակք ի սլացմանէ գիշակեր արծուեաց ի ծերպս վիմաց և կամ ի մացառուտ տեղիս ղօղեալք թաքչէին»։

Զայրված Հայաստանի ըժգոհ նախարարները և հոգևորականությունը հարմար առիթի կսպասեին, որ նորից ապստամբեն։ Այդ երկրորդ ապստամբությունը բռնկվեց 481 թվին Վահան Մամիկոնյանի ղեկավարությամբ և տևեց մինչև 484 թիվը։

Ապստամբությունը ուներ պարտիզանական կռիվների բնույթ, որի ընթացքում պարսից Ատրվշնասպ մարզպանը ստիպված էր փախչել և նրա տեղը մարզպան էր կարգվել Սահակ Բագրատունին։ Ապստամբներին խոստացել էր օգնել նաև վրաց Վախտանգ Գորգասալ թագավորը [446—499]։ Վերջապես 484 թվին՝ պարսից Պերոզ թագավորի հեփթաղներից կրած սոսկալի պարտությունից հետո, Պարսկաստանը հարկադրված էր փոխել Հայաստանում իր քաղաքական գիծը, և անհայտ կորած Պերոզ թագավորի հաջորդ Վաղարշ թագավորը [484—488] ստիպված էր ընդունել Վահան Մամիկոնյանի կողմից առաջադրված հաշտության հետևյալ պայմանները՝

Ղազար Փարպեցի—1. «զհայրենի և զբնիկ օրէնս մեր ի մեզ թողուք, և զհայ այր զոք մի՝ մոգ ոչ առնէք, և ումեք յա-

*ղագս մոգութեան գահ և պատիւ չտայք, և զկրակարանն յաշխարհէս Հայոց ի բաց տանիք, զեկեղեցւոյ Թշնամանս յաղտեղի և յանպիտան մարդկանէ, որ ցայժմ լինէր, յայսմ հետէ մեզ չտայք տեսանել. և քրիստոնեայ մարդկան և քահանայից զկարգ և պաշտօն քրիստոնէութեան համարձակութեամբ և աներկիւղ տայք պաշտել՝ ուր և կամին.*

*2. զմարդ ոչ իշխանաբար ճանաչէք, այլ իրաւաբար գիտել զլաւն և զվատթարն, ընտրել զպիտանին և զանպիտանն, իմանալ զտոհմիկն և զանտոհմիկն, ունել առ լաւսն զպատուականն և զքաջն և զօգտակարն, արհամարհել և առ ոչինչ համարել զվատն և զանպիտանն. սիրել զվաստակաւորսն և ատել զանվաստակն, ունել ի մօտ զիմաստունս և խորհուրդս առնել, և զանմիտն ոչ մօտեցուցանել, այլ ի հրապարակէ ևս հալածել.*

*3. որ տէրն է Արեաց աշխարհի Թագաւորն՝ կամիմք զի ինքն լուիցէ իւրովք ականջօք և ինքն տեսցէ իւրովք աչօք, և ինքն գիտասցէ զմարդ լաւ և զանլաւ, և ոչ այլոյ բերանոյ խօսեսցի զպէտսն»։*

*Վաղարշ Թագավորի պատասխանը եղել է հետևյալը՝*

*«Զամենայն զոր ինչ խորհեալ է ձեր՝ տուեալ եղիցի ձեզ մեր գրով և կնքով զամենայն խնդիրդ ձեր մինչև հաւիտեան»։*

*Այնուհետև Վահան Մամիկոնյանը ստանում է նախ Մամիկոնեից տերությունը և ապա հայոց սպարապետությունը. մյուս նախարարներին էլ տրվում են իրենց նախկին իրավունքները։*

*VI դարում վերսկսվում են համառ ու պարբերաբար կրկնվող կռիվները Բյուզանդական կայսրության և Սասանյան Պարսկաստանի միջև, որոնք V դարում ընդհատվել էին շնորհիվ հոների և ուրիշ արևելյան ցեղերի արշավանքների, և այդ շրջանում պատմական անցքերը ունեցել են հետևյալ ընդհանուր բնույթը՝*

*1. Կրոնամոլության սաստկացում՝ կատաղի կրոնական վեճեր՝ թե Բյուզանդիայում և թե Սասանյան Պարսկաստանում.*

*2. Պարսկաստանը Կավատ I Թագավորի ժամանակ [488—531 թ.] նորից զորեղանալով, վերսկսում է Մարզպանական Հայաստանում կրոնական իր հին քաղաքականությունը։*

*3. Կրոնկան փոփոխություն Պարսկաստանում և Մազդակյան կրոնական նոր ուսմունքի տարածումը Մարզպանական Հայաստանում[1], որին կողմնակից է եղել ինքը Կավատ I-ը։*

---

1 *Մազդակյան նոր կրոնի բովանդակությունը եղել է հետևյալը՝*

*Բոլոր մարդիկ նման են ստեղծված. անարդարացի է, եթե մեկն ավելի գույք ունի և կին, քան մյուսը։*

*4. Բյուզանդական կայսրության զորեղացումը Յուստինիանոս կայսեր ժամանակ [527—565] և ձգտում ու միջոցառումներ՝*

*ա) վերականգնելու հռոմեական զորեղ ու միաձույլ կայսրությունը.*

*բ) միաձուլել Բյուզանդական Հայաստանը կայսրության հետ, վերացնելով այնտեղ տեղական առանձնահատկությունները և կարգերը, ինչպես, օրինակ, նախարարական իշխանության հաջորդականությունը և թե ցկյանս սատրապությունը։*

*5. Բյուզանդական Հայաստանի քաղաքական վերակազմությունը, որի նպատակը եղել է հետևյալը՝ որ հայերը ոչ մի բանում չտարբերվին կայսրության մեջ ընդունված կարգերից և ամեն բանում հետևեն հռոմեական օրենքներին։*

*6. Բյուզանդական Հայաստանի վարչական վերակազմությունը. համաձայն Յուստինիանոսի նոր օրենքի, Բյուզանդական Հայաստանը բաժանված է եղել չորս կառավարչության[1]։*

*7. Յուստինիանոս կայսեր կողմից Բյուզանդական Հայաստանում ձեռնարկված խստությունների պատճառով առաջացել էր՝ արդարադատության բացակայություն, ապօրեն տուրքեր, ժողովրդի վճարունակության նվազում, երկրի աղքատացում, հուսահատ վիճակ, խռովահույզ դրություն ու ապստամբական շարժումներ ընդդեմ իշխանության։*

*8. Մայր երկրում [Հայաստանում] ներքին անհամաձայնություններ, ազնվականության տարբեր կողմնորոշման պատճառով։*

*9. Նոր ավերիչ պատերազմներ Բյուզանդիայի և Պարսկաստանի միջև փոփոխակի հաջողությամբ՝ Յուստինիանոս կայսեր ու իր հաջորդների ժամանակ, երբեմնակի ընդհատումներով, որոնց ընթացքում տեղի են ունեցել՝ հայկական շրջանների ավերում և բնակչության փախուստ։*

*10. Նախարարներից շատերի գաղթը Պոլիս և նրանց բյուրո-*

---

*Պետք է դասային և գույքային տարբերությունները վերացնել և կատարել կանանց հավասար բաշխում։*

*Գույքային հավասարությունը հնարավոր է, եթե անձնական սեփականությունը վերացվի և գույքերը լինին ընդհանուր սեփականություն։*

*Միս ուտելը, արյուն թափելը արգելվում է։*

*Ենթադրում են, որ Կավատն օգտվել է այդ ուսմունքից ազնվականության դեմ պայքարելու համար։*

1 *ա. Ներքին Հայք — կենտրոնը՝ Թեոդոսուպոլիս*

*բ. բ Հայք — կենտրոնը՝ Սեբաստիա*

*գ. գ Հայք — կենտրոնը՝ Մելիտենե*

*դ. դ Հայք — կենտրոնը՝ Մարտիրոպոլ. բերդը՝ Կթրիճ։*

*կրառացումը։ Ուշագրավ տեղեկություն է տալիս Պրոկոպիոս Կեսարացի պատմիչը Պոլսում Արտավան Արշակունու վարած անվայել ու զեխ կյանքի մասին։*

Proc. Goth. *III, 32*, p. *409*.

*«Ուրիշների դժբախտությունների գնով, Արտավանը ձեռք բերեց հերոսի, բանակալի, ջախջախողի համբավ, սպանելով առանց որևէ հիմքի իր ընկերոջն ու սեղանակցին՝ Գոնֆարիսին։ Իսկ այժմ կորցնելով իր արիությունը, նա նստել է այստեղ թուլամորթաբար, մինչդեռ նրա հայրենի երկիրը, գրաված միշտ զորքերով, ուժասպառ է լինում ապօրեն հարկերի ծանրության տակ։ Նրա հորը սպանել էին խաղաղության բանակցության պատճառով, իսկ նրա ազգը լիովին ստրկացրել են և անընդհատ ցրում են Հռոմեական կայսրության զանազան մասերում»։*

*Պրոկոպիոսը տալիս է նաև ուշագրավ վկայություն հայ նախարարների հուսահատ դրության մասին՝ Բյուզանդիայի կողմից Հայերի դեմ ձեռնարկված դաժան խստությունների պատճառով և Պարսից Խոսրով Անուշիրվան թագավորի [531—578/9] օգնությանը դիմելու մասին։*

Procop., *II, 3*՝

*Նրանց ճառը — Հայտնում է [Խոսրովին], որ իրանցից շատերը Արշակունիներ են. բայց այժմ եկել են նրա մոտ, իբրև ստրուկներ և փախստականներ — ոչ հոժար կամքով, այլ հարկադրված։*

*«Մեր նախնիներից վերջին թագավորը՝ Արշակը զիջել էր իր թագավորությունը Հռոմեական կայսեր Թեոդոսին հոժարակամ, այն պայմանով, որ բոլոր տոհմով իրա մերձավորները մնան միշտ ազատ և ոչ մի հարկ չվճարեն։ Այդ կարգադրությունը ուժի մեջ էր մնում, մինչև որ դուք կնքեցիք խաղաղության այն նշանավոր դաշինքը, որ, մեր կարծիքով, առանց սխալվելու կարելի է անվանել համաշխարհային աղետ, որովհետև այնուհետև, անտես առնելով իր բարեկամներին ու թշնամիներին, ամեն ինչ իրար է խառնել ու քայքայել նա, որ անունով քեզ բարեկամ է, բայց իրոք — քո իսկական թշնամին է։ Այդ բանը ինքդ կիմանաս, հենց որ նվաճե արևմտյան ազգերը։ Եվ իրոք, ի՞նչ բան նա չէ արել, որ արգելված է եղել. ի՞նչ բան նա չէ խանգարել, որ շինված է եղել։ Նա չէ՞ որ մեզ վրա հարկ է դրել, որ առաջ մենք չգիտեինք։ Նա չէ՞ որ նվա-*

ճեց մեզ Հարևան ճանբերին, որոնք մինչ այդ անկախ էին։ Նա չէ՞ որ հռոմեական իշխան է կարգել դժբախտ լազերի թագավորի վրա։ Նա չէ՞ որ բոսպորյանների մոտ, որոնք ենթարկված էին հոների իշխանության, ուղարկել է իր զորավարներին։ Նա չէ՞ որ նվաճել է այդ քաղաքը առանց որևէ իրավունքի։ Նա դաշն է կնքել եթովպիացիների հետ, որոնց մասին առաջ հռոմայեցիները նույնիսկ լսած չէին։ Նա շրջապատում է արդեն Ամիրիտների հողերը և…

Ամբողջ աշխարհը քիչ է այդ մարդուն…. Աչքերը ուղղել է այժմ եթերին…. Ի՞նչ ես դանդաղում….. Եթե ուզում ես իմանալ, թե ինչպես է վարվում Յուստինիանոսը նրանց հետ, որոնք նրան հանձնվում են, մենք և լազերը քեզ օրինակ…….

Նվաճման համար մնացել է միայն Պարսկաստանը…. Հռոմեական ուժերի մեծագույն մասը դեռ հեռավոր երկրներում են…..

Ցիտտային մենք սպանել ենք, Վելիսարը այլևս չի գա. մենք կլինենք առաջնորդներ»։

541 թվին բյուզանդական զորքերը մտել էին Լազիստան և լազերը ևս, դժգոհ լինելով բյուզանդացիներից, դիմել էին Պարսից Խոսրով թագավորի օգնությանը։ Լազերի դեսպանությունը գնացել էր Խոսրովի մոտ և հայտնել էր՝

1. որ բյուզանդացիները իրանց ձեռքն են առել երկրի իշխանությունը, թողնելով թագավորին նրա արժանավորության միայն արտաքին տեսքը։

2. առևտրի մեջ մտցրել են մենաշնորհ [մոնոպոլիա]. ծախում են ինչ որ իրանց ավելորդ է և անպետք. գնում են և իրանք են նշանակում գները։ Դուրս են տանում երկրից ամենաանհրաժեշտ բաները, նաև ոսկին։

Հռոմեական զորավարը արգելել էր ազատ առևտուրը. ինքն էր ծախում և առնում, և նշանակում գները։

543 թվին բյուզանդացիները իրենց ուժերը ուղղել էին դեպի Պարսկական Հայաստան, սակայն Դվինի մոտ տեղի ունեցած կռվում Բյուզանդիայի զորքերը պարտվել էին։

Այնուհետև մինչև 562 թիվը պարբերաբար կրկնվող կռիվներից հետո տեղի է ունենում Դարայի մոտ հիսնամյա խաղաղության կնքում Բյուզանդիայի և Պարսկաստանի միջև։

Մինչ այդ, տեղի ունեցող անընդհատ կռիվների և Յուստինիանոսի իշխանության ընթացքում կայսրության ուժերի չափազանց

լառման հետևանքով, Բյուզանդական կայսրության վիճակը, շրնայած նրա արտաքին փայլին, խախտվել էր։

Յուստինիանոսի մահվանից հետո Յուստինոս II-ի [565—578] ժամանակ Պարսկաստանը խիստ զորեղացել էր։

Ինչպես վկայում է Միխայել Ասորին՝

«Յայսմ ժամանակի հպարտացաւ թագաւորն Պարսից յաղթութեամբ, որ եղև նմա ի Միջագետս»։

564 թվին Հայաստան էր եկել Պարսից Սուրեն մարզպանը, որը Պարսկական Հայաստանում նորից մտցրել էր խստություններ։

Ասողիկ, գլ. Բ, էջ 84 [Ս. ՊԲ., 1885]՝ «յոյժ հարստահարէր զնախարարս Հայոց, զի շնայր ընդ կանայս ազատաց, ոչ առնելով զայրն տէր կնոջ իւրոյ»։

Միխայել Ասորի՝ «Եվ Խոսրով թագաւորն Պարսից սկսաւ նեղել զՀայս՝ երկրպագել կրակի».

«առաքեաց ի Հայս շինել անդ տուն կրակի»։

Ասողիկ, գլ. Բ, էջ 84՝ «Դենշապուհ — զորմզդական հուրն վառեաց ի Ոշտունիս»։

Հիշված խստությունների հետևանքով 572 թվին բռնկվեց հայերի III-րդ ապստամբությունը Վարդան Մամիկոնյանի առաջնորդությամբ՝

«Հանդերձ միաբանութեամբ ամենայն նախարարաց», որոնց խոստացել էր օգնել Բյուզանդական Յուստինոս II կայսրը։ Ապստամբները 572 թվի փետրվարի 22-ին գրավեցին Դվինը և կոտորեցին պարսկական զորքն ու մոգերին, և Սուրեն մարզպանը սպանվեց։

Այնուհետև բռնկվեց նոր պատերազմ Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև, որը տևեց ընդհատումներով 20 տարի և որի ընթացքում ապստամբ նախարարների երկրամասերը ենթարկվեցին ավերածության։

Ինչպես վկայում է Ասողիկը, էջ 85՝ «Եվ այս են ժամանակք մարտից երկպառակութեան, անթիւ սպանմանց, գերութեան առից, խռովից, կապանաց, նեղութեանց, պակասութեանց, խիստ սովու, սրոյ և մարդամահու, աւերելոյ աւանից, հրդեհից շինուածոց, և ամենայն վնասուց բազում աշխարհաց, յերկուց կողմանց հասանէր՝ մոռացեալ սատուածպաշտութիւն»։

Այդ կռիվների հետևանքով Բյուզանդիան ստանում է՝ Դարան, Աղձնիքը, Տուրուբերանը, Գուգարքը, Տայքը, Այրարատի մեծ մասը։

Իսկ Պարսկաստանին մնում է՝ Մոկքը, Կորճեքը, Վասպուրա-

կանը, Այրարատի փոքր մասը, Սյունիքը, Արցախը Փայտակարանը, Ուտին։

Այդ 20 տարվա աշխարհավեր պատերազմների հետևանքը եղավ Մավրիկիոս բյուզանդական կայսեր [582—602] նոր քաղաքականությունը, որի մասին Սեբեոսը տալիս է հետևյալ վկայությունը՝

Սեբեոս, գլ. Զ, էջ 75—«Յայնմ ժամանակի թագաւոր յունաց Մաւրիկ հրամայէ գրել առ թագաւորն Պարսից գիր ամբաստան վասն իշխանացն ամենայն Հայաստանեաց և զաւրաց նոցա»։

«Ազգ մի խոտոր և անհնազանդ են, ասէ, կան ի միջի մերում և պղտորեն։ Բայց եկ՝ ասէ, ես զիմս ժողովեմ և ի Թրակէ գումարեմ. և դու զքոյդ ժողովէ և հրամայէ յԱրևելս տանել։ Զի եթե մեռանին՝ թշնամիք մեռանին. և եթէ սպանանեն՝ զթշնամիս սպանանեն. և մեք կեցցուք խաղաղութեամբ։ Զի եթէ դոքա յերկրի իւրեանց լինիցին մեզ հանգչել ոչ լինի»։

«Միաբանեցան երկոքին»....

Բյուզանդական կայսրության այս նոր քաղաքականությունը առաջ էր բերել նախարարական տոհմերի մեջ հուսահատ դրություն։ Բյուզանդական մասի նախարարները փախչում էին պարսից կողմը, որտեղ նրանց դրությունը քաղաքական և տնտեսական տեսակետից ավելի նպաստավոր էր։ Սակայն նոքա գտնվում էին երկուստեք սպառնալիքի տակ և որոշեցին՝

Սեբեոս գլ. Զ էջ 77 —«Պատերազմեսցուք ընդ երկոսին թագաւորսդ, և բռնութեամբ զերկիրդ մեր ի մեզ դարձուցուք»։

Այնուհետև մի քանի անհաջող ապստամբական փորձերից հետո հայ նախարարները սկսեցին նոր զորահավաք—Սահակ Մամիկոնյանի և Սմբատ Բագրատունու առաջնորդությամբ՝

Սեբեոս, գլ. Ժ, էջ 86—«Դարձեալ սկսան միաբանել մնացեալ նախարարքն Հայոց, և խնդրէին ի բաց կալ ի ծառայութենէն Յունաց թագաւորին. և նստուցանել իւրեանց թագաւոր. զի մի ևս նոցա հասցէ մեռանել ի կողմանս Թրակացւոց, այլ կեալ և մեռանել ի վերայ աշխարհին իւրեանց»։

Այս ապստամբության լուրը հասնում է թագավորին և Սմբատին ու ուրիշ յոթը հոգու բանտարկում են։

Հետագայում, շնորհիվ իր բացառիկ քաջության, Սմբատ Բագրատունին ներումն է ստանում և դառնում է մարզպան Վրկանա [607—616/617 թ.]։ Այդ ժամանակները, Աբրահամի կաթողիկոսության օրով [607—610/611] տեղի ունեցավ վրաց և հայոց եկեղեցիների բաժանումը։ Հայերը մնացին ասորական եկեղեցու հետ հա-

մերաշխ, իսկ վրացիները՝ հունա-հռոմեական եկեղեցու հետ, և ստեղծվեց թշնամական տրամադրություն։

Գիրք թղթոց —«Վասն որոյ և զյառաջագոյն սահմանն վարդապետացն մերոց, զոր ի վերայ Հոռոմին հատին, և կացցէ մինչև ցբուն՝ թէ ոչ դարձցին ի ճշմարիտն, մեք զնոյն ի վերայ Վրաց հրամայեցաք, ամենեիմբ մի՛ հաղորդել ընդ նոսա, մի՛ յաղաւթս և մի՛ ի կերակուրս, և մի յըմպելիս, մի՛ ի բարեկամութիւն, մի՛ ի դաեկութիւն, մի՛ աղաւթիւք երթալով ի խաչն որ ի Մցխիթայի տեղաւքն համբաւի, մի՛ ի Մանգղեաց խաչն և մի՛ ի մեր եկեղեցիս զնոսա ընդունել. այլև ամուսնութեամբ ամենևիմբ հեռանալ. բայց միայն գնել ինչ, և կամ գնոյ տալ որպէս Հրէից»։

«Նոյն հրաման և վասն Աղուանից»։

Հայ և վրաց եկեղեցիների բաժանումից հետո տեղի է ունենում քաղկեդոնական հայերի քայլ առ քայլ ապազգայնացումը և ձուլումը հույների և վրացիների հետ։

602 թվին Թրակիայում տեղի ունեցավ ապստամբություն. Մավրիկիոս կայսրը և իր որդիները սպանվեցին, և նրա հաջորդ Փոկաս կայսեր ու պարսից Խոսրով II Փարվիզի [590—628] ժամանակ վերսկսվեց պատերազմը Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև, որը տևեց 24 տարի։ 18 տարի շարունակ, գրեթե անընդհատ, բյուզանդական զորքերը պարտություն էին կրում։ Տեղի էր ունենում բնակչության կոտորած առանց սեռի ու հասակի խտրության և Փոքր Ասիայի ավերումը մինչև Բոսփոր։

Կռիվների վերջին տարիները, թեև Բյուզանդիան 627 թվին Մոսուլի մոտ տարած վճռական հաղթության շնորհիվ վերականգնեց իր դիրքերը և կողմերը կնքեցին մշտական խաղաղության դաշնագիր, սակայն նրքա երկարատև կռիվների պատճառով ուժասպառ էին եղել, և 636 թվից սկսած հանդես եկավ արաբական աշխարհակալությունը։

## ԱՐԱԲԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՇՐՋԱՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ.

Արաբական աշխարհակալության արագ ծավալմանը նպաստել են հետևյալ պայմանները՝

1. Բյուզանդիայի և Սասանյան Պարսկաստանի թուլացումը հաճախակի կրկնվող աշխարհավեր կռիվների պատճառով.

2. Հայաստանի բնակչության դժգոհությունը Բյուզանդական կայսրությունից՝ վարչական դաժան սիստեմի, կրոնական հալա-

ծանքների, դրամական ծանր տուրքերի և միաձուլման քաղաքականության պատճառով.

3. Երկու մեծ պետությունների իշխանության տակ գտնվող արաբական և սեմական ժողովուրդների համակրանքը և օգնությունը նոր աշխարհակալությանը.

4. Օգնում էին նաև հրեաները, որոնց դրությունը Պաղեստինում ծանր էր.

5. Արաբների մեղմ և բարյացակամ վերաբերմունքը դեպի անձնատուր եղող թշնամիները և քաղաքները։ Հոժարակամ հանձնվող քաղաքներին տրվում էին արտոնություններ.

6. Համբերատար վերաբերմունք եկեղեցու նկատմամբ.

7. Նախարարական շահերը արաբների իշխանության տակ եղել են ավելի ապահովված.

8. Տուրքերը և հարկապահանջությունը սկզբնական շրջանում եղել են չափավոր.

9. Արաբները կատարում էին իրենց խոստումները.

10. Իրենց տիրապետության առաջին շրջանում՝ Օմայան դինաստիայի խալիֆները եղել են ընդհանուր առմամբ մատչելի և ժողովրդին մոտ։

Արաբական տիրապետության բնույթը զգալի չափով փոխվել է 750 թվից հետո, Աբասյան դինաստիայի գերիշխանության օրով, շնորհիվ ստեղծված նոր պայմանների՝

ա. Աբասյանների պետական կազմակերպությունը և մշակույթը եղել են նախկին Սասանյան Պարսկաստանի պետականության ազդեցության տակ։

բ. Աբասյանները հին աշխարհակալների նման վարել են շռայլ կյանք, կատարել են մեծ ծախսեր և եղել են ժողովրդից ավելի կտրված։

Արաբական տիրապետության առանձնահատուկ երևույթներից են՝ խառն ամուսնությունները, որոնք տեղի են ունեցել, գլխավորապես, VIII դարում և IX դարի առաջին կեսում՝ հալածանքներից խուսափելու համար։

Արաբական աշխարհակալության հիմնական նպատակը սկզբնական շրջանում եղել է՝ աշխարհագիր կատարել նվաճված շրջաններում և հարկեր ստանալ, որի վճարման համար պատասխանատու է եղել ամբողջ համայնքը։

Իրենց տիրապետության առաջին շրջանում արաբները նպատակ ունենալով պահպանել իրենց զինվորական գերազանցությունը,

*եղել են իշխողներ և զինվորականներ։ Քաղաքացիական զբաղմունքները և վարչական աշխատանքները թողնված են եղել նվաճվածներին։*

*Վարչական պաշտոնեությունը սկզբնական շրջանում եղել են՝ պարսիկներ և քրիստոնյաներ։ Քաղաքացիական և վարչական գործերում իրենք արաբները ոչ մի միջամտություն չեն ունեցել։ Մինչդեռ Հետագայում, Հաջիջի ժամանակ տեղի է ունեցել պաշտոնեության մահմեդականացում։*

*Օմայան դինաստիայի ժամանակ մշտական զորք չի եղել. եղել են զինվորական գաղութներ որոշ գլխավոր կայաններում։ Մինչդեռ Հետագայում Աբասյանները ունեցել են մշտական վարձկան զորք, որը բաղկացած է եղել՝ արաբներից, պարսիկներից և Թուրքական Ֆերգանի ժողովուրդներից։*

*Համաձայն ֆրանսիական գիտական Լոռանի եզրակացության՝*

> *«Հայաստանը եղել է Հռոմի և Բյուզանդիայի ու Իրանի և ապա արաբների աշխարհակալական մրցակցության զոհը։ Նա ստանում էր հարվածներ թե մեկի և թե մյուսի կողմից։ Օգտվում էր այդ մրցակցությունից և օգտագործում նրանց հակամարտությունը ու խուսափում վերջնական անկումից։ Սակայն, հայերը չկարողացան այդ հակամարտությունը օգտագործել և իրենց ինքնուրույնությունը վերածել անկախության և պետական միության»։*

* *
*

*Արաբական տիրապետության շրջանի մասին Սեբեոսը տալիս է հետևյալ պատկերավոր վկայությունը, որտեղ նա արաբներին նմանեցնում է չորրորդ գազանին՝*

> *Սեբեոս, գլ. ԼԲ, էջ 182—«Բայց երանելին Դանիէլ կանխաւ գուշակէ մարգարէութիւնն զայսպիսի նեղութեանս, որ եկն եհաս ի վերայ երկրի, որ չորս գազանաւք նշանակէ զչորս թագաւորութիւնսն, որ յառնելոցն էին ի վերայ երկրի։ Եւ նախ առաջին զԱրևմտից թագաւորութիւն զմարդացեալ գազանն, որ է Յունաց...։ Եվ ահա գազանն երկրորդ նման արջոյ, և եկաց ի կողմն մի՝ յարևելից կողմանէ՝ Սասանականին ասէ զթագաւորութիւն...։ Իսկ գազանն երրորդ, իբրև զինձ և չորք թևք թռչնոց ի վերայ նորա և չորք գլուխ գազանին՝ զհիւսիսային ասէ զթագաւորութիւն՝ Գոգ և Մագոգ...*

Իսկ գազանն չորրորդ, ահեղ և զարմանալի, և ժանիք նորա երկաթիք, և մագիլք նորա պղնձիք, ուտէր և մանրէր և զմնացածսն առ ոտն կոտորէր։ Այս չորս յարուցեալ ի հարաւոյ կողմանէ Իսմայէլեան թագաւորութիւնն, որպէս հրեշտակապետն մեկնեաց եթէ՝ «գազանն չորրորդ թագաւորութեանն կայցէ որ առաւել իցէ քան զամենայն թագաւորութիւնս, և կերիցէ զամենայն երկիր»....

Արաբական առաջին արշավանքների մասին պատմիչների վկայությունները հակասական են և իրար հետ չեն համաձայնում։

Արշավանքները տեղի են ունեցել երկու ուղղությամբ՝ Միջագետքից և ապա Ատրպատականից։

Արաբական առաջին արշավանքի մասին, որ տեղի է ունեցել Միջագետքից 640 թվի հոկտեմբերի 6-ին, ուրբաթ օրը, Սեբեոսը տալիս է հետևյալ վկայությունը՝

Սեբեոս, գլ. Լ. էջ 175—«Եւ ել զաւր ապականիչ յԱսորեստան կողմանէ ընդ ճանապարհս ձորոյ յաշխարհն Տարոնոյ, առին զնա և զԲզնունիս և զԱղիովիտ։ Եվ ճանապարհ կալեալ և Բերկրոյ ձորն ընդ Որդսպոյ և ընդ Գոգովիտ՝ թափեցան յԱյրարատ...։ Հարին ապաստակաւ զամենայն երկիրն, և ժողովեալ զաւար և զգերութիւն բազում յոյժ...։ Յաւուրն հինգերորդի դիմեցին ի վերայ քաղաքին... արկին մուխ շուրջանակի, մերժեցին ծխովն և նետաձգութեամբն զպահապանս պարսպին, և կանգնեալ սանդուխս՝ ելին ի պարիսպն և անկեալ ի ներքս..... զաւրք թշնամացն սատակեցին սրով զբազմութիւն քաղաքին՝ ելին և բանակեցան ի նմին բանակատեղն. որ աւր ի էր տրէ ամսոյն՝ յաւուր ուրբաթի:....»

Այդ նույն արշավանքի մասին Հովհան Մամիկոնյանը տալիս է հետևյալ վկայությունը՝

«Յովհաննու Մամիկոնեանի պատմութիւն Տարօնոյ», Վենետիկ, 1832, էջ 57—58—«Եւ յետ ութ ամի եկն Արդռահիմ, քեռորդի Մահմետի բազում աղխիւ, ութևտասն հազար առնաձիոյ ընդ իւր բերեալ, խնդրէր հարկս ի Հայոց։... անցանէ ի Հարք և ի Բասեան, ի Վիրք և ի Ջաւախս և ի Վանանդ. և առեալ հարկս, դառնայ ի Տաճկաստան»։

Նման վկայություն բերված է նաև

«Պատմութիւն սրբոյն Ներսիսի և գիւտ նշխարաց» պատմական երկի մեջ. տես՝ Սոփերք Հայկականք, է, Վենետիկ, էջ 43—44։ Դվին քաղաքի գրավման մասին, որ տեղի է ունե-

ցել հետագա արշավանքների ժամանակ, արաբական պատմիչները տալիս են հետևյալ վկայությունը՝ Belâdhori, *200*, Zâkût, *II*, *549*—

*Հանձնման գրություն.*

*«Յանուն Աստուծոյ Ողորմածի. այս մի գրություն է Հաբիբ իբն Մասլամայի Դվինի բնակչությանը՝ քրիստոնյա, մոգ և հրեա, ներկա և բացակա։ Ես ապահովում եմ ձեր կյանքը, գույքը, ձեր եկեղեցիները, աղոթարանները և ձեր քաղաքի պարիսպները։ Դուք ապահով եք։ Մեր պարտականությունն է մեր խոսքը պահել, քանի որ դուք հավատարիմ կմնաք և կվճարեք գլխահարկ ու հողահարկ։ Աստված վկա է. նրա վկայությունը բավական է։ Կնքված իբն Մասլամայի կողմից»։*

*Արաբների երկրորդ արշավանքը տեղի էր ունեցել Ատրպատականի կողմից 642/643 թվերին, և երրորդ մեծ արշավանքը 650 թվի օգոստոսի 8-ին։ Այդ արշավանքներից հետո, երբ նրքա վերադառնում էին ավարով և գերիներով, Թեոդորոս Ռշտունի հայ զորավարը հարձակվել է վերադարձող արաբների վրա, կոտորել է նրանց և հետ է վերցրել ավարը և գերիներին։ Այնուհետև Թեոդորոս Ռշտունին համաձայնություն է կնքել արաբների հետ, իբրև նրանց կողմնակից, և արաբները պարտավորություն են վերցրել օգնության գալ հայերին բյուզանդացիների հարձակման դեպքում։ Այդ համաձայնության մասին Սեբեոսը տալիս է հետևյալ վկայությունը՝*

*Սեբեոս, Լե, էջ 224—«Արդ՝ խաւսէր ընդ նոսա իշխանն Իսմայէլի և ասէր. «Այս լիցի ուխտ հաշտութեան իմոյ ընդ իս և ընդ ձեզ, որչափ ամաց և դուք կամիջիք. և ոչ առնում ի ձէնջ սակ զերեամ մի. ապա յայնժամ տաջիք երդմամբ, որչափ և դուք կամիջիք, և հեծեալ կալէք յաշխարհետ ժԵ հազար։ Եւ հաց յաշխարհէն տուք, և ես ի սակն արքունի անգարեմ, և զհեծեալսն յԱսորիս ոչ խնդրեմ. բայց այլուր և հրամայեմ, պատրաստ լիցին ի գործ. և ոչ արձակեմ ի բերդորայն ամիրայս, և ոչ տաճիկ սպա՝ ի քաղմաց մինչև ցմի հեծեալ։ Թշնամի մի՛ մտցէ ի Հայս, և եթէ գայ Հոռոմ ի վերայ ձեր՝ արձակեմ ձեզ զաւրս յաւգնականութիւն որչափ և դուք կամիջիք։ Եվ երդնում ի մեծն Աստուած՝ եթէ ոչ ստեմ»։*

*654 թվին Բյուզանդիայի կայսր Կոստանդինը մտել էր Հայաստան և գրավել էր Կարինը, Տայքը, Սպերը և մի շարք այլ շրջաններ, որոնց նախարարների մի մասը հնազանդել էին։ Թեոդորոս*

Բշտունին, վրացիք, Աղվանքը և Սյունիքը կողմնակից էին արաբներին։ 655 թվին, Կոստանդին կայսեր վերադառնալուց հետո Թեոդորոս Ռշտունին, ստանալով արաբներից օգնություն, վերագրավում է երկիրը և բյուզանդացիներին հալածում ու առնում է Տրապիզոնը, որից հետո Մուավիան տալիս է նրան երկրի իշխանությունը։

Սեբեոս, ԼԵ, էջ 233—«Իշխանութիւն ետ նմա զՀայս և զՎիրս, զԱղուանս և զՍիւնիս, մինչև ցԿապկոհ և ցՊարհակն ծորայ»։

Ինչպես վկայում են հայ պատմիչները, արաբները Հայաստանում իրենց հաստատվելու առաջին շրջանում դեպի հայերը ունեցել են բարյացակամ վերաբերմունք։

Ղևոնդ, գլ. Դ, 14[Ս. ՊԲ. 1887]—«Իսկ յերկրորդում ամի իշխանութեանն [662 թ.] Մուավիա կոչէ զԳրիգոր և զՍմբատ, որ էին պատանդք ի դրանն արքունի. և տայր Գրիգորի զպատիւ իշխանութեանսն Հայոց [662—685]. և առաքէ զնոսա բազում մեծարանօք յաշխարհս Հայոց»։

Ասողիկ, գլ. Դ, էջ 122—«Եւ Մաւիա զԳրիգոր՝ իշխան հաստատեաց Հայոց և Վրաց»։

Ղևոնդ, գլ. Դ, էջ 15—«Իսկ Գրիգոր իշխան Հայոց յաւուրս իւրոյ իշխանութեան խաղաղացոյց զաշխարհս Հայոց յամենայն հինից և յարձակմանց»։

Գրիգորի իշխանության օրով Հայաստանում ստեղծված խաղաղությունը խանգարվեց խազարների արշավանքի պատճառով։ Ինչպես վկայում է

Ղևոնդը, գլ. Դ, էջ 16—«Տիրեցին ի վերայ աշխարհիս Հայոց հյուսիսային ազգն, որ ասին խազիրք, և սպանին ի պատերազմին զիշխանն Գրիգոր և զբազումս ի նախարարացն և զիշխանսն Վրաց և Աղուանից...... առեալ զաւար և զգերութիւն՝ գնացին յաշխարհն իւրեանց»։

Գրիգորի մահվանից հետո Բյուզանդիայի Յուստինիանոս II կայսրը [685—695] իր թագավորության սկզբում ուզեցել է նվաճել Հայերին։ Ինչպես վկայում է Թեոփանեսը, հայերը տվել են հետևյալ պատասխանը՝

«Այս քանի անգամ է, որ հնազանդեցանք ձեզ, և չգտանք օգնություն ձեզանից մեր նեղության մեջ. այլ, գլխավորապես, զրկանք ու լլկանք, եթե այժմ էլ մտնենք ձեր իշխանության ներքո, դարձյալ մատնվելու ենք սրի ու գերության օտար ազգերի կողմից։ Եվ երբ ձեռք քաշեք մեզանից, ինչպես արել եք

և ուրիշ անդամներ, ո՞րտեղից մենք օգնություն ստանանք։ Ուստի աղաչում ենք ձեզ, թույլ տվեք, որ մնանք մեր այս վիճակում»։

Հայերի հիշված դիմումին Բյուզանդիայի կողմից ձեռնարկված են եղել պատժիչ գործողություններ, որի մասին Ղևոնդը տալիս է հետևյալ վկայությունը՝

Ղևոնդ, գլ. Ե, էջ 17—«Եւ յերկրորդում ամի թագաւորութեանն Յուստինիանոսի կայսեր [686 թ.] և յիշխանութեանն Աշոտի պատրկի առաքէ զօր բազում ի վերայ աշխարհիս Հայոց, որք եկեալ աւերեցին զաշխարհս աւարառութեամբ և բազում գեղեցկահարմար շինուածս հրձիգ արարին յաւեր դարձուցանելով, և ինքեանք դառնային յաշխարհն իւրեանց»։

Ասողիկ, էջ 100—«Հրով և գերութեամբ քանդեցին գաւառս ԻԵ և ԸԺ երդ գերեալ վաճառեցին»։

Համաձայն Ղևոնդի վկայության, հենց նույն ժամանակը, երբ բյուզանդացիք ավերում էին հայկական շրջանները՝ գլ. Դ, էջ 15—«Ի յերկրորդում ամի իշխանութեան նորա [Աբդլ-Մելիքի, 686 թ.] եղև խառնակումն սաստիկ ի մէջ Տաճկաց և պատերազմ»։

Միաժամանակ Ղևոնդը վկայում է, որ տեղի է ունեցել հայերի ապստամբություն՝

Ղևոնդ, գլ. Դ, 15—«Եւ ի ժամանակի պատերազմին, որ ի մէջ Տաճկաց՝ դադարեցին ի հարկատուութենէ նոցա Հայք, Վիրք, Աղուանք... Եւ եղեն աւուրք ապստամբութեան նոցա ամք Գ»։

Արաբական պատմիչները՝ Բելազորին, Յակուբին և Իբն ալ-Աթիրը Բյուզանդացիների հաջողությունները վերագրում են հայերի ապստամբությանը։

692/93 թվերին բյուզանդացիները Փոքր Ասիայում Սեբաստոպոլսի մոտ պարտություն են կրում արաբներից և Հայաստանը նորից ամբողջությամբ ընկնում է արաբների ձեռքը։ Սմբատ Բագրատունին և հայ նախարարները ընդունում են արաբների իշխանությունը և կռվում բյուզանդացիների դեմ։ Սակայն արաբները վստահություն չունեին հայ նախարարությունների հանդեպ։ Նրանք վարում են նոր քաղաքականություն՝ աշխատում են նախարարներին ճնշել, խստացնում են իրենց վերաբերմունքը և ավերածություններ են կատարում Հայաստանում։ Կաթողիկոսին, Սմբատ Բագրատունուն և նախարարներից շատերին գերում և տանում են Դամասկոս։ Ինչպես վկայում է Հովհաննես Կաթողիկոսը՝ «մարտ ընդ ամրոցս, աւերումն»։

Սմբատ Բագրատունին Դամասկոսից փախչում է. նախարարները ապստամբում են արաբների դեմ. տեղի են ունենում կռիվներ արաբների հետ բյուզանդական զորքի օգնությամբ և 705 թվին՝ հայերի և բյուզանդացիների պարտությունից հետո, Վլիթ խալիֆի [705—715] կարգադրությամբ Հայաստան է գալիս Հեշմ արաբական զորավարը նախարարական տոհմերի բնաջնջման ծրագրով. արաբները հարձակվում են նրանց ընտանիքների վրա՝ կողոպտում, կոտորում և գերի են տանում։

> Ղևոնդ, գլ. Ժ, էջ 35—«Յայնմ ժամանակի թափուր եղեալ աշխարհս Հայոց ի տոհմէ նախարարաց՝ մատնէին որպէս զոչխարս ի մէջ գայլոց։ Եվ թշնամեացն ամենօրհնակ չարեաց յարձակեալ ի վերայ՝ յանհուն աղէտս վտանգի պահէին զբնակիչս աշխարհիս Հայոց»։

Այս պատժիչ գործողություններից հետո Վլիթն ուղարկում է Հայաստան Աբդլ-Ազիզին մեղմացրած ծրագրով, և ինչպես վկայում է Ղևոնդը,

> գլ. Ժ, էջ 35—«Գրէր հրովարտակ առ նախարարս Հայոց, և հաւանեցուցանէր զնոսա դառնալ յիւրեանցական աշխարհս. և տայր նոցա գիր երդմամբ չափ ըստ սովորութեանն իւրեանց»։

Փախած հայերը վերադառնում և վերաշինում են Դվինը։ Համաձայն Ղևոնդի վկայության, գլ. Ժ, էջ 36—«Շինէր վերստին զքաղաքն Դուին հզօրագոյն և ընդարձակագոյն մեծութեամբ, քան զառաջինն»։

Այնուհետև Օմար խալիֆը ևս [717—720 թ.] ունեցել է բարյացակամ և մեղմ վերաբերմունք դեպի հայերը և, ինչպես վկայում է Ղևոնդը,

> գլ. ԺԳ, էջ 42—«Զսա ասեն ազնուականագոյն քան զամենայն արս ազգատոհմին իւրոյ։ Սա արար դարձ գերութեանն, զոր գերեաց Մահմետ յաշխարհէս Հայոց..... և խաղաղացոյց զաշխարհս, որ ընդ իւրով իշխանութեամբ»։

Օմարի ժամանակ տեղի է ունեցել՝

1. Հաջիջի կարգադրության վերացումը, որով նորադարձ մահմեդականները պետք է վճարեին գլխահարկ.

2. Հողերի նոր գնումների և անշարժ գույք ձեռք բերելու արգելում.

3. Խարաջի պակասեցում մահմեդականների անշարժ գույքից.

4. Ազորինի տուրքերի վերադարձը։

*Օմարի քաղաքականության հետևանքը եղել է խալիֆատի ֆինանսական դրության քայքայումը։*

*Օմարից հետո, Հեշմ խալիֆի ժամանակ [724—743] խալիֆատի ֆինանսական քաղաքականությունը փոխվում է, ինչպես վկայում է Ղևոնդը՝*

> *գլ. ժէ, էջ 100—«Եւ սա յառաջնում ամի իշխանութեան իւրոյ [725 թ.] խորհուրդ վատ ի մէջ առեալ՝ առաքէր զոմն զօրավար, որում անուն էր Հերթ՝ աշխարհագիր առնել ընդ աշխարհս Հայոց վասն ծանրացուցանելոյ զանուր լծոյ ծառայութեան հարկատրութեան ազգի ազգի չարեօք, որպէս թէ դժուարելով ընդ բարեմտութիւնն Օմարայ, եթէ անիրաւութեամբ ծախեաց զմթերս գանձուցն, զորս համբարեալ էր իշխանացն, որ յառաջ քան զնա։ Եւ բազում վտանգ հասուցանէր աշխարհիս, մինչ զի ամենեցուն հառաչել ի վերայ անհանգիստ նեղութեանցն, յորմէ ոչ գոյր ապրել ումեք յանհնարին վտանգիցն։ Եւ յայնմհետէ առաւել ծանրացաւ ձեռն նորա ի վերայ աշխարհիս Հայոց»։*
>
> *Մովսէս Կաղանկատվացի, էջ 368—«յԱմուն [725 թ.] մահ անասնոց եղև, և ի ձմերան աշխարհագիրն Հերթի, որ էարկ զմարդ և զանասուն և զսահմանս երկրի ընդ հարկաւ անթիւ ծառայութեան»։*
>
> *Ասողիկը ևս վկայում է, որ 725 թվի աշխարհագրից հետո՝ Բ. գլ. Դ, էջ 128—«Սա [Հեշմը] ծանրացոյց զսակ հարկի աշխարհիս Հայոց»։*

*Հարկերի ավելացումը որոշ չափով տեղի էր ունեցել դեռևս 662 թվին։ Համաձայն Ասողիկի վկայության՝ Բ, գլ. Դ, էջ 122—«Գրեն հրովարտակ ի Հայս՝ հարկել նոցա. և յանձն առին իշխանքն, նախարարքն և կաթողիկոսն Ներսէս Շ դահեկան յամենայն ամի հատուցանել»։*

*Մինչդեռ, ինչպես վկայում է Սամուել Անեցին, արաբների տիրապետության սկզբնական շրջանում հարկերը եղել են համեմատաբար շատ փոքր.*

> *Սամուել Անեցի, էջ 82—«մուրհակ աշխարհիս Հայոց. յամենայն տանէ — Դ դրամ, Գ մոթ խորբան, ձիատօպրակ մի և պարան մի մազէ և ձեռնարար մի իսկ ի քահանայից և յազատաց և ի հեծելոց ոչ հրամայեաց առնուլ»։*

*Ինչպես վկայում են հայ պատմիչները, 725 թվի աշխարհագրից հետո երկրում ստեղծվել էր ծանր դրություն, որի հետևանքով 747—*

750 թվերին բռնկվեց ապստամբական շարժում, Գրիգոր Մամիկոնյանի առաջնորդությամբ։

Աշոտ Բագրատունին եղել է դեմ և ասել է՝

> Ղևոնդ, գլ. ԻԶ, 122—«ո՞վ եղբարք, ոչ տեսանեմ խոհական մտաց զգործ անզգայութեանդ, այլ անուղղայ խորհուրդ և բանս տարապարտս. քանզի ահա նուազունք են զօրքս մեր ի մէջ բռնութեանն Իսմայելի, և ոչ կարեմք դդէմ անել զօրաց նոցա, և ոչ զերկիր մեր հանել ի բերանոյ վիշապացն։ Եւ միայն աշխատութիւն և վտանգ հասուցանեմք ի մտածմունս մեր. այլ եթէ կամեաշիք ընդունել զխրատ իմ՝ ոչ արասցուք զբանդ զայդ, և հարկեսցուք նոցա որպէս ցարդ ևս, և կալցուք զստացուածս մեր, զայգիս, զանտառս և զանդաստանս մեր»։

Աշոտ Բագրատունու հիշված խորհրդի պատասխանը եղել է հետևյալը՝

> Ղևոնդ, ԻԶ, 122—«Եթէ ոչ միաբանեսցիս ի խորհուրդս մեր՝ ոչ մնասցէ առ քեզ և ոչ մի ոք ի զօրաց քոց. չկարեմք ժուժկալել տագնապիս յորում կայ երկիրս Հայոց»։

Այնուհետև ապստամբ նախարարները կնքում են «դաշինք ուխտի», սակայն այդ դաշինքը մի տարի էլ չտևեց։ Աշոտ Բագրատունին և նախարարների մի մասը բաժանվում են ապստամբներից և գալիս են Բագրևանդ [ի գիւղն Հաղր] ու կամենում են միաբանել «ընդ որդիսն Իսմայելի»։

Գրիգոր Մամիկոնյանը հետամուտ է լինում նրանց՝ «պաշարէր զկայս հանգստեան նորա, գիտացեալ զերկմտութիւն զօրաց նորա, զի ոչ եկին ի թիկունս օգնականութեան»։

Ապստամբները Աշոտ Բագրատունուն կուրացնում են։ Գրիգորը Կարինում շուտով վախճանվում է. իսկ նրա փոխարեն «կացուցին իշխան զՄուշեղ սակաւ ինչ ժամանակս» [750 թ.]։

750 թվին խալիֆատում տեղի են ունեցել մեծ փոփոխություններ։ Սիրիայի Օմայան դինաստիան ընկնում է և իշխանությունը անցնում է Իրաքի արաբների Աբասյան դինաստիային։ Փոխվում է նաև խալիֆատի քաղաքական գիծը։ Աբասյանները [750—1258 թ.] ծանրացնում են հարկերը, որի հետևանքով VIII դարի երկրորդ կիսում տեղի են ունենում պարբերաբար կրկնվող ապստամբություններ։

Աբասյան Աբուլաբաս Աբդլա խալիֆը [750—754 թ.] Հայաստան է ուղարկում իր եղբորը Աբու Ջաֆար Աբդլային [Ալ-Մանսուր՝ 754—775], որը, ինչպես վկայում են հայ պատմիչները, դրել էր երկիրը ծանր ու դաժան պայմանների մեջ։ Ինչպես պատմում է

Ղևոնդը, գլ. ԻԸ, էջ 127—«Բազում վշտօք և նեղութեամբ վտանգէր զամենեսին և հասուցանէր ի չքաւորութիւն տնանկութեան, մինչև պահանջել հարկս ի մեռելոցն։ Եւ զամենայն բազմութիւն որբոց և այրեաց չարալլուկ տառապեցուցանէր. վտանգէր զքահանայս և զպաշտօնեայս աստուածային խորանին՝ ի յայտածել զանուանս վախճանելոցն և զընտանիս նոցուն։ Խոշտանգէր և զբնակիչս աշխարհիս բռնագոյն և դառն հարկապահանջութեամբ, առնուլ ըստ գլխոյ բազում զուզէս արծաթոց, և դնել կնիք և կապարեայ յամենեցուն պարանոցս»։

Մխիթար Այրիվանեցի—«Աբդլայ զերեք տարուայ մեռածին հարկն ի կենդանեացն խնդրէր բռնութեամբ. և հատաւ յամենայն աշխարհէ ոսկի և արծաթ»։

Ասողիկ, գլ. Դ, էջ 133—«Այլ յիշխանութեանն Աբդլայի միւսոյ և ի հրամանատարութեան Իզիտի յոյժ ծանրացաւ անուր լծոյ հարկապահանջութեան երկրիս Հայոց. զի ոչ ըստ երդ պահանջումն, այլ ըստ գլուխս արանցն. մինչև նախարարքըն և մեծամեծքն ի չքաւորութիւն աղքատութեան անկան»։

Ղևոնդ, գլ. ԻԸ, էջ 128—«Հատաւ սակ արծաթոյն, որ գայր ամի ամի յարքունուստ զօրացն Հայոց։ Եվ զհամար հեծելոցն պահանջէին յիշխանացն. և հարկ լինէր ի տանց իւրեանց հանդերձել զգունդս զօրացն և զընթացան ղրավաստակ աշխատութեանցն ողջ պահել»։

Ղևոնդ, գլ. ԼԳ, էջ 135—«Ծանրացաւ անուր լծոյ հարկապահանջութիւն...։ Վախճանեաց զգիտ արծաթոյի յերկրէս, և ամենայն ոք տալով զպաճարանս ընչից իւրեանց՝ ոչ գտանէին զգինս փրկանաց անձին իւրեանց. և զար կոտանօք, գելարանօք և կախաղանօք. և դառն տանջանօք կեղէին զկեանս մարդկան։ Յորմէ փախստեայ եղեալ բազումք յայրս և ի փապարս երկրի ղօղեալ թագչէին. և ոմանք ձիւնահեղձ և գետավէժ լինէին վասն անտանելի աղետիցն»։

Միքայել Ասորի—«Ջեզն և զէշ դրամի միոյ վաճառէին և գողայն հինգ դրամի տային պահանջողացն»։

Նախարարական տոհմերը տալիս էին ընծա՝ ձի, ջորի, պատվական հանդերձներ, ոսկի, արծաթ—«զի կարասցեն լնուլ զբերան վիշապին, որ յարձակեալ էր ապականել զերկիրս»։

Հարկ չվճարողներին չարչարում էին, տանջում և նույնիսկ կախում։ Ստեղծված ծանր դրության պատճառով ժողովուրդը և նախարարներից ոմանք գաղթում էին և գնում Բյուզանդիա։ 752 թվից

հետո Կոստանդին V կայսեր զորքերի հետ գաղթել էին Կարնո շրջանի հայերից շատերը։

«էին ոմանք ի նախարարացն Հայոց, որք մերժեալ լքին զժառանգութիւս իւրեանց և փախստեայ անկան յաշխարհն Յունաց, ապաւինեալն առ կայսրն Կոստանդին»։

Հայաստանի ավագանու, Սահակ Բագրատունու և Տրդատ կաթողիկոսի [741—764] գանգատները մնում էին անհետևանք։ Երկրի դրությունը հետզհետե ավելի վատանում էր։

Ըստ Ղևոնդի վկայության՝ գլ. ԼԴ, էջ 137—«Եւ ևս առ այսոքիւք արհամարհութիւնք հայրապետաց, այպանութիւնք եպիսկոպոսաց, գան և խոշտանգանք քահանայից, իշխանաց և նախարարաց քարշանք և քայքայութիւնք…։ Բամիկ բազմութիւն մարդկան խոշտանգէին ազգի ազգի տանջանօք… Փոխահարութեամբ լկէին վասն հարկապահանջութեան»։

Արաբական խալիֆատի կողմից ձեռնարկված հալածանքների հետևանքը եղել է 774 թվին բռնկված հայերի ապստամբությունը Արտավազդ Մամիկոնյանի ձեռներեցությամբ, որին մասնակից են եղել նաև ռամիկները։

Ղևոնդ, էջ 137—138—«Իբրև տեսին նախարարք Հայոց զվտանգն տարակուսանացն հասեալ ի վերայ ինքեանց՝ եդին զոգի ի ձեռին իւրեանց և ձեռնամուխ եղեն յիրս, զոր ոչ կարէին վճարել, վասնզի նուազունք էին։ Այլ սակայն լաւ համարեալ զմահ քաջութեամբ քան զկեանս վտանգաւոր՝ ձեռնամուխ եղեն յիրս ապստամբութեան»։

Այնուհետև Արտավազդը գնում է Դվին և սպառազինում զորքերը, բարեկամ ցույց տալով իրեն խամայելական զորքերին։ Սպանում է Կումայրիում [Շիրակում] «զհրամանատար հարկին» և ձեռքից առնում հավաքած հարկերը։ Գնում է իր ընտանիքով Վրաստանի կողմերը և այնտեղից ստիպված է լինում փախչել Եգերացոց երկիրը։ Արաբները կարգադրում են ավելի ևս խիստ միջոցների դիմել և բռնությամբ հավաքել հարկերը։

Արտավազդից հետո ապստամբության գլուխ է անցնում Մուշեղ Մամիկոնյանը, որին միանում են մի քանի ուրիշ նախարարներ։

Ապստամբները Բագրևանդում սպանում են հարկահավաքներին՝

Ղևոնդ, գլ. ԼԴ, էջ 139 — «Լսեցուցանէր զպահանջումն հարկին յերկրէս»….. «ժողովէին առ նա վշտատեսք և վտանգեալք հոգով»։

Ապստամբների դեմ արաբները ուղարկել էին պատժիչ զորք,

սակայն Մուշեղը Բագավանում նրանց ևս հաղթում և հալածում է մինչև Առուճ, որտեղ սպանվում է նրանց զորավարը։

Այս հաղթությունից հետո բռնկում է ընդհանուր ապստամբություն։ Ապստամբության դեմ է եղել Սահակ Բագրատունու որդին՝ Աշոտը, որը ասել է՝

Ղևոնդ, գլ. ԼԴ, էջ 142—143 —«Մանկունք էք և կրտսերագոյնք հասակաւ. և գիտեմ եթէ ոչ կարէք զդէմ ունել զօրութեան բազմագլուխ վիշապին, զի հզօր է զօրութիւն նորա և անթիւ բազմութիւն ընդ ձեռամբ նորա, և անչափ պատրաստութիւն զինուց ի գանձս նորա և ամենայն թագաւորութիւնք որք հակառակ կացին իշխանութեան նորա՝ փշրեցան որպէս զանօթ բրտի. զի թէ Հռովմայեցւոց թագաւորութիւնն ոչ կարաց համբառնալ զձեռս ի վեր, այլ սարսեալ դողաց յերեսաց նորա»..... «Կամ հնազանդեցէք, կամ փախէք»։

Աշոտի խորհուրդը ապստամբները համարեցին «խրատ նենգութեան» և Վասպուրականի ապստամբները որոշեցին հարձակվել Արճեշի վրա, որը արաբական կենտրոնատեղերից մեկն էր։ Սակայն խալիֆատի կարգադրությամբ Հայաստան ուղարկված և դարան մտած արաբական զորքերը Ամր զորավարի առաջնորդությամբ գրոհեցին ապստամբների վրա և պարտության մատնեցին [775 թ.].

Ղևոնդ, գլ. ԼԴ, էջ 147—«կոտորեցին զմեծ մասն հետևակ զօրուն, որ յաշխարհաբնակ մարդկանէն էին. քանզի էին մերկք և առանց զինուց և անհմուտք պատերազմի»։

Կարինը պաշարող ապստամբները ստանալով Արճեշի մոտ տեղի ունեցած ապստամբների պարտության լուրը, ստիպված են լինում վերացնել քաղաքի պաշարումը, որը արդեն անձնատուր էր լինելու սովի պատճառով և, ինչպես վկայում է Ղևոնդը, գլ. ԼԴ, էջ 148—«Թէպէտ կարող էին մեկնել ի կողմն Յունաց...... սակայն լաւ համարեցան զմահ անձանց, քան զկորուստ աշխարհիս»...

Նոքա՝ թվով 5000 հոգի գալիս են Բագրևանդ, անցնում են Արածանի գետը և ասում էին՝ Ղևոնդ, ԼԴ, էջ 149—«Քաջութեամբ մեռցուք ի վերայ աշխարհիս մեր և ի վերայ ազգիս՝ և մի տեսցեն աչք մեր կոխան ոտից լեալ պղծալից արանց»։

Տեղի է ունենում խալիֆատի զորքերի հետ անհավասար կռիվ, որտեղ հայերը ծանր պարտություն են կրում։ Զոհվում են նախարարները և ռամիկներից 3000 հոգի։

Այնուհետև տեղի են ունենում հարձակումներ երկրի զանազան կողմերում։ Խաչերի ոչնչացում, եկեղեցիների կողոպտում։ Հարձակում ամրոցների վրա։

«Տային գիր երդման և իշեցուցանէին»։

775 թվին խալիֆատում Աբու Ջաֆար Աբդլա ալ Մանսուրից հետո գահ է բարձրանում Մահադի [Մահդի՝ 775—785 թ.] խալիֆը, որը, ինչպես վկայում է

Ղևոնդը՝ ԼԷ, էջ 154—155 «էր ագնուական և լաւագոյն բարուք...։ Երբ զամենայն տունս գանձուց և բաշխեաց պարգևս զօրաց իւրոց... և եղև առատութիւն երկրի, և գին արծաթոյ ընդարձակեցաւ. և բնակչաց երկրի անդորրութիւն եղև ի հարկապահանջ բռնութենէն. զի թէպէտ և զանուր լծոյ հարկին ծանրացոյց, սակայն վասն գինի արծաթոյն հանգեաւ երկիրս... լերինք արծաթոյ յայտնեցան յաշխարհիս Հայոց առ ի հանել ի նոցունց խանութս արծաթոյ զտոյ ի պէտս մարդկան»։

778 թվին Բյուզանդական զորքերը՝ Տաճատ, Վարազտիրոց, Գրիգորիոս և Արտավազդ հայ զորավարների առաջնորդությամբ գալիս են Հայաստան և Գերմանիկեի մոտ [Կոմագենեում] տեղի է ունենում արաբների դեմ մեծ ճակատամարտ, որտեղ արաբները ծանր պարտություն են կրում։

Տաճատը, որ հաղթական կռիվներ էր վարել բուլղարների դեմ, կայսրությունից ստանում է «պատիւ իշխանութեան ի վերայ Հայաստանի»։

Մահադիից հետո նրան հաջորդում է նրա որդին Մուսե խալիֆը [785—786 թ.]։ Հայաստան է գալիս Խազմը, իբրև արաբական զորքերի հրամանատար, որի մասին Ղևոնդը ասում է [գլ. Խ, 162]՝ «Արգարև ըստ անուան իւրոյ խազմարար և դժոխաձև»։ Խազմի ժամանակը հալածանքները Հայաստանում և Վրաստանում սաստկանում են։ Դվինում նրան հանդիպում են նախարարներից մի քանիսը, որոնցից Մեհրուժան Արծրունին ընդունում է մահմեդական կրոնը, իսկ մյուսները բանտարկվում և գլխատվում են։

786 թվին խալիֆատի գահը բարձրանում է Մուսեի եղբայրը՝ Ահարոնը, Հարուն-ալ Ռաշիդը [786—809], որին հայ պատմիչները բնութագրում են իբրև ագահ և արծաթասեր։

Ատրպատականը, Հայաստանը, Վրաստանը և Աղվանքը ստանում է նրա եղբայրը՝ Ովբեդլան, որը ինչպես վկայում է Կաղանկատվացին՝ «Նեղութիւն անչափ հասույց աշխարհի և վասն այնր բազում գաւառի Հայոց փախեալ ի Հոոոմս»։

786 թվին տեղի է ունենում մահմեդական ցեղերի գաղթը Հայաստան։ Միաժամանակ ծանրանում է տեղական բնակչության դրությունը։

Ղևոնդ, գլ. ԽԲ, էջ 168 —«Ոչ ոք էր տէր ընչից իւրոց, այլ առհասարակ վարէին յաւարի»։

Շնորհիվ ստեղծված ծանր դրության շատերն ինքնակամ թողնում էին իրենց ունեցվածքը և փախչում։ Այսպես՝ 791 թվին տեղի է ունեցել 12000 հայերի գաղթը Շապուհ և Համամ Ամատունիների առաջնորդությամբ։

Ինչպես Ղևոնդը վկայում է՝ գլ. ԽԲ, էջ 169—«Իսկ կէսք ժողովրդեան, որք մնացին՝ առ սաստիկ կարօտութեան անձնատուրք եղեն ի ծառայութիւն սորկի, փայտակոտորք և ջրաբերք»։

Հարուն ալ Ռաշիդի ժամանակը տեղի է ունեցել Հագարացիների արշավանքը Հայաստան. այդ արշավանքի մասին Հովհաննես կաթողիկոսը տալիս է հետևյալ վկայությունը՝

«Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտցւոյ, Պատմութիւն Հայոց», Թիֆլիս, 1912, էջ III—«Եւ վասնզի սպառըսպուռ Հագարացիքն տիրեցին կալան զՀայաստանեայսս և մեծամեծք աշխարհիս նուաղեցան, և մնացեալք զօղեալ դադարեալ կային ընդ լծով ծառայութեան նոցա. սակս այսորիկ իսկ յայսմ վայրի պակասեաց ի պատմութենէ ասաի զրոյցք իշխանաց մերոց»....

Նախարարական Հայաստանը կործանվում էր, ռազմական ուժի, գաղթի ու կոտորածների միջոցով ստանում էր սոսկալի հարվածներ, եկեղեցին կորցնում էր իր հարստությունները և ազդեցությունը, բնակչությունը խիստ պակասում էր և երկրում բնակություն էր հաստատում մահմեդական գաղթականությունը։ Նախարարական Հայաստանի կործանման ու այլասերման աճեղ այդ պրոցեսը, որ մեծ չափերով առաջ էր տարվում 775 թվի ապստամբությունից հետո, հետզհետե կանգ է առնում սկսած IX դարի սկզբներից։

Նախարարական Հայաստանի քաղաքական այդ նոր իրադրության պատճառները եղել են՝

1. Գահակալական կռիվները խալիֆատում.

2. Մահմեդական ամիրաների ապստամբությունները Հայաստանում.

3. Պարսկական խմբավորումների ապստամբությունները խալիֆատի դեմ։ Ինչպես վկայում է

Վարդան վարդապետը [էջ 77]՝

«Յայնմ ժամանակի ադմկեալ Իսմայէլի ընդ միմեանս, հանգչէր երկիրս Հայոց, և սկսան զօրանալ իշխանքն մեր յիւրաքանչիւր տեղիս»։

Կռվող կողմերը դիմում էին և օգնություն խնդրում հայկական նախարարություններից, որոնց քաղաքական դրությունը այդ ներքին խռովությունների պատճառով հետզհետե նորից զորեղանում է։

Դեռևս 792—793 թվերին Հարուն ալ-Ռաշիդի խալիֆայության օրով տեղի էր ունեցել Բալլաքանում [Փայտակարանում] և Պարթավում պարսիկ աղանդավորների ապստամբությունը Աբու-Մուսլիմի [Աստ ալ Մոկկանա] առաջնորդությամբ։ Ապստամբները պարտություն էին մատնել Հայաստանի երեք կառավարիչներին, մինչև որ խալիֆատի զորքերին հաջողվել էր խեղդել ապստամբությունը։

809—813 թիվը, Հարուն ալ-Ռաշիդի մահվանից հետո, տեղի էին ունեցել գահակալական կռիվներ նրա որդիների մեջ։ Այդ ներքին երկպառակություններից օգտվելով, 809 թվին ապստամբել էր Թիֆլիսի ամիրա Իսմայիլը [809—819]։

Այնուհետև խալիֆատի դեմ ապստամբել էին Մանազկերտի ամիրաները՝ Ջահապը և նրա հաջորդները՝ Աբդել-Մելիքը [813—820] և Սևադան [820—830]։ Համաձայն Հովհաննես կաթողիկոսի վկայության՝ նրանք գրավել էին Հայաստանի մեծագույն մասը, և նպատակ էին դրել ամբողջ երկիրը՝ Վանա լճից մինչև Արաքս գետը անկախ դարձնել։ Նրանք Հայաստանի իշխանությունը իրանցն էին համարում և կռիվներ են ունեցել արաբական կառավարիչների հետ։

813 թվին ապստամբել էին Դվինում հայերի օգնությամբ կայսիկները։

Նույն ժամանակները տեղի է ունեցել Եղեսիայի և Մարաշի ամիրա Նասրի [812—825] ապստամբությունը։

816 թվին արաբական իշխանության դեմ ապստամբել էր Հայաստանի կառավարիչ Հատիմը։

Իսկ 817 թվին տեղի ունեցավ պարսից աղանդավոր խուրամիտների ահեղ շարժումը Բաբեկի առաջնորդությամբ, որը ունեցել է ազատագրական և սոցիալական բնույթ։ Ապստամբները նպատակ են ունեցել վերականգնել նախկին պարսկական տիրապետությունը և պահանջում էին գույքի և ունեցվածքի հավասար բաշխում։

Ապստամբները գրավել էին Ատրպատականը, Փայտակարանը, Աղվանքը և Արևելյան Հայաստանը։ Խալիֆատի զորքերը շարունակ պարտություն էին կրում։ Միայն 833—834 թվերին, Համադանի մոտ Բաբեկի կրած պարտությունից հետո, խալիֆայությանը հաջողվում է 835 թվին խեղդել ապստամբական այդ մեծ շարժումը, իսկ 836 թվին Աֆշինը գրավում է Բաբեկի մայրաքաղաք Պարթավը և ավերում։

*Այս ներքին խռովությունների և քաղաքական դրության փոփոխման հետևանքով հայ ազնվականությունը հետզհետե նորից սկսում է վերականգնել իր ուժերը։ Հատկապես ուժեղանում են Բագրատունիները, որոնք 774 և 775 թվի ապստամբություններից հետո ապավինել էին Հայաստանի արևմտյան լեռնային շրջանները և օգնություն էին ստանում Բյուզանդիայից։*

*Մայր երկրում տեղի ունեցող երկպառակություններից ու կռիվներից օգտվում էին Բագրատունիները, բռնելով խալիֆատի կողմը, և հետզհետե ընդարձակում էին իրենց երկրի սահմանները։*

## ԲԱԳՐԱՏՈՒՆԻՆԵՐԻ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆԸ

*Բագրատունյաց թագավորության առաջնակարգ նշանակությունը Հայոց պատմության մեջ, որ առանձնապես շեշտված է պատմական երկերում — սխալ է։*

*Բագրատունյաց թագավորության բնույթը եղել է՝*

*1. Թագավորական տիտղոս, և ոչ իրական թագավորական իշխանություն.*

*2. իշխանությունը և իրավունքները եղել են նույնը, ինչպես և նախընթաց շրջանում.*

*3. պարտականությունները եղել են՝ հարկերի հավաքումը և զորքերի առաջնորդությունը.*

*4. ֆեոդալական անիշխանությունը մնում էր.*

*5. Արծրունիները և մյուս ականավոր նախարարությունները ևս ձգտում էին ձեռք բերել թագավորական տիտղոս.*

*6. Խալիֆայության և Բյուզանդական կայսրության քաղաքականությունը եղել է նպաստավոր ֆեոդալական անջատողականության և ոչ միացման.*

*7. որքան իշխաններ, նույնքան թագավորներ։ Բագրատունիների ժամանակաշրջանում 7 անջատ իշխաններ հետզհետե ստացել են թագավորի տիտղոս։*

*Բագրատունյաց ժամանակաշրջանի Հայաստանի քաղաքական կազմակերպությունը ֆրանսիական ականավոր գիտնական Լոռանը բնութագրում է հետևյալ կերպով՝*

> *«Նախարարները եղել են ինքնիշխան, ինչպես և առաջ. հեղինակությունը եղել է անձնական և ոչ իրական։ Նրքա չէին կարող տարածել իրենց իշխանությունը, Բյուզանդիայի և խալիֆատի դիմադրության պատճառով։ Աշոտին 862 թվին տրվում է «իշխանաց իշխան»-ի տիտղոս. բայց տիտղոսը միայն*

բավական չէր. Աշոտը ինքը պետք է իր հեղինակությունը հաստատեր և նախարարներին ենթարկեր իր իշխանությանը, որը խիստ դժվար էր։ Հայաստանը կարող էր միանալ, բայց չմիացավ։ Աշոտի զորքը քիչ էր խալիֆատի պաշտոնյաներից և տեղական ամիրաներից պաշտպանվելու համար»։

* *
*

Դեռևս 775 թվի ապստամբությունից հետո Վասակ Բագրատունին փախել էր Բյուզանդիայի հարևան շրջանը՝ Կղարջք և այնտեղ հիմք էր դրել Արտանուջի Բագրատունյաց ճյուղին։ Նրա որդին Ատրներսեհը և թոռը՝ Աշոտը գրավում են Արտահանը և մերձակա տեղերը և ընդարձակում են իրենց տիրապետության սահմանները՝ Բյուզանդիայի գերիշխանության տակ։ Հետզհետե Աշոտը զորեղանում է և ինչպես վկայում է Վարդան վարդապետը՝

«Տայր իշխանն իմայէլի Աշոտի, որդւոյ Ատրներսեհի, որդւոյ Վասակայ՝ զերկիրն Վրաց, որոյ երդեալ հնազանդեցուցանէ ինքեան. և կայսրն առաքէ նմա պատիւ կիւրապաղատութեան» [810—833, ըստ Լեոյի]։

Նույն ժամանակաշրջանում զգալի չափով զորեղանում է, 775 թվի ապստամբության ժամանակ զոհված, Բագրատունի Սմբատ սպարապետի որդին՝ Աշոտ Մսակերը [806—825/6], որը գրավել և հաստատել էր իր իշխանությունը Հայաստանի հյուսիս-արևմտյան շրջաններում՝ Տայքում, Արշարունիքում, Շիրակում և Աշոցքում։ 806 թվին նա Հարուն ալ-Ռաշիդից կարգվել էր Հայաստանի իշխան և այնուհետև հնարավորություն ստացավ ընդարձակելու իր երկիրը։

Աշոտ Մսակերը եղել է իր ժամանակվա հայ իշխաններից ամենից զորեղը, քաջը և ժողովրդականը։ Նա հավաքում և բերում է իր շրջանը ցիր ու ցան եղած հայերին՝

Վարդան Վարդապետը վկայում է.—«Բազոք կալեալ ազգին Գնունեաց թափել նոցա յԻսմայէլացւոցն, որոյ երթեալ հազար արամբք յԱղիովիտ գաւառ, և առ ինքն գումարեալ զամենայն ազգն աղխիւն իւրեանց տանի բնակեցուցանէ ի Տայս»։

Աշոտ Մսակերի որդին Բագրատը, իբրև Տարոնի իշխան, 830 թ-ին ստացել էր «իշխանաց իշխանի» կոչում և նրա իշխանության տակ էին գտնվում՝ Տարոնը, Խոյթը, Սասունը։

Բագրատի եղբայրը՝ Սմբատ Աբլաբասը երեսուն տարի [826—855] եղել է մեծ սպարապետ։ 850 թվին Բագրատունիների իշխանու-

*թյան տակ են եղել Մոկքը, Տարոնը, Սպերը, Արաքս և Կուր գետերի վերին հոսանքի շրջանները, Սյունիքը, Աղվանքի մի մասը։*

*Հայկական նախարարությունները նորից զորեղանալով և օգտվելով խալիֆատում տեղի ունեցող ներքին խռովություններից, հարևան մահմեդական ամիրայություններին հետևելով, իրենք ևս ձգտում էին հարկատու դրությունից ազատվել։*

*Մամուն խալիֆայի մահվանից հետո ապստամբել էին խալիֆայության զորքերը։ Մամունի հաջորդ Մուտասիմ խալիֆը [833—842 թ.] կազմակերպում է վարձկան թուրք զորքեր, որոնց ապրուստի, հանդերձելու ու պահելու համար պահանջվում էին հսկայական ծախքեր։ Պաշտոնները ծախում էին փողով։ Ծախքերը ծածկելու համար ժողովրդին կողոպտում էին։ Խալիֆ ալ-Վաթիկի [842—847] ժամանակ Հայաստանը նորից գտնվում էր խառնակ դրության մեջ։ 847 թվին խալիֆայության գահն է բարձրանում Մութավաքիլը [Ջափրը՝ 847—862], որը միջոցներ է ձեռնարկում խալիֆայության խախտված դրությունը ամրապնդել և սանձահարել ուժեղացող նախարարություններին։ 849 թվին Մութավաքիլը Հայաստան է ուղարկում Աբուսեթ ոստիկանին մեծ զորքով։ Բագրատը և Աշոտ Արծրունին ուղարկում են պահանջվող հարկերը և դիմում են նրան, որ նա Հայաստան չմտնի և հեռանա։*

*850 թվին Արզնի ամիրա՝ Մուսեն, իբրև հարկահավաք, մտնում է Տարոն։ Բագրատը և Աշոտը միացյալ ուժերով դիմադրում ու դուրս են քշում նրան։ Մութավաքիլը կատաղած Հայաստան է ուղարկում Աբուսեթի որդուն՝ Յուսուֆին, որը հրավիրում է իր մոտ Բագրատին, խոստանալով երկրի իշխանությունը նրան հանձնել։ Բագրատը գնում է, և Յուսուֆը նրան շղթայված ուղարկում է Սամառա, Մութավաքիլի աթոռանիստը։*

*Այնուհետև, ինչպես վկայում է Թովմա Արծրունին, գլ. Է՝*

> *«Յովսէփ [Յուսուֆ] զօրավարն Տաճկաց մնայր անցանել ձմերանն, զի եկեսցէ ի վերայ աշխարհիս Հայոց սրով և գերութեամբ և մեծամեծ հարուածովք և մեծամեծս աշխարհիս խաղացուցանէ ի գերութիւն և կացուսցէ ի վերայ աշխարհիս գործավարս, որ ըստ իւրեանց հրամանի զկարգս աշխարհիս յօրինեսցեն, և իւրեանք համդերձ ընտանեօք իւրեանց նստցին յամուրս Հայոց»։*

*Այս իրադարձությունների հետևանքով բռնկում է ուժեղ ազատագրական շարժում։ Ապստամբում է Սասունի ժողովուրդը Հովնան Խութեցու առաջնորդությամբ՝*

Թովմա Արծրունի, գլ. Է, էջ 119—120—«Յայնժամ բնակիչք լերինն իբրև տեսին, թէ վարեցաւ իշխանն ի գերութիւն. ինքեանք պատրաստեալ են զնոյն փարշմանն կրել, զոր դաշտայինքն կրեցին՝ Հասին միաբան բազմութիւնքն մեկնակզէնքն խուժայ... և եկեալ ի վերայ քաղաքին պաշարեն զնա. և զզօրսն մատնեն ի սատակումն սրոյ, և զպատանդսն Վասպուրականի Հանեն յարգելանէն, և գերեացն ընդարձակեն, զկապուտ նոցա բաժանեն յինքեանս»։

852 թվին Հայաստան է ուղարկվում Բուղան 200.000 զորքով վրեժ առնելու, ազատագորքը ոչնչացնելու և նախարարներին շղթայակապ տանելու Սամարա։

Բուղան սասունցիներին անողոք կերպով պատժում է, գրավում է Տարոնը, Վասպուրականը, Արաքսի և Կուր գետի դաշտային մասերը, Աղվանքը, Վրաստանը։ Նախարարական տոհմերից շատերը ապավինում են ամուր տեղեր։ Ամենուրեք ավերածություններ է կատարում, ապատներին կոտորում։ Բուղային օգնում են նաև երկրում բնակություն հաստատած մահմեդականները։ 855/56 թվին Բուղան վերադառնում է Սամարա և իր հետ տանում բանտարկված նախարարներին ու գերի բռնված ազնվականներին։

Մութավաքիլի ժամանակ սաստկանում են նաև կրոնական հալածանքները։ Յակուբիի վկայությամբ Ջաֆրը [Մութավաքիլը] գահ բարձրանալուց հետո հրաման է տվել՝ որ

«Ոչ մի քրիստոնյա կամ հրեա չպետք է պետական պաշտոն վարեն։ Նոր եկեղեցիները և տաճարները պետք է քանդվին և նրանք իրավունք չպիտի ունենան վերաշինելու»։

Արգելվում են վեճերը ղուրանի մասին. հալածվում են ազատամիտ աստվածաբանները, շիաները և հերետիկոսները։

Սամարայում 991 ազնվականներ ստիպված ընդունում են մահմեդական կրոնը։

858 թվին տեղի է ունեցել Դվինի մեծ երկրաշարժը, որի մասին Հովհաննես կաթողիկոսը տալիս է հետևյալ վկայությունը [էջ 133]՝

«Յամս Զաքարիայի կաթողիկոսի յետ է ամի գերութեան Հայոց...։ Ահագին իմն շարժմանց եղելոց ի Դուին քաղաքի բազում սասանութիւնս և փլուզմունս տանց և պարսպաց և ապարանից լինէր, և առհասարակ քանդումն և դղրդումն առնոյր քաղաքն, այլև մահ յոլովից մարդկան ի վերայ հասանէր և այնպէս ահագին իմն լինէր վտանգ տագնապին, մինչև ոչ ոք մնալ ընդ յարկաւ, այլ ի հրապարակս և ի փողոցս ելեալ հառաչէին։ Իսկ ցրտաշունչ սառնամանիքն ձմեռայնւոյն առա-

ւել բերէր զլքացումն հեծութեան, զի հոլովք մնեալք և ծայրատեալք լինէին»։

Մութավաքիլի մահվանից հետո [861 թ.] խալիֆատում նորից առաջ են գալիս գահակալական կռիվներ ու ներքին խռովություններ և ստեղծվում են նպաստավոր պայմաններ հայ նախարարության դիրքերի վերականգնման համար։ 862 թվից հետո Սամարայից վերադառնում են կենդանի մնացած նախարարները և վերահաստատվում են իրենց տոհմական կալվածքներում։

862 թվին Աշոտ Բագրատունին [Սմբատ Բագրատունու որդին], որ Բուղայի արշավանքների ժամանակը հավատարիմ էր մնացել խալիֆայությանը, ստանում է «իշխանաց իշխան»-ի կոչում։

Ինչպես վկայում է Թովմա Արծրունին

> «Հաւատացեալ էր վերակացութիւն աշխարհիս Հայոց Աշոտի, որ իշխանաց իշխան՝ ձեռն ի գործ արկեալ նուաճել զիշխանս Հայոց, զՎրաց և զԱղուանից, որ եղև իսկ»։

Աշոտ Բագրատունին աշխատում է թե զենքի ուժով և թե դիվանագիտական խաղաղ միջոցներով իր գերիշխանությանը ենթարկել նախարարական և մյուս երկրները՝ Հայաստանում, Վրաստանում, Աղվանքում և այլուր։

Ըստ Վարդանի վկայության՝ «ընդարձակեալ մեծին Աշոտի ի Վիրս և յԱղուանս զԿաւկասայինս հնազանդեալ»։

Իր հեղինակությունը բարձրացնելու համար նա աշխատում է ազգակցություն հաստատել զորեղ նախարարությունների հետ խնամության կապերի միջոցով։ Իսկ Աշոտի եղբայրը՝ Աբասը ստանում է սպարապետի աստիճան։

Բուղայի արշավանքներից հետո զորեղանում են մահմեդական ամիրայությունները։ 863 թվին տեղի է ունենում կայսիկների արշավանքը՝ Սևադայի որդի Ջահապի առաջնորդությամբ։ Այդ արշավանքի մասին Ասողիկը տալիս է հետևյալ վկայությունը՝ Բ., բ, էջ 110՝

> «Ճահապ որդի Սևադայի ամբոխաստա զօրու գայ յերկիրս Հայոց՝ աւերել գերել զերկիրս կամելով։ Եւ եկեալ յԱրշարունիս գաւառ՝ իջանէ յեզերս Երասխայ ըստ հարաւոյ կուսէ ի տեղին, որ այժմ ասի Քառասունք։ Իսկ մանուկն Աբաս սպարապետն Հայոց, ...... ելեալ ի Կաղզուան աւանէ խՌ արամբք ամենայն Հայոց զօրուն, քաջօք և մրցողօք՝ գայ հասանէ ի վերայ նոցա. զբոլոր բանակն ցիր ու ցան վայրացն ընկեցեալ՝ սրախողխող և գետավէժ զամենեսեան առնելով։ Իսկ Ճահա-

պայ ի՜Ձ արամբք մաղապուր պրծեալ՝ անցեալ գնայր ամօթալից»։

Այս պարտությունից հետո կայսրերը կորցնում են իրենց երկրների որոշ մասերը։ Այնուհետև Աշոտ իշխանաց իշխանի տիրապետության տակ են եղել հետևյալ մարզերը և երկրամասերը՝ Բագարան, Շիրակ, Արշարունիք, Աշոցք, արևելյան Տայք, Վանանդ, Սուրմալի, Արագածոտն — մինչև Երևանի կողմերը և Կուրտիկ Մամիկոնյանի մահվանից հետո, նաև Բագրևանդը։

Դվինում եղել է արաբական կառավարիչ։

867 թվին Բյուզանդիայում հանդես եկավ հայկական դինաստիան, հանձինս Բարսեղ Ա-ի, որը տևեց մոտ երկու դար։

Բարսեղ Ա-ն [867—886] համաձայն բյուզանդագետ Գելցերի բնութագրման, «պատկանում էր այն հանճարեղ, բայց խիստ ուժեղ բնավորություններին, ինչպես էին Սուլլան, Թեոդորիխը, Նապոլեոն Ա-ը»։

Համաձայն Լոռանի բնութագրման՝

«Բարսեղի ժամանակը հայերի համար բախտավոր շրջան էր. արաբական ոստիկանները ուղարկվում էին հայերի ընտրությամբ. նոքա կարող էին ազատ շնչել, իրենց իրավունքները և ուժը ավելացնել. կատարել ճանապարհների շինություն, շենքերի կառուցում. նպաստավոր էր երկրագործության և առևտրի զարգացման համար»։

880 թվից հետո, երբ մահմեդական ամիրաները միացել էին ընդդեմ զորեղահայ նախարարների, Աշոտ Բագրատունին արշավում է Մանազկերտ և գրավում է Բերկրին, Խլաթը և Արճեշը։

Նախարարական Հայաստանի այս հաջողությունները պետք է վերագրել խալիֆատի թուլացմանը և Բյուզանդական կայսրության հաղթական արշավանքներին Հայաստանի սահմանամերձ շրջաններում՝ 871—882 թվերին։

Կործանիչ հարվածներ էր հասցնում խալիֆայությանը Բարսեղ Ա-ը, որը քայլ առ քայլ առաջ էր գալիս և ավերում էր խալիֆայության լեռնային ամրությունները։ Բարսեղի հաջողությունները կրկնակի կատարեալ, եթե նախարարական Հայաստանը հարձակվեր արաբների աջ թևի վրա։

Նախարարական Հայաստանի դիրքը դեպի կովող կողմերը ստանում էր մեծ կարևորություն։ Սակայն նախարարական Հայաստանը չեզոք դիրք էր բռնել, որի շնորհիվ ստեղծվել էին նպաստավոր պայմաններ երկրի խաղաղ զարգացման համար։

887/888 թ. նախարարները վճռում են Աշոտին թագավոր դարձ-

նել։ Դիմում են Ահմետ խալիֆին, որը ուղարկում է իշխանաց իշխան Աշոտին թագ և թագավորական զգեստներ։ Աշոտ Ա-ի պետական կազմակերպչական գործունեության մասին Հովհաննես կաթողիկոսը տալիս է հետևյալ վկայությունը [էջ 139]՝

«Եւ այնուհետև բազում և երևելի կարգս յարդարէր աշխարհի տէրութեանն իւրոյ, յօրինուածս տանց, ազգաց, քաղաքաց, շինից, դաստակերտաց և հարթհաւասար ըստ իւրաքանչիւրոցն կատարէր կարգս լեռնականաց և ջերմահովիտ բարեխառն դաշտականաց, և զամենայն տափարակ տեղիս ագարակս և զոմս դնէր. և զմարմանդս յայգիս և ի բուրաստանս զարդարէր»…..

890/91 թվին Աշոտ I-ին հաջորդում է Սմբատ I-ը։ Գահակալության առթիվ տեղի են ունենում ներքին խռովություններ։ Աշոտի եղբայրը՝ Աբաս սպարապետը ուզեցել է ինքը ժառանգել գահը, ինչպես վկայում է Հովհաննես կաթողիկոսը՝ «յինքն զթագաւորութիւնն հնարէր նուաճել», սակայն այդ նրան չի հաջողվում. նա հաշտվում է Սմբատի հետ և մնում է սպարապետ։

Ինչպես վկայում է Ասողիկը, էջ 161 —Սմբատ Ա-ի և նրա հոր Աշոտ Ա-ի ժամանակ

«էր շինութիւն և խաղաղութիւն յաշխարհիս Հայոց ըստ մարգարէութեանն՝ հանգչիլ իւրաքանչիւր ուրուք ընդ որթով իւրով և ընդ թզենեաւ. և այսպէս ագարակաց աւանացեալ և աւանաց քաղաքացեալ բազմամարդութեամբ և ընչեղութեամբ, մինչև հովուաց և անդէորդաց մետաքսեայս զգենուլ պատմուճան»։

Ընդհանրապես այս շրջանում մեծ թափ ու ծավալ է ստացել շինարարությունը նախարարական բոլոր երկրներում։

Արծրունիների երկրի շինարարության մասին Թովմա Արծրունին տալիս է հետևյալ վկայությունները՝

Թովմա Արծրունի, էջ 252—«Շինեաց Գագիկ [887—936] պարսպաւոր ամրափակութեամբ զբլուրն Ոստանին Ռշտունեաց զաւերեալն ի բազում ամաց»։

Թովմա Արծրունի, III, 29—«Շինեաց [Վան Տոսպում] ի վերայ ամրական քարանձաւին յելս և ի մուտս կոյս տունս խրախիցս ոսկեզօծս պատշկամբեալ, յաւելլով ի յառաջագոյն ի հօրէ նորա Դերանկէն շինեալ»։

Թովմա Արծրունի, Թ. IV, է — վկայություն Ախթամարի շինարարության մասին—«ապաստան լինել աշխարհի ի հինից թշնամեաց»։

«Հրաման տուեալ բազում արուեստաւորաց և անթիւ մարդկան զհատեալ վէմս ծանունս հոսել ընկենուլ յատակս ծովուն անհնարին խորութեանն...: Քարահատակն ամբարտակ կանգունս հինգ...: Եւ պարիսպն է հրաշակերտ, ահեղակերպ, բարձրաբերձ, լայնանիստ բրգամբք և բարձրացեալ աշտարակօք զարդարեալ, անկիւնաւոր խորանանման տախտակաձև յինքեան ունելով գահոյք զբօսանաց, յորում հանգերձ որդւովք և ազատակոյտ զօրօք միշտ ուրախանայր արքա: Ի շրթունս խորայատակ հիմանց ծովուն դնէ դրունս ահաւորատեսս, հաստահեղույս, բևեռապինդս. որով և զմասն ինչ ծովուն ի կղզին կոյս հատանելով՝ հրաշալիս իմն ներգործեաց, բազում նաւաց յօրինեալ խաղաղ և անքոյթ նաւահանգիստ: Ժողովեալ ի դուռն արքայի իշխանաց և տէրանց, ազատաց և ռամկաց, եպիսկոպոսաց և կրօնաւորաց, զի ամենեքեան օն անդր փութապէս շինուածս և ձեռակերտս հաստատեսցեն, հրաման տայցէ, զի լինիցի տեղի ապաստանի ամենայն հինից ի թշնամեաց եկելոց...: Չկնի հնգից ամաց յորմէ հետէ սկսան շինել՝ պայծառացեալ բարձրացաւ շինութիւն քաղաքին առաւել քան զառաւել»:

Մեծ քանակությամբ շինված են եկեղեցիներ՝ Անիում, Կարսում. 40-ի չափ եկեղեցիներ ու վանքեր շինված են այդ ժամանակաշրջանում Սյունիքում:

Հայաստանի շինարարության զարգացման այս շրջանում, Սմբատ Ա-ի թագավորության երրորդ տարում տեղի է ունեցել 893 թվին Դվինի մեծ ու ավերիչ երկրաշարժը, որի մասին Հովհաննես կաթողիկոսը [էջ 162] տալիս է հետևյալ վկայությունը՝

«Զայսու ժամանակաւ ահագին իմն յեղակարծումն ժամու սաստիկ շարժմանց եղելոց ի գիշերի և Դուին քաղաքի՝ բազում սասանումն և սարսափումն և դղրդումն և կործանումն զընակչօք քաղաքին զեղեալ, հիմն ի վեր տապալէր: Վասն զի առհասարակ ի վայր փլուզեալ զպատուար պարսպացն և զապարանս գլխաւորացն և զտունս ռամկաց՝ իբրև զերիզուտ վայրս առապարաց յական թօթափել տեսանէր.... Իսկ զբազմութիւնս դիականցն ոչ բաւեալ տալ գերեզմանաց՝ զբազումս ի վիհս և ի խորափիտս և դարափլակս ընկեցեալ ծածկէին»:

Նույն երկրաշարժի մասին Թովմա Արծրունին տալիս է հետևյալ վկայությունը՝ «Պարսպաւոր պատնիշօք պատուարեալ և տուրևառիկ վաճառականութեամբ և ազգի ազգի պըղ-

ծութեամբ յափրացեալ յղփացեալ՝ զնա ի հիմանց տապալեալ...։ Ասի լինել թիւ մարդկանն ապականելոց ի շարժմանէ՝ ոգի առաւել ՀՌ։ Այս շարժումն սաստկագոյն քան որ եղև յաւուրս Զաքարիայի Հայոց կաթողիկոսի, յետ է ամի գերութեան Հայոց»։

Բագրատունյաց Սմբատ Ա-ն, իր թագավորության ընթացքում նպատակ է ունեցել և ձգտել է ազատվել հարկատվությունից, իրական դարձնել իր թագավորական իշխանությունը, հնազանդեցնելով իրան նախարարներին։ Նա իր իշխանությանն է ենթարկում այն երկրները, որոնք գտնվում էին, ինչպես վկայում է Հովհաննես կաթողիկոսը, էջ 161՝

«յԱրեմտից հիւսիսոյ մինչև ցԿարնոյ քաղաք, և անդր ևս քան զԿղարջս քերեալ մինչև առ ափն ծովուն մեծի, և մինչև ցսահմանս Եգերացւոց և մինչև ցստորոտ մեծի լերինն Կովկասու, զԳուգարացիս, և զԾանարս մինչև ցդուռն Ալանաց.... և անտի ի հարաւ կողմն կոյս զԿուր գետով մինչև ի քաղաքն Տփխիս. և զՈւտի գաւառ մինչև ի քաղաքն Հունարակերտ և մինչև ի Տուս և ի Շամքոր։

Եւ այսպէս ընդարձակեալ զսահման տէրութեան իւրոյ, որ ընդ լծով արքունի սակից և բեկարաց և մաքսից կացուցեալ՝ զզէն քաջութեան մարտի իւրոյ նշան յաղթութեան կանգնէր»։

Սմբատի թագավորության օրով Ադրբեջանում հանդես եկավ Սաճյան զորեղ ամիրայությունը [879—930], որը Սաճյան Աֆշինի 898 թվի հաղթական արշավանքից հետո հարկատու դարձրեց գրաված հայկական շրջանները Սաճյան ամիրայությանը։ Իսկ Բագրատունյաց Հայաստանի ենթարկումը խալիֆայությանը դառնում էր անվանական։

Հետագայում Սմբատը աշխատել է ազատվել այդ հարկատվությունից, սակայն նրան ամիրապետը և Աֆշինի հաջորդը՝ Յուսուֆ ամիրան պարտադրել են վճարել պահանջվող հարկը։ Ինչպես վկայում է Հովհաննես կաթողիկոսը, էջ 204—205՝ «Իսկ Սմբատ վասն զի բռնազբոսությամբ զդեմ չ'կարէր ունել», վճռում է տալ մի տարվա հարկը։

«Եւ ապա ընդ բոլոր աշխարհս տէրութեան իւրոյ հինգեբորդել հրամայէ զամենայն երամակս ձիոց և զանդեայս արջառոց և զհօտս ոչխարաց և տալ ի զրադատ տուգանս սակին...։ «Եվ զայս ապա արարեալ զվճար՝ առնոյր այնմ ամի

ակ... Իսկ այսրքիկ ապա յաշս նախարարացն արքայի յաւէտ իմն ծանր համարեալ թուէր»։

Այնուհետև զծգոհ նախարարները գժտվում են Սմբատի հետ և Յուսուֆը գրավելով իր կողմը Գագիկ Արծրունուն, որը 908 թվին Յուսուֆից ստացել էր արքայական թագ և արքունական պատիվներ, ավերածության է մատնում Բագրատունյաց Հայաստանը, իսկ Սմբատ թագավորին Երնջակի ամրոցի պաշարման ժամանակ ենթարկում է տանջանքների և խաչում [914 թվին]։

Այս ծանր ու ավերիչ իրադարձություններից հետո Բագրատունյաց Հայաստանում ստեղծվել էր լիակատար անիշխանություն։ Ինչպես ասում է Չամչյանը՝ էջ 762 «Զայս ամենայն տեսեալ ռամիկ ժողովրդոց և ծառայից և գեղջկաց՝ նոքա ևս զրեթէ առհասարակ ապստամբեցան ի տեարց իւրեանց. և յարուցեալ ի վերայ նոցա՝ հարին զբազումս ի նոցանէ և ինքեանք տիրեցին փոխանակ նոցա»։

Այս ժողովրդական ապստամբության մասին Հովհաննես կաթողիկոսը տալիս է հետևյալ վկայությունը՝ էջ 258—261.

«Վասնզի նուազունքն քան զմեծամեծսն ձեռներեց լինել ջանային, և ծառայքն ըստ Սողոմոնի հնարէին, զի զտեարս տրեխաւորեալ՝ ի գետնի գնացուսցեն և ինքեանք ելցեն յերիվարս աճեպարանոցս և առաթուր հարողս՝ խրոխտացեալք և սնքացեալք մեծաւ ապստամբութեամբ։ Իսկ թագաւորք մեր և պետք և իշխանք, զորս ի բնէ նախարարութիւնք էին՝ ջանային վարատել և խլել յիւրաքանչիւրոցն բնակութեանց, և ըստ ախորժից իմն ձեռական և նոր ստեղծանել պայազատս և սպասալարս...։

«Եւ այսպէս ի յիշատակութենէ թշնամեաց և յանարգիւն անպտղութեանց՝ ապա և սովն ևս ի վերայ սաստկացեալ զօրանայր ուժգնապէս։ Վասն զի հուրն կայծակնացայտ որ տեղեացն ի մեզ, և սուրն անողորմ պատերազմացն որ միշտ ի մեզ բղխէր զհոտ մահու՝ մինչև յեօթն ամ ձգեալ ընդերկարեցաւ. և վասն այնորիկ մնացեալքս պանդխտեցաք ի վրանս Կեդարու. և թափրացաք և ունայնացաք ի ստացուածոց և ի բոլոր պարենի ռոճկաց և ի չգոյէ կերակրոց»։

Այդ սոսկալի սովի, աղետալի ու խռովահույզ շրջանում Բագրատունյաց թագավորության գահն է բարձրանում Սմբատի որդին՝ Աշոտ Երկաթը [913/14—928/29]։ Բռնկում են պարտիզանական կռիվներ ընդդեմ Յուսուֆի զորախմբերի։

Բագրեւանդում, Շիրակում, Գուգարքում, Տփխիսում, Աղստեւում, Արշարունիքում անողոք ջարդ են տալիս արաբական զորքերին։

«զԳլխաւոր երէցս նոցա ձերբակալ արարեալ՝ հրամայէր տիկ ձեւացուցանել և կախել զպարսպաց ամրոցացն առ ի տեսիլ և յահաբեկութիւն բազմաց»։

Կռիվներ են տեղի ունենում նաև Արծրունյաց և Սյունյաց շրջանում ընդդեմ Յուսուֆի զորքերի։

Աշոտը գնում է Բյուզանդիա Կոստանդին VII կայսեր [912—959] մոտ. թագ է ստանում կայսրից և վերադառնում է բյուզանդական զորքերով [921 թվին]։ Այնուհետև Յուսուֆը աշխատում է հրահրել երկպառակությունը և խռովությունները նախարարական Հայաստանում։ Նա թագավոր է կարգում Սմբատ Ա-ի եղբորորդի Աշոտ սպարապետին [Դվինում]։ Տեղի են ունենում ներքին խռովություններ. սակայն Աշոտ սպարապետը հաշտվում է Աշոտ Երկաթի հետ։ Աշոտ Երկաթը բարեկամություն է հաստատում նաև խալիֆայության հետ և ստանում է շահնշահի կոչում՝ «Ըստ որում վերնագոյն էր նա քան զայլ արքայս Հայոց, քան զԳագիկ, քան զմիւս Աշոտ, քան զթագաւորս Վրաց և Ափխազաց, Աղուանից և Եգերացւոց»։

Յուսուֆը, որ ապստամբության պատճառով 919 թվին խալիֆայության կողմից ձերբակալված և բանտարկված է եղել, ազատվելով բանտից նորից տիրում է Ատրպատականին և զորքեր է ուղարկում Հայաստան, սակայն նրա ուղարկած զորքերը պարտվում են և Աշոտ Երկաթի թագավորության վերջին տարիներում Հայաստանը խաղաղվում է։

Բագրատունյաց առաջին թագավորների ջանքերը Հայաստանը միացնելու իրանց իշխանության տակ, ոչ միայն հաջողություն չեն ունենում, այլ պատճառ են դառնում աղետների, երկպառակության և թշնամությունների։

Աշոտ Երկաթի հաջորդները հրաժարվեցին նախորդների այդ քաղաքականությունից, բավականացան տոհմական իրանց երկրներով և աշխատեցին տարածել երկրի իշխանությունների վրա իրենց բարոյական հեղինակությունը։

Խալիֆայության քայքայումը, որ սկսվել էր IX դարում, հետզհետե ավելի ևս մեծ չափեր է ստանում։ Խալիֆայության զանազան շրջաններում ստեղծվում են անկախ ամիրայություններ։

935 թվին տեղի էր ունեցել Ասորիքի և Եգիպտոսի վերջնական անջատումը խալիֆայությունից։ Արաբական Հայաստանի ոստիկանները և Պարսից, Միջագետքի, Փոքր Ասիայի, Դվինի, Մանազկերտի ու Խլաթի կուսակալները դառել էին ինքնագլուխ վարիչներ։

Մյուս կողմից զգալի չափով զորեղացել էր Բյուզանդիան, և Հովհաննես Կուրկուաս բյուզանդական հայ զորավարը հաղթական կռիվներ էր մղում խալիֆայության երկրամասերում։ 934 թվից սկսած՝ Շիմշատը, Մալաթիան և Արևմտյան Հայաստանը վերջնականապես մտել էին Բյուզանդական կայսրության գերիշխանության տակ։

Հայաստանի նախարարական գլխավոր տոհմերը ևս դառել էին ինքնագլուխ՝

1. Արծրունյաց թագավորությունը, որի ինքնիշխան տերն էր Գագիկ Թագավորը [904—908—937], և որը թագ էր ստացել Յուսուֆից 908 թվին։ Նրա գերիշխանության տակն էին գտնվում Վասպուրականի մյուս իշխանությունները։ Կենտրոնը եղել է Ոստանը։ Գագիկին հաջորդել է Աշոտ Դերենիկը [937—953], որի մահվանից հետո՝ նրա որդիները իրարից բաժանվել և կազմել էին երեք նոր թագավորություն՝ Վասպուրականի, Անձևացյաց և Ռշտունիքի։

2. Աղվանից թագավորությունը.

3. Սյունյաց թագավորությունը.

4 և 5. Ավելի ուշ նաև Կարսի և Կյուրիկյան թագավորությունները։

Բագրատունյաց Հայաստանում Աշոտ Երկաթին հաջորդեց նրա եղբայրը՝ Աբասը [928/29—953]։ Ինչպես վկայում է Ասողիկը [էջ 171]՝ Աբասը եղել է—«խաղաղութեան և շինութեան պատճառ». «յաղթող շուրջանակի»։ Կարսը, որի ռազմական դիրքը խիստ հարմար էր պաշտպանության տեսակետից, իբրև կենտրոն, Աբասը ավելի ևս ամրացնում է, կառուցում է մի գեղեցիկ եկեղեցի և ուրիշ շինություններ։

Միևնույն ժամանակ Աբասը սիրով ու խոնարհությամբ էր վերաբերվում դեպի Ներսը վերակացուն, որ նստում էր Դվինում։

Ինչպես վկայում է Ասողիկը [էջ 196] —«Երարձ նա յաշխարհէն յիւրմէ զաւազակութիւն և զմարդասպանութիւն»։

Աբասին հաջորդեց նրա որդին՝ Աշոտ III-ը, կամ, ինչպես նրան կոչում էին՝ Աշոտ Ողորմածը [953—977]։

> Ասողիկ III, Ը, էջ 180—«Եւ զկնի Աբասայ թագաւորեաց Աշոտ որդի նորա, որ և շահնշահ կոչյուր ամս ԻԵ»։ «Այս Աշոտ խաղաղասէր բարուք կալեալ աշխարհս Հայոց խոնարհութեամբ և ողորմածութեամբ»։

Նա թագավոր է օծվել Անիում 961 թվին և կենտրոնը Կարսից տեղափոխել է Անի. իսկ նրա փոխարեն Կարսում գահ է բարձրանում նրա եղբայրը՝ Մուշեղը [962 թ.]։

Աշոտ Ողորմածը եղել է ժողովրդին մոտիկ։ Նա հավաքում էր իր շուրջը հիվանդներին և կարոտյալներին, խնամում էր և նրանց հետ միասին ճաշում։ Եղել է առատաձեռն՝ «Մինչև ի մահուն ոչ լինել դրամ մի ի գանձատան նորա»։ Իր թագավորության առաջին տարիներում նա կռիվներ է ունեցել թշնամիների հետ և ահաբեկել է նրանց։

Աշոտ III-ի ժամանակ՝ 964—969 թվերին տեղի են ունեցել կռիվներ Բյուզանդական կայսրության և խալիֆատի միջև։ Այդ ընդհարումների մասին Ասողիկը տալիս է հետևյալ վկայությունները՝

Ասողիկ, III, Ը, էջ 183—«Սա [Նիկեփոռ կայսրը] քաջապէս յաղթեաց Իսմայելական զօրուն, յոլով քաղաքս հանեալ ի նոցանէ՝ զՄսիս ի ՆԺԳ, զՏարոն ի ՆԺԴ թուականին»։

Ասողիկ, III, Ը, էջ 183—«Վարդ եղբօրորդի Նիկեփոռա զօրու ծանու գայ յԱպահունիս, պաշարէ զՄանազկերտ քաղաք. և առեալ զնա ի հիմանց բրեալ խրամատեաց զպարիսպ նորա [968]։ Եվ ապա ի ՆԺԸ թուականին առնու զԱնտիոք մեծ քաղաք Ասորւոց» [969]։

Հետզհետե Բյուզանդական կայսրությանը հնազանդում են և հարկ են վճարում՝

ա. ազգն Տաճկաց ըստ հարաւոյ, բ. Սարմատացւոց ըստ հյուսիսոյ. գ. Վրաց ըստ արևելից։

967—969 թվերին, Տարոնի իշխան Աշոտ պատրիկի մահվանից հետո բյուզանդացիները գրավել էին Տարոնը. իսկ 973 թվին գրավել էին նաև Մծբինը։

974 թվին ինքը Հովհաննես Չմշկիկ կայսրը [969—976] նվաճել է Ամիդը և Ցարկինը և հարկատու է դարձրել ամիրաներին. հարկատու է դարձրել նաև Ասորիքը մինչև Երուսաղեմ։

Հիշված քաղաքական իրադարձությունների ժամանակաշրջանում հայերը մնում էին չեզոք և չէին մասնակցում կռիվներին։ Երկրի խաղաղ պայմաններում Հայաստանը շինվում էր և անտեսապես բարգավաճում։

Աշոտ Ողորմածի մահվանից հետո հաջորդում է նրա որդին՝ Սմբատ Բ-ը [977—989]։ Սմբատ Բ-ի օրով խաղաղությունը և երկրի շինարար գործունեությունը շարունակվում է։

Ասողիկ, գլ. ԺԱ, էջ 187 —«Պարսպափակ առնէ զպարիսպն Անւոյ, յԱխուրյան գետոյ մինչև ցձորն Ծաղկոցաց, կրով և վիմով մածուցեալ, մահարձանօք և աշտարակօք բարգանց, բարձրաբերձ պարսպեալ բացագոյն քան զհին պա-

րիսպն յընդարձակութիւն քաղաքին, և մայրագերան դրամբք՝ երկաթագամ հաստահեղոյս բևեռապինդ ամրացուցեալ»։

Սմբատ Բ-ի կրտսեր եղբայրը՝ Գուրգենը, համատարիմ լինելով նրան՝ ժառանգում է նրա հրամանով 982 թվին Տաշիրը, Տավուշը, Կայանը և մերձակա շրջանները, ու հիմք է դնում Կորիկյան թագավորությանը։ Այսպիսով առաջանում են Բագրատունյաց երեք թագավորություն՝ Անիի, Կարսի և Կորիկյան թագավորությունները։

988 թվին Տայքում իշխանության գլուխ է անցնում վրաց Դավիթ Կյուրոպաղատը, որը Բյուզանդիայի Բարսեղ Բ կայսեր ժամանակ դառնում է թագավոր [988—1001 թ.]։ Ինչպես վկայում է Ասողիկը, էջ 275՝

«Եղև նա պատճառ խաղաղութեան և շինութեան ամենայն արևելեայց, մանաւանդ Հայոց և Վրաց, զի զգոռ պատերազմաց յամենայն կողմանց դադարեցոյց նա, յաղթող եղեալ ամենայն շուրջանակի ազգաց և ամենայն թագաւորք կամաւ հնազանդեցան նմա»։

Բյուզանդական Բարսեղ Բ կայսեր ժամանակ հայերը մեծ դեր են խաղացել Բյուզանդիայի՝ բուլղարների դեմ մղած երկարատև կռիվներում։ Ինչպես վկայում է

Ասողիկը, էջ 201—Վասիլ [987 թ.] «Կամեցաւ յազգէն Հայոց, որ ընդ իւրով թագաւորութեամբն՝ անցուցանել ի Մակեդոնիա ընդդեմ բուլղարացն, զի շինեսցեն զերկիրն։ Որ և տարեալ բնակեցոյց զյոլովս յաշխարհն այն»։

Ինչպես պատմիչների վկայություններից երևում է, Բարսեղ Բ-ի կռիվների ժամանակ «հետևազունդ»-ի զինվորները եղել են հայերը։

987—989 թվերին Բյուզանդիայում տեղի են ունենում քաղաքացիական կռիվներ, որի ժամանակ նորից հանդես են գալիս մահմեդական ամիրաները։ Ատրպատականի Աբլհաճ ամիրան գալիս է Դվին և պահանջում է անցեալ տարիների հարկերը՝ «զոր ընդ։էմ յուղարկեալ զհարկսն թագաւորն Սմբատ մեծամեծ ընչիւք դարձոյց»։

Սմբատ Բ-ի մահվանից հետո Անիի Բագրատունյաց գահը ժառանգում է նրա եղբայրը՝ Գագիկ Բագրատունին [989—1020]—«ի նոյն աւուր թագաւոր, շահնշահ»։

Ըստ Ասողիկի վկայության, էջ 256 — Գագիկը եղել է «սրամիտ, վարժ ի պատերազմի և առատաձեռն ի բաշխելն».

«զԲաժ հարկաց յոլովից տեղեաց ազատեաց.
«տիրեաց յոլով բերդից և գաւառաց ի սահմանաց Վայոց ձորոյ, Խաչենոյ և Փառեսոսոյ՝ առավել քան զեղբայր իւր.
«ոչ ոք էր որ զարհուրեցուցանէր զՀայաստանեայսս»։

Գագիկ Թագավորի օրով զգալի կերպով ուժեղացել էր նրա եղբոր Գուրգենի որդի Դավիթը՝ «ունի զկողմանս Տաշրայ և Վրաց դաշտի», որի կենտրոնը եղել է մեծ քաղաքանիստ «Շամշուլտե» գյուղակը։ Նա նվաճում է Դմանիսը.

«Հնազանդեցուցանէ զամիրայն Տփխեաց քաղաքաւն իւրով»։

Այնուհետև նա կռվում և հաղթում է Գանձակի Փատլուն ամիրային։ 1000 թվին Բարսեղ Բ-ը Տայքի կողմերը գալու ժամանակ նրա մոտ են գալիս Աբխազաց և Վրաց թագավորները, գալիս են նաև Կարսի թագավոր Բագրատունի Աբասը և Վասպուրականի Սենեքերիմ թագավորը իր եղբոր Գուրգենի հետ՝ նրա օժանդակությունը ձեռք բերելու նպատակով, և ինչպես վկայում է Ասողիկը, էջ 277—«պատուեաց զնոսա արքունատուր պատուով և... դարձոյց զնոսա յիւրաքանչիւր տեղիս»։

Բարսեղ Բ-ն Վաղարշակերտի մոտ սպասում է Գագիկին, բայց նա, ինչպես ասում է Ասողիկը, էջ 278—

«Իբրև փոքրութիւն համարեալ զգնալն իւր առ նա, իսկ քուերորդին Գագկայ Ապուսահլ չարախօս եղև ի նմանէ առ Վասիլ։ Վասն որոյ Գագիկ հրաման տուեալ որդւոյ իւրոյ Յովհաննիսի և յաւարի էառ զգաւառն Ապուսահլի զԿոգոյովիտն և Ծաղկոյոտն»։

Գագիկին անհնազանդ է գտնվել նաև իր եղբորորդի Դավիթը, որի դեմ նա կռվում է և հետո հաշտվում են։

1020 թվին մեռնում է Անիի Գագիկ թագավորը, և նրա որդիների՝ Աշոտի ու Հովհաննես-Սմբատի մեջ տեղի են ունենում ներքին արյունահեղ երկպառակություններ, որ համընկնում էին Բյուզանդական կայսրության կողմից տարվող քաղաքական նպատակներին[1]։

Բարսեղ Բ կայսրը Արևելքում շարունակում էր իր աշխարհակալ գործունեությունը։ Նա գնում է «ի քաղաքն Ուխտեաց».— Տայոց բերդերն ու ամրոցները գրավում է. պաշտոնյաներ է նշանակում. Տայոց ազատներին տանում է իր հետ և բնակեցնում Բյուզանդական կայսրության այլ վայրերում։

Բարսեղ երկրորդի ժամանակ Բյուզանդական կայսրությունը խիստ ուժեղացել էր և իր ուշադրությունը կենտրոնացրել էր իր արևելյան սահմանների վրա։ Կայսրության քաղաքականությունը իր արևմտյան և արևելյան սահմանակից շրջաններում եղել է.

1 Այդ և հետագա պատմական իրադարձությունների նկարագրությունը տրված է ակադ. Մանանդյանի «Քննական պատմության» Գ հատորի առաջին գլխում։

*1. Պետության կենտրոնացումը և սահմանակից մանր թագավորությունների նվաճումը.*

*2. Կռիվ խոշոր կալվածատիրության դեմ.*

*3. Կրոնական և ազգային միաձուլում՝ բռնի գաղթեցման և մայրենի երկրից կտրելու միջոցով։*

*Այդ քաղաքականությունը Բյուզանդիան համառությամբ վարել է՝ ինչպես բուլղարների և սլավոնների վերաբերմամբ, որոնց հետ մոտ 40 տարի [981—1018 թ.] կռիվներ է ունեցել, մինչև որ հաջողվել է նրանց ընկճել։*

*Նույն քաղաքականությունը Բյուզանդիան կիրառել է նաև նախարարական Հայաստանի վերաբերմամբ։*

---

# ՀԱՄԱՌՈՏ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ[1]

**Մարզպանության հաստատումից Հայաստանում մինչև Բագրատունյաց թագավորության անկումը**

*4-րդ դարի վերջը և 5-րդ դարի երկրորդ կեսը հանդիսանում են Հայաստանի պատմության մեջ ապստամբությունների ու համառ պայքարի հերոսական շրջան ընդդեմ Սասանյան Պարսկաստանի։ Այդ պայքարը կրում էր ոչ միայն կրոնական, այլև սոցիալական և, գլխավորապես, ժողովրդա-ազատագրական բնույթ։*

*Հին հայկական աղբյուրների հաղորդումներից երևում է, որ Հազկերտ 2-ի (438—457 թ.) ժամանակ Սասանյան Պարսկաստանը փորձեր էր անում մտցնել և տարածել Արևելյան Հայաստանում և ամբողջ Անդրկովկասում պետական-մազդեական կրոնը և միաժամանակ ձգտում էր ոչնչացնել այդտեղ արմատավորված նախարարական կարգերը, որոնք ապահովում էին երկրի ինքնուրույնությունը, և իջեցնել նախարարական Հայաստանը մյուս իրանական գավառների աստիճանին։ Նա միաժամանակ ուժեղացրեց ժողովրդական մասսաների շահագործումը, ավելացնելով երկրից գանձվող պետական հարկերը։ Պարսկական կառավարությունը այդ անում էր, ինչպես հաղորդում է Եղիշե պատմագիրը այն նպատակով, որպեսզի հասցնի գյուղացի շինականներին լիակատար աղքատության և ստիպե նրանց ընդունել մոգերի կրոնը։*

*Ինչպես հաղորդում են պատմագիրները՝ Ղազար Փարպեցին և Եղիշեն, 450 թվին ամբողջ Արևելյան Հայաստանում բռնկվեց ժողովրդական ապստամբություն, Վարդան Մամիկոնյանի գլխավո-*

---

[1] *Տես՝* Краткий обзор истории древней Армении Ак. Наук СССР. М. Л.— 1943 г.

րությամբ։ Սակայն, հայկական աշխարհազորը, որ բաղկացած էր գերազանցորեն հասարակ մարդկանցից և համարձակություն էր ունեցել դուրս գալ ընդդեմ ահեղ պարսկական ոհմակների, մի քանի մարտերից հետո, որոնք վերջացան պարսիկների հաղթանակով, ջարդվեց Ավարայրի դաշտում (451 թվին), որը գտնվում է այժմյան Մակուից ոչ հեռու։ Այդ կռվում հերոսաբար ընկան Վարդան Մամիկոնյանը և նրա քաջարի զինակիցները։

450—451 թվերի ապստամբությունը ճնշելուց հետո, Սասանյան Պարսկաստանը հասավ իր նպատակին։ Նախարարական Հայաստանը զրկվեց իր ներքին ինքնուրույնությունից և հավասարեցվեց մյուս պարսկական մարզպանություններին, և այնտեղ իշխանություն ու նշանակություն ստացան այն նախարարները, որոնք հրաժարվեցին քրիստոնեությունից։

Ավելի քան երեսուն տարի շարունակվեց Արևելյան Հայաստանում պարսկական կառավարության գործակիցների և դրածոների իշխանությունը, որոնք ընդունել էին մազդեականությունը։

Ավերված և սարկացած Հայաստանը սպասում էր մի հարմար ժամանակի, որպեսզի դուրս գա ընդդեմ բռնակալների, որոնք խեղդել էին նրա կուլտուրական ինքնուրույնությունը։ Հերոս մարտիկների օրինակը, որոնք ընկել էին 451 թվին անհավասար կռվում, ոգեշնչում էր ժողովրդական մասսաներին։ Եվ 481 թվին Արևելյան Հայաստանում բռնկվեց նոր ապստամբություն ընդդեմ պարսիկների, դաշնակցությամբ Վրաստանի և Աղվանքի։

Այս անգամ ապստամբության գլուխը կանգնած էր 451 թվին նահատակված Վարդան Մամիկոնյանի եղբորորդին՝ Վահան Մամիկոնյանը։ Ապստամբության չորրորդ տարվա վերջին, 484 թվին, հեփթաղների երկրում իր կրած սարսափելի պարտությունից հետո, Պարսկաստանը ստիպված էր ապստամբների հետ բանակցության մեջ մտնել և կնքել խաղաղության համաձայնություն Վահան Մամիկոնյանի առաջադրած պայմաններով։

Այդ համաձայնության հիման վրա վերականգնված են եղել նախարարական Հայաստանի նախկին իրավունքները և արտոնությունները և պահպանվել է հայկական քրիստոնեական եկեղեցու ազատությունը ու երկրի կուլտուրական ինքնուրույնությունը։

Ուշագրավ է, որ հայ ժողովրդի մեծ պայքարի դարաշրջանը, որ սկսվել էր 4-րդ դարի վերջում և ավարտվել էր 5-րդ դարի վերջում, եղել է, այսպես կոչված, հայկական գրականության ոսկեդարը։

Հայերեն գրականության առաջացման ու զարգացման այս վաղ շրջանում թարգմանվել են հայերեն լեզվով սարբերենից և, գերա-

ղանցորեն հունարենից, բացի աստվածաշնչից և եկեղեցական գրքերից, քրիստոնեական գրականության հարյուրավոր այլ երկեր։ Այդ թարգմանություններից շատերի մեջ լեզվի գեղեցկությունը և նրբությունը զուգակցված են բացարձակ ճշտության հետ։

Այդ դարաշրջանի թարգմանություններից մեր ձեռքը հասել են մի քանի թանկարժեք եկեղեցա-պատմական և պատմական երկեր՝ Եվսեբիոս Կեսարացու ժամանակագրությունը, Արիստիդես Աթենացու երկը և ուրիշները, որոնց բնագրերը չեն պահպանվել։ Նույն ժամանակը գրված են եղել պատմական և գիտական ինքնուրույն երկեր՝ Կորյունի, Ագաթանգեղոսի, Փավստոս Բուզանդացու, Եղնիկ Կողբացու և ուրիշների, որոնք թարգմանվել են եվրոպական լեզուներով։

5-րդ դարի վերջում հին-հայկական գրականության մեջ սկիզբ առավ և զարգացավ, այսպես կոչված, հունաբան դպրոցը։ Հանդես եկավ ընդարձակ թարգմանական գրականություն հունարենից, որը ընդգրկում էր հին աշխարհի գիտության բոլոր ճյուղերը՝ քերականությունը, աստղաբաշխությունը, ճարտասանությունը, փիլիսոփայությունը և այլն։ Հայերեն թարգմանական գրականության մեջ պահպանվել են հնադարյան գրողների մի շարք երկեր, որոնց բնագրերը կորել են։

Այդ բազմակողմանի թարգմանական գրականությունը հնարավորություն տվեց հայերի հետագա սերունդներին ձեռք բերել գիտական տեղեկություններ մայրենի լեզվով։ Հունական գիտության ու գրականության երկերը զարթեցնում էին մարդկանց միտքը, լայնացնում էին նրանց մտավոր հորիզոնը և մղում էին դեպի ինքնուրույն աշխատանք։ Հետագա դարերում նրանք առաջ բերին Հայաստանում հարուստ մեկնաբանական գրականություն՝ փիլիսոփաների, քերականագետների և հունաբան հայ գրողների։

Հայ ժողովրդի ընդհատվող ստեղծագործական կարողությունը, հատկապես, լրիվ չափով արտահայտվել է պատմության գծով։ Հայերի ընդարձակ պատմական գրականությունը, Արևելքի բոլոր պատմական գրականություններից ամենից հարուստը, ծառայում է իբրև արժեքավոր աղբյուր՝ ոչ միայն Հայաստանի պատմությունը ուսումնասիրելու համար, այլև Պարսկաստանի, Բյուզանդիայի, Վրաստանի, Ադրբեջանի և Մերձավոր Արևելքի համարյա բոլոր ժողովուրդների։

Պահպանված բազմաթիվ թարգմանական և ինքնուրույն գրվածքները, որոնք վերաբերում են աստղաբաշխության, մաթեմա-

տիկայի, բժշկության և գիտության այլ ճյուղերին, մինչև այժմ քիչ են ուսումնասիրված և, մեծ մասամբ, հրատարակված չեն։

Հայերի գրական ժառանգությունը, անշուշտ, հանդիսանում է իբրև արժեքավոր ներդրում համամարդկային կուլտուրայի մեջ։

Հայերի հելլենիստական տրամադրությունների և բյուզանդական կողմնորոշմանը ծանր հարված հասցրեց 4-րդ դարի առաջին կիսում հենց ինքը Բյուզանդիան, որը Յուստինիանոս կայսեր ժամանակ (527—565 թ.) խիստ փոխեց իր քաղաքականությունը հայկական արևմտյան երկրամասերի վերաբերմամբ։ 384—387 թթ. Հայաստանի բաժանումից հետո, կայսրությանը միացված սատրապությունները և Ներքին Հայաստանը, իրենց ներքին կազմակերպչական խնդիրների կարգավորման վերաբերմամբ, համարյա մեկ և կես դարի ընթացքում եղել են ինքնավար։ Կայսրությունը, պահելով նրանց նախարարական կարգերը, պարտադրել էր նրանց ցույց տալ զինվորական օգնություն պարսիկների դեմ։

Այդ դրության մեջ էին մնում հիշված մարզերը մինչև Յուստինիանոսի թագավորելը, որն առաջին անգամը սկսեց վարել ագրեսիվ միաձուլման քաղաքականություն, նպատակ դնելով ոչնչացնել նախարարական կարգերը և ներքին ինքնուրույնությունը։

529, 535 և 536 թվերին Յուստինիանոսի հրատարակած մի շարք դեկրետներով Բյուզանդական Հայաստանը ենթարկվեց վերակազմության և վերածվեց սովորական պրովինցիայի հռոմեական օրենքներով և ենթարկվեց ծանր հարկատվության։

Երկրի հասարակական-քաղաքական ինքնուրույն կազմակերպության բեկումը և ծանր հարկային ճնշումը այստեղ ևս առաջ բերին, ինչպես այդ տեղի էր ունեցել Արևելյան Պարսկական Հայաստանում—450/451 և 481—484 թվերին, ընդհանուր վրդովմունք, որը վերածվեց բացարձակ ապստամբության։

Պրոկոպիոս պատմագրի հաղորդագրություններից երևում է, որ ապստամբները սպանել էին Ներքին Հայաստանի վարիչ Ակակիոսին։ Հայտնի է նաև, որ հայ Արշակունիները՝ Արշակը և Արտավանը, մայրաքաղաքում կազմակերպել էին իրեն՝ Յուստինիանոս կայսեր դեմ դավադրություն։

Յուստինիանոսի ռեֆորմների միջոցով Բյուզանդական Հայաստանում ոչնչացված է եղել ֆեոդալական-նախարարական կենցաղը և արգելք է դրվել նրա կուլտուրական ինքնուրույն զարգացմանը։ Եթե Բյուզանդական Հայաստանի հայերը, չնայելով իրենց ներքին ինքնուրույնության վերացմանը, չէին ենթարկվել լիակատար ռոմանիզացիայի, և նրանց կուլտուրան կայսերական կարգերի հորձանքի

մեջ մշտապես չէր մարել, այդ բացատրվում է, անշուշտ, նրանով, որ նրանք ունեին մայրենի լեզվով գրականություն և դպրոցներ։

Հայ ժողովրդի միաձուլման (ասիմիլյացիայի) քաղաքականությունը, ինչպես տեսնում ենք, հաջողություն չէր ունեցել ոչ միայն 5-րդ, այլև 6-րդ դարում։

Հունա-հռոմեական Արևմուտքի կռիվները իրանական Արևելքի հետ, որ սկսվել էին առաջին դարում մեր թվականությունից առաջ, շարունակվել էին ընդհատումներով համարյա յոթը հարյուր տարի։ Այդ կռիվները հաճախակի դառան և ընդունեցին կատաղի բնույթ 6-րդ դարում և 7-րդ դարի սկզբում։ Այդ կռիվները այնքան հյուծել էին երկու կողմերին, որ ո՛չ Բյուզանդիան և ո՛չ Պարսկաստանը չկարողացան ընդդիմանալ նոր համաշխարհային ուժի՝ իսլամի ու արաբական խալիֆայության գրոհին։

Հայաստանի վրա, որ գտնվում էր այդ իրադարձությունների հանգույցում, այդ կռիվների ընթացքում թափվում էին ամենածանր հարվածները։ Կռվող պետությունների զորքերը, որոնք մտնում էին նրա սահմանները, թողնում էին սոսկալի հետքեր։ Յոթը դարի ընթացքում Հայաստանը պարբերաբար թալանում, այրում և ավերում էին, բնակիչներին գերում, սպանում ու բռնանում։ Այդ արշավանքներից հետո Հայաստանի քաղաքները հաճախ դառնում էին ավերակների կույտ, ամբողջ գավառներ քանդում և ավերում էին ու ամեն անգամ բնակչությունը համառ աշխատանքովստիպված էր լինում շինել ու նորից վերականգնել քանդված բնակելի վայրերը։

Այդ պարբերաբար կրկնվող աղետները չափազանց ծանր էին անդրադառնում հին Հայաստանի վրա։ Նրանք արգելք էին հանդիսանում երկրի բարեկեցությանը և առաջացնում էին կյանքի տևական լճացում, իսկ երբեմն, բացառիկ ցնցումներից հետո, երկրի տնտեսական զարգացումը վերականգնում էր ավելի ցածր հիմքերի վրա։ Հասնելով տնտեսական հարաբերությունների համեմատաբար բարձր մակարդակի և իր քաղաքային առևտրական կենտրոնների զգալի զարգացման, Հայաստանի տնտեսական կյանքը հաճախ ետ էր շպրտվում, ըստ որում այնտեղ գերակշռող նշանակություն էին ստանում բնական տնտեսության հիմքերը։

7-րդ դարի առաջին կիսում Սասանյան Պարսկաստանը ջախջախվել էր արաբների կողմից և դադարել էր գոյություն ունենալ, իսկ Բյուզանդական կայսրությունը ետ էր մղվել դեպի Փոքր Ասիայի խորքերը։

Հայաստանը դեռևս չէր կարողացել կազդուրվել նախընթաց երկարատև Բյուզանդական-Սասանյան հյուծող կռիվների հետե-

վանքներից, և սկսած 640 թվականից կրեց արաբական արշավանքների բոլոր սարսափները և աղետները։ Արաբների ավերիչ ասպատակությունները (640, 642—643 և 650 թվերին), որոնք զուգակցվում էին թալանով, ավերումներով և բնակչության գերեվարությամբ, պարբերաբար կրկնվում էին Միջագետքի կողմից և Հարավարևելքից՝ Ադրբեջանի կողմից։ Ստեղծված պայմանների հետևանքով, Հայաստանը ճանաչեց արաբական խալիֆայության իշխանությունը՝ ներքին ինքնավարության և ֆեոդալական-նախարարական կազմակերպության պահպանման որոշ պայմաններով։

Այդ ժամանակվա Հայաստանի խոշոր պատմական դեմքերից էր Ռշտունյաց գավառի իշխան Թեոդորոսը, որն ամեն կերպ աշխատում էր համախմբել երկրի ուժերը արտաքին թշնամուց պաշտպանվելու համար։

Դեռևս Արարատյան դաշտը 640 թվին արաբների առաջին անգամը ներխուժելու ժամանակ, երբ արաբները վերադառնում էին իրենց քանդած ու ավերած Դվին քաղաքից ավարով ու գերիներով, գերիներին ազատելու համար Թեոդորոս Ռշտունին հարձակվեց նրանց վրա փոքրաթիվ զորքով։ Սակայն նա ստիպված էր ետ քաշվել թշնամու գերազանց ուժերի պատճառով։ Կարճ ժամանակից հետո, արաբների երկրորդ արշավանքի ժամանակ (642—643 թթ.), Թեոդորոս Ռշտունին, վրդովված լինելով Բյուզանդական զորավար Պրոկոպիոսի անգործությունից, իր ուժերով, առանց հունական զորքերի օգնության, դիմադրություն ցույց տվեց արաբներին, ջարդեց նրանց Կոգովիտ գավառում և ետ վերցրեց գերիներին ու ավարը։ Նմանապես նաև 650 թվին, երբ արաբները դեռ նոր էին սկսել իրենց վերցրած ամրոցում կոտորածը և թալանը, հայ ժողովրդի այդ քաջարի զավակը, որը դառել էր ժողովրդական-ազատագրական պայքարի առաջնորդը, մատնեց նրանց լիակատար պարտության և փրկեց բնակչությունը և գերիներին։

Վերջ ի վերջո, որպեսզի ազատե երկիրը, Թեոդորոս Ռշտունին, տեսնելով արաբների անխուսափելի հաղթանակը, համաձայնություն եկավ նրանց հետ։

Արաբական տիրապետությունը Հայաստանում հիմնավորվեց 7-րդ դարի հիսնական թվականների սկզբում և շարունակվեց մինչև Հայաստանում Բագրատունիների թագավորության հաստատումը (653 թվից մինչև 887—888 թվերը)։

Նոր աշխարհակալների իշխանության առաջին շրջանում, սկսած 653—750 թվականը, համարյա մի ամբողջ հարյուրամյակի ընթացքում Հայաստանը գտնվում էր Օմայան խալիֆաների իշխանության

տակ. իսկ 750—887 թ. այսինքն, մինչև Բագրատունիների թագավորության առաջացումը, Հայաստանը ենթարկվել էր Աբասյան տոհմի խալիֆաներին։ Արաբական տիրապետության առաջին շրջանում խալիֆայության կենտրոնը գտնվում էր Դամասկոսում և նոր կազմակերպված պետության մեջ գլխավոր դերը խաղում էին Սյուրիայի արաբները. իսկ երկրորդ շրջանում կենտրոն էր դառել Բաղդադը, որը հիմնվել էր 762 թվին, և խալիֆայության մեջ գլխավոր դերը խաղում էին Իրաքի արաբները ու մահմեդականություն ընդունած պարսկական ազնվականությունը։

Օմայանների ժամանակ, մանավանդ նրանց տիրապետության առաջին շրջանում, արաբական իշխանությունը Հայաստանում, ինչպես և նրանց կողմից բնակչության շահագործումը, իհարկե գլխավորապես ստորին խավերի, եղել են համեմատաբար տանելի։ Աշխարհակալների այդ զգույշ և մեղմ քաղաքականությունը բացատրվում է նրանով, որ Օմայանները հաշվի էին առնում Հայաստանի խոշոր ռազմական ու զինվորական նշանակությունը, պահելով նրա ներքին ինքնուրույնությունը ու նախկին նախարարական կարգերը, ցանկանում էին օգտագործել նրա զինվորական ուժը իրենց նոր սահմանները պաշտպանելու ընդդեմ Բյուզանդիայի և խազարների։

Սակայն արաբական տիրապետությունը, նույնիսկ այդ ժամանակաշրջանում, Հայաստանի համար եղել է կործանաբեր։ Բյուզանդիայի և խալիֆայության մեջ պարբերաբար կրկնվող կռիվների ժամանակ, Հայաստանը հաճախ փոխել է իր կողմնորոշումը և ենթարկվել է անխնա ավերածությունների՝ թե մեկի և թե մյուսի կողմից։ Եթե նա հավատարիմ էր մնում խալիֆայությանը, դաժան կերպով պատժում էին հույները, իսկ եթե անցնում էր Բյուզանդիայի կողմը, վրեժ էին առնում արաբները։

Հայաստանի հյուծմանը նպաստեց նաև հարկերի անչափ ավելացումը Հիշամ խալիֆի (724—743) և առաջին Աբասյանների ժամանակ (8-րդ դարի երկրորդ կիսում)։

724—725 թվերին, Հիշամի հրամանով, Հայաստանում կատարվեց ընդհանուր մարդահամար, ըստ որում հաշվի էին առնված մարդիկ, անասունները և հողերը։ Այդ հաշվառումից հետո վերացվում էին ֆեոդալական Հայաստանի նախկին արտոնությունները։ Հարկերը գանձվում էին ոչ թե տներից կամ ծուխերից, ինչպես առաջ, այլ մարդագլուխ, նաև ըստ հողերի տարածության և, հավանորեն, նաև ըստ հողային հանդամասերի (угодье) որակի։

Այդպիսով մտցվում էր անհատական հարկատվության նոր ձև։ Այդ ձևը շուտով դառավ ամբողջ երկրի համար խիստ աղետ և,

հատկապես, հարկատու ռամիկների, այսինքն՝ ճորտացած գյուղացիության և քաղաքի բնակչության ստորին խավերի համար։

Այդ այն ծանր արաբական հարկային լուծն էր, որը պատճառ դարավ խոշոր ժողովրդական ապստամբությունների բռնկմանը ընդդեմ խալիֆայության։

Աբբասյանների իշխանության հաստատումից հետո (8-րդ դարի կեսերին), Հայաստանի դրությունը դառավ անտանելի։ Նոր պետական ղեկավարությունը չափից դուրս ավելացրեց հարկային ծանրությունը և հարկատու բնակչության մեծագույն մասը ընկավ ծայրահեղ աղքատության մեջ։

Ղևոնդ պատմագրի հաղորդագրության համաձայն, խալիֆ Մանսուրի (754—775 թ.) ժամանակ, Հայաստանը, արծաթի ու այլ թանկագին մետաղների պակասության պատճառով, անկարող եղավ վճարել Աբբասյաններին դրամական տուրքերը։ Պարզ է, թե ինչպիսի կործանարար հետևանքներ պետք է ունենար այդ իրողությունը։ Ղևոնդի հաղորդագրությունից երևում է, որ բնակչությունը վաճառում էր իր գույքը չնչին գներով, և ոչ մի կերպ չէր կարողանում հավաքել պահանջվող գումարը՝ հարկերը վճարելու համար։ Միքայել Ասորու ժամանակագրության վկայությամբ, հյուսիսային Միջագետքում՝ «այնքան էր արծաթը պակասել, որ եզները և էշերը վաճառում էին ամեն մեկը մեկ դրամի (մոտավորապես 50 կոպ. ոսկով) և տալիս էին հարկահավաքներին իրենց երեխաներին՝ յուրաքանչյուրը 5 դրամի (2 ռ. 50 կ.)»։

Համատարած հալածանքների և բռնությունների նոր պայմաններում ալ-Մանսուր խալիֆան, բնականաբար, չէր կարող վստահել հայ նախարարներին, որոնք նրա ու նրա նախորդների ժամանակը զրկված են եղել իրենց նախկին արտոնություններից շատերից։ Ուստի 770 թվին Հայաստան էին ուղարկվել թուրքական զորքեր։

Այդ գազանաբարո և արյունարբու վարձկանները, որոնք ատիթ էին որոնում ավերածությունների ու թալանի համար, ծաղրում ու թալանում էին Հայաստանի բնակչության բոլոր խավերին։

Կարճ ժամանակից հետո արաբական տիրապետության դեմ բռնկվեց ապստամբություն (774 թվին), որը կրում էր համաժողովրդական ազատագրական շարժման բնույթ։ Ապստամբության ղեկավարներն էին սկզբում Արտավազդ և Մուշեղ Մամիկոնյանները։ Ապստամբները Շիրակում, Բագրևանդում և Տարոնում կոտորեցին հարկահավաքներին և արաբական զորամասերին։ Կարինից ու Դվինից Մուշեղի դեմ ուղարկված զորքերը մատնվեցին խոշոր պարտության։

Ոգևորված Մուշեղի հաջողություններով, նրան միացան նաև մյուս նախարարները իրենց զորքերով և ամենուրեք ընդգրկեց նաև ռամիկների լայն մասսաներին։

Ահաբեկված արաբները, որոնց համար Հայաստանում, բերև հենարան, ծառայում էին ամրացված քաղաքները, ստիպված էին թաքնվել և ամրանալ Դվինում, Կարինում և Արճեշում։ 775 թվի գարնանը Հայաստան, պաշարվածներին օգնության եկան խալիֆայական երեսուն հազարանոց ընտիր զորքեր և ապստամբությունը անողոք կերպով խեղդվեց։

Ղևոնդ պատմագրի հաղորդագրությամբ, ապստամբների մի մասը, որը պաշարել էր Կարինը և բաղկացած էր մեծ մասամբ հետևակ և թեթև զինված ռամիկներից, հնարավորություն ուներ խույս տալ թշնամու դեմ կռվելուց, որը վեց անգամ նրանցից շատ էր։ Բյուզանդիայի արևելյան սահմանները, ինչպես հայտնի է, գտնվում էին Կարինից ոչ հեռու։

«Սակայն ապստամբները,— ասում է Ղևոնդը,— որոշեցին, որ ավելի լավ է մեռնել, քան տեսնել իրենց երկրի կործանումը... և, թեև քանակով թշնամուց քիչ էին, նրանք կամովին գնացին ընդդեմ իրենց կյանքին սպառնացող վտանգին»։

774—775 թվի ապստամբությունը խեղդելուց հետո, 8-րդ դարի վերջին քառորդում Հայաստանի պատմությունը ներկայացնում է մի շրջան՝ անընդհատ կոտորածների, ծանր հարկահանությունների, ավազակային թալանի և ամեն տեսակի բռնությունների ու հալածանքի։

8-րդ դարում Հայաստանի կուլտուրական զարգացման մեջ նկատվում է մեծ անկում և նույնիսկ տնտեսական կյանքի հետադիմություն, որ բացատրվում է ոչ միայն վերև հիշված քաղաքական ցնցումներով, այլև Սև ծովի նավահանգիստների հետ միջազգային առևտրի ընդհատումով։

Չնայելով այն բարենպաստ պայմաններին, որ ստեղծվել էին արաբական աշխարհակալների կողմից՝ լայն համաշխարհային հարաբերությունների համար, Հայաստանը արաբական տիրապետության առաջին ժամանակաշրջանում կորցրեց միջազգային առևտրում իր ունեցած տեղը։

7—8-րդ դարերում խալիֆայության առևտուրը արտաքին աշխարհի հետ զարգանում էր ոչ թե Բյուզանդիայի հետ ունեցած սահմանային մարզերում, այլ գլխավորապես Չինաստանի, Հնդկաստանի, Իսպանիայի և հարավային Եվրոպայի մյուս մասերի հետ։

Հայաստանի վրայով Բյուզանդիայի հետ անմիջական առևտրա-

կան հարաբերություններ ունենալ համարյա հնարավոր չէր, շնորհիվ խալիֆայության և Բյուզանդիայի միջև տեղի ունեցող անընդհատ ու արյունահեղ կռիվների։ Պոնտական Տավրոսից մինչև Միջերկրական ծովը տարածվում էր լայն սահմանային գոտի, որտեղ երկու կողմերումն էլ գտնվում էին ամրոցներն ու զինվորական կայանները, որոնք դարերի ընթացքում վարում էին սահմանային կռիվներ։

Բնական է, որ այդ իրադրությունը բացասում էր լայն միջազգային առևտրի ամեն մի հնարավորություն։

Չնայելով արաբական տիրապետության ժամանակաշրջանում Հայաստանում ստեղծված ծանր դրությանը, գրական կյանքը չէր դադարում այնտեղ նաև 7-րդ և 8-րդ դարերում։

7-րդ դարի աչքի ընկնող գրվածք է Սեբեոսի «Պատմությունը», որն իր մեջ պարունակում է արժեքավոր տեղեկություններ բյուզանդական-պարսկական կռիվների մասին 6-րդ դարի վերջում և 7-րդ դարում, վերջին Սասանյանների մասին և արաբների առաջին աշխարհակալ արշավանքների մասին (մինչև 661 թիվը)։ Սեբեոսի պատմության շարունակող է եղել 8-րդ դարի պատմիչ Ղևոնդը, որը գրել է արաբական խալիֆաների պատմությունը մինչև 788 թիվը և, գլխավորապես, արաբների տիրապետության պատմությունը Հայաստանում։ Գրողների թվում բացառիկ խոշոր դեմք է 7-րդ դարի երկրորդ կեսի գիտնական-մաթեմատիկոս և տիեզերագետ Անանիա Շիրակացին։ Նրա անվան հետ են կապված բազմաթիվ երկեր մաթեմատիկական գիտություններից, որոնցից հասել են մեր ձեռքը մի փոքրիկ խնդրագիր, թվաբանական դասագրքից մի հատված, չափագիտական աշխատություն բյուզանդական-սասանյան դարաշրջանի կշիռների ու չափերի և մի քանի աշխատություններ ու թարգմանություններ տիեզերագիտական, օդերևութաբանական և ժամանակագրական բովանդակությամբ։ Նրան են վերագրում համաշխարհային խրոնիկայի թարգմանությունը, որի հեղինակը համարում են Իպպոլիտ Հռոմայեցուն։

8-րդ դարի վերջում քայքայման, դաղթականության և ավերման շրջանում, ֆեոդալական Հայաստանը գտնվում էր տանջալից հոգեվարքում և նրա վերջնական անկումը թվում էր անխուսափելի։ Հայկական նախարարությունները զրկված էին իրենց նախկին զինվորական ուժից, հետևաբար, նաև դիմադրական կարողությունից։ Նախարարական կալվածքները, որ անցել էին մասամբ մուսուլմանական ու արաբական ամիրաների ձեռքը, բնակեցվում էին արաբական ազգաբնակությամբ։ Երկրի տերերը, հատկապես, Հայաս-

տանի հարավային մարզերում դառել էին մուսուլմանական և արաբական իշխաններն ու ֆեոդալները։ Նախարարական Հայաստանը գտնվում էր կորստյան ծայրում։

Սակայն շուտով, արդեն 9-րդ դարի առաջին կիսում հանկարծ սկսեցին երևան գալ հայկական նախարարությունների վերածնման համար նոր նպաստավոր քաղաքական պայմաններ։

Նախարարական Հայաստանի նորից զորեղանալուն նպաստեցին խալիֆայության մեջ առաջացած խլրտումները և խռովությունները, որոնք 9-րդ դարից սկսած դառել էին համարյա անընդհատ։

Բագրատունիները, որոնք 774—775 թվերի ապստամբությունից հետո գնացել էին Հայաստանի արևմտյան լեռնային շրջանները և այնտեղ գտնվում էին Բյուզանդիայի հովանավորության տակ, լարված ուշադրությամբ հետևում էին քաղաքական իրադարձություններին, որոնք տեղի էին ունենում խալիֆայության սահմաններում։

793—794 թվերին Պարթավում և Փայտակարանում, ներկա Ադրբեջանի սահմաններում, բռնկվեց պարսկական աղանդավորների խոշոր ապստամբություն Աբու-Մուսլիմի առաջնորդությամբ։ Ապստամբները ոչ միայն կարողացան պարտության մատնել մի քանի անգամ իրենց դեմ ուղարկված արաբական ոստիկան-կառավարիչներին, այլև իրենք անցան հարձակման և մոտ 4 ամիս պաշարման մեջ պահեցին Դվին քաղաքը։ Նկարագրելով այդ դեպքերը Յակուբի պատմագիրը իր «պատմության» մեջ նշում է, որ այնուհետև ուժեղացավ Հայաստանի կարողությունը։

Հենց նույն ժամանակում վերսկսվեցին համառ և պարբերաբար կրկնվող խալիֆայության կռիվները Բյուզանդիայի և խազարների հետ։ Այդ պայմաններում, իհարկե, որոշ կշիռ և նշանակություն էին ստանում նույնիսկ թուլացած հայկական նախարարությունները։ Խալիֆայության համար կարող էին հատկապես վտանգավոր լինել Բագրատունիները և, ամենից առաջ, նրանք, որ ապաստարան էին գտել Բյուզանդիայի սահմանակից շրջաններում (Սպերում, Տայքում և Կղարջքում) և, որոնք բարեկամական հարաբերությունների մեջ էին մտել կայսրության հետ։ Ուստի և Հարուն-ալ-Ռաշիդ (785—809) խալիֆան ստիպված էր բարեկամական դիրք և զիջող քաղաքականություն վարել նրանց վերաբերմամբ։

Հենց Հարուն-ալ-Ռաշիդի ժամանակ հաջողվեց Աշոտ Մսակեր Բագրատունուն, Սմբատ սպարապետի որդուն, որի հայրը 774—775 թվերի ապստամբության ժամանակ զոհվել էր, մասամբ կաշառքով, մասամբ զենքի ուժով հաստատել իր իշխանությունը Հայաստանի հյուսիս-արևմտյան մարզերում՝ Տայքում, Արշարունիքում, Շիրա-

*կում և Աշոցքում։ 806 թվին Հարուն-ալ-Ռաշիդը նրան նշանակեց Հայաստանի կառավարիչ, և այնուհետև Աշոտը հնարավորություն ստացավ ավելի մեծ հաջողությամբ շարունակել իր հետագա նվաճումները։*

*Բագրատունիների և, ընդհանրապես, հայ նախարարների համար նպաստավոր եղան նաև 809—813 թթ. տեղի ունեցող այն համառ կռիվները, որ Հարուն-ալ-Ռաշիդի Մամուն և Էմին որդիները վարում էին գահաժառանգության համար։*

*Մի քանի տարուց հետո, երբ արդեն վերջացել էին հիշված երկպառակությունները արևելյան Անդրկովկասում բռնկվեց պարսկական աղանդավոր խուրրամիտների նոր խոշոր ապստամբություն (816—837 թթ.) Բաբեկի առաջնորդությամբ։ Այդ անհեղ շարժումը կրում էր և սոցիալական և ազատագրական բնույթ։ Ապստամբները պահանջում էին գույքային հավասարություն և ուզում էին տապալել արաբական խալիֆաների իշխանությունը և վերականգնել նախկին պարսկական տիրապետությունը։*

*Հայկական նախարարությունները օգտագործեցին այդ ապստամբությունը իրենց շահադիտական նպատակների համար և, ամրացնելով իրենց քաղաքական դիրքերը, հնարավորություն ստացան գրավելու նոր հողեր ու նոր կալվածքներ։*

*Այդպիսով, 9-րդ դարի քառասնական թվականների վերջին, հայ նախարարները, հատկապես Բագրատունիները, ոչ միայն վերականգնեցին իրենց նախկին հզորությունը, այլև դառան ավելի ուժեղ, քան 8-րդ դարում Օմայանների ժամանակ։*

*Աշոտ Մսակերի մահվանից հետո (826 թ.) Բագրատունիների առանձին ճյուղերը իշխում էին ինչպես իրենց նախկին տիրապետության տակ եղած երկրամասերում, նույնպես և համարյա ամբողջ արևմտյան Անդրկովկասում։ 9-րդ դարի առաջին կեսի վերջում նրանք և Արծրունիները այնքան էին ուժեղացել, որ արդեն աշխատում էին վերականգնել լրիվ չափով իրենց արտոնությունները և լայնացնել իրենց քաղաքական իրավունքները ու ներքին անկախությունը։*

*842—847 թվերին ալ-Վաթիկ խալիֆայի ժամանակ Հայաստանը գտնվում էր խռովահույզ և մշտական ապստամբական շարժումների պայմաններում։ Բագրատունիները, ինչպես և Արծրունիները, նկատի առնելով խալիֆայության քաղաքական և ռազմական թուլացումը, ձգտում էին ազատագրվել արաբական տիրապետությունից և խալիֆայության պետական հարկերը վճարելուց։*

*Շուտով, սակայն, պարզվեց նրանց հույսերի վաղաժամ լինելը։*

*847 թվին խալիֆայության գահը բարձրացավ Մութավաքիլը (847—861), որը ամրացրեց խալիֆայության խախտված դրությունը։ Եվ նրա ժամանակը զորեղացած հայկական նախարարությունների սանձահարումը դառավ խալիֆայության գլխավոր նպատակներից մեկը։*

*849 թվին Հայաստան էր ուղարկվել ուժեղ զորամասերով Աբուսեթ ոստիկանը, սակայն, խեղդել և պատժել հայ նախարարներին նա չկարողացավ, որովհետև Բագրատ Բագրատունին, որն այդ ժամանակ Հայաստանի կառավարիչն էր և Վասպուրականի իշխան Աշոտ Արծրունին, միանալով դուրս էին եկել նրա դեմ։ Նրանք ուղարկեցին Աբուսեթին պահանջվող հարկերը և պահանջեցին որպեսզի նա չմտնի Հայաստանի սահմանները։*

*850 թվին Բագրատը և Աշոտը գլխովին ջարդեցին խալիֆայության զորքերը, որոնք ավերածության ու թալանի էին մատնել Տարոնի և Վասպուրականի շրջանները։*

*Վրդովված լինելով այդ դեպքերի մասին ստացած տեղեկություններից, Մութավաքիլը Հայաստան ուղարկեց մեռած Աբուսեթի որդուն՝ Յուսուֆին։ 851 թվին Յուսուֆը մեծ ու ջոկովի զորքով մտավ Վասպուրական, Աշոտի հետ հաշտություն կնքեց և, ապահովելով իր թիկունքը, գնաց դեպի Խլաթ, որտեղ նա խաբեությամբ գերի բռնեց Բագրատին, շղթայեց նրան և ուղարկեց Մութավաքիլի աթոռանիստը՝ Սամարա։*

*Այնուհետև Հայաստան ուղարկվեցին շրջանային կառավարիչներ, որոնք ամենուրեք դաժան դատաստան տեսան։ Իսկ Տարոնում արաբական զորքերը վերցրին շատ գերիներ, որոնց նրանք ծախեցին չնչին գնով Ասորիքում և ուրիշ տեղերում։ Գարնանը նրանք պատրաստվում էին ավերածության ու սրի մատնել ամբողջ Հայաստանը և ենթադրում էին ոչնչացնել հայկական նախարարությունները ու երկրում հաստատել իրենց անմիջական տիրապետությունը։*

*Այժմ Հայաստանի դրությունը դառնում էր նույնքան աղետալի, ինչպես և 8-րդ դարի վերջում։ Վտանգ էր սպառնում ոչ միայն իշխող նախարարական դասին, այլև ամբողջ ժողովրդին։ Ուստի և նորից տարերային ձևով բռնկվեց ապստամբություն, որը ինչպես և 774—775 թվերին կրում էր ազատագրական շարժման բնույթ։*

*Այդ ապստամբության գլխավոր մասնակիցներն էին սասունցի լեռնականները, ռամիկ գյուղացիները, որոնք հարձակվեցին արաբական զորքի վրա Հովնան Խութեցու առաջնորդությամբ։ Նրանք ոչնչացրին արաբական զորքը, սպանեցին իրեն՝ ոստիկան Յուսուֆին և ազատեցին գերիներին։*

*Սասունցի լեռնականների այդ հաղթական կռիվը ընդդեմ արաբական խալիֆայության զորքերի, որոնց նրանք քշեցին իրենց հայրենի երկրից, եղել է հայկական «Սասունցի Դավիթ» ժողովրդական վիպերգության հիմքերից մեկը։*

*852 թվի մեծ ապստամբությունը, որ կրում էր համաժողովրդական-ազատագրական բնույթ, խեղդվեց անողոք դաժանությամբ։*

*Մութավաքիլ խալիֆան Հայաստան ուղարկեց երկու հարյուր հազար հոգուց բաղկացած թուրքական ու արաբական զորքեր, նախկին գերի, խորամանկ ու դաժան թուրք Բուղայի առաջնորդությամբ։*

*Բուղան սրի մատնեց և գերեց ու ավերեց ոչ միայն Հայաստանը, այլև Աղվանքն ու Վրաստանը։*

*Հայկական նախարարները և ապստամբության ղեկավարները խարդախությամբ բռնվեցին ու բանտարկվեցին և ապա ուղարկվեցին Սամարա։ Բուղայի արշավանքից հետո, նախարարական Հայաստանը, որ ենթարկվել էր սոսկալի ավերածության, թվում էր թե այլևս անկարող կլինի ուշքի գալ և վերակենդանանալ։ Սակայն շուտով, ինչպես և 774—775 թվերի ապստամբությունից հետո, նա ոչ միայն վերականգնեց իր նախկին հզորությունը, այլև հասավ իր տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի բուռն ու անօրինակ ծաղկմանը։*

*9-րդ դարի երկրորդ կիսում սկսվեցին բյուզանդական կայսրների հաղթական արշավանքները դեպի հարավ-արևմտյան Հայաստանին կից սահմանային շրջանները, և խալիֆայությունը, որ անընդհատ պարտություն էր կրում, հետզհետե թուլանում և գնում էր դեպի անկում։*

*867 թվին Բյուզանդական գահը բարձրացավ ազգով հայ, Մակեդոնիայից եկած, Բարսեղ 1-ը (867—886), որը կործանիչ հարվածներով ոչնչացրեց արևելյան սահմանների արաբական պաշտպանողական ամրացրած դիրքերը և կարողացավ մտնել Միջագետք։ Բյուզանդիայի այդ հաղթական հարձակման ժամանակ ֆեոդալական-նախարարական Հայաստանի կողմնորոշումը դեպի կռվող պետությունները ստանում էր չափազանց կարևոր նշանակություն։ Բարսեղ 1-ի հաղթությունը կլիներ լիակատար, եթե հայերը հարձակվեին արաբների աջ թևի վրա և օգնեին կայսրը մտնել խալիֆայության կենտրոնական շրջանները։*

*Ուստի և զարմանալի չէ, որ արաբները ստիպված էին փոխել իրենց քաղաքականությունը Հայաստանի վերաբերմամբ և ճանաչեցին նրան իբրև ինքնուրույն վասալական թագավորություն։ Դեռևս 862 թվին Աշոտ Բագրատունին, որ հետագայում կոչվեց Մեծ, ալ-*

Մուստաին խալիֆայի (862—866) կողմից նշանակվել էր Հայաստանի կառավարիչ «իշխանաց իշխան» տիտղոսով։ Հավատարիմ մնալով խալիֆայությանը և չեզոք Բաբեռ 1-ինի հաղթական կռիվների ժամանակ, Աշոտը քսան և հինգ տարի մնաց «իշխանաց իշխան» (862—887)։ Նրա ժամանակը Հայաստանը զորեղացավ թե քաղաքականապես և թե տնտեսապես։ Քառորդ դար կովելուց հետո, 887—888 թվին Մութամիդ խալիֆայից (870—892) նա ստացավ թագ և թագավորի տիտղոս։

Խալիֆայության այդ արտաքուստ բարյացակամ քաղաքականությունը եղել էր, իհարկե, ստիպողաբար։ Հայաստանի վերամիավորումը, իբրև զորեղ թագավորություն, ցանկալի չէր ոչ խալիֆայությանը, ոչ Բյուզանդիային և ոչ հարևան ամիրայություններին։ Շուտով խալիֆայությունը և հարևան ամիրայությունները սկսեցին իրենք խրախուսել և նույնիսկ գրգռել խռովարար ֆեոդալներին, առաջ բերել Հայաստանում ապստամբություններ։ Ուստի հասկանալի է, որ Բագրատունիների թագավորական տիտղոսը մնաց միայն իբրև տիտղոս, առանց բովանդակության։ 10-րդ դարում Հայաստանի և Անդրկովկասի բոլոր մեծ ֆեոդալները դառան նույնպես «թագավորներ» և ունեին նույնպիսի թագավորական թագ և հանդերձանք, ինչպես և Աշոտ 1-ի հաջորդը։

Աշոտ 1-ի մահից հետո գահ բարձրացավ նրա որդի Սմբատ 1-ը (891—914), որը, դաշն կնքելով Բյուզանդիայի հետ, ուզեց միացնել իր իշխանության տակ հայկական նախարարությունները և ստեղծել միացյալ ֆեոդալական պետություն։ Սակայն Սմբատի այդ փորձը հաջողություն չունեցավ։ Հայաստանի խոշոր ֆեոդալները օգնություն գտան հարևան ամիրաների մոտ, ոչ պակաս զորեղ, քան Բագրատունիները։ Շատ ուժեղ դիմադրություն ցույց տվին Բագրատունիների զորեղացմանը Ադրբեջանի ամիրաները՝ Աֆշինը և Յուսուֆը։

10-րդ դարի սկզբում Յուսուֆ ամիրան, որ իր կողմն էր գրավել Մուկտաֆի խալիֆային և Գագիկ Արծրունուն, Բագրատունյաց Հայաստանը մատնեց ավերածության և Սմբատ 1-ին թագավորը ենթարկվեց տանջանքների ու խաչվեց (914 թվին)։

Սմբատ 1-ի հետ կատարած Յուսուֆի այդ դաժան դատաստանից ու այնուհետև տեղի ունեցած խառնակություններից, ապստամբություններից և երկրի անխնա ավերածություններից հետո, Հայաստանում 10-րդ դարի երկրորդ քառորդից սկսած, ավելի քան 100 տարի եղել է համեմատաբար խաղաղ։

Չունենալով ակտիվ մասնակցություն Բյուզանդիայի և արաբ-

ների կռիվներին և մնալով իբրև խալիֆայության վասալ, Բագրատունի թագավորները բարեկամական հարաբերություններ էին պահում միաժամանակ և՛ Բյուզանդիայի, և՛ խալիֆայության հետ։ Նրանց տիրապետության տակ եղած մարզերում խաղաղությունը և հանդստությունը չէր խախտվել ոչ մեկի և ոչ մյուսի կողմից։

Բագրատունիների թագավորության անկախ զարգացման այդ ժամանակաշրջանը, որը շարունակվեց մինչև Սելջուկ թուրքերի կողմից Հայաստանի գրավումը, հանդիսանում է երկրի տնտեսական և կուլտուրական զարգացման վերելքի ու քաղաքային կենտրոնների ծաղկման շրջան։

Տվյալ ժամանակաշրջանում Հայաստանի ծաղկումը երևում է նախ նրանից, որ ժամանակակից արաբական հեղինակները Հայաստանը համարում էին խալիֆայության ամենից հարուստ երկրներից մեկը։

Բագրատունյաց Հայաստանի հարստության և ընդհանուր տնտեսական վերելքի մասին կան մանրամասն տեղեկություններ նաև հայկական աղբյուրներում։

Հայաստանի նոր կուլտուր-տնտեսական վերելքի գլխավոր հիմքը եղել է, անշուշտ, միջազգային առևտուրը, որը սկսել էր այնտեղ նորից զարգանալ, սկսած 9-րդ դարից։

7-րդ—8-րդ դարերում արաբական խալիֆայության ռազմական ու քաղաքական զորեղ շրջանում և Բյուզանդիայի հետ տեղի ունեցող կատաղի կռիվների ընթացքում Հայաստանը եղել է, գլխավորապես, խալիֆայության ռազմական առաջապահը և միջազգային առևտուրը այնտեղ բոլորովին դադարել էր։

Տնտեսական զարգացման համար նպաստավոր պայմաններ նորից ստեղծվեցին 9-րդ դարում։

Շնորհիվ համաշխարհային գլխավոր ճանապարհներից մեկի վրա իր ունեցած բուֆերային դրության, Բագրատունյաց Հայաստանը, որ Բյուզանդիայի հետ կապված էր բարեկամության պայմանագրով, և խալիֆայության հետ վասալական կապերով, ոչ միայն նորից ձեռք բերեց նշանակություն տրանզիտային առևտրի համար, այլև ինքը դառավ չեզոք երկիր միջազգային աշխույժ առևտրի համար։

Կյանքի ապահովությունը և խաղաղությունը հանդիսանում էին իբրև նպաստավոր նախապայմաններ երկրի տնտեսական վերակենդանացման և առաջադիմության համար։

Սակայն նրա տնտեսական զարգացման աճը և քաղաքային կենտրոնների ծաղկումը բացատրվում են, գլխավորապես նրանով,

որ Հայաստանը այդ ժամանակաշրջանում դարձել էր Մերձավոր Արևելքում միակ տրանզիտային ճանապարհը և միակ չեզոք երկիրը, որոնք հնարավորություն էին տալիս օժանդակելու միջազգային հարաբերություններին։

Այդ ժամանակվա նոր հիմնված քաղաքների Անիի, Կարսի և Արծնի հարստության մասին, որոնք դարձել էին խոշոր առևտրական կենտրոններ, հետաքրքիր տեղեկություններ է հաղորդում 11-րդ դարի հայ պատմիչ Արիստակես Լաստիվերտցին։

Անի քաղաքը, որը 10-րդ դարի երկրորդ կեսից դարձել էր Բագրատունիների մայրաքաղաքը, նա անվանում է «տեղերահռչակ» քաղաք։

Արծն քաղաքի մասին, որը գտնվում էր Թեոդոսուպոլիսից ոչ հեռու, հաղորդում է, որ նրա հարստությունները բերում էին «ծովով և ցամաքով»։ Նմանապես Կարսի բնակիչների ունևորությունը նկարագրելիս, նորից ընդգծում է, որ նրա հարստությունները կուտակված են եղել «ծովից ու ցամաքից»։

Այդ քաղաքների վրայով միջազգային առևտրի հիմնական տրանզիտային ճանապարհը գնում էր դեպի Տրապիզոն, որն այդ ժամանակաշրջանում եղել է Սև ծովի արևելյան մասի գլխավոր առևտրական կենտրոնը և որը միջազգային առևտրի մեջ խաղում էր բացառիկ դեր։

Մեզ հասած պատմական հուշարձանները հաստատում են, որ Բագրատունյաց Հայաստանի քաղաքների հարստացման գլխավոր աղբյուրը եղել է միջազգային տրանզիտային առևտուրը։

Հայաստանի տնտեսական վերակենդանացման հետևանքով, ստեղծվել էին նպաստավոր պայմաններ ֆեոդալական կուլտուրայի ծաղկման և մեծ շինարարության համար, գլխավորապես Բագրատունյաց մայրաքաղաք Անիում։ Հայաստանի, գերազանցորեն այն քաղաքները, որոնք գտնվում էին տրանզիտային գլխավոր ճանապարհի մոտ, հարստանում էին, շինվում էին և լայնանում։ Թագավորները և բոլոր ֆեոդալները մրցում էին իրար հետ իրենց շինած տաճարների, պալատների և այլ կառուցումների շքեղությամբ։ Հայկական ճարտարապետության պահպանված հուշարձանները վկայում են շինարարական տեխնիկայի զարգացման բարձր աստիճանի և հայ գեղարվեստագետ-ճարտարապետների բացառիկ ստեղծագործական ընդունակությունների մասին։

Հին հայկական արվեստի և ճարտարապետության զարգացման շրջան էր հանդիսանում 7-րդ դարը, որը համարվում է հայկական ճարտարապետության ոսկեդարը։ Հենց այդ ժամանակաշրջանում

է կառուցված Էջմիածնի մոտ բազմահարկ, կլոր Զվարթնոց տաճարը, որը հանդիսանում է անտիկ տիպի հոյակապ կառուցումների վերածնունդը։ Այդ վեհ կառուցվածքի պահպանված փլատակները ապշեցնում են իրենց հոյակապ սյուների, խոյակների և զարդաքանդակների նուրբ գեղեցկությամբ և վկայում են նրա կառուցողների մեծ ստեղծագործական տաղանդի մասին։ Բագրատունյաց դարաշրջանում, նախկին շրջանում տեղի ունեցած քայքայումից ու լճացումից հետո, վերականգնել էին մինչարաբական ժամանակի կուլտուրական ավանդները. 10—11-րդ դարերում հետզհետե ստեղծվել էր ճարտարապետական նոր ոճ, որը զարգանալով 12—13-րդ դարերում կազմեց հայկական ճարտարապետության պատմության մեջ նոր դարաշրջան։

Բագրատունյաց Հայաստանի քաղաքական և տնտեսական զարգացման հետ զուգընթաց տեղի է ունեցել նաև գրականության զարգացումը։

Այդ շրջանի կարկառուն երկ է հանդիսանում Մովսես Խորենացու «Հայաստանի պատմությունը», որը գրված է եղել 9-րդ դարում, մինչև Բագրատունիների թագավորության հաստատումը։ Հետագա դարերում Խորենացին դառել է ամենից ժողովրդական և հեղինակավոր հայ պատմագիրը և համարվել է «հայկական պատմության հայրը»։ Եվ իրավի, չնայելով նրա տված տեղեկությունններից շատերի անվավերականության, նրա գիրքը հանդիսանում է բացառիկ արժեքավոր պատմական աշխատություն, որովհետև այնտեղ, գրական աղբյուրների հետ զուգընթաց օգտագործված են հին ժողովրդական վեպը և ժողովրդական բանահյուսությունը։ Այդ ժամանակաշրջանի մյուս պատմագիրներ Հովհաննես Դրասխանակերտցին, Թովմա Արծրունին, Ստեփանոս Տարոնեցին և ուրիշները եղել են Խորենացու մեծ ազդեցության տակ։ Հատկապես արժեքավոր է Մովսես Կաղանկատվացու «Աղվանից պատմությունը», որը հանդիսանում է իբրև աղբյուր ներկա Ադրբեջանի հին պատմության։

Տվյալ ժամանակաշրջանում մեծ զարգացում ստացավ, բացի պատմական ու եկեղեցական գրականությունից, նաև գիտական գրականությունը՝ աշխարհագրական, փիլիսոփայական, քերականական, հռետորական և մեկնաբանական։ Խոշոր գիտական պատրաստություն ունեցող հելլենիստ է եղել Գրիգոր Մագիստրոս Պահլավունին (11—դ.), որը թարգմանել է հայերեն լեզվով Պղատոնի մի քանի աշխատությունները և Էվկլիդեսի «Երկրաչափությունն»-ը։

Այդ դարաշրջանի բանաստեղծական գրականությունը, Բրյուսովի կարծիքով, արդեն պարունակում էր հետագա ուշ ժամանակ-

ների փարթամ ծաղկման սաղմերը, իսկ որոշ դեպքերում եղել է նույնիսկ չգերազանցված։

Այդ ժամանակաշրջանի խոշորագույն բանաստեղծ, որն ունեցել է հարուստ երևակայություն և սուրբ ոճ, եղել է Գրիգոր Նարեկացին (951—1003), որը ստեղծել է, այսպես կոչված, բանաստեղծների Նարեկացու շկոլան։

Ուշագրավ են այն հակասությունները, որ այդ ժամանակաշրջանում առաջ էին գալիս սոցիալական և գաղափարական ասպարեզում։ Մի կողմից 11-րդ դարում ուժեղ զարգացում ստացավ եկեղեցական սխոլաստիկական գրականությունը՝ միստիկական բովանդակությամբ, որը նախագուշակում էր ֆեոդալական հասարակարգի մոտակա անկումը. մյուս կողմից, ծնունդ էր առնում ժողովրդական աշխարհիկ գրականությունը, որտեղ մարմնացում էին ստանում աշխատավոր մասսաների իղձերը և ձգտումները։

Բագրատունյաց Հայաստանի ֆեոդալական քաղաքների կուլտուրական դեմքը որոշված է զգալի մանրամասնությամբ Ն. Մառի սիստեմատիկ պեղումներով, որոնք կատարվել են 19-րդ դարի վերջում և 20-րդ դարի սկզբներում Անի քաղաքի տեղամասում։ Անիում գտնված իրերը առատ նյութ են տվել վերականգնելու այդ խոշոր առևտրական քաղաքի կուլտուրական կենցաղը, իր զարգացած արհեստագործական-արդյունաբերական կյանքով. իշխաններով, կամուրջներով, բաղնիքներով, ջրմուղներով և ուրիշ գեղեցիկ շենքերով և եկեղեցական ու աշխարհիկ բնույթ ունեցող կառուցումներով։ Արհեստագործական և գեղարվեստական-արհեստագործական արդյունաբերության արտադրանքը, որ գտնվել է պեղումների ժամանակ ցայտուն կերպով ցույց է տալիս, որ Անի քաղաքի և Բագրատունյաց Հայաստանի մյուս քաղաքների կուլտուրական կյանքը գտնվել է զարգացման ավելի բարձր աստիճանի վրա, քան Արևմտյան Եվրոպայի միջնադարյան քաղաքներում։ Բագրատունյաց Հայաստանի տնտեսական կյանքի և Հայաստանից արտահանվող իրերի մասին, մի քանի պատահական, սակայն շատ ուշագրավ տեղեկություններ կարելի է գտնել արաբական աշխարհագիրների և պատմագիրների աշխատություններում։

Տաբարիի պատմական աշխատության մեջ կա տեղեկություն, որ Հայաստանը իր հացը արտահանում էր և ուղարկում Բաղդադ։ Այդ վկայությունը չափազանց կարևոր է, և ցույց է տալիս, որ Հայաստանի ֆեոդալական երկրագործական տնտեսությունը մտել է միջազգային առևտրական շրջանառության մեջ։

Իբրև արտահանության կարևոր ապրանք, արաբական հեղի-

նակների մոտ հատկապես հաճախ հիշվում են Վանա և Սևանա լճերի և Արաքս ու Կուր գետերի ձկները։ Միջին դարերում չորացրած և աղը դրած ձուկը եղել է լայն սպառման նյութ ոչ միայն Արևմտյան Եվրոպայում, այլև Արևելքում։

Շատ հետաքրքիր են արաբական աղբյուրների տեղեկությունները Հայաստանից շինարարական փայտի արտահանության մասին։ Կարելի է ենթադրել, որ Բագրատունյաց շրջանում Հայաստանի անտառների տարածությունը ունեցել է զգալի չափեր։ Արաբական և հայկական աղբյուրները հիշում են նույնպես լեռնային արդյունաբերության մի շարք արտադրանքների մասին, որոնք արդյունահանվում էին Հայաստանում՝ արծաթ, պղինձ, բորակ, աղ, մկնդեղ, ձյութ, սնդիկ, պղնձարջասպ և արճիճ։

Քաղաքային արդյունաբերության և արհեստների՝ կավագործության, դարբնոցային, զինագործական, ոսկերչական, մանածագործական և այլոց զարգացման մասին վկայում են գտնված իրերը և գրական աղբյուրները։

Արդյունաբերության հիշված ճյուղերից ամենից մեծ նշանակություն է ունեցել մանածագործական արդյունաբերությունը, գլխավորապես, մետաքսի, որից պատրաստված գործվածքները արտահանվել են խալիֆայության արևելյան մարզերը և Բյուզանդիա։

Մանածագործական արդյունաբերության զարգացմանը նպաստում էին հանքային և բուսական ներկերը, որոնք մեծ քանակությամբ եղել են Հայաստանում։

Քաղաքների աճի և արդյունաբերության զարգացման կապակցությամբ հարց է առաջ գալիս այդ քաղաքների տիպի և ներքին կարգերի մասին։ Սակայն, այդ հարցին դժբախտաբար, չի կարելի հանգամանորեն պատասխանել, որովհետև նրանց ներքին կյանքի մասին տվյալներ մենք համարյա չունենք։

Համենայն դեպս, կասկածից դուրս է, որ Բագրատունյաց շրջանի քաղաքները, որոնք պատկանում էին խոշոր ֆեոդալներին և դառել էին նրանց աթոռանիստը, գտնվում էին այդ ֆեոդալների իշխանության տակ և ունեին սենյորական (ինքնիշխանական) ռեժիմ։ Կառավարվում էին նրանք, ինչպես և նույն ռեժիմը ունեցող Արևմտյան Եվրոպական քաղաքները, Բագրատունի թագավորների և այլ խոշոր ֆեոդալների կողմից նշանակված անձանց միջոցով։

Այդ քաղաքների տեղադրության մասին մեր տրամադրության տակ եղած տվյալները ցույց են տալիս, որ այդ քաղաքները, ինչպես և խալիֆայության արևելյան քաղաքները ունեցել են ներքին մաս, այսպես կոչված, շահրիստան, որը շրջապատված է եղել ա-

պատ կոչվող արվարձաններից ամուր պարիսպներով, իսկ շահրիստանի կենտրոնում եղել է նրա միջնաբերդը կամ ամրոցը։

Համաձայն աղբյուրների մի քանի ցուցմունքների, մանր և խոշոր քաղաքների բնակչության զգալի մասը բաղկացած է եղել հողագործական մանր ու խոշոր ազնվականությունից և քաղաքային բնակչությունից, որոնք ունեցել են իրենց այգիները, բանջարանոցները և հողային տնտեսությունը։ Խոշոր քաղաքները, որոնք ունեցել են գործոն մասնակցություն միջազգային առևտրում, միաժամանակ եղել են առևտրական ու արհեստագործական բնակչության կենտրոններ։

Բագրատունյաց Հայաստանի խոշոր քաղաքների բնակչության քանակի մասին (Դվին, Անի, Արծն) աղբյուրները տալիս են անուղղակի ցուցմունքներ։ Օրինակ՝ հայ պատմիչ Թովմա Արծրունին հաղորդում է, որ 893 թվին, երկրաշարժի ժամանակ կոտորվել է ավելի քան 70.000 մարդ։ Բյուզանդական պատմաբան Գ. Կեդրենիոսի հաղորդագրության համաձայն, 1049 թվին սելջուկները Արծն քաղաքը գրավելու և այրելու ժամանակ ոչնչացրել են այնտեղ հրով ու սրով 140.000 մարդ։ Պատմիչների տվյալներով՝ Անիում եղել է 100 հազար բնակիչ և 10 հազար տուն։

Մեջ բերված կլոր թվերը, իհարկե, վիճելի են, սակայն թույլ են տալիս ենթադրելու, որ Բագրատունյաց Հայաստանի խոշոր քաղաքների բնակչությունը զգալիորեն գերազանցել է միջնադարյան Եվրոպայի քաղաքների բնակչությունը և կազմել է, հավանորեն, մոտավորապես 50-ից մինչև 100 հազար։

Ուշագրավ է, որ տվյալ ժամանակը, որ եղել է քաղաքների և առևտրի արագ զարգացման շրջան, եղել է նաև դրամական լայն շրջանառության շրջան, որը նպաստել է փողային-տնտեսական հարաբերություններին։ Հայկական արձանագրական տվյալներից կարելի է տեսնել, որ բնամթերային ռենտան 10—11-րդ դարերում փոխվել էր դրամականի։ Բացի այդ, առևտրի ու արդյունաբերության զարգացման կապակցությամբ, այդ ժամանակաշրջանում Բագրատունյաց Հայաստանի քաղաքներում նկատվում է բնիկ հայերից հարուստ առևտրա-արդյունաբերական դասի առաջացումը և զորեղացումը։

Հասկանալի է, որ քաղաքների զարգացումը և ապրանքային ու դրամական հարաբերությունների աճը պետք է առեղծեին այստեղ ևս, ինչպես և Արևմտյան Եվրոպայում, երկրի սոցիալ-տնտեսական կյանքի որոշ տեղաշարժ։ Եվ իրավի, աղբյուրներից երևում է, որ ամենուրեք դրամային տնտեսության խորացման ընթացքը զու-

գակցվել է նաև Հայաստանում հիվանդոտ երևույթներով, որոնք առաջացել էին վաշխառուական կապիտալի զորեղացման և ստորադաս բնակչության դաժան շահագործման հետևանքով։

Ն. Մառը իր Անիի մասին գրած կապիտալ աշխատության մեջ ցույց է տվել, որ 11-րդ դարի առաջին կիսում ֆեոդալական Հայաստանի կյանքը իրենից ներկայացնում էր հակադրույթ (անտիթեզա) աշխատավոր հայ բնակչության տնտեսական ճնշվածության և հարստությունների կուտակմանը տիրող դասակարգերի փոքրաքանակ անդամների ձեռքերում։

Հսկայական հարստությունների մասին, որ գտնվում էին թեկուզ միայն հոգևորականության ձեռքում, հետաքրքիր տեղեկություններ է տալիս Մատթեոս Ուռհայեցի պատմիչը։

Նկարագրելով Արծն քաղաքի ավերումը, սելջուկյան Իբրահիմ և Գթլմուշ զորավարների կողմից, Մատթեոս Ուռհայեցին վկայում է, որ «քորեպիսկոպոս Դավթակի գանձատունը գրավեց Իբրահիմը, նրա գանձերը բեռնեցին 40 ուղտերի վրա. նրա տանից դուրս էին գալիս արտերը հերկելու համար ութը հարյուր գութան, յուրաքանչյուրում վեց զույգ եզներ»։ Հակառակ ազնվականության, վաճառականների և հոգևորականության ունևորությանն ու հարստությանը, Անիի աշխատավոր բնակչությունը, ինչպես ցույց են տալիս Անիի պեղումները, տեղավորված են եղել խղճուկ հյուղերում և քարքարոտ գետնում փորված որջերում։

Աշխատավոր բնակչության տնտեսական ծանր դրության մասին ցույց է տալիս, ի միջի այլոց, և այն, որ ըստ եղած տեղեկությունների այդ ժամանակաշրջանում տեղի են ունեցել գյուղացիական ապստամբություններ (10-րդ դարի առաջին քառորդում)։ Հայ պատմիչ Հովհաննես Դրասխանակերտցու վկայությամբ, որը թշնամաբար է վերաբերվում դեպի ապստամբները, «Ստորին խավերը ուզում էին լինել ավելի ձեռնահաս, քան բարձր խավերը, և ծառաները Սողոմոնի նման մտածում էին նրա մասին, որպեսզի տերերը հագնեն տրեխներ, ման գան ոտով և, որպեսզի իրենք նստեն փառահեղ ու տրոփող ձիերի վրա. նրանք հպարտացան, անբարտավանացան և բարձրացրին մեծ ապստամբություն»։

Բացի ապստամբություններից, 10—11-րդ դարերում սաստկացել էր նաև թոնդրակեցի աղանդավորների կրոնական-սոցիալական շարժումը, որոնք խիստ քննադատության էին ենթարկում տիրող հավատի դավանանքը և ֆեոդալական եկեղեցու կազմակերպությունը։ Այդ աղանդի ուսմունքը, որի հետևողներն էին աշխատավոր աղքատ ժողովրդի լայն մասսաները, պաշտպանում էր դեմոկրատա-

կան քրիստոնեությունը և այդ ժամանակվա պայմաններում հանդիսանում էր իբրև բողոք ոչ միայն պաշտոնական եկեղեցու, այլև տիրող դասակարգերի ճնշման դեմ։

Հայկական Թոնդրակեցի և պավլիկյան աղանդավորները, որոնք ենթարկվում էին դաժան հալածանքների, պարբերաբար աքսորվում էին Բուլղարիա և այլ երկրներ, որտեղ նրանք, ինչպես ենթադրում է Ն. Մառը, «եթե չէին ձգել սերմեր, որոնց արգասիքը եղել են բոգոմոլությունը և ալբիգոյականությունը, համենայն դեպս առաջ են բերել նոր հուզումներ և իրենց արյան հոսանքով բեղմնավորել են հողը ավելի երջանիկ եվրոպական բարենորոգիչների (ռեֆորմատորների) շարժման համար»։

10—11-րդ դարերում սոցիալական պայքարի ակնառու սրումը բացատրվում է, ըստ երևույթին, դրամա-տնտեսական հարաբերությունների խորացմամբ, գյուղացիներից պահանջվող դրամական տուրքերի ծանրության ավելացմամբ և վաշխառուական կապիտալի խաղացած դերի սաստկացմամբ։

Քաղաքների արդյունաբերության և առևտրի աճը թեև հանգեցնում էր դասակարգային պայքարի սրմանը, սակայն, միաժամանակ նպաստում էր նոր սոցիալական ու տնտեսական հարաբերությունների առաջացմանը։ Եվ միանգամայն հնարավոր է, որ այդ նոր ուժերը ժամանակի ընթացքում առաջ էին բերելու ֆեոդալական կազմակերպության տապալումը, եթե այդ իրադրության զարգացումը չխափանվեր թուրք-մոնղոլական արշավանքներով։

11-րդ դարի առաջին կիսում Բյուզանդիայի մերձավոր-արևելյան քաղաքականության մեջ տեղի ունեցավ սուր շրջադարձ։ Քառասունամյա համառ կռվից հետո Բյուզանդական պետությունը Արևմուտքում գրավեց Բուլղարական թագավորությունը և փոխեց իր քաղաքականությունը ֆեոդալական Հայաստանի և Անդրկովկասում առաջ եկած մանր թագավորությունների վերաբերմամբ։

Հանդես գալով ակտիվ կերպով Արևելքում, նա ենթարկեց իր իշխանությանը Վանա լճի շուրջը տեղավորված ամիրայությունները և հետզհետե մտցրեց կայսրության կազմի մեջ արևմտյան Հայաստանը, Վրաստանի մի մասը, Վասպուրականում Արծրունիների թագավորությունը (1016 թ.), Անիի Բագրատունյաց թագավորությունը (1045 թ.) և Վանանդի մարզում Կարսի Բագրատունիների թագավորությունը (1064 թ.)։

Հիշված բոլոր ֆեոդալական երկրներում նա անմիջապես ձեռք առավ միջոցներ հողագործական տիրող դասի և նրա զինվորական ուժի թուլացման վերաբերմամբ։ Միացված մարզերից հողագործա-

կան ազնվականության մասսաներով հեռացվեց, գլխավորապես դեպի Փոքր Ասիա և Կիլիկիա, որտեղ նրանք ստացան նոր հողեր և կալվածքներ։ Բագրատունիների և նախարարությունների տեղական զինվորական ուժերը արձակվեցին և փոխարինվեցին կայսերական եկվոր զորքերով։ Եվ այնուհետև, երբ տիրող դասի ընդդիմությունը կոտրված էր, ամենուրեք մացրեց Բյուզանդիայի կայսերական վարչական ղեկավարությունը։

Անիի Բագրատունիների թագավորությունը և Անի քաղաքը Բյուզանդացիները գրավել էին 1045 թվին, իսկ արդեն երեք տարուց հետո սելջուկյան թուրքերի հրոսակախմբերը, որոնք մտել էին Հայաստան Վասպուրականի կողմից, ավերեցին և քարուքանդ արին Վանա լճից հյուսիս գտնվող մարզերը։

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՔՈՒՆԻ ՀԱՐԿԵՐԸ ՄԱՐԶՊԱՆՈՒԹՅԱՆ ՇՐՋԱՆՈՒՄ[1]

### ՆՅՈՒԹԵՐ ԵՎ ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՊԱՐՍԿԱՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՔՈՒՆԻ ՀԱՐԿԵՐԸ ՀԱԶԿԵՐՏ Բ-ԻՑ ԱՌԱՋ

*Հայոց մատենագրական աղբյուրներում Հայաստանի հնագույն հարկերը հիշատակվում են առաջին անգամ Եղիշեի պատմության մեջ և նրա վկայությունները վերաբերում են մարզպանության շրջանին։ Հայաստանի պատմության նախկին շրջանների նկատմամբ հարկերի խնդիրը, ինչպես և շինական դասի դրությունը, մնում են մութ ու անորոշ, որովհետև աղբյուրներն այդ մասին չեն տալիս ոչ տեղեկություն, ոչ էլ որևէ ակնարկ։*

*Խոսելով Հայաստանում Հազկերտ Բ-ի ժամանակ (439—457 թ.) տեղի ունեցած աշխարհագրի մասին, Եղիշեն հարկերի ծանրության մասին հաղորդում է հետևյալը. «Քանզի ուստի արժան էր առնուլ հարիւր դահեկանաւ չափ, կրկին առնուին, նոյնպէս և եպիսկոպոսաց և երիցանց դնէին, ոչ միայն շինաց, այլ և աւերակաց։ Նա բնաւ ո՞վ իսկ կարէ պատմել վասն ծանրութեան մտից և սակից, բաժից և հասից և հարկաց լերանց և դաշտաց և մայրեաց։ Ոչ ըստ արքունի արժանաւորութեանն առնուին, այլ հինաբար յափշտակելով. մինչև ինքեանք իսկ մեծապէս զարմանային, թէ ուստի այս ամենայն գանձ ելանէ, զիարդ չէն կայցէ աշխարհն» (Վենետիկ 1864, էջ 40)։ Մի ուրիշ հատվածում Եղիշեն դարձյալ վկայում է, որ Հազկերտ Բ-ը Հայաստանից ավելի հարկ է ստացել, քան նրա նախորդները. «Իսկ զմտից և զսակից, և որ այլ ևս էին հարկք աշխարհին, բազմագոյն*

[1] *Տե՛ս, «Գիտության և Արվեստի ինստիտուտի տեղեկագիր» № 1. Երևան, 1926 թ.։*

քան առ Հարքն նորա երթայր յարքունիս, նա և ի սուրբ եկեղեցւոյն, որ էր ազատ ի Քրիստոս ըստ կարգի նախնեացն մերոց, և դու ընդ հարկաւ եդիր» (Վենետիկ 1864, էջ 75)։ Դենշապուհի աշխարհագրի թաքուն նպատակների մասին Եղիշեն հաղորդում է հետևյալ տեղեկությունը. «Եւ յայսր ամենայնի վերայ այլ ևս չարութիւն խորամանկեաց։ Զմի ոմն ի հաւատարիմ ծառայից իւրոց ի գործ առաքէր յերկիրն Հայոց, որում անուն էր Դենշապուհ. որ եկեալ հասեալ հրամանաւ արքունի, զողջոյն բերեալ զմեծ թագաւորին, և խաղաղասէր կեղծաւորութեամբ աշխարհագիր առնել ամենայն երկրին Հայոց ի թողութիւն հարկաց և ի թեթևութիւն ծանրութեան այրուձիոյ։ Թէպետ և ի վերին երեսս կեղծաւորէր, այլ ի ներքոյ խորհուրդք չարագոյն ցուցանէին։ Առաջին, զազատութիւն եկեղեցւոյն արկանէր ի ծառայութիւն. երկրորդ, միայնակեաց քրիստոնեայք՝ որ բնակեալ էին ի վանորայս, ընդ նովին աշխարհագրաւ էարկ. երրորդ, զհարկ աշխարհին առաւել ծանրացոյց. չորրորդ, բանսարկութեամբ զնախարարեանն էարկ ընդ միմեանս, և յամենայն տան արար խռովութիւն։ Եւ զայս ամենայն առնէր, թերևս զմիաբանութիւնն քակեսցէ, և զուխտն եկեղեցւոյն ցրուեսցէ, և զմիայնակեացսն փախուսցէ և զշինականսն վատնեսցէ. և առ յոյժ աղքատութեանն՝ ակամայ դիմեսցեն յօրէնս մոգուց» (Վենետիկ 1852, էջ 38—39)։

Եղիշեի այս վկայությունները, իմ կարծիքով, հիմք կարող են ծառայել, նախ և առաջ, ընդհանուր մի դիտողության։

Հայագիտական նորագույն երկերում ենթադրվել է հաճախ, ինչպես, օրինակ, Կ. Գյուտերբոկի «Բյուզանդիոն և Պարսկաստան» հետաքրքիր ու կարևոր աշխատության մեջ, որ Պարսկական Հայաստանը 429 թվից հետո, կորցնելով իր ինքնավարության մնացորդները, միացվել է Սասանյան Պարսկաստանին, իբրև պարսկական մի նահանգ։ Պատմական այս ամփոփումը կարող է, բնականաբար, մեկնվել այն իմաստով, որ իբր թե 429 թվից հետո Պարսկական Հայաստանի պետական հարկերը նույնը եղած պիտի լինեին, ինչ որ և մյուս պարսկական նահանգներում։ Այդպիսի կանխակալ մի հետևություն, իմ կարծիքով, թույլատրելի չէ։

Մատենագրական մի շարք վկայություններից դժվար չէ գուշակել, որ 429 թվից հետո մինչև Հազկերտ Բ-ի նոր քաղաքականությունը Պարսկական Հայաստանի թե ներքին վիճակը և թե հարկային հին կարգերը մնացել էին գրեթե անփոփոխ։

Արշակունյաց թագավորության անկումից հետո, ինչպես վկայում է Եղիշեն՝ «Ի նախարարսն Հայոց անկանէր թագաւորութիւնն» (Վենետիկ 1852, էջ 11)։ «Զի թէպէտ և զանձն յարքունիս Պարսկաց

երթայր,— ասում է Եղիշեն,— սակայն այրուձին Հայոց բովանդակ ի ձեռն նախարարացն առաջնորդէր ի պատերազմի» (նույնը, էջ 11)։ Եվ իրոք, հայտնի է արդեն, որ հայկական նախարարությունները, որոնք իրենք էին հոժարակամ ցանկացել ենթարկվել Սասանյան Պարսկաստանի անմիջական իշխանության, Արշակունյաց վերջին թագավորի գահընկեցությունից հետո պահպանել էին անաղարտ ու անփոփոխ իրենց տիրական և գործակալական իշխանության գրեթե բոլոր իրավունքները։ Մամիկոնյանները մնում էին դարձյալ, իբրև Պարսկական Հայաստանի սպարապետներ, Վահան Ամատունուն հանձնված է եղել հազարապետության գործակալությունը, իսկ դատավարության իշխանությունը, ըստ երևույթին, մնացել էր բարձր հոգևորականության ձեռին։

Այս բոլորը պարզ ցուցմունքներ են, որ Արշակունյաց անկումից հետո Պարսկական Հայաստանի ինքնավար ներքին կազմակերպության մեջ զգալի փոփոխություններ չէին եղել։

Նույնը, հավանորեն, պետք է ենթադրել նաև Պարսկական Հայաստանի արքունի հարկերի մասին։

Եղիշեի վերոհիշյալ վկայություններից պարզ երևում է, որ հայ հոգևորականության հարկային բոլոր նախկին արտոնությունները մնացել էին անփոփոխ մինչև Հազկերտ Բ-ի նոր կարգադրությունը։ Այս վերջին հանգամանքը կարող է հավանական մի նշան համարվել, որ Պարսկական Հայաստանի նաև մյուս արքունի հարկերը մարզպանության սկզբնական տարիներում փոփոխության չէին ենթարկվել։ Եղիշեի վերոհիշյալ խոսքերը՝ «Որ զանձն յարքունիս Պարսկաց երթայր», ինձ թվում է՝ պետք է հասկանալ այն մտքով, որ Սասանյան Պարսկաստանին տրվելու էին այն արքունի հարկերն ու եկամուտները, որոնք գոյություն ունեին Արշակունյաց վերջին թագավորների ժամանակ։

Վարչական ու հարկային ուրույն այս վիճակը, որ Պարսկական Հայաստանն ունեցել է, հավանորեն, Հազկերտ Բ-ից առաջ, հարկավոր է աչքի առաջ ունենալ ու առանձնապես ընդգծել, որովհետև Վարդանանց շրջանի քաղաքական անցքերը ստանում են տարբեր լուսաբանություն, երբ նկատի են առնվում այս կարևոր հանգամանքները։ Հազկերտ Բ-ի նոր քաղաքականությունը Պարսկական Հայաստանի հանդեպ ուղղված է եղել, ինչպես այդ պարզ երևում է փաստական մի շարք տվյալներից, ոչ միայն քրիստոնեական եկեղեցու դեմ, այլև նախարարությունների, նրանց արտոնյալ արտակարգ իրավունքների, նաև, ըստ երևույթին, Պարսկական Հայաստանի հարկային հին կարգերի դեմ։

Սասանյան Պարսկաստանը, բնական է, որ վաղ թե ուշ ձգտելու էր տարածելու մարզպանական այս շրջանի վրա թե իր պետական օրենսդրության ընդհանուր որոշումները և թե հարկային այն սիստեմն ու այն կարգերը, որ պարտադիր են եղել մյուս մարզերում։ Դենշապուհի աշխարհագիրը, հազարապետության հանձնումը պարսիկ պաշտոնյայի, եկեղեցու ու հոգևորականության հարկային ազատության ոչնչացումը և այլ նման փաստեր, իմ կարծիքով, ուշագրավ ու հավաստի նշաններ են, որ այդ փոփոխությունը Պարսկական Հայաստանի հարկային դրության վերաբերմամբ տեղի է ունեցել Հազկերտ Բ-ի ժամանակ։

## ՀՈՂԱՅԻՆ ՀԱՐԿԵՐԸ ՄԱՐԶՊԱՆԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Սասանյան Պարսկաստանի հարկերի ու ֆինանսական տնտեսության լուսաբանության համար, ինչպես հայտնի է, գլխավոր ու հիմնական աղբյուրն է Տաբարիի արաբական ժամանակագրությունը։ Ընդունելով, որ Պարսկական Հայաստանի արքունի հարկերը նման պիտի լինեին մյուս մարզերի հարկերին, այս աղբյուրի վկայությունները բնականաբար մեծ կարևորություն են ստանում նաև Պարսկական Հայաստանի համար։

Տաբարիի հաղորդած տեղեկությունների համաձայն՝[1] Խոսրով Նուշիրվանից առաջ (531—579 թ.) Պարսկաստանի թագավորները, սովորաբար, առնում էին առանձին շրջաններից, որպես հողային տուրք, բերքի $^{1}/_{3}$-ը, $^{1}/_{4}$-ը, $^{1}/_{5}$-ը կամ $^{1}/_{6}$-ը, նայած ոռոգման ու հողի մշակույթին։ Բացի այդ նրանք առնում էին նաև որոշ գումար գլխահարկ։ Պերոզի որդին Կավատը (488—531 թ.) իր թագավորության վերջում կարգադրած է եղել, որ հողաչափություն կատարվի դաշտային ու լեռնային հողերի, որպեսզի կարելի լինի ճշտիվ որոշել հողային հարկերը։ Այդ հողաչափությունը, որ սկսվել էր Կավատի ժամանակ, շարունակվել է ու ավարտվել Խոսրով Նուշիրվանի ժամանակ, որը կարգադրած է եղել համրել նաև մարդկանց ու հաշվել արմավենիների ու ձիթենիների քանակը։ Այնուհետև՝ այս աշխարհագրից հետո, որոշված է եղել հարկերի չափը։ Ամեն մի garib հողից (=3600 քառակուսի կանգուն, 1470 քառ. մետր, մոտավորապես $^{1}/_{7}$ դեսյատին[2]), որի վրա ցանված էր ցորեն կամ գարի՝

[1] Տե՛ս Th. Noeldeke, Tabari, Geschichte der Perser und Araber zur Zeit der Sasaniden, Leiden 1879, էջ 241—247.

[2] 1 garib հողը = 1470,87 $^{1}/_{2}$ քառակուսի մետրի, տես J.-A. Decourdemauch, Traité pratique des poids et mesures des peuples ancience et des

որոշված է եղել պահանջել 1 դրամ հողահարկ, մեկ garib խաղողի այգուց՝ 8 դրամ և այլն։ Գլխահարկ վճարելու էին բոլորը՝ 20 տարեկանից մինչև 50 տարեկանը՝ բացի ազնվականներից, մեծամեծներից, զինվորներից, որոշ հոգևորականներից ու թագավորության պաշտոնյաներից։ Ամեն մի անձից առնում էին 12, 8, 6 կամ 4 դրամ՝ համաձայն հարկատուի կարողության։ Գլխահարկի սովորական, տարածված չափը եղել է, ըստ երևույթին, 4 դրամ։ Հարկերը գանձվում էին մաս մաս, տարին երեք անգամ, յուրաքանչյուր քառամսյակում տարեկան հարկի 1/3 մասը։

Հենվելով Տաբարիի կարևոր այս տեղեկության վրա, պրոֆ. Նիկ. Ադոնցը «Армения в эпоху Юстиниана» իր ուսումնասիրության մեջ (էջ 481—485) քննության է առել Եղիշեի վերոհիշյալ վկայությունները, համեմատելով Պարսկական Հայաստանի հարկերն այն ընդհանուր հարկերի հետ, որոնք ընդունված են եղել Սասանյան Պարսկաստանում, իսկ հետագայում նաև Արաբական խալիֆատում։ Նրա ասելով՝ Սասանյան Պարսկաստանում գոյություն են ունեցել երկու տեսակ հիմնական հարկեր՝ «խարաճ» հողային հարկ և gezith գլխահարկ։ Նույն հիմնական հարկերը եղել են նաև Հռոմեական կայսրության մեջ tributum soli և tributum capitis, որոնք Դիոկլետիանի բարենորոգումից հետո անվանվել են՝ capitatio terrena և capitatio humana կամ plebeia։ Արաբական տիրապետության ժամանակ տարբերել են երկու կարգի հողային տուրք՝ vazifé և mucasame։ Առաջինը, vazifé-ն համապատասխան լինելով եվրոպական cens-ին, վճարվել է դրամով՝ որոշ գումար հողային տարածության յուրաքանչյուր հատուկ միավորից։ Իսկ երկրորդը՝ mucasame-ն, որ համապատասխանում է եվրոպական champart-ին, բնական հարկ է՝ որոշ մաս բերքից, որ տրվել է կալվածատիրոջ։ Նիկ. Ադոնցի կարծիքով, արաբական vazifé-ն համապատասխանում է իրապես պարսկական «խարաճ»-ին, իսկ mucasame-ն անվանվում է պարսկերեն bahrak։

Բաղդատելով Եղիշեի մոտ հիշատակված հարկերը հիմնական ու սովորական այս հարկերի հետ, Նիկ. Ադոնցն ավելի քան հավանական է համարում, որ «բաժ»-ը համապատասխան կարող է լինել

---

Arabes, Paris 1909, էջ 65 և 90։ A. Christensen-ը (garib հողը ենթադրում է 2400 քառ. մետր) տես L'empire des Sassanides, Kobenhavn 1907 էջ 57), իսկ Alf. Kremer-ը 1169,54 քառ. մետր) տես Culturgeschichte des Orients I էջ 98—99։ J.-A. Dacourdemanch-ի հաշիվները վստահելի են ու հավաստի, որովհետև նրա երկը մասնագիտական հատուկ աշխատություն է, նվիրված հնագույն բոլոր չափերի համեմատական ուսումնասիրությանը։

«խարաճ»-ին և vazifé-ին, իսկ «սակ»-ը՝ gezith-ին։ Նա հնարավոր է նաև համարում, որ Եղիշեի «մուտ»-ը և «հաս»-ը հոմանիշներ են պարսկերեն «սակ»-ի և «բաժ»-ի և գործածական են եղել հայկական միջավայրում։

Այս ենթադրական համեմատությունները, պարզապես գուշակություններ են և ոչ հիմնավորված եզրակացություններ։ Շատ պարզ է, որ հայկական հին հարկերը և նրանց իրական բովանդակությունը պետք է որոշել ոչ թե համեմատական այդ եղանակով, այլ, նախ և առաջ, հայոց մատենագրական աղբյուրների հավաստի ու հաստատուն վկայությունների օգնությամբ։ Ներքև մենք քննության ենք առնելու Հայաստանի թե այս և թե մյուս հնագույն հարկերը՝ յուրաքանչյուրն առանձին՝ հիմնվելով մատենագրական վկայությունների վրա։ Ինչպես կտեսնենք, ուսումնասիրության այդ եղանակով ստացվում են հավանական նոր եզրակացություններ, որոնք մեծ մասամբ, հիմնովին տարբեր են Ն. Ադոնցի վերոհիշյալ ենթադրություններից։

Պարսկական Հայաստանի առանձին հարկերի քննությունից առաջ՝ նախ կարևոր է, իմ կարծիքով, կանգ առնել ու ծանրանալ մի շարք ընդհանուր խնդիրների վրա, որոնք տրամաբանորեն բխում են Տաբարիի ու Եղիշեի վկայությունների բաղդատությունից և որոնք մինչև այժմ հարուցված չեն եղել։

Տաբարիի վկայությամբ՝ հողային դրամական հարկերի կիրարկումը Սասանյան Պարսկաստանում որոշված է եղել Խոսրով Նուշիրվանի (531—579 թ.) հրամանով։ Իսկ մինչ այդ գոյություն են ունեցել հողային բնական տուրքեր։ Որ հողային հարկերը Սասանյան թագավորության նախնական շրջանում ունեցել են բնական տուրքերի բնույթ՝ այդ մասին ուշագրավ մի ակնարկ կա Աբրահամ Խոստովանողի «Վկայք Արևելից» թարգմանության մեջ հետևյալ հատվածում, որ վերաբերվում է Պարսից թագավորին՝ «Գրգիս ի տաճարի որ շինեցաւ ի հզաւրաց, և բազմեալ ես յապարանս, զոր զարդարեցին պնդակազմքն։ Գան քեզ պատիւք և պատարագք ի հեռաստանէ և տասանորդք ի չորից կողմանց երկրի։ Ուտես զսուրբ արգիւնս կալոց և ըմպես զաղնուական գինիս հնձանաց» (Էջմիածին 1921, էջ 9)։ «Տասանորդք» գործ է ածված այստեղ, անշուշտ, հողային բնական հարկերի իմաստով։

Արդ, եթե ճիշտ է Տաբարիի այդ վկայությունը՝ կարելի՞ է արդյոք առանց դրական ապացույցների ենթադրել, որ Եղիշեի թված հարկերից որևէ մեկը կարող էր ունենալ հողային դրամական հար-

կի՝ «խարաճ»-ի նշանակությունը[1]։ Ինչո՞ւ չենթադրել, որ Խոսրով Նուշիրվանից (531—579) առաջ Պարսկական Հայաստանում ևս հողային հարկը նույն բնույթն ունեցած պիտի լիներ, ինչ որ և մյուս պարսկական շրջաններում։ Այս հարցերն այնքան կարևոր են ու առաջնակարգ Հայաստանի տնտեսական զարգացման պատմության համար, որ արժանի են, իմ կարծիքով, ամենալուրջ ուշադրության։

Եթե ի նկատի ունենանք, որ հողային հարկը նույնիսկ Բյուզանդական կայսրության մեջ տրվել է հաճախ բերքով (in speciebus, ta eidê) և տուրքի այդ ձևը վերջնականապես վերացվել ու փոխարինվել է դրամական վճարումներով միայն Անաստաս կայսրի ժամանակ (491—518 թ.)[2], ինձ թվում է՝ խիստ դժվար է Պարսկական Հայաստանի հողային հարկերն ընդունել դրամական, Հազկերտ Բ-ի ժամանակ (439—457 թ.)։ Անհավատալի կլիներ, իհարկե, կարծել, որ Պարսկական Հայաստանը տնտեսական իր զարգացման ու դրամական շրջանառության տեսակետից կարող էր այդ ժամանակ ավելի նպաստավոր պայմանների մեջ գտնվել, քան Բյուզանդական կայսրությունը։

Հինգերորդ դարում, ճիշտ է, Արտաշատը և ապա Դվինը պարսկա-բյուզանդական տարանցիկ առևտրի կենտրոններն են եղել, բայց այդ փաստը չպետք է, իհարկե, գերագնահատել և կարծել, որ Հայաստանում, մանավանդ, նրա ծայրագավառներում, բնական տնտեսությունը կարող էր ստացած լինել դրամական բնույթ։ Իմ կարծիքով, խնդրական ու վիճելի է նույնիսկ, թե արդյոք, հիմնըվելով Տաբարիի վկայության վրա, կարելի է հաստատ կերպով պնդել, որ Պարսկական Հայաստանի հողային բնական հարկերը դրամականի էին վերածվել Խոսրով Նուշիրվանի ժամանակ (531—579 թ.)։ Եթե անգամ այդ հավանական համարվի, դժվար է, իմ կարծիքով, պնդել, որ հարկատվության այդ նոր ձևը պարտադիր ու

[1] Միքայել փաշա Փորթուգալը «Եղիշեի վարդապետի վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին» 1903 թվի իր հրատարակության բացատրական ծանոթություններում Դենշապուհի աշխարհագրին տվել է հետևյալ լուսաբանությունը. «Պարսիկք,— ասում է նա,— տասանորդաց մեծամեծ անպատեհությունները տեսած էին, բայց որովհետև դժվարին է կարգե դուրս նոցա տված հասույթը մեկեն ի մեկ անշարժ սակի մը վերածել, առաջին փորձը Հայաստան փորձել ուզեցին՝ իբրև մնացյալ նահանգներեն ավելի բարգավաճ և հարուստ երկիր» (Վենետիկ 1903, ծանոթ. էջ 216)։ Ուրեմն՝ Փորթուգալը ևս Պարսկահայաստանի հողային հարկը դրամական է ընդունում հիշյալ աշխարհագրից հետո։ Իմ կարծիքով, աշխարհագրի բովանդակության այս բռնաձիգ մեկնությունը ծայրե ի ծայր վիճելի ու կամայական է, որովհետև հիմնված չէ պատմական փաստերի վրա։

[2] Տես Ю. Кулаковский, История Византии, I, 1913, էջ 524

ընդհանուր է եղել Պարսկական Հայաստանի բոլոր շրջաններում։ Ուշադրավ է այս տեսակետից, որ արաբական տիրապետության սկզբնական շրջանում 7-րդ դարի վաթսնական թվերին, Աղվանքի հողային հարկերը եղել են բնական և ոչ դրամական։

Այդ մասին Մովսես Կաղանկատվացին, խոսելով Ջուանշիր իշխանի ճանապարհորդության մասին Մուավիայի մոտ՝ հաղորդում է հետևյալ կարևոր տեղեկությունը. «Եւ սկսեալ այնուհետև (Ջուանշիր) զթողութիւն ծանրաբեռն իւրոյ վիճակին խնդրել հարկաց, զոր ախորժելով յանձն էառ թագաւորն հարաւոյ, և հրամայեաց երկակիսեալ զհարկացն լուծ թեթևացուցանել յառաջին երրեակ չափուց զմասն մի[1] (Պատմութիւն Աղուանից, Թիֆլիս 1913, էջ 227—228)։ Թեև այս վկայությունը վերաբերվում է Աղվանքին և 7-րդ դարի վաթսնական թվերին, բայց կարող է մի ակնարկ համարվել, որ Աղվանքի հարևան շրջաններում ևս հողային հարկը կարող էր այդ բնույթն ունենալ նույն 7-րդ և թերևս նաև նախորդ դարում։

Ինչպես տեսնում ենք, Պարսկական Հայաստանի հողային հարկերի վերաբերյալ այս հատուկ խնդիրն այնքան վիճելի ու այնքան լուրջ է, որ խիստ դժվար է ընդունել Նիկ. Ադոնցի և Միքայել Փորթուգալի վերոհիշյալ կանխագուշակ եզրակացությունները, մինչև որ այդ եզրակացությունները չհաստատվեն որևէ հիմնավոր ապացույցներով։ Եթե անգամ հողային հարկերի դրամական լինելը հավանական համարվի Պարսկական Հայաստանում Խոսրով Նուշիրվանի հատուկ կարգադրությունից հետո, որ, իմ կարծիքով, դեռևս վիճելի է, համենայն դեպս, մենք ոչ մի հիմք չունենք այդ հարկերը դրամական ենթադրելու հինգերորդ դարում Հազկերտ Բ-ի ժամանակ։

Ներքև մենք կտեսնենք, որ հողային հարկերը հին Հայաստանում անվանվել են, հավանորեն, «հաս», իսկ «բաժ»-ը, որ Նիկ. Ադոնցը հոմանիշ է համարում «հաս»-ի, մատենագրական վկայություններում գործ է ածված, պարզապես, մաքսային հարկերի նշանակությամբ։ Արդ՝ եթե ճիշտ են մեր դիտողությունները, Եղիշեի վկայության մեջ հիշատակված «հաս»-ը պետք է ենթադրել իբրև հողային հարկ՝ բնական։

1 Այս հատվածի լուսաբանությունը տվել է Թադ. Ավդալբեգյանը նորերս լույս տեսած իր ուսումնասիրության մեջ, տե՛ս «Երկրագործական հավելյալ արդյունքի նորման XVII—XVIII դարերում ու XIX-ի սկզբներում»։ Նորք №—3, Երևան 1923 թ.։

## ԳԼԽԱՀԱՐԿԸ

Մխիթար Գոշն իր Դատաստանագրքում կարծում է, որ գլխահարկն այլազգիներին, այսինքն՝ մահմեդականներին վճարվող հատուկ հարկ է, ուստի այդ հարկը քրիստոնյա իշխանները չպետք է պահանջեն հավատացյալներից։ «Անդատաստան է,— ասում է նա,— իշխանաց հարկել զհպատակս, զոր հարկեն այլազգիք. զի յայլազգեաց հարկ արժան է և ոչ ի նոցունց, որպէս և առնեն Վիրք ընդ ձեռամբ անկելոցն» (հրատ. Վահան ծ. վարդ. Բաստամյանցի, Վաղարշապատ 1880, մասն Բ, ա, էջ 317)[1]։ Գոշի այս կարծիքը ճիշտ չէ, որովհետև գլխահարկը թե Սասանյան Պարսկաստանում և թե Հռոմեական կայսրության մեջ, ինչպես հայտնի է, սովորական ու հիմնական հարկերից մեկն էր։

Հատկապես, Հռոմեական կայսրության արևելյան հայկական շրջաններում «գլխահարկը» կրել է կամ սովորական անձնական հարկի բնույթ, կամ երբեմն համեմատաբար թեթև է եղել և ունեցել է, մոտավորապես, ծխահարկի նմանություն։ Հայտնի է, օրինակ, 386 թվի Թեոդոս Ա-ի հրովարտակը, որը վերաբերվում է Արմենիային ու Կապադովկիային և որի մեջ ասված է, որ «առաջ գլխահարկի նորման որոշված է եղել տղամարդկանց ամեն մեկից և կանանց երկուսից, իսկ այժմ տրվելու է՝ երկու երկու կամ երեք երեք տղամարդ և չորսական կին հաշվելով մեկ գլուխ»[2]։

Քանի որ դրամական այս հարկը գլխահարկի կամ ծխահարկի ձևով գոյություն է ունեցել Սասանյան Պարսկաստանում և Հռոմեական կայսրության մեջ, ինձ հավանական է թվում, որ նույն հարկն այս կամ այն ձևով գոյություն ունեցած պիտի լիներ նաև Արշակունյաց թագավորության ժամանակ։ Ներքև, «հաս»-ի մասին խոսելիս, կտեսնենք, որ եկեղեցական ծխահարկը, որ հիշատակված է Սահակի կանոններում, կարող էր թերևս առաջ եկած լինել աշխարհական համապատասխան հարկերի նմանողությամբ։ Եթե հաջողվի այդ ավելի որոշ կերպով ապացուցել, այդ դեպքում՝ վերոհիշյալ հարկն Արշակունյաց թագավորության ժամանակ պետք է ենթադրվի որպես երդահարկ և ոչ գլխահարկ։ Այս հարևանցի, իհարկե, մի դիտողություն է, որ կարոտ է ավելի լուրջ հիմնավորման։

1 Տես նաև էջ 314՝ «զի ոչ է հարկ գլխոյ քրիստոնէից, բայց այլազգեաց՝ յորժամ բռնի ընդ հարկաւ արասցեն»։

2 Տե՛ս՝ Cod. Theod 13[12,2], cum antea per singulos viros, per binas vero mulieres capitis norma sit censa, nune binis ac ternis viris, mulieribus autem quaternis unius pendendi capitis adtributum est.

Եթե հողային դրամական հարկերի գոյությունը վիճելի ու անհավանական էր Պարսկաստանում, ինչպես և Մարզպանական Հայաստանում, Հազկերտ Բ-ի ժամանակ (439—457 թ.), գլխահարկի գոյությունը նույն այս շրջանում կարելի է համարել միանգամայն հաստատ ու անտարակուսելի։

Սասանյան Պարսկաստանում, ինչպես տեսանք Տաբարիի վկայությունից, գլխահարկը եղել է գլխավոր հարկերից մեկը ոչ միայն Խոսրով Նուշիրվանի ժամանակ վեցերորդ դարում, այլև հնագույն շրջանում։ Որ Պարսկական Հայաստանում ևս այս հարկը գոյություն է ունեցել Խոսրով Նուշիրվանից (531—579 թ.) առաջ Հազկերտ Բ-ի ժամանակ (439—457 թ.)՝ այդ պարզ երևում է, իմ կարծիքով, Եղիշեի վերոհիշյալ վկայությունների հետևյալ հատվածներից. 1) «միայնակեաց քրիստոնեայք, որ բնակեալ էին ի վանորայս, ընդ նովին աշխարհագրաւ էարկ» (Վենետիկ 1852, էջ 39), 2) «քանզի ուստի արժան էր առնուլ հարիւր դահեկանաւ չափ, կրկին առնուին. նոյնպես և եպիսկոպոսաց և երիցանց դնէին ոչ միայն շինաց, այլ և աւերակաց» (նույնը, էջ 40)։

Այս վկայություններից կարելի է անել մի քանի կարևոր հետևություններ։ Հարկը դրված է եղել, ինչպես տեսնում ենք, միայնակյացների, եպիսկոպոսների և քահանաների վրա անձնապես. ուրեմն՝ պարզ է, որ այդ Տաբարիի հիշատակած գլխահարկն է։ Երկրորդ՝ կարելի է ենթադրել, որ դրամական այդ հարկը համապատասխան Տաբարիի վկայության ունեցել է ոչ թե ծխահարկի, այլ գլխահարկի բնույթ։ Երրորդ՝ աշխարհագիրը, որին ենթարկվել էին միայնակյացները, պետք է հասկանալ, անտարակույս, մարդահամարի նշանակությամբ։

Բացի Եղիշեից, գլխահարկի մասին ուշագրավ մի վկայություն կա նաև Մովսես Կաղանկատվացու պատմության մեջ։ Խոսելով Աղվանքի ծանր դրության մասին խազարների տիրապետության շրջանում՝ 627 թվից հետո, Կաղանկատվացին հաղորդում է հետևյալ հետաքրքիր տեղեկությունը. «Նաև զանցս վաճառաց և զկարթընկէցս ձկնորսութեան մեծամեծ գետոցն Կուրայ և Երասխայ՝ զամենայն ճշդիւ պահանջէր (Շաթ), և զդիտրաքմայն ըստ սովորութեան աշխարհագրի Պարսից թագաւորութեանն» («Պատմութիւն Աղուանից աշխարհի», Թիֆլիս 1913, Բ. գլ. ԺԶ, էջ 190)։ Այս վկայության մեջ, որը վերաբերվում է, անշուշտ, գլխահարկին, որոշված է այդ հարկի սովորական տարածված չափը։ Թ. Նյոլդեկեն Տաբարիի գերմաներեն թարգմանության մեջ հաղորդում է, որ չինացի Հիուենթսանգի (Mem. sur contrées occ. II 179) վկայությամբ՝ Պարսից թա-

գավորության մեջ յուրաքանչյուր ընտանիք վճարել է գլխահարկ մարդագլուխ 4 արծաթ (Tabari էջ 246, ծան. 2)։ Այս վերջին վկայությունը, ինչպես տեսնում ենք, հաստատվում է նաև Կաղանկատվացու վերոհիշյալ տեղեկությամբ։ «Դիտրաքմայն» (հունարեն didrachmon հոգնակի didrachma), ամենայն հավանությամբ, գործ է ածված նրա մոտ սատերի իմաստով, որի կշիռը հավասար էր 4 դրամի[1]։ Ընդունելով Սասանյան արծաթ դրամի կշիռը համաձայն Անանիա Շիրակացու հաշիվներին, մոտավորապես 4 դրամ, նրա դրամական արժեքը հավասար կլինի, մոտավորապես այժմյան 25 կոպեկին[2]։

Ուրեմն՝ գլխահարկի սովորական ընդհանուր չափը պետք է լինի Սասանյան Պարսկաստանում մարդագլուխ, մոտավորապես, 1 ռուբլի։ Հարկավոր է, իհարկե, որոշել դրամական այդ գումարի նաև իրական արժեքը, որ Սասանյանների ժամանակ, հավանորեն, ավելի բարձր եղած պիտի լիներ, քան այժմ։ Սակայն այս խնդրի լուսաբանությունը, դժբախտաբար, դեռևս հնարավոր չէ, որովհետև, որքան ինձ հայտնի է, այդ մասին պատմական համապատասխան տվյալներ գրեթե չկան։ Ուշադրության արժանի է այդ տեսակետից, որ Մահմեդի հաջորդ Աբու Բեքրի իշխանության շրջանում (632—634 թ.), ճիշտ այն ժամանակ, որին վերաբերվում է Կաղանկատվացու վերոհիշյալ վկայությունը, Արաբիայում մեկ ոչխարը գնահատվել է 10 դրամ[3]։

Ալֆ. Կրեմերը դրամի արժեքը խալիֆատի ծագման շրջանում ենթադրում է, մոտավորապես, 1 ֆրանկ (Culturgeschichte էջ 15) և ոչխարի գինը ընդունում 10 ֆրանկ (էջ 52)։ Դրամի իրական ար-

---

1 Անանիա Շիրակացու «Յաղագս կշռոց և չափուց» գրվածքի երկու ձեռագրում «դիտրաքմայ»-ի մասին կա հետևյալ վկայությունը, որից երևում է, որ «դիտրաքմայ»-ն հաճախ հավասար է համարվել սատերին՝ «դրաքմեն Բ դրամակշիռ է. դիտրաքմայն Դ դրամակշիռ է. դիտրաքմայն և սատերն մի է» (տես Անանիայի Շիրակունւոյ, Մնացորդք բանից, Ս. Պետ. 1877, էջ 33)։ Հմմտե նաև Յ. վարդ. Ավգերյանի, Բացատրութիւն չափուց և կշռոց նախնեաց, Վենետիկ 1821, էջ 77—78։

2 Տես «Յաղագս կշռոց և չափուց», էջ 28—29՝ «դրամ ըստ պարսկական լեզուին անուանեցաւ և յարծաթոյ տպաւորեցաւ, որ է Չ մասն լտերս»։ Այս հաշվով նրա կշիռը յոթերորդ դարում պետք է ընդունել մոտավորապես 4 գրամ։ Կրեմերը իր Culturgeschichte des Orients unter den Chalifen, 1875 թ. աշխատության մեջ Սասանյան դրամի կշիռն ընդունում է 3.9 գրամ (էջ 60)։ Ֆր. Շպիգելի մոտ սասանյան դրամի արժեքը որոշված է 65—70 սանտիմ (Eranische Alterthumskunde, 13. III, Leipzig, 1878 էջ 633), իսկ Թ. Նյոլդեկեյի Տաբարիի թարգմանության մեջ՝ 70 պֆեննինգ կամ 86 սանտիմ (Tabari էջ 245, 355)։ Թ. Նյոլդեկեյի հաշիվը տարբեր է, որովհետև նա սասանյան դրամի կշիռը համարել է մեկ մսխալ։

2 Տե՛ս A. Cremer, Culturgeschichte, Wien 1875, էջ 52։

ժողովրդյան կարևոր այս փաստը, թեև Սասանյան Պարսկաստանի համար վճռական որևէ նշանակություն չունի, սակայն, այնուամենայնիվ, ուշագրավ մի ակնարկ է, որ դրամի իրական արժեքը կարող էր հին ժամանակներում ևս լինել բավական ցածր և համապատասխան, մոտավորապես, նորագույն ժամանակվա գների որոշ տեղերում։

Վերոհիշյալ վկայությունների օգնությամբ որոշվում է, իմ կարծիքով ոչ միայն գլխահարկի գոյությունը Մարզպանական Հայաստանում, այլ նրա հավանական ընդհանուր չափը։

Ներքև մենք կտեսնենք, որ գլխահարկը հին Հայաստանում անվանվել է, հավանորեն, «սակ», ինչպես այդ ճիշտ գուշակել է Նիկ. Ադոնցը։ Հավանական է, ուրեմն որ Եղիշեի վերոհիշյալ վկայությունների մեջ հիշատակված են Սասանյան Պարսկաստանի հիմնական հարկերը՝ հողայինը և գլխահարկը. առաջինը, ըստ երևույթին, անվանված է նրա մոտ «հաս», իսկ երկրորդը՝ «սակ»։

## «ՀԱՐԿՔ ԼԵՐԱՆՑ ԵՎ ԴԱՇՏԱՆՑ ԵՎ ՄԱՅՐԵԱՑ»

Միքայել Փորթուգալը Դենշապուհի աշխարհագրի բնույթը Հազկերտ Բ-ի ժամանակ բացատրում է իբրև մարդահամար և միժամանակ իբրև ընդհանուր հողաչափություն՝ ոչ միայն մշակվող հողերի, այլև լեռների, դաշտերի, անտառների և նույնիսկ ավերակ տեղերի։ «Իսկ հարկերը թեթևացնելու կամ ծանրացնելու նպատակով,— ասում է նա,— եղած աշխարհագիրը բնական է, որովհետև անձնական տուրք մը կամ գլխահարկ մը հաստատելու համար ազգահամարն անհրաժեշտ է. բայց որովհետև լերանց, դաշտաց և անտառաց և շինից և աւերակաց վրա այլ և այլ տուրքեր դրուեցան կամ եղածներն աւելցան, պետք է հետևցնել՝ թէ այդ աշխարհագիրը cadastre մի էր և ոչ պարզ ազգահամար»[1]։ Փորթուգալը, ինչպես տեսնում ենք, ենթադրում է, որ Պարսկաստանում Հազկերտ Բ-ի ժամանակ հարկ է դրված եղել բոլոր հողերի վրա՝ մշակվող թե անմշակ, մասնավորապես, նաև բոլոր լեռների վրա։

Արդ՝ ճի՞շտ է արդյոք այդ։ Հավանակա՞ն է արդյոք, որ Պարսկական Հայաստանում Հազկերտ Բ-ի ժամանակ հարկ է առնվել ոչ միայն մշակվող, այլև անմշակ հողերից, անգամ ավերակներից։ Կարելի՞ է արդյոք Եղիշեի մոտ հիշատակված «Հարկք լերանց և դաշտաց և մայրեաց» հասկանալ վերոհիշյալ իմաստով։ Վերջապես՝

---

1 Տես «Եղիշեի վարդապետի վասն Վարդանայ և հայոց պատերազմին» Վենետիկ 1903, էջ 215, ծան. 1։

որո՞շ է արդյոք, որ Դենշապուհի աշխարհագիրն ունեցել է, անպայման, ոչ միայն ազգահամարի, այլև ընդհանուր հողաչափության բնույթ։

Քննենք նախ առաջին հարցը։ Եղիշեի համապատասխան վկայությունը հետևյալն է՝ «սոյնպէս և եպիսկոպոսաց և երիցանց դնէին, ոչ միայն շինաց, այլ և աւերակաց» (Վենետիկ 1852, էջ 40)։ Այս վկայությունից ոչ մի կերպ չի կարելի հետևցնել, որ հարկ է դրված եղել ավերակների վրա, ինչպես այդ թյուրիմացաբար ենթադրել է Միքայել Փորթուգալը։ «Ոչ միայն շինաց, այլ և աւերակաց» բառերը պետք է, անտարակույս, իբրև լրացումն կապակցել նախորդ նախադասության հետ։ Եղիշեն ուզում է ասել, որ հարկ է պահանջվել անգամ ավերակ տեղերի չքավոր երեցներից։ Ավերակներից հարկ առնելը, իմ կարծիքով, այնքան է օտարոտի ու անհավատալի, որ նրա գոյությունը Պարսկական Հայաստանում, նույնիսկ Հազկերտ Բ-ի ժամանակ, պետք է համարել միանգամայն անհավանական։

Ավելի որոշ է Եղիշեի մոտ «լերանց, դաշտաց և մայրեաց» հարկերի հիշատակությունը։ Լեռների ու դաշտերի հարկերը, ըստ երևույթին, պետք է հասկանալ, գլխավորապես, իբրև արոտատեղերի հարկ։ Բայց անվիճելի՞ է արդյոք, որ Պարսկական Հայաստանում հատուկ հարկ է դրվել բոլոր լեռների, դաշտերի ու անտառների վրա։ Այս խնդիրն այնքան կարևոր է ու լուրջ, որ կարոտ է ուշադիր քննության։

Ինչպես վերև տեսանք, Տաբարիի վկայության մեջ այս հարկերը չեն հիշված։ Արաբական խալիֆայության սկզբնական շրջանում, թեև Սասանյան թագավորության արքունի հարկերը մնացել էին գրեթե նույնը, սակայն այս հարկերը, որքան ինձ հայտնի է, չեն մատնանշված իբրև ընդհանուր ու հիմնական հարկ։ Հետաքրքիր են այս հարկերի մասին Մխիթար Գոշի հետևյալ վկայությունները. 1) «Արօտի այլ հարկ մի լիցի, զի այն իսկ են արօտականք որ հարկին» (Դատաստանագիրք, մասն երկրորդ, Ա, էջ 315), 2) «Իսկ պտուղ ամենայն գտեալ ի մայրիս իւրաքանչիւր սահմանաց նոցա լիցի։ Տինականաց իրաւացի է տասանորդել օտարացն ի կթել պտղոյն, որ ոչ իւրեանց իցէ, այնոցիկ՝ որոց իցէ սահմանն և ըստ խնդրոյ նոցին կամօք եղիցի։ Այսպէս և փայտ ի շինուած, և խոտ յարօտ և ի հնձել, և հող ի վարել» (Նույնը, մասն երկրորդ, Ժ, էջ 327)։ Գոշի այս կանոնները, թվում է ինձ, որ համապատասխան պիտի լինեն այն ընդհանուր ու իրական կարգերին, որ սովորական են եղել նրա ժամանակ։ 3. Կարևոր այս կանոնների առթիվ, որ նույնությամբ առաջ են բերված նաև Սմբատի Դատաստանագրքում,

հայտնել է այն կարծիքը, որ անտառների, արոտի, ջրի, որսի ու ձկնորսության վերաբերմամբ գերագույն իշխանության ու տնօրինության իրավունքները, որ ֆինանսական գիտության մեջ անվանվում են regalia պատկանել են Գոշի ու Սմբատ Գունդստաբլի ժամանակ ոչ թե արքունիքին, այլ ֆեոդալ հողատերերին։ Ֆեոդալական այդ regalia-ների արտահայտությունն է, նրա կարծիքով, այն ուշագրավ փաստը, որ շինականները կարող էին օգտվել անտառներից, արոտներից և մյուս իրավունքներից իրանց տիրոջ հողերում, բայց այդ սահմաններից դուրս նույն իրավունքների համար վճարելու էին տասանորդ օտար տերերին։ Նրա ասելով՝ ինչպես Արևմտյան Եվրոպայում, նույնպես և այստեղ, նախնական արքունի regalia-ները թողնվել են հետզհետե հօգուտ ֆեոդալ հողատիրոջ[1]։

3. Կարստի այս դիտողությունների մեջ ճիշտ ու անվիճելի կարելի է համարել միայն այն, որ ԺԲ-րդ դարում անտառները և արոտատեղիները պատկանել են Հայաստանում և Ռուբինյան թագավորության մեջ հողատերերին և գտնվել են նրանց տնօրինության տակ։ Իսկ թե դրանք Հայաստանում էլ, ինչպես և Արևմտյան Եվրոպայում, եղել են արքունի regalia-ներ պատմական հնագույն շրջանում, այդ հարկավոր է, անշուշտ, ապացուցել դրական որևէ փաստերով։

Արդ՝ կարելի չէ՞ արդյոք Եղիշեի վերոհիշյալ վկայության մեջ «լերանց և դաշտաց և մայրեաց» հարկերի հիշատակությունը հավանական մի ապացույց համարել, որ արոտատեղիները և անտառները եղել են Մարզպանական Հայաստանում արքունի regalia։

Եթե ի նկատի ունենանք, որ նախարարությունները շատ ավելի զորեղ են եղել Հայաստանում, քան ֆեոդալական ուրիշ երկրներում, որ նրանք ունեցել են ընդարձակ ու բացարիկ տիրական իրավունքներ, ինձ թվում է, դժվար ու անհավանական կլինի ենթադրել, որ նախարարապատկան շրջաններում Արշակունյաց կամ Սասանյանների ժամանակ անտառները և արոտատեղիները կարող էին լինել թագավորական հատուկ regalia։ Եղիշեի վկայությունը վերաբերվում է, իմ կարծիքով, միայն այն լեռներին, դաշտերին և անտառներին, որոնք «ընիկ սեփական կալուած» էին Արշակունի թագավորների և նրանց անկումից հետո պետական սեփականություն էին դառել Սասանյան Պարսկաստանի։ «Հարկք լերանց և դաշտաց և մայրեաց» հնարավոր է, ուրեմն, հասկանալ նաև նեղ իմաստով, իբրև արքունական կալվածքների հարկեր։ Եթե այս լուսաբանու-

[1] Josef Karst, Sempadischer Kodex, Strassburg 1905, Bd. II, էջ 17

*թյունն ընդունելի համարվի, այդ դեպքում՝ արքունի այդ հարկերը կլինեին ոչ թե միջնադարյան* regalia՝ *հատուկ մենաշնորհ թագավորական գերագույն իշխանության, այլ հողատիրական սովորական մի եկամուտ։*

*Հայտնի է արդեն, որ մարզպանության շրջանում թագավորական են համարվել, իբրև* regalia *Հայաստանի ոսկու հանքերը, որ գտնվում էին Փարանգիոնում*[1]*։ Կարող էին լինել և ուրիշ* regalia-*ներ, որոնց մասին վկայություններ չեն պահպանվել։ Բայց ենթադրել, որ թագավորական իշխանությունն ունեցել է Հայաստանում մենաշնորհի գերագույն իրավունքներ բոլոր արոտատեղերի, անտառների, ջրի, որսի ու ձկնորսության վերաբերմամբ, այդ, իմ կարծիքով, անհավատալի է ու միանգամայն անհավանական։*

*Միքայել Փորթուգալը, ինչպես վերև տեսանք, Դենշապուհի աշխարհագիրը համարում է ոչ միայն «ազգահամար», այլ նաև ընդհանուր հողաչափություն՝* cadastre*։ Նրա ասելով՝ քանի որ «լերանց, դաշտաց և անտառաց և շինից և աւերակաց վրա» տուրքեր են դրել կամ եղած տուրքերն ավելացրել, կարելի է դրանից հետևցնել, որ աշխարհագիրն ունեցել է* cadastre-*ի բնույթ։ Վերև մենք բացատրեցինք, որ Եղիշեի մոտ հիշատակված են ոչ թե «շինաց և աւերակաց» հարկերը, այլ «շինաց և աւերակաց» երեցների հարկերը։ Նմանապես՝ «Հարկք լերանց, դաշտաց և անտառաց» վերաբերվում են, հավանորեն, ոչ թե ամբողջ երկրին, այլ արքունի միայն կալվածքներին։ Վիճելի են, ուրեմն, Փորթուգալի պատճառաբանության հենց հիմնական նախադրյալները։*

*Անկախ նույնիսկ փաստական այս առարկություններից, ինձ թվում է, դժվար է, ընդհանրապես, ենթադրել, որ Դենշապուհի աշխարհագրի ժամանակ կարող էին չափված լինել Պարսկական Հայաստանի բոլոր լեռները, դաշտերը, անտառները և անգամ ամայի ու ավերակ տեղերը։ Ինչ վերաբերում է մշակվող հողերին, սրանց հողաչափությունը ևս ինձ անհավանական է թվում, որովհետև, ինչպես վերև ենթադրեցինք, հողային հարկերը այս դարաշրջանում եղել են, հավանորեն, բնական և ոչ դրամական։ Ընդհանուր հողաչափությունն անհրաժեշտ պիտի լիներ, բնականաբար, Կավատի (488—531 թ.) և Խոսրով Նուշիրվանի (531—579 թ.) ժամանակ, որովհետև հողային բնական հարկերը վերածվել էին դրամականի, որը վճարվելու էր հողի տարածության յուրաքանչյուր 1* garib *միա-*

---

[1] **Տես** A. Christensen, L'empire des Sassanides, Kobenhavn 1907, էջ 58, **նաև** Procopii, Bellum Persicum, I, 15

վորից, սակայն վեցերորդ դարից առաջ, քանի որ նույն հարկերը բերքից էին տրվում, ընդհանուր հողաչափությունը, իմ կարծիքով միանգամայն ավելորդ էր ու անիմաստ։ Դենշապուհի աշխարհագիրը, այս դիտողությունների համաձայն, հավանական է ենթադրել, գլխավորապես, իբրև ընդհանուր մարդահամար։ Եթե անգամ հնարավոր համարվի,՝ որ այս աշխարհագրի ընթացքում կարող էին որոշ չափով հաշվի առնել արքունական, նախարարական և մյուս հողերն ու կալվածքները, այդ հաշվառումը դժվար թե նման լիներ այն հատուկ cadastre-ին, որ անհրաժեշտ էր համարվել վեցերորդ դարում։

## ՀԱՐԿԱՀԱՎԱՔՄԱՆ ՎԱՐՉԱԿԱՆ ԿԱՐԳԸ ԵՎ ՄԱՔՍԱՅԻՆ ՀԱՐԿԵՐԸ

Հարկահավաքման կազմակերպության մասին Տաբարին տալիս է հետևյալ կարևոր տեղեկությունը։ Նրա ասելով՝ աշխարհագիրը վերջանալուց հետո՝ Խոսրով Նուշիրվանը կարգադրում է հարկերի գրույքների ցուցակներից մեկական օրինակ ուղարկել հարկահան պաշտոնյաներին, նաև մեկական օրինակ՝ շրջանների դատավորներին։ Այս վերջիններին նա հրամայում է արգիլել վարչական պաշտոնյաներին, որ նրանք չպահանջեն ավելի հարկ, քան որոշված է ցուցակներում[1]։

Այս վկայությունից պարզ երևում է, որ Խոսրով Նուշիրվանի ժամանակ հարկերը չեն տրվել կապալով, ինչպես այդ ընդունված էր երբեմն պատմական հին ժամանակներում, այլ գանձվել են վարչական կարգով և հատուկ պաշտոնյաների միջոցով։

Հայկական աղբյուրների վկայություններից ևս կարելի է, իմ կարծիքով, հետևցնել, որ Հայաստանի հարկերի հավաքումը հանձնված է եղել մարզպանության շրջանում, հավանորեն, նաև Արշակունյաց ժամանակ, ոչ թե կապալառուների, այլ կառավարչական հատուկ պաշտոնյաների, որ անվանվում էին «գործակալ»-ներ։ Այդ դժվար չէ եզրակացնել, օրինակ, հետևյալ վկայություններից 1) Ղազար Փարպեցի, Պատմություն Հայոց, Բ, գլ. ԽԵ, էջ 83 (Տփխիս 1904)՝ «Եւ հարկքս ամենայն աշխարհիս Հայոց առ իս են, և գործակալք ամենայն յիմում ձեռին են, և այլևս բազում կարասի, զոր ի պարսիկ գործակալացն հանի՝ որ աստ ի Հայս էին, և յիմում գանձի կայ». 2) Կանոնք Յովհաննու Մանդակունւոյ Գ. Գ, էջ 90 (հրատ.

[1] Th. Noeldeke, Tabari, էջ 247։

Ա. Ղլտճյանի)՝ «Եթե ոք ի քահանայից ի գնել կամ ի վաճառել կըրթեսցին, կամ իշխանութեամբ իշխանաց վարեսցին՝ հարկապահանջս լինելով և յոստիկանս կարգել աշխարհական գործոց, աստ գիրն, «առ նոսա զաւեր նոցա»։

Թե Արշակունեաց և թե մարզպանության շրջանում հարկային գործի վարչական գերագույն իշխանությունը, իբրև հատուկ «գործակալություն», անվանվել է Հայաստանում «հազարապետություն»։ «Հազարապետ»-ը վարել է ոչ միայն հարկահավաքման գործը, այլև պարտավոր է եղել աջակցել երկրի շինարարական աշխատանքներին և շինական տնտեսության զարգացմանը։ «Հազարապետության» այս վերջին պարտականությունները, անշուշտ սերտ կապված էին հարկահանության գործի հետ։ Հողի մշակությունը, ոռոգման գործը և, ընդհանրապես, երկրի շեն վիճակը նշանակություն ունեին, իբրև հիմք և աղբյուր պետական բարեկեցության և պետական եկամուտների։ «Հազարապետ»-ի աշխարհախնամ գործունեության կարևոր այս կողմը շեշտված է, հատկապես, Փավստոսի պատմության հետևյալ հատվածում. «Եւ սկիզբն գործակալութեանն հազարապետութեանն՝ աշխարհատեսն խնամակալութեանն, աշխարհաշէն աշխարհատած դեհկանութեան, շինականաշէն ազգն Գնունեաց հազարապետն ամենայն երկրին» (Վենետիկ 1832, էջ 67)։ Իսկ նույն պաշտոնի ֆինանսական բնույթը կարելի է ենթադրել Նոր Կտակարանի հայերեն թարգմանությունից, որի մեջ «Հազարապետ» բառը համապատասխանում է հաճախ հունարեն voikonomos («տնօրեն, տնտես») բառին (Ա. Պետ. Դ, 10, Ա. Կորնթ Դ, 1 և 2)։ Թովմա Արծրունու պատմության մեջ «հազարապետ» բառը գործ է ածված իբրև տեսուչ և վերակացու արքունի հարկերի։ «Ի դառնալն Ապուսէթի յԱսորիս,— ասում է Թովման,— և Մուսեի հաւատալ զվերակացութիւն հարկաց արքունի, և ընդդեմ եկեալ յարքունուստ հազարապետ ումն հարկաց Ծովափի կոչեցեալ ամիրայ Ալայ անուն» (Պատմութիւն տանն Արծրունեաց, Պետերբուրգ 1887, Դպր. Բ, գլ. Զ. էջ 111)։ Իբրև պարսկական Հայաստանի «հազարապետ»-ներ հիշված են Կորյունի և Ղազար Փարպեցու մոտ՝ Վահան Ամատունին Հազկերտ Բ-ի քաղաքական վերանորոգումներից առաջ և պարսիկ Վեհվեհնամը Ատրվշնասպի մարզպանության շրջանում[1]։

Սասանյան պետության մեջ հարկերի վերաբերյալ բոլոր գործերը և գրագրությունները կենտրոնացած են եղել «դիւան»-ներում։

---

[1] Տե՛ս Կորիւն, Պատմութիւն վարուց և մահվան սրբոյն Մեսրոպայ վարդապետի, Վենետիկ 1804, էջ 44 և Ղազար Փարպեցի, Պատմութիւն Հայոց, Տփխիս 1904, Դ. գլ. կզ, էջ 118։

Պարսկական Հայաստանի «դիւանը»-ը գտնվել է Դվին քաղաքում՝ մարզպանության վարչական կենտրոնում։ Այդ «դիւան»-ին ենթակա են եղել բոլոր շրջանների գործերը։ Հայտնի է սակայն, որ 572 թվի նախարարական ապստամբությունից առաջ Սյունիքը միացրել էին Ատրպատականի «շահրմար»-ին և նրա գործերի «դիւան»-ը փոխադրել էին Դվինից Փայտակարան քաղաքը։ Այդ անջատման մասին Սեբեոս պատմագիրը հաղորդում է հետևյալը. «Յայնժամ յառաջ քան զայս ապստամբեալ ի բաց եկաց ի Հայոց՝ անուանեալ Վահան իշխան աշխարհին Սիւնեաց, և խնդրեաց ի Խոսրովայ յարքայէն Պարսից, զի տարցեն զդիւան աշխարհին Սիւնեաց ի Դունայ ի Փայտակարան քաղաք, և կարգեսցէ զքաղաքն ի շահրմար[1] Ատրպատականի. զի մի ևս կոչեսցի անուն Հայոց ի վերայ նոցա։ Եւ կատարէր հրամանն» (պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն, Պետերբուրգ 1879, գլ. Ա, էջ 26)։ Լինելով վարչական կենտրոն Պարսկական Հայաստանի, Դվինը միևնույն ժամանակ պարսկահռոմեական դաշինքների համաձայն ճանաչված է եղել իբրև միջազգային առևտրի գլխավոր վայրերից մեկը։ Յուստինյանի օրենսգրքից հայտնի է, որ, հավանորեն, 387 թվի դաշնադրությամբ, ուրեմըն՝ Հայաստանի բաժանումից հետո՝ որոշված են եղել առևտրական հարաբերության ու փոխանակության համար երեք հատուկ վայր՝ հռոմեական Կալլինիկոնը, պարսկական Մծբինը, նաև Պարսկական Հայաստանում նախ Արտաշատը, իսկ հետո Դվինը[2]։ Իբրև միակ վայր, ուր թույլ էր տրված առևտուր անել երկու կողմի վաճառականներին, Դվինը, բնականաբար, ստացած պիտի լիներ միջազգային կենտրոնի բնույթ։ Պրոկոպիոսի վկայությամբ՝ առևտրականներն ապրում էին այստեղ բազմամարդ գյուղերում՝ որ գտնվում էին իրար մոտ։ «Հնդկաստանից, հարևան Վրաստանից, Պարսկաստանի գրեթե բոլոր ժողովուրդներից, նաև հռոմեական որոշ մաս-

1 «Շահրմար» բառը Ք. Պատկանյանի հրատարակության մեջ տպված է մեծատառ, սակայն այդ բառը հասարակ անուն է և ոչ հատուկ։ Նույն բառը, իբրև փոխառություն պարսկերենից, գործածական է եղել նաև հայերենում, բայց լինելով հնագույն շրջանի փոխառություն՝ արտասանվել է «աշխարհամար»։ «Շահրմար»-ի ուղիղ նշանակությունը՝ իբրև «աշխարհագիր»՝ մատնացույց են արել Յ. Մարկվարտը և Ն. Ադոնցը. տե՛ս Eranchahr Berin 1901, էջ 122 և «Армения в эпоху Юстиниана», էջ 220—221։ Սյունիքը և Փայտակարանը, միացված լինելով Ատրպատականի «շահրմար»-ին, վարչական տեսակետից ենթակա են եղել, հավանորեն, Ատրպատականի գլխավոր կենտրոնին։

2 Տե՛ս Cod Zust 4,63 Պարսկա-բյուզանդական առևտրի ու հաղորդակցության կարևոր այս խնդիրը քննության է առնված Կ. Գյուտերբոկի «Բյուզանդիոն և Պարսկաստան» ուսումնասիրության մեջ. տե՛ս «Հանդէս Ամսօրեայ» 1910, հունվար, էջ—14—17։

րից,— ասում է Պրոկոպիոսը,— բերում էին Դվին ապրանքներ և այստեղ վաճառում» (Պրոկոպիոս, de Bello Persico, II 25)։ Դվինը, որպես ապրանքների մթերանոց և առևտրական փոխանակության որոշված վայր, եղել է, անշուշտ, Սասանյան Պարսկաստանի գըլխավոր մաքսային կենտրոններից մեկը։ Կ. Գյուտերբոկը, ուշադրության առնելով, որ Մենանդրի պատմության մեջ առևտրական հաղորդակցության այս վայրերն անվանվում են dekateutêria՝ dekateutêrion (=տասնորդարան) հունարեն բառից հետևցնում է, որ «երկու պետությեանց համար ալ որոշված էր ներմուծության մաքսը վաճառքին արժեքին տասը առ հարյուրը» (տես ՀԱ, 1910, հունվար, էջ 16)։ Վ. Հայտը ևս իր Ceschichte des Levantehandels աշխատության մեջ, խոսելով բյուզանդական առևտրի մասին խաչակրաց արշավանքներից առաջ, կարծում է, որ արտահանության մաքսը եղել է Բյուզանդիայում, ընդհանրապես, 10 տոկոս արժեքից։ Այդ «տասնորդ»-ից են ծագում, նրա կարծիքով, մաքսավորների dekatêlogoi և մաքսային վայրերի dekateutêria անունները[1]։ Այս ընդհանուր ենթադրությունները, որ հիմնված են բառաքննական դիտողությունների վրա, թեև ուշագրավ են ու հետաքրքիր, սակայն, իմ կարծիքով, չեն կարող հաստատուն ու անվիճելի մի ապացույց համարվել, որ մաքսային հարկերը մնացել էին շարունակ նույնը պարսկա-բյուզանդական հարաբերությունների տարբեր շրջաններում։ Ինձ թվում է՝ Սասանյան Պարսկաստանի նկատմամբ այս խնդիրը կարոտ է դեռ լուսաբանության ավելի որոշ ու համոզիչ փաստերով։

---

Վերջացնելով ընդհանուր այս տեսությունը Հայաստանի արքունի հարկերի մասին մարզպանության շրջանում, կարևոր եմ համարում նաև քննության առնել և լուսաբանել մատենագրական աղբյուրների մեջ հիշատակված այն բոլոր հարկերի նշանակությունը և բովանդակությունը, որ վերաբերվում են պատմական հնագույն այս շրջանին։ Այս հատուկ ուսումնասիրությունն ավելի քան անհրաժեշտ էր, որովհետև, ինչպես կտեսնենք, հարկերի նշանակությունը սխալ է մեկնվել հաճախ նորագույն իսկ գիտական աշխատություններում։ Հիմնական իմ նպատակն է պարզել առայժմ, ըստ կարելվույն, արքունի հարկերի անունները Մարզպանական Հայաս-

1 Տե՛ս Վ. Հայտի աշխատության ֆրանսերեն թարգմանությունը՝ հատ 1, էջ 56 ծանոթ. 1։ Histoire du commerce du Levat, Leipzig 1923։

*տանում, ուստի հարկերի խնդիրը քննության է առնված այստեղ միայն այն չափով, ինչ չափով որ այդ կարևոր էր ու անհրաժեշտ այդ հատուկ նպատակի համար։*

## «ԲԱԺ»

*Հայկական «բաժ» հարկը, ինչպես տեսանք, Ն. Ադոնցը համարում է հողային հարկ։ Հ. Մուսայելյանն «Անդրկովկասի հողային պայմաններն» իր աշխատության մեջ (Վաղարշապատ 1910) առաջ է բերում Ն. Ադոնցի այս կարծիքը և ենթադրում է նույնպես, որ «բաժը պետք է հողային հարկը եղած լինի, իսկ սակը՝ գլխահարկ» (էջ 16)։*

*Ն. Ադոնցից դեռ շատ առաջ պրոֆ. Հ. Հյուբշմանն իր* Armenische Grammatik *գրքում հայկական «բաժ»-ը թարգմանել է գերմ.* Zoll, *այսինքն՝ մաքս, և ենթադրել, որ «բաժ»-ը փոխառություն է պարթևերենից (էջ 114)։ Հայկազյան լեզվի նոր բառգրքի աշխատակիցները «բաժ»-ը մեկնել են, իբրև «մաքս վաճառելի իրաց»։ Միքայել փաշա Փորթուգալը «Եղիշէի վարդապետի վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին» հայտնի իր աշխատության մեջ «բաժ»-ը հասկացել է նույնպես, իբրև «փոխադրության տուրք» (էջ 218, ծան. 1)։*

*Նորերս լույս էր տեսել պրոֆ. Եղիազարովի աշխատությունը* Исследования по истории армянского права публичного и частного, *որի մեջ հեղինակը, հիմնվելով Շիրակի ու Անի քաղաքի 11—13-րդ դարերի արձանագրությունների վրա, փորձ է արել լուսաբանել «բաժ» հարկի նշանակությունը, բայց, ինչպես կտեսնենք, այդ փորձն ավելի քան անհաջող է։*

*Ի նկատի առնելով մատենագրական աղբյուրների վկայությունները, ինչպես և արձանագրությունները, իմ կարծիքով, կարելի է հաստատապես պնդել, որ «բաժ»-ը ոչ հողային հարկ է, ոչ էլ գլխահարկ, այլ գործ է ածված, գրեթե միշտ, մաքսային հարկի նշանակությամբ։*

*Հայկական «բաժ»-ի իսկական իմաստը պարզելու համար կարևոր եմ համարում առաջ բերել այդ հարկի վերաբերյալ բոլոր կարևոր վկայությունները, որ կարողացել եմ առայժմ հավաքել։*

1. И. А. Орбели. Вопросы и решения вардапета Анании Ширакского, Петрогр. *1918, էջ 21—22. «Այր մի վաճառական էանց ընդ երիցս քաղաքս և բաժ արարին յառաջնումն և Փանին զկէս և զերևոր իրացն. և յերկրորդ քաղաքին թուեցան զոր ինչ ունէրն և*

հանին զկէս և զերևորն... և մինչ ի տուն եկն, մնացեալ էին դահեկանք մետասան։ Արդ գիտեա թէ ընդ ամենայն քանի՞ դահեկան ունէր»[1]։

2. Կարապետ Կոստանյանց, Վիմական տարեգիր, Ս. Պետերբուրգ 1913, էջ 9՝ Արուճ, 987 թ. «Յանուն Աստուծոյ ի թուական ՆԼԶ ես Սմբատ Շահնշահ, որդի Աշոտոյ Շահնշահի, ազատեցի վասն իմ հաւրն հոգւոյն եւ իմ արեւշատութեան եւ մեղաց թողութեան զշաչակաւոր բաժէ շնորհիւն Աստուծոյն։

3. Վիմական տարեգիր, էջ 27, Անի, 1057—1063 թ.[2] «Եւ գինեւոր Անեցի, եթէ սայլով, եթէ գրաստով՝ ազատ է։ Եւ Անեցի, որ իւրենն մորթելիք գնէ, բաժն ազատ է։ Եւ շալակաւոր Անեցի յամէն ցեղ բաժին կէսն ազատ է։ Եւ ի կապճին տարին դահեկանին Զ դրամ, այժմ տան Դ, Բ ազատ է։ Եւ մսագործի, եթէ պախրէի լինի գլուխ, եթէ ոչխարի, կէսն տա, կէսն ազատ է»։

4. Վիմական տարեգիր, էջ 71՝ Շիրակաւան, 1228 թ. «Թողաք զգեղիս Շիրակա զապուրիշի և զչրսահին բաժն յորդեցէ յորդիք ազատ ի բաժէն»։

5. Վիմական տարեգիր, էջ 106՝ Անի, 1263 թ. «Բարձաք ի յԱնո իրիցանուս զբաժն, զոր ի սկզբանէ ազատ էր, մեք վերստին այլ հաստատեցաք. չունի ոք իշխանութիւն բաժ ուզելու ոչ խնչ ազգ ով իցէ որ կապէլոր լինի»։

6. Վիմական տարեգիր, էջ 160՝ Անի, 1320 թ. «Ես Սարգիս Միլենց բաժրարս թողի զԱրջուառճո սբ Գրիգորո զբաժն մեծ և զփոքր վասն հանգստեան պատրոնին մերոյ Շահնշահի և աստուածատուր զաւակացն Զաքարիայի են»։

7. Վիմական տարեգիր, էջ 221՝ Անի, անթվական. «և զամենայն հարկապահանջութիւն բարձին զմ... զթաղաւ, զհեծել, զղափըչուն, զախսրթամարն եւ զդռնագիրն՝ ի բաժ, ի դաղմս և ի մուսայիպն դարձուցին»։

8. Վիմական տարեգիր, էջ 222՝ Անի, անթվական. «Ես Նուրայտին Քոթիթս իմ ընկերաւքս եկի յԱնի տամղիս վերայ, տեսայ զԱնոյ իրիցանուս զխաղեխին հրամանքն որ ի սկիզբանէ բաժ ու տամղա

---

1 Տես նաև Գալուստ Տէր-Մկրտչյան, Անանիա Շիրակացի, Վաղարշապատ 1896, էջ 23։

2 Կոստանդին Դուկասի թագավորության ժամանակվա արձանագրություն է, ուստի փոխանակ 1057—1063 թթ. պետք է լինի՝ 1059—1064 թթ.։ Կոստանդին Դուկասի թագավորության սկիզբը ենթադրվում է այժմ 1059 թվին։ Ալփասլանը, ինչպես հայտնի է, նվաճել է Անի քաղաքը 1064 թվին։ Արձանագրությունը գրված է, հավանորեն 1059—1064։

չէին տվել. ես այլ հաստատեցի իմ ընկերացս, որ ոչ բաժ տան ու ոչ տամղայ»։

Վերոհիշյալ բոլոր վկայությունների մեջ, բացի չորրորդից «բաժ»-ն ունի, իմ կարծիքով, մաքսային հարկի նշանակություն։ Առաջին վկայությունն այնքան պարզ է, որ կարոտ չէ մեկնության։ Երկրորդ վկայության մեջ ասված է, որ 987 թվին Սմբատ Շահնշահն ազատել է Արունում «զշալակաւոր բաժէ»։ «Բաժ»-ն այս համվածում ևս ունի, անկասկած, փոխադրության տուրքի իմաստ։ Երրորդ վկայությունը ևս պարզ է։ Այս արձանագրությունից երևում է, որ Կոստանդին Դուկաս կայսրի ժամանակ (1059—1064 թ.), երբ Անի քաղաքը գտնվում էր բյուզանդական կայսրության իշխանության տակ, կարգադրված է եղել, որ անեցիներն ազատ հայտարարվեն մաքսային հարկից՝ «բաժ»-ից, եթե նրանք սայլով կամ գրաստով գինի էին բերում քաղաք կամ իրանց համար գնում էին մորթելիք։ Իսկ անեցի շալակավորները շալակաբեռների համար վճարելու էին նախկին «բաժ»-ի կեսը։ Նմանապես և մսագործները պախրեի և ոչխարի համար պետք է տային սովորական պահանջվող հարկի կեսը։ Շալակավորների վերաբերյալ կետին պրոֆ. Ս. Եղիազարովը տալիս է անմիտ ու անհասկանալի մի բացատրություն, իբր թե շալակավորը, որ փայտ էր բերում քաղաք, ամեն մի շալակաբեռ փայտի համար վճարելու էր 9 դենար[1]։ Արձանագրության մեջ շալակավորի մասին այդպիսի անհեթեթ կետ չկա։ Հինգերորդ, վեցերորդ և ութերորդ վկայությունները պետք է հասկանալ, իմ կարծիքով, այն իմաստով, որ Անի քաղաքի երեցները, ինչպես Արցոյառինի սբ. Գրիգոր եկեղեցին, ազատ են հայտարարվել «բաժ»-ից, հավանորեն, փոխադրության հարկերից։ Պրոֆ. Եղիազարովն «իրիցանոռ զբաժն» մեկնել է, իբրև налог окладной, այսինքն՝ նախորոշված հարկագումար (impôt de répartition), որ պարտավոր էին վճարել երեցները[2]։ Այս ենթադրությունը ես համարում եմ միանգամայն սխալ։ Окладной налог-ը ուղղակի հարկերի մի տեսակն է, որ դժվար թե գոյություն ունեցած լիներ Հայաստանում հին ժամանակներում։ Պետք է ասել, որ պրոֆ. Ս. Եղիազարովն օգտվել է Մ. Էմինի «Армянские надписи в Карсе, Ани и в окрестностях последнего» աշխատությունից (Москва, 1881), որի մեջ հարկերի անունները մեծ մասամբ սխալ են թարգմանված։ Վերոհիշյալ սխալ ենթադրություններին հիմք են ծառայել, մասամբ, այս սխալ թարգ-

---

[1] Исследования по истории армянского права, էջ 39:

[2] Նույնը։

մանությունները։ «Բաժ»-ը օրինակ, փոխանակ «пошлина» կամ «таможенная пошлина»՝ Մ. Էմինը թարգմանել է «подать» կամ «налог»։

Յոթերորդ վկայությունը վերաբերվում է հարկային այն հեղաշրջմանը, որ տեղի էր ունեցել թաթարական տիրապետության ժամանակ 14-րդ դարի առաջին կիսում։ Այդ մասին կա նաև մի ուրիշ վկայություն Անիում գտնված Աբուսայիդ Բահադուր խանի (1316—1335 թ.) պարսկական արձանագրության մեջ։ Երկու վկայությունն էլ շատ կարևոր են Հայաստանի պատմության համար թաթարական շրջանում, բայց այժմ հետաքրքիր են միայն հատկապես «բաժ»-ի նշանակությունը որոշելու համար։ Երկու վկայության մեջ էլ հիշատակված է «բաժ» հարկը, որ նշանակում է դարձյալ մաքսային փոխադրության հարկ։ Ակադեմիկոս Վ. Բարտոլդը, որ հրատարակել է ու մանրազնին քննության ենթարկել Աբուսայիդի պարսկական արձանագրությունը, շատ ուղիղ լուսաբանել է արդեն «բաժ» հարկի նշանակությունն այդ շրջանում իբրև droits de douane et de transit[1], այսինքն՝ մաքսային և փոխադրության հարկ։ Պրոֆ. Ս. Եղիազարովը, հիմնվելով դարձյալ Մ. Էմինի սխալ թարգմանության վրա, որը «դռնագիրն ի բաժ» թարգմանել է անզգուշաբար подворная подать, իսկ «բաժ»-ը վերոհիշյալ յոթերորդ հատվածում լուսաբանել է՝ իբրև տների վրա դրված հարկ (окладной налог на дом)[2]։ Այս ենթադրությունը ևս, ինչպես և Հայաստանի հարկերի վերաբերյալ նրա գրեթե բոլոր բացատրությունները, զուրկ են որևէ հիմքից և սխալ ու քմահաճ կռահումներ են։

«Բաժ»-ի նշանակության որոշման խնդրում կասկածների առիթ կարող է տալ միայն վերև առաջ բերված չորրորդ վկայությունը՝ «թողաք զգեղիս Շիրակա զապուռիշի և զջրասհին բաժն»։ Արձանագրության ընդարձակ բովանդակությունից երևում է, որ 1228 թվին Իվանե աթաբեկը և նրա կինը Խոշակը Շիրակ գյուղն ազատել են «ապուռիշի և ջրասհին բաժից»։ Արդ ի՞նչ է նշանակում «ապուռիշի և ջրասհին բաժ»։ Մ. Էմինն «ապուռիշի և ջրասհին» համարել է իր թարգմանության մեջ գյուղերի հատուկ անուններ՝ Апуреш и Джерсах[3]։ Այս սխալ թարգմանությունը հիմք ընդունելով՝ պրոֆ. Ս. Եղիազարովը ևս հանգել է սխալ եզրակացության, իբր թե «բաժ»-ը նշանակում է այստեղ կալվածքների վրա դրված հարկ՝

---

[1] Бартольд. Персидская надпись на стене Мануче, С.-Петербург 1911, էջ 33—34

[2] С. А. Егиазаров, Исследования.

[3] Армянские надписи, Москва, 1881, էջ 51

«окладной налог на имения»[1]։ Հ. Ղևոնդ Ալիշանը «Շիրակի» մեջ «ապուռիշի բաժի» մասին հայտնել է հետևյալ կարծիքը՝ «քանզի ընդ ջրահի յիշի՝ թուի նույնպէս ջրոյ հարկ նշանակել ըստ ապ (ջուր) արաբացի բառի»[2]։ Յ. Կարստը «Դատաստանագիրք Սմբատի» հայտնի իր աշխատության մեջ «ապուռիշի և ջրահին հարկ» թարգմանել է գերմաներեն «Kanal und Schleusenzoll»[3]։ Այս վերջին լուսաբանությունը, թեև չի կարելի համարել հաստատուն ու վերջնական, բայց, համեմատաբար ավելի հավանական է քան մյուս ենթադրությունները։ Եթե, իրոք, «բաժ» են անվանվել բացի մաքսային հարկից նաև առուներից ու նրանց ջրից օգտվելու համար վճարվող հարկերը, այդ այնքան էլ օտարոտի չպիտի թվա։ Իբրև առուների օգտագործման համար վճարվող տուրք՝ այդ հարկը որոշ չափով համապատասխանում է փոխադրության մաքսային հարկերին, որոնք վճարվում էին, մասամբ, նույնպես իբրև ճանապարհների, կամուրջների, շինությունների օգտագործման փոխարժեք։

Վերոհիշյալ բոլոր վկայություններից, ինչպես տեսնում ենք, կարելի է եզրակացնել, որ «բաժ»-ը չի կարող համարվել հողային հարկ, ինչպես այդ ենթադրել է Նիկ. Ադոնցը։

Հ. Հյուբշմանի Armenische Grammatik աշխատության մեջ առաջ են բերված պարսկական «բաժ»-ի կամ «բազ»-ի լուսաբանության համար մի քանի վկայություններ պարթևական ու նոր պարսկական գրավոր աղբյուրներից։ Այդ վկայություններից երևում է, որ «բաժ»-ը Պարսկաստանում ևս ունեցել է պարթևական ու նոր շրջանում մաքսային հարկի նշանակություն։ Հ. Հյուբշմանը մատնացույց է անում bazigraban բառն Իսիդոր Խարաքացու մոտ (Bazigraban hoesti thelônion Isidor von Charax), որ նշանակում է «մաքսի գանձում»։ Ֆիրդուսիի մոտ ևս «բաջպան, բաժպան», նշանակում է «մաքսապան, մաքսավոր»[4]։ Հայկազյան լեզվի Նոր բառգրքի մեջ «բաժապետ» ուղիղ մեկնված է, իբրև «վերակացու բաժից, մաքսապետ»։ Նույն նշանակությունն ունեցած պիտի լինի և «բաժրար» բառը, որ հանդիպում է Անիի արձանագրություններից մեկում՝ Վիմ. տարեգիր, էջ 160՝ Անի, 1320 թ. «Ես Սարգիս Ծիլենց բաժրարս թողի զԱրջուառճո սբ Գրիգորո զբաժն մեծ և զփոքր»։

Ավելորդ չի լինի այստեղ հիշել, որ Ռուբինյանց թագավորության շրջանում ևս «բաժ»-ն ունեցել է դարձյալ մաքսային հարկի

[1] Исследования по истории армянского права, էջ 39։

[2] Շիրակ, Վենետիկ 1881, էջ 91։

[3] J. Karst, Sempadischer Kodex, Strassburg 1905, B. II, էջ 234,

[4] Armenische Grammatik, էջ 115.

նշանակությունը։ Սմբատի Դատաստանագրքի ՃԺԲ կանոնում «բաժ»-ի մասին կա հետևյալ վկայությունը. «Եւ ուր վաճառ լինի նա վկապալն առնուլ պատեհ է, և զբաժն. բայց ուր ծախ չլինի նա չէ իրաւունք բաժ առնուլ» (տես Karst, Bd. I, էջ 163)։ Այս կանոնը համապատասխանում է Մխիթար Գոշի Դատաստանագրքի ՃԻԳ կանոնին, ուր «բաժ»-ի փոխարեն գործ է ածված «մաքս» «իսկ զմաքսն առնուլ իրաւապէս յորժամ ի քաղաքս կամ ի գաւառս եկեալ վաճառիցեն։ Այլ մի լիցի յանցս ճանապարհաց մաքսել եթէ ոչ վաճառիցեն» (F. Karst, B. I, 163 Մխիթար Գոշ, էջ 435)։ Նույն նշանակությամբ «բաժ»-ը հանդիպում է նաև «Գանձարան հայկական հրովարտակաց» հրատարակության մեջ (էջ 154), ուր հանդիպում է նաև հաճախ «բաժտուն», «բայժտուն» բառը (էջ 156, 178, 179, 185), որ նշանակում է պարզապես մաքսատուն[1]։

Բացի մի շարք սխալ լուսաբանություններից «բաժ» հարկի նշանակության մասին, որ վերև մատնանշեցինք, պրոֆ. Ս. Եղիազարովը, ընդունելով որ Կոստանդին Դուկասի ժամանակվա արձանագրության մեջ (1059—1064) «բաժ»-ն անուղղակի հարկի բնույթ ունի, անգգուշաբար նույնացրել է այդ հարկը միջնադարյան Եվրոպայի octroi հարկի հետ։ Այդ համեմատությունը ևս, իմ կարծիքով, սխալ է։ Octroi-ն, ճիշտ է, մաքսային հարկ էր, որ վճարում էին ապրանքների փոխադրության համար, բայց այդ հարկը ստանում էր ոչ թե պետությունը, այլ քաղաքները, որոնք պետությունից ստացել էին հատուկ արտոնություն այդ հարկը գանձելու իրանց օգտին։ Սակայն մատենագրական աղբյուրներում կամ արձանագրություններում և ոչ մի վկայություն ու ակնարկ անգամ չկա, որ Հայաստանի քաղաքները՝ Դվինը, Անին կամ մյուսները՝ արտոնություն ստացած լինեին «բաժ»-ը գանձելու իբրև մունիցիպալ հարկ իրենց օգտին։ Ավելի ուղիղ կլինի, իմ կարծիքով, «բաժ» հարկը համապատասխան ու նման համարել Հռոմեական ու Բյուզանդական կայսրության մեջ գոյություն ունեցող հարկին, որը լինելով փոխադրության մաքսային հարկ, ստացվում էր, գլխավորապես, պետության օգտին[2]։

---

[1] Տե՛ս Langlois, V. Le trésor des chartes d'Arménie ou cartulaire de la chancellerie royale des Roupéniens, Venise, 1863.

[2] Portorium հարկը, ինչպես հայտնի է, ապրանքներից պահանջվող մաքսային հարկ էր, որ գանձվում էր մաքսային որոշ կենտրոնավայրերում պետության օգտին։ Պարսկա-բյուզանդական դաշնագրերի համաձայն, ինչպես վերև տեսանք, «բաժ»-ի գանձման համար մաքսային այդպիսի կենտրոններ էին՝ Կալլինիկոնը, Մծբինը և Դվինը։ Portorium հարկից պետք է տարբերել միջնադարյան pedaticum

Թեև «բաժ» հարկը հիշատակված է, գլխավորապես, 10—14-րդ դարերի արձանագրություններում, բայց, նա, անտարակույս, Հայաստանի հնագույն հարկերից մեկն է։

7-րդ դարումն իսկ, ինչպես վերև տեսանք Անանիա Շիրակացու պարզ ու որոշ վկայությունից, «բաժ»-ն այն հարկն էր, որ վճարում էր քաղաքներում վաճառականը։ Այս վերջին վկայությունը կարող է, իմ կարծիքով, հավաստի մի ապացույց համարվել, որ «բաժ»-ը մարզպանության շրջանում ևս ունեցել է փոխադրության մաքսային հարկի նշանակություն։ Իսկ եթե այդ այդպես է, ուրեմն, և Եղիշեի վերոհիշյալ վկայության մեջ «բաժ»-ը պետք է ունենա ոչ թե հողային, այլ մաքսային հարկի իմաստ։

Քանի որ «բաժ»-ը, ինչպես ցույց է տվել պրոֆ. Հ. Հյուբշմանը, հայերենում փոխառություն է պարթևերենից և պարթևերենում ունեցել է նույնպես մաքսային հարկի նշանակություն, անհավանական չի լինի ենթադրել, որ այդ հարկը գոյություն ունեցած պիտի լիներ Հայաստանում նաև Արշակունյաց թագավորության ժամանակ, իբրև մաքսային հարկ։

## «ՄՈՒՏ»

Մատենագրական վկայություններից, որ վերաբերում են համեմատաբար հնագույն դարերին, կարելի է եզրակացնել, որ «մուտ»-ն ունեցել է հաճախ ոչ թե հատուկ որևէ հարկի նշանակություն, այլ գործ է ածվել այժմյան եկամուտի իմաստով։

Այդ նշանակությամբ «մուտ»-ը գործ է ածվել, օրինակ, Աստրական Դատաստանագրքում 1. «Եթե գրաւ դնէ ոք զիւր հողն այլում և լինի ի մէջ նոցին պայման, որ զմուտս հողոյն առնու պարտատէրն փոխարէն վաշխին, և փոխառուն պարտի միայն զպարտոն տալ» (հրատ. Արսեն վարդապետ Ղլտճյանցի, էջմիածին 1917, էջ 51), 2. «Ապա թէ դնէ գրաւական հօտս խաշանց և լինի պայման ի

(=ֆրնս. péage) և passagium հարկերը, որ մարդկանց, անասունների և ապրանքների անցուդարձի համար պահանջում էին զանազան տեղերում, օրինակ, ճանապարհների, գետերի ու կամուրջների մոտ։ Կիլիկյան շրջանում passagium հարկն անվանվել է, ըստ երևույթին, «յապուր»․ տես «Գանձարան հայկական հրովարտակաց» էջ 157՝ «Եւ յապուր որ տան ընդ Այաս ու ընդ Կուկլակ, նայ այսպես լիննայ, որ տան ի պրխիմն և յըղտայրեռն նոր դրամ քսան ու հինգ»։ Միքայել փաշա Փորթուգալը «Եղիշէի վարդապետի վասն Վարդանայ և հայոց պատերազմին» իր աշխատության մեջ (էջ 218, ծան.) Մարզպանական Հայաստանի «բաժ»-ը համապատասխան է համարում ֆրնս. péage-ին։ Այդ ենթադրությունը, ինչպես տեսնում ենք, վիճելի է, մինչև որ չապացուցվի մատենագրական փաստական վկայություններով։

մէջ, թէ մուտքն, որ լինի յոչխարացն, փոխարէն վաշխիցն է նն» (Նոյնը, էջ 51), 3. «Եւ հաշւին զմուտ տարեացն, զոր կալաւ, զվաշխիւն, թէ լինի աւել՝ ինքն դարձուցանէ յորբերն և թէ պակասի լմընցընեն յորբերն» (նույնը, էջ 55)։ Բոլոր այս հատվածներում «մուտ»-ը, անկասկած, ունի եկամուտի նշանակություն։

Հայկազյան բառգրքում «մուտ»-ը հասկացված է հենց այդ իմաստով և մեկնված է՝ իբրև հուն. prosodos լատին. proventus, reditus, այսինքն՝ եկամուտ։

Ուշադրության արժանի է, որ Հին և Նոր կտակարանի գրաբար թարգմանության մեջ, ինչպես երևում է Համաբարբառից[1], ոչ մի անգամ չէ գործածվել «մուտ» բառը հարկի նշանակությամբ, թեև բուն բնագրի մեջ հիշատակված են եղել հաճախ զանազան տեսակի անուններ հայկական արձանագրություններում ևս «մուտ»-ը, որքան ինձ հայտնի է, բնավ չի հիշված որպես հարկի անուն։

Խորենացու պատմության մեջ «մուտ»-ը հանդիպում է հետևյալ հատվածներում. 1. «Եւ քանզի բազում ունէր ուստերս՝ պատշաճ վարկաւ ոչ ամենեցուն առ իւր կալ ի Մծբին. վասն որոյ առաքէ զնոսա բնակել ի գաւառն Հաշտենից, և ի ձորն նորին սահմանակալ, որ է արտաքոյ Տարօնոյ. ի նոսա թողլով զշէնս ամենայն, հանդերձ յաւելուածով մտից առանձինն և ռոճկաց կարգելոց յարքունուստ» (Տփղիս 1913, էջ 118, Բ, գլ. Ը.) 2. «Իսկ Արտաշրի գեղեցկապէս յարդարեալ զաշխարհս Հայոց՝ ի կարգ առաջին հաստատէր։ Նա և զԱրշակունիսն, զմեկուսացեալսն ի թագէն և յԱյրարատն բնակելոյ, կարգէ ի նոյն տեղիս մտիւք և ռոճկօք, որպէս և էինն» (Նույնը, էջ 216, Բ, գլ. Հէ)։ Մկրտիչ Էմինը «հանդերձ յաւելուածով մտից առանձինն» և «մտիւք» թարգմանել է ռուսերեն՝ «С присовокуплением особого дохода» և «с назначением дохода», (էջ 61, 112), իսկ Խորեն ծ. վարդ. Ստեփանեն թարգմանել է աշխարհաբար՝ «ավելացնելով առանձին եկամուտ» և «եկամուտով» (էջ 101, 199)։ Ինձ ևս հավանական է թվում, որ «մուտ» բառը վերոհիշյալ հատվածներում ունի ոչ թե հատուկ որևէ հարկի իմաստ, այլ նշանակում է, ընդհանրապես, եկամուտ։

Ինչպես հայտնի է, կանոնագրքերում «մուտ»-ը և «պտուղ»-ը հիշատակված են հաճախ այն եկամուտների համար, որ ժողովրդականներից ստանում էր եկեղեցին։ Տես, օրինակ, Կանոնագիրք Հայոց, հրատ. Ա. Ղլտճյանի, Թիֆլիս 1914՝ «Կանոնք Սահակայ» էջ 22, 55, 56. «Կանոնք Ներսիսի Կաթուղիկոսի և Ներշապհոյ Մա-

[1] Թ. վարդ. Աստվածատուրեան, Համաբարբառ Հին և Նոր կտակարանաց, Երուսաղէմ 1895։

միկոնէից եպիսկոպոսի», էջ 107, 108, 109, 111 (Ա, Ե, ԺԳ կան.)։ Մինչդեռ «պտուղ»-ը եկեղեցուն տրվող որոշ ու հայտնի տուրքի անուն է, «մուտ»-ը, իմ կարծիքով, այդ հատվածներում ևս ունի ոչ թե հատուկ որևէ հարկի, այլ, հավանորեն, եկամուտի ընդհանուր նշանակություն։

Մատենագրական աղբյուրներում, 7-րդ դարից հետո, ինձ ոչ մի վկայություն դեռևս չի հանդիպել, որի մեջ «մուտ»-ը պարզ ու որոշ հիշատակված լիներ հատուկ որևէ հարկի համար։

Ուշագրավ է սակայն այդ տեսակետից, որ Եղիշեի վերոհիշյալ հատվածներում «մուտ»-ն ունի, ըստ երևույթին, հատուկ հարկի նշանակություն և հիշված է մյուս հարկերի թվում առաջին իսկ տեղում. 1. «Նա բնաւ ո՞վ իսկ կարէ պատմել վասն ծանրութեան մտից և սակից, բաժից և հասից և հարկաց լերանց և դաշտաց և մայրեաց» (Վենետիկ 1852, Բ, էջ 40). 2. «Իսկ զմտից և զսակից, և որ այլ ևս էին հարկք աշխարհին, բազմագոյն քան առ հարբն նորա երթայր յարքունիս» (Նույնը, Բ, էջ 75)։

Հիմնվելով Եղիշեի այս վկայությունների վրա՝ կարելի է իրոք ենթադրել, որ «մուտ»-ը մարզպանության շրջանում և, հավանորեն, նաև Արշակունյաց թագավորության ժամանակ, ունեցել է հատուկ ինչ որ հարկի նշանակություն։ «Մուտ»-ի այդ հատուկ իմաստը, թեև ինձ չէ հաջողվել պարզ ու հաստատ որոշել, ինչպես «բաժ»-ի նշանակությունը, սակայն, հիմնվելով ներքև առաջ բերված ուշագրավ մի վկայության վրա, թվում է ինձ, որ անհավանական չի լինի ենթադրել, որ «մուտ»-ը մարզպանության շրջանում՝ ուրեմն և Եղիշեի վերոհիշյալ վկայությունների մեջ՝ գործ է ածվել քաղաքներում վճարվող ինչ որ հարկերի համար։ Հնարավոր է, որ «մուտ»-ը համանիշ է պարսկական «բաժ»-ի և գործածական է եղել այդ նշանակությամբ մարզպանության և, հավանորեն, նաև Արշակունյաց թագավորության շրջանում։

Այդ ենթադրության հիմք ծառայող կարևոր ու հետաքրքիր մի վկայություն գտնվում է Հովհան Մամիկոնյանի Տարոնի պատմության մեջ հետևյալ հատվածում. «Եւ Սուրէն ետ բերել հարիւր հազար դահեկան, և զուղտսն և զջորիսն և զձիսն և ետ ցիշխանն (Սմբատ). և նա ասէ՝ հաւանեալ եմ տրոցդ. բայց հարիւր ութսուն հազար դահեկանի փայտ են տարեր ի Քարքէոյ, և չորս հարիւր հազար դահեկանի խոտ են կերեր ի դաշտէն. և ի հազար դահեկանի եղն և եղջերու և նապաստակ որսացեր են ի յերկրէս. թողում զգինւոյն ջրոյն և հացին։ Բայց զասորւոց անունչ գինին, զոր յինէն կորեալ ինքեանք արբին՝ թող տան մեզ զգինն։ Նաև զգաւառին հարկն զոր

առեալ են, և զմուտսն քաղաքին զոր կերեալ են Դ հարիւր հազար դահեկան՝ թող տան մեզ զայն, և դու քրիստոնեայ լեր և զիս ի պարսիկս տար, և զօրս քեզ եղիցին» («Գիրք պատմութեանց երկրին Տարօնոյ», Կոստանդնուպօլիս 1719, էջ 151)։ Այս հատվածի մեջ հիշատակված են, ինչպես տեսնում ենք, «զգաւառին հարկն» և «զմուտսն քաղաքին» և «զմուտսն» կարծես թե գործ է ածված այստեղ, ոչ թե, ընդհանրապես, եկամուտի, այլ քաղաքներում վճարվող հատուկ հարկերի համար։ Այս լուսաբանությամբ նա կարող է, հավանորեն, ունենալ մաքսային հարկի նշանակություն՝ իբրև հոմանիշ պարթևերեն «բաժ»-ի։ Այս բացատրությունը ես չեմ համարում վերջնական ու անվիճելի, այլ միայն հնարավոր ու հավանական։

«Մուտ»-ի նույն այս լուսաբանությամբ, իմ կարծիքով, հասկանալի է դառնում, թե ինչու Հին և Նոր կտակարանի գրաբար թարգմանության մեջ, և ոչ մի անգամ գործածված չէ «մուտ»-ը։ Ոչ «բաժ»-ը և ոչ նրա հոմանիշ «մուտ»-ը չեն հանդիպում այդ թարգմանության մեջ, որովհետև սրանց համապատասխան հարկերը թարգմանված են ասորերեն՝ «մաքս, մաքսավոր, մաքսապետ» բառերով։

«ՍԱԿ»

Պրոֆ. Ն. Ադոնցը «սակ»-ը լուսաբանել է իբրև գլխահարկ և համապատասխան է համարել վերոհիշյալ gezith-ին Армения в эпоху Юстиниана, (էջ 482—484)։ Պրոֆ. Հ. Հյուբշմանն իր Armenische Grammatik աշխատության մեջ մատնացույց է արել, որ հայերեն «սակ»-ը փոխառություն է պարթևերենից։ Թե հայերեն և թե պարթևերեն «սակ»-ը նա թարգմանում է Tribut (էջ 234)։ Միքայել փաշա Փորթուգալը Եղիշեի պատմության իր հրատարակության մեջ (էջ 218, ծան. 1) ենթադրել է, որ «սակ՝ հողէ մը կամ շենքէ մը առնված այն տուրքն է, որոյ քանակը կանխավ որոշյալ է ու չփոփոխեր բերոց կամ եկամտից շատնալովն կամ նվազելովն»։ Հայկազյան բառգրքի աշխատակիցները «սակ»-ի դիմաց դրել են մի շարք բացատրություններ՝ «սահմանեալ տուրք, եկամուտ, հաս, հարկ, բաժ արքունի»։

Այս լուսաբանությունները, ինչպես տեսնում ենք, կամ անորոշ են, կամ նույնիսկ իրար հակասող։

Ուշագրավ է, որ «սակ»-ը հարկի հատուկ իմաստով չի հանդիպում Հին և Նոր կտակարանի գրաբար թարգմանության մեջ։ Մատենագրական աղբյուրներում այդ հարկի անունը գործածական է ու սովորական, գլխավորապես, արաբական և Բագրատունյաց շր-

*չանում։ Իսկ հայկական արձանագրություններում, որ մինչ այժմ հրատարակված են, «սակ»-ը որպես հարկ չէ հիշատակված և ոչ մի անգամ։*

*Հայերենում «սակ»-ը ինչպես հայտնի է նշանակում է ոչ միայն հարկ, այլև «նախորոշված՝ չափ, թիվ, կարգ»։ «Սակ»-ը հենց այդ հատուկ նշանակությունն ունի, իմ կարծիքով, հետևյալ վկայություններում. 1. Թովմայի վարդապետի Արծրունւոյ, Պատմութիւն տանն Արծրունեաց, Պետերբուրգ 1887, դպր. Գ. գլ. Դ էջ 143՝ «և կացցէ ինքն ի իւրքն ամենեքեան ի հնազանդութեան արքունի, ի հարկս և ի հասս չափոյ սակի արքունական աւանդութեանց». 2. Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողական, Պատմութիւն տիեզերական, Պետերբուրգ 1885, Բ. հանդ., գլ. Դ, էջ 128՝ «Եւ փոխանակ նորա տիրէ Հեշմ ամս ԺԲ։ Սա ծանրացոյց զսակ հարկի աշխարհիս հայոց». 3. Պատմութիւն Ղևոնդեայ, Պետերբ. 1887, գլ. Դ, էջ 14՝ «Եւ յետ նորա Եզիտ որդի Մուաւեայ. և ապրի ամս Բ և ամիսս Ե, և վախճանի։ Եւ նա վարեաց աշխարհս ի նոյն սակ հարկի». 4. Յովհաննու կաթողիկոսի, Պատմութիւն հայոց, Թիֆլիս 1912, էջ 160՝ «Իսկ արքայ Սմբատ ընդ կրունկն դարձեալ՝ հասանէր ի մայրաքաղաքն Դվին։ Եւ վասն զի ըստ առաջնոյ կիտին եղելոյ ոչ ետես զնոսա հնազանդեալս ի ծառայութիւն ինքեան և զսակ արքունի հարկաց և մաքսից նուաճեցուցեալ, ապա դուռն ևս քաղաքին փակեցաւ ընդդեմ նորա»։*

*«Սակ»-ն իբրև հարկ գործ է ածված հաճախ Հովհաննես կաթողիկոսի պատմության մեջ և, մեծ մասամբ, կանխապես սահմանված որոշ հարկագումարի նշանակությամբ։ Օրինակ, էջ 193՝ «և թեթևաբեռն զսակն արքունի արարեալ». էջ 203՝ «և խոստացեալ ևս թողուլ նմա զամի միոյ զսակն արքունի». էջ 214՝ «Եւ ապա ի խաբէութիւն մտաց զինքն զինեալ (Յուսուփն)՝ առաքէ առ արքայ Սմբատ, զի թէ բոլորապէս զսակ ամին հատուցէ նմա, զխաղաղութեան պայման անշուշտ նմա պարգևեալ՝ անցեալ գնասցէ։ Իսկ նա... տայր վաղվաղակի զխնդիրն իբրև կշռիւ վաթսուն հազար դահեկանաց»։*

*Նույն նշանակությունն ունի «սակ»-ը, հավանորեն, նաև Սեբեոս եպիսկոպոսի պատմության մեջ՝ Ս. Պետերբուրգ 1879, գլ. ԼԵ, էջ 138 և գլ. ԼԹ, էջ 118։*

*Պրոֆ. Մ. Դյակոնովի կարծիքով՝ Ռուսաստանում ամեն ինչ՝ որ որոշված է եղել թվերով՝ անվանվել է* урок*։*

Русская Правда *օրենսգրքում* урок *են անվանվել, նրա ասելով, ճշտիվ որոշված վճարումները։ «Այդ մտքով,— ասում է նա,—* урок *կարող են անվանվել և տուրքը, ուստի և հետագա հիշատակա-*

րաններում հիշվում է «дань по уроку»։ Նույն այս որոշված տուրքի համար կարող են սկզբներում գործածվել և оброк տերմինը, ինչպես այդ հանդիպում է և ավելի ուշ հիշատակարաններում՝ «а дань и мати по оброку» (М. Дьяконов, Очерки общественного и государственного строя древней Руси, С. Петербург, 1908, էջ 188)։

Եթե ուղիղ են պրոֆ. Մ. Դյակոնովի այս դիտողությունները՝ «սակ»-ը վերոհիշյալ իր նշանակությամբ կարող է համապատասխան համարվել հենց ռուսական այդ урок և оброк տերմիններին։

«Սակ»-ը վերոհիշյալ վկայություններում, ինչպես տեսանք, նշանակում է նախորոշված չափ, թիվ կամ նախորոշված հարկագումար։ Այժմ կարևոր է պարզել, թե արդյոք «սակ»-ը չէ՞ ունեցել հատուկ նշանակություն՝ գլխահարկի կամ հողային հարկի, ինչպես այդ ենթադրել են Նիկ. Ադոնցը և Միքայել փաշա Փորթուգալը։ Այս խնդիրը ևս պետք է պարզել, իմ կարծիքով, ոչ թե վերացականորեն, այլ դարձյալ մատենագրական վկայությունների օգնությամբ։

«Սակ»-ը ըստ երևույթին, իրոք որ ունեցել է նաև հատուկ նշանակություն, ինչպես երևում է հետևյալ վկայություններից. 1. Հովհաննու կաթուղիկոսի, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս 1912, էջ 133. «Ապա ոստիկան ումն ի հայս առաքեալ, որ Ալի Արմանի անուանիւր՝ ըստ հրամանի ամիրապետին իշխան իշխանաց Հայոց զնա (զԱշոտ) կացուցանէր, բազում զգեստիւք և արքունական պատուով ճոխացուցեալ՝ ի նա հաւատալով զսակս հայոց և զամենայն բեկար արքունի» 2. Նույնը էջ 161—162. «Եւ այսպէս փնդարձակեալ զսահման տէրութեան իւրոյ (Սմբատ), որ ընդ լծով արքունի սակից և բեկարաց և մաքսից կացուցեալ զզէն քաջութեան մարտի իւրոյ նշան յաղթութեան կանգնէր»։

Այս վկայություններում «սակ»-ը հիշված է «բեկար»-ի կամ «բեկար»-ի ու «մաքս»-ի հետ միասին։ Հավանական է, ուրեմն, ենթադրել, որ «սակ»-ն այստեղ հատուկ ինչ որ հարկի անուն է, տարբեր «բեկար»-ից ու «մաքս»-ից։ Հիմնական գլխավոր հարկերն արաբական ու Բագրատունյաց շրջանում, ինչպես հայտնի է, եղել են գլխահարկը՝ նաև հողային ու մաքսային հարկերը։ Մաքսային հարկը, որ Հայաստանում անվանվել է «բաժ» կամ «մաքս», վերոհիշյալ երկրորդ վկայության մեջ հիշատակված է առանձին։ «Սակ»-ը և «բեկար»-ը կարող են, ըստ երևույթին, նույն վկայության մեջ գործածված լինել մյուս հիմնական հարկերի՝ գլխահարկի ու հողային հարկի համար։ Ներքև մենք կտեսնենք, որ «բեկար»-ը կարող էր թերևս ունեցած լինել այդ ժամանակ հողային հարկի նշա-

նակութիւն։ Թեև իմ այս ենթադրությունը հիմնովին խախտում է այժմյան ընդհանուր կարծիքը «բեկար»-ի նշանակության մասին, բայց, ինչպես կտեսնենք, այս նոր ենթադրությունը «բեկար»-ի հնագույն նշանակության մասին հիմնված է որոշ փաստական դիտողությունների վրա։ Արդ՝ եթե Հովհաննես կաթողիկոսի վերոհիշյալ վկայության մեջ երեք հիմնական հարկերից՝ մաքսայինն անվանված է «մաքս», հողայինը, ըստ երևույթին, «բեկար»՝ կարելի է, ուրեմն, ենթադրել, որ «սակ»-ը նույն այդ հատվածում կարող է նշանակել, հավանորեն, գլխահարկ։

Արաբական աղբյուրների վկայություններից երևում է, որ ամենամեծ եկամուտը խալիֆայությունը քրիստոնեական երկրներում ստանում էր գլխահարկից։ Յ. Լորանի կարծիքով, 9-րդ դարի վերջերում, ուրեմն՝ հենց այն ժամանակաշրջանում, որին վերաբերվում են վերոհիշյալ վկայությունները, խալիֆայությունը ստացել է Հայաստանից՝ նրա մեջ հաշվանելով և Կովկասյան երկրները, տարեկան 13.000.000 դրամ՝ 4.000.000 դրամ իբրև հողային հարկ և 5.000.000 դրամ իբրև գլխահարկ[1]։ Ուրեմն՝ գլխահարկը կամ «սակ»-ը եղել է բոլոր հարկերից ամենակարևորը և շահավետը, և գուցե հենց այդ է պատճառը, որ «սակ»-ը վերոհիշյալ վկայությունների մեջ հիշատակված է առաջին տեղում։

Բացի Հովհաննես կաթողիկոսի վկայություններից կա և ուրիշ մի վկայություն, որից նույնպես կարելի է, իմ կարծիքով, եզրակացնել, որ «սակ»-ը, բացի իր վերոհիշյալ նշանակությունից, ունեցել է նաև գլխահարկի հատուկ իմաստ։

Այդ վկայությունը՝ ավելի ճիշտ ակնարկը՝ գտնվում է Գրիգոր Նարեկացու հետևյալ տողերում. «զխնդիր չափոյ ծածկելոցն իբր գծշգով պահանջումն սատերն սակի ի բերանոյ կետին կորիւնի չորքեղրամեան կշռութեամբ» (Գրիգոր Նարեկայ վանից վանականի. Ողբերգութիւն, Վենետիկ 1844, բան խե, էջ 248)։

Այդ տողերում ակնարկված է, իմ կարծիքով, «սակ»-ը որպես գլխահարկ, որի նվազագույն գումարը մարդագլուխ եղել է, սովորաբար Սասանյան Պարսկաստանում 4 դրամ (=1 սատեր) և Հռոմեական կայսրության մեջ, ըստ երևույթին, 2 դրամ։

Ինչպես տեսնում ենք, Նիկ. Ադոնցի ենթադրությունը «սակ»-ի հատուկ նշանակության մասին, որ նրա մոտ հիմնավորված չէ որոշ փաստերով, կարծես թե հաստատվում է մատենագրական վկայությունների վերոհիշյալ լուսաբանությամբ։

---

[1] J. Laurent, L'Arménie entre Byzance et l'Islam, 1919, էջ 161։

Միքայել փաշա Փորթուգալի ենթադրությունը «սակ»-ի մասին, որ վերև հիշեցինք, հիմնված չէ փաստական տվյալների վրա, ուստի և անընդունելի պիտի համարվի, մինչև որ չհաստատվի հավանական վկայություններով։ Ի նկատի ունենալով «սակ»-ի ընդհանուր նշանակությունը՝ որպես «որոշեալ՝ թիւ, չափ» և «որոշեալ հարկ», հնարավոր է, որ հողային հարկը ևս, որի քանակը, «կանխաւ որոշեալ էր», կարող էր և «սակ» անվանվել, սակայն այդ կռահումը կարոտ է, անշուշտ, փաստական հիմնավորման։ Քանի որ «սակ»-ը հիշատակված է Եղիշեի պատմության մեջ և փոխառություն է հայերենում պարթևերենից, պարզ է որ նա որպես հարկ գոյություն է ունեցել Հայաստանում մարզպանության շրջանում, գուցե և Արշակունյաց թագավորության ժամանակ։ Սասանյան Պարսկաստանում gezith-ը՝ գլխահարկը, ինչպես վերև տեսանք, հիմնական հարկերից մեկն էր։ Եղիշեի վկայությունը Դենշապուհի ժամանակ հոգևորականների վրա դրած հարկերի մասին՝ «սոյնպէս և եպիսկոպոսաց և երիցանց դնէին, ոչ միայն շինաց, այլ և ափրակաց» (Վենետիկ 1852, Բ, էջ 40)՝ վերաբերում է, ամենայն հավանությամբ, գլխահարկին։ Եւ այդ գլխահարկը, հավանական է, որ մարզպանության շրջանում ևս անվանվում էր «սակ», ինչպես և Արաբական ու Բագրատունյաց ժամանակ։

Ֆր. Շպիգելը Ֆիրդուսիի մոտ հիշատակված պարսկական «բաժ ու սավ» հարկերի անունները մեկնել է՝ առաջինը՝ իբրև բնական տուրքեր, իսկ վերջինը՝ իբրև դրամական վճարումներ[1]։ Հայկական «բաժ»-ը, ինչպես վերև մեր քննությունից երևաց, պարթևական ու հետագա շրջաններում ունեցել է մաքսային հարկի իմաստ։ Իմ կարծիքով, նույն այդ ժամանակաշրջանում պարսկական «բաժ»-ը ևս ունեցած պիտի լիներ ոչ թե բնական տուրքի, այլ մաքսային հարկի նշանակություն։ Իսկ պարսկական «սակ»-ի վերաբերմամբ, որ համապատասխան է համարվում հայկական «սակ»-ին, Ֆր. Շպիգելի դիտողությունը կարող է ընդունվել միայն այն չափով, որ այդ հարկը, համաձայն իր վերոհիշյալ հավանական նշանակության, իրոք որ պետք է լիներ դրամական։

## «ՀԱՍ»

Նիկ. Ադոնցը հնարավոր է համարում, որ հայկական «հաս»-ը և «մուտ»-ը համապատասխան կարող են լինել պարսկական «բաժ ու սավ»-ին, որոնցից առաջինը նա ենթադրում է հողային հարկ, իսկ

[1] Fr. Spiegel, Erânische Alterthumskunde, Dritter Band, 1878 էջ 631։

վերջինը՝ գլխահարկ (Армения в эпоху Юстиниана էջ 483)։ Նիկ. Ադոնցի հարևանցի այս ակնարկն առաջ է բերված Հ. Մուսայելյանի աշխատության մեջ ավելի դրական ու որոշ ձևով, իբր թե Ն. Ադոնցը «մուտը համարում է սակի բացատրություն, իսկ հասը՝ բաժի» (Անդրկովկասի հողային պայմանները, Վաղարշապատ 1910, էջ 16)։ Միքայել փաշա Փորթուգալը ենթադրում է, որ «հաս՝ հողի բերքէն առնված մասն է կամ տասանորդ մի, որ հարյուրեն հինգեն մինչև հիսուն կըզանազաներ» (Եղիշէի վարդապետի վասն Վարդանայ և Հայոց պատերազմին», Վենետիկ 1903, էջ 218)։ Փորթուգալը, ինչպես տեսնում ենք, ոչ միայն «հաս»-ի նշանակությունն է որոշել, այլև նրա քանակը։ Սակայն նրա այս կտրուկ ու վճռական պնդումը ոչ պատճառաբանված է, ոչ էլ հիմնված փաստական տվյալների վրա։ Հայկազյան բառգրքի աշխատակիցները «հաս»-ի դիմաց գրել են հետևյալ բացատրությունը՝ «որ ինչ իրաւամբ հասանելի է կամ հասանէ, այսինքն՝ անկ է ումեք, որպէս զատուցեալ տուրք եկամուտ, բաժին, բաժ, տասանորդ, նուիրելի Աստուծոյ մասն»։

«Հաս»-ի, ինչպես և մյուս հարկերի հավանական նշանակությունը, չի կարելի պարզել առանց մատենագրական ու արձանագրական վկայությունների ուշադիր քննության։

«Հաս»-ը Հայաստանի հնագույն հարկերից մեկն է, ուստի և նա հանդիպում է հաճախ ոսկեդարյան անվանված մատենագրական երկերում և, գլխավորապես, Հին և Նոր կտակարանի գրաբար թարգմանություններում։ Ուշագրավ է, որ այս թարգմանությունների մեջ «հաս»-ը գործ է ածված միշտ ուղղակի հարկերի իմաստով, դրամական թե բնական, մինչդեռ անուղղակի հարկերի համար գործ է ածված շարունակ «մաքս» բառը։

«Հաս»-ի այդ հատուկ նշանակությունը երևում է հետևյալ հատվածներից. 1. Ելք Լ, 13. «Եւ կէս երկդրամենին եղիցի հաս Տեառն. ամենայն որ անցանիցէ ի հանդիսի անդ ի քսան ամենից ի վեր տացեն հաս Տեառն». 2. Թիւք ԺԵ, 20. «Եւ տաջիք զհաց հասին Տեառն. զատուսջիք զայն Տեառն որպէս զհասն ի կալոյ». 3. Թիւք ԺԸ, 24. «զտասանորդս որդւոցն Իսրայելի՝ զոր զատուսցեն Տեառն հաս՝ ետու ղեւտացւոցն ի ժառանգութիւն». 4. Թիւք ԺԸ, 27 «Եւ համարեսցի ձեզ հասն ձեր իբրև զցորեան ի կալոյ և իբրև զպտուղ ի հնձանէ». 5. Թիւք ԼԱ, 28. «Եւ առջիք զհաս Տեառն յամենայն արանց պատերազմողաց ելթելոց ի պատերազմ ոգի մի ի հինգ հարիւրոց՝ ի մարդոց և յանասնոյ, և յարջառոյ, և յոչխարէ, և յայծեաց»։

«Հաս»-ն այս հատվածներում, ինչպես տեսնում ենք, կամ միանվագ անձնական տուրք է դրամական, կամ հողային եկամտային

հարկ է, կամ որոշ տուրք է պատերազմական ավարից, որ պարտավոր էին տալ պատերազմողները։ Նույն թարգմանության նաև մյուս բոլոր հատվածներում «հաս»-ը միշտ ունի ուղղակի հարկերի կամ, մասնավորապես, բերքից կամ եկամուտից տրվող որոշ տուրքի նշանակություն։

Ավետարանի թարգմանության մեջ առանձնապես կարևոր է հետևյալ հատվածը. «Զի՞րդ թուի քեզ, Սիմովն, թագաւորք ազգաց յումմէ՞ առնուն զհարկս կամ զհասն, յորդւոց իւրեանց՝ թե յօտարաց» (Մատթ. ժէ, 24)։ Հունարեն բնագիրը «զհասն» բառի դիմաց ունի kênson լատիներեն՝ censum։ Kênsos և census հռոմեական կայսրության մեջ «ցենզի» կամ աշխարհագրի համեմատ գանձվելիք ուղղակի հարկերն էին՝ հողայինը և գլխահարկը։ Եթե թարգմանիչները kênson-ը թարգմանել են «հաս», հավանական է, ուրեմն, ենթադրել, որ այդ հարկն ըստ իր էության համապատասխան պիտի լիներ հունարեն kensos-ին։

Հայոց եկեղեցական կանոններում «հաս»-ը հիշվում է՝ թերև հոգևորականության տրվող տուրք և ունի դարձյալ ուղղակի հարկերի նշանակություն, ինչպես և Հին և Նոր կտակարանների թարգմանություններում։

Ուշադրության արժանի է, որ Սահակյա հայոց հայրապետի կանոններում «հաս» է անվանվում դրամական տուրքը, որ յուրաքանչյուր տուն վճարելու էր եկեղեցուն. տես կանոնագիրք հայոց, հրատ. Արսեն Ղլտճյանի, էջ 55. «Եւ հասք ի ձենջ ի սեղան Տեառն եղիցի դրամ մի յամենայն տանց ձերոց և նուիրեալք ի ձենջ»։ Այս հատուկ դրամական տուրքն ամեն մի տնից, որքան ինձ հայտնի է, չի հիշված ոչ Հին կտակարանում, ոչ էլ քրիստոնեական ընդհանուր կանոններում։ Ի նկատի առնելով Հայաստանի նախարարական կազմակերպության խոր ազդեցությունը հայ եկեղեցու կազմակերպության ու ներքին կարգերի վրա՝ անհնարին չպիտի համարվի, որ եկեղեցական այս հատուկ տուրքը կարող էր առաջ եկած լինել Հայաստանում աշխարհական նման հարկերի ազդեցությամբ։ Եթե այս դիտողությունը հնարավոր լինի հետագայում հիմնավորել ավելի որոշ ու հաստատուն կերպով՝ կստացվի շատ կարևոր մի եզրակացություն ծխահարկի կամ, ավելի ճիշտ, գլխահարկի գոյության մասին Արշակունյաց թագավորության ժամանակ, որը, ըստ երևույթին, անվանվել է «հաս», ինչպես և հողային եկամտային հարկերը։

«Հաս»-ի նշանակության որոշման համար Սասանյան Պարսկաստանի տիրապետության շրջանում առանձնապես կարևոր է Դվինի 645 թվի իններորդ կանոնի հետևյալ վկայությունը. «զի երանելույն

Գրիգորի և սրբոյն Տրդատայ զսուրբ եկեղեցւոյն մանկունս ըստ ազատաց տոհմին են կարգեալ, և ազատ էին սրբոյ եկեղեցւոյ հող և ջուր, նաև ի Պարսից իսկ տէրութեանն յայտ արարեալ և չէ խառնեալ ի շինական իշխանութիւնն. զերիցունեաց տունսն ի դիւանին եղեալ են, բայց միայն զհասն տալ յարքունիս» (տե՛ս Կանոնագիրք հայոց, հրատ. Արսեն Ղլտճյանցի, էջ 126)։ Եթե ի նկատի ունենանք Տաբարիի տեղեկությունը[1], որ Սասանյան Պարսկաստանում հոգևորականներն ազատված են եղել gezith-ից՝ գլխահարկից, բայց ոչ «խարաճ»-ից՝ հավանական կլինի, իմ կարծիքով, ենթադրել, որ Դվնի ժողովի կանոնում մատնանշված «հաս»-ը պետք է ունենա «խարաճ»-ի, այսինքն՝ հողային հարկի նշանակություն։

Արաբական և Բագրատունյաց ժամանակ, ինչպես և թուրք-թաթարական տիրապետության ժամանակ, «հաս»-ը գործածական է եղել Հայաստանում դարձյալ կամ ուղղակի հարկերի ընդհանուր նշանակությամբ կամ, մասնավորապես, հողային հարկի իմաստով։ Օրինակ, Անիի 1036 թվի Պետրոս կաթողիկոսի արձանագրության մեջ «հաս»-ը հիշատակվում է այգուց առնվող գյուղական հարկերի նշանակությամբ. տես Հ. Ղ. Ալիշանի, Շիրակ, Վենետիկ 1881, էջ 84. Ի ՆԶԵ թուականիս հայոց և ի մեծափառ թագաւորութեանս հզաւր և տիեզերակալ Սմբատա որդւո Գագկա Հայոց և Վրաց շահնշահի կամ եղեւ ինձ Տեառն Պետրոսի հայոց կաթողիկոսի տալ զայգին Աշնկի որ ի մեր կորդո արկած էր քրիստոսասէր մարզպանին Ապլղարիպա որդւո Գրիգորո Պահլաւունո վասն առաւել սիրոյն և երախտեացն զոր ծառաեալ էր զսուրբ Լուսաւորչի աթոռս. արդ տուաք որմով և ծառովք պտղաբերովք և անպտղաւք և խոտագետնովք և Գ աւր ջուր ազատ ի խալաէ եւ ի գեղջէ յամենայն հասոց»։

Եղիշեի վկայության մեջ «հաս»-ը, ինչպես վերև ասացինք, ունենալու է, հավանորեն, հողային բնական տուրքի նշանակութիւն, որովհետև հողային դրամական հարկի գոյությունը դժվար է ենթադրել Հայաստանում 5-րդ դարում։

## «ԲԵԿԱՐ»

Նիկ. Ադոնցի կարծիքով, Հայաստանում, դեռևս հնագույն նախարարական շրջանում, գոյություն է ունեցել պարտադիր ձրի աշխատանքների պարտականությունը, ինչպես եվրոպական corvée-ն (=corrogata opera), ռուսական барщина-ն, որ Հայաստանում

[1] Th. Noeldeke, Tabari, 1879, էջ 264։

անվանվել է «բեկար» bekâr։ Այս վերջին բառը ծագել է նրա ենթադրությամբ, պարսկական bekâr âmadan «աշխատանքի գնալ» դարձվածքից և մինչև այժմ барщина իմաստով գործածական է ժողովրդի մեջ (Армения в эпоху Юстиниана, էջ 484)։

«Բեկար»-ի մասին այս կարծիքը, կարելի է ասել, որ ընդհանուր է ու սովորական, և որևէ կասկածանք այս առթիվ մինչև այժմ արտահայտված չէ եղել։

Բայց ճի՞շտ է արդյոք այս պնդումը «բեկար»-ի նշանակության մասին նախարարական հնագույն շրջանի նկատմամբ։

Ինձ թվում է, դժվար է վճռականապես պնդել, որ այդ ճիշտ է ու միանգամայն անվիճելի։ Մատենագրական հնագույն վկայություններից չի երևում, որ «բեկար»-ը արաբական, Բագրատունյաց ու թուրք-թաթարական շրջանում ունեցած լինի, անպայման, «կոռ»-ի՝ барщина-յի նշանակություն՝ այդ բառի սովորական ընդունված իմաստով։

Առայժմ ինձ հայտնի են «բեկար»-ի վերաբերյալ հետևյալ հնագույն վկայությունները. 1. Դվնի 645 թվի ութերորդ կանոնում. «Իսկ եթե որդեգրեալն արժանասցի քահանայության՝ գեղջն վկայությամբ կամ որ որդեգրեացն զնա, և չէր անկ նմա քահանայութիւն, սակայն զկէս շնորհին կալցէ յաղագս ձեռնադրութեան, ազատ ի հարկէ և ի բեկարէ» (Կանոնագիրք հայոց, հրատարակ. Արսեն Ղլտճյանցի, էջ 125). 2. Սյունյաց Սուփան իշխանի 901 թվի Կոթա վանքի արձանագրության մեջ՝ «զԱստվածածնի քայանայքն նախնեաց իմոց և այլ բազում սպասաւորս ազատ արարի յարքունական ծանրութենէ և ի բեկարէ. և սահմանեցի հողս և ջուրս, և ետու միոյ քահանայի յիսուն դրամ ի տարւոջ»[1] (Վիմական տարեգիր, էջ 5). 3. Հովհաննու կաթուղիկոսի, Պատմություն հայոց, Թիֆլիս 1912, էջ 133. «Ապա ոստիկան ումն ի հայս առաքեալ, որ Ալի Արմանի անուանիւր՝ ըստ հրամանի ամիրապետին իշխան իշխանացս Հայոց զնա (Աշոտ) կացուցանէր, բազում զգեստիւք և արքունական պատուով ճոխացուցեալ՝ ի նա հաւատալով զսակս Հայոց և զամենայն բեկար արքունի». 4. Նույնը, էջ 161—162, «Եւ այսպէս ընդարձակեալ զսահման տէրութեան իւրոյ (Սմբատ), որ ընդ լծով արքունի սակից և բեկարաց և մաքսից կացուցեալ՝ զզէն քաջութեան մարտի իւրոյ նշան յաղթութեան կանգնէր». 5. Մխիթարայ Գօշի, Դատաստանագիրք Հայոց, Վաղարշապատ 1880, էջ 212՝ «Իսկ եթէ ոք յոր-

---

[1] Տե՛ս նաև Ստեփաննոս Օրբելյան, «Պատմութիւն նահանգին Սիսական», Թիֆլիս 1911, էջ 178։

դեգրաց ի քահանայութիւն ձեռնադրի կամ գեղջն վկայությամբ, կամ յանձնէ, որում չէր անկ քահանայութիւն, զկէս շնորհին կալցի յաղագս ձեռնադրութեանն անհարկ և անպեկար» (Դվինի ժողովի ութերորդ կանոնն է տարբեր խմբագրությամբ). 6. Նույնը, էջ 215՝ «Զի երից երանելոյն սրբոյն Գրիգորի և երանելոյն Տրդատայ թագաւորի զսուրբ եկեղեցւոյն զժառանգութիւնն ընդ այլ ազատաց տանս կարգեալ է և ազատ էին սրբոյ եկեղեցւոյն հողովն և ջրովն։ Եւ ի պարսից թագաւորութեան ժամանակս թէպէտև ի պեկար արկին, սակայն տունն ի դիւանի յայտնի է եւ չէ խառնեալ ի շինականս, բայց միայն զհարկսն տային յարքունիսն» (Դվինի ժողովի իններորդ կանոնն է տարբեր ու հետաքրքիր խմբագրությամբ)։

Ինչպես տեսնում ենք, այս բոլոր վկայությունների մեջ խոսքը գրեթե շարունակ արքունի «բեկար»-ի մասին է։

Եթե «բեկար»-ը հասկանանք իբրև «կոռ» կամ барщина այդ բառերի սովորական այժմյան նշանակությամբ՝ այդ դեպքում՝ վերոհիշյալ վկայություններից պետք է հետևցնենք, որ Աստվածածնի քահանաները կամ սպասավորները մինչև 901 թիվը ոչ միայն հարկ են վճարել արքունիքին, այլև ենթակա են եղել «բեկար»-ի, այսինքն՝ օգտագործվել են իբրև ձրի աշխատող ուժ. պետք է նաև ենթադրենք, որ Աշոտ Բագրատունուն և նրա որդուն Սմբատ Ա-ին հանձնարարված է եղել Հայաստանում ոչ միայն խալիֆայության հարկերի վերակացությունը, այլև արքունի «բեկար»-ի, այսինքն՝ պարտադիր ձրի աշխատանքների՝ վերահսկողությունը։ Վերև առաջ բերված վեցերորդ վկայությունը կստանա անակնկալ ու նոր իմաստ, իբր թե Սասանյան Պարսկաստանի տիրապետության ժամանակ հոգևորականությունը «բեկար»-ի պարտականություններ է ունեցել արքունիքի հանդեպ, այսինքն՝ պարտավոր է եղել կատարել «կոռ»-ի կամ барщина-ի պարտադիր աշխատանքներ։

«Բեկար»-ի նման լուսաբանությունը վերոհիշյալ վկայություններում, իմ կարծիքով, խիստ վիճելի է ու գրեթե անհավանական։

Հայկազյան լեզվի նոր բառագրքում «բեկար» բառը բացատրված է իբրև՝ «հուն. telos ,dasmos, լատին. vectigal որ և դիմոսական հարկ. տուրք արքունի», իսկ «անբեկար» մեկնված է՝ «ազատ ի վճարելոյ բեկար. առանց տալոյ զարքունի սակ տրոց»։ Ուրեմն՝ Հայկազյան նոր բառգրքի աշխատակիցները «բեկար»-ը հասկացել են ոչ իբրև «կոռ», այլ իբրև արքունի հարկ և տրամադիր են եղել, ըստ երևույթին, «բեկար»-ն ընդունելու որպես «դիմոսական հարկ», այսինքն, հավանորեն, capitato plebeia գլխահարկ։

Իմ կարծիքով, եթե «բեկար»-ը, իրոք, կարելի լինի ենթադրել

քբրև արքունի հատուկ որևէ հարկ՝ նա կարող է ունեցած լինել ավելի շուտ հողային հարկի նշանակություն, քան գլխահարկի։ Մենք արդեն վերև առիթ ունեցանք մատնանշելու, որ Հովհաննես կաթողիկոսի վկայության մեջ «արքունի սակք, բեկարք և մաքսք» կարող են թերևս լինել Արաբական խալիֆատի երեք հիմնական հարկերը՝ գլխահարկը, հողային հարկը և մաքսը։ «Սակ»-ը, ինչպես վերև տեսանք, բացի սովորական իր նշանակություններից ունեցել է, հավանորեն, նաև գլխահարկի իմաստ. մաքսի նշանակությունը պարզ է առանց բացատրության, ուրեմն՝ «բեկար»-ը կարող է, ըստ երևույթին, լինել հողային հարկը, որ արաբերեն լեզվով անվանվում էր «խարած»[1]։

Որ «բեկար»-ը համապատասխան կարող է լինել «խարած»-ին, այդ՝ վերապահությամբ, իհարկե, կարելի է թերևս կռահել այն առանձնահատուկ ու ուշագրավ խմբագրությունից, որ Դվինի ժողովի իններորդ կանոնին տրված է Մխիթար Գոշի Դատաստանագրքում։ Համեմատության համար այդ կարևոր հատվածները դնում եմ դեմ առ դեմ։

| Կանոնք Դունայ ժող., Թ. | Մխիթար Գոշ, Դատաստ. մասն |
| --- | --- |
| «Զի երանելոյն Գրիգորի և սրբոյն Տրդատայ զսուրբ եկեղեցւոյն մանկունս ընդ ազատաց տոհմին են կարգեալ, և ազատ էին սրբոյ եկեղեցւոյ հող և ջուր. նաև ի պարսից իսկ տէրութեանն յայտ արարեալ և չէ խառնեալ ի շինական իշխանութիւնն, զերիցունեաց տունսն ի գիւանին եդեալ են, բայց միայն զհասն տալ յարքունիսս» (Կանոնագիրք Հայոց, հրատ. Արսեն Ղլտճյանցի, էջ 126)։ | Ա, ՃՁ, էջ 215—216. «Զի երիցս երանելոյն սրբոյն Գրիգորի և երանելոյն Տրդատայ թագաւորի զսուրբ եկեղեցւոյն պժառանգութիւնն ընդ այլ ազատաց տունս կարգեալ է և ազատ էին սրբոյ եկեղեցւոյն հողովն և ջրովն։ Եւ ի պարսից թագաւորութեան ժամանակս թեպետ և ի պեկարարկին սակայն տունն ի գիւանի յայտնի է, եւ չէ խառնեալ ի շինականս, բայց միայն զհարկսն տային յարքունիսն»։ |

[1] Ուշադրության արժանի է, որ մինչդեռ Հովհաննես կաթուղիկոսը, խոսելով Արաբական շրջանի արքունի հարկերի մասին, գործ է ածում «սակ, բեկար» (տես էջ 133 և 161, Թիֆլիս 1912)՝ Թովմա Արծրունին արքունի հարկերն անվանում է «հարկ, հաս»։ Հետաքրքիր են այս տեսակետից Թովմա Արծրունու հետևյալ վկայությունները, 1. «Պատմութիւն տանն Արծրունեաց», Պետերբ. 1887, էջ 108՝ «Եւ նոքա տան տանել նմա զհարկս և հասս արքունի և դարձուցանեն զնա ընդ նոյն ուստի եկն»․ 2. Նույնը, էջ 111՝ «Զնա յղէ Ապուսէթ ելանել յերկիրն Վասպուրական և անդէն մնալ զօրօք բազմօք, մինչև գրովանդակ զհարկս և զհասս արքունի յամենայն կողմանցն Հայոց առ նա բերցեն յիւրքանչիւր սահմանաց»․ 3. Նույնը, էջ 143՝ «և կացցէ ինքն և իւրքն ամենքեան ի հնազանդութեան արքունի, ի հարկս և ի հասս չափոյ սակի արքունական աւանդութեանց»։ Հովհաննես կաթուղիկոսի և Թովմա Արծրունու վերոհիշյալ վկայությունների համեմատությունից ես ստացել եմ այն տպավորությունը, որ Հովհաննես կաթողիկոսի «սակ և բեկար»-ը համապա-

Դեմ առ դեմ դրված այս հատվածների իմաստը պարզ չէ։ Վիճելի են ոչ միայն հատվածների բովանդակության մի քանի կետերը, այլ անորոշ է նրանց մեջ նաև «պեկար»-ի ու «հաս»-ի նշանակությունը։

Կանգ առնենք նախ Դվինի ժողովի իններորդ կանոնի վրա։

Դվինի իններորդ կանոնի վերոհիշյալ վկայության ընդհանուր իմաստը, իմ կարծիքով, այն է, որ «երիցունեաց» ընտանիքներն ունեցել են պարսից տիրապետության ժամանակ հարկային ինչ որ արտոնություն։ Նրանք չեն եղել «խառնեալ ի շինական իշխանութիւնն», նրանց հատուկ դրությունը, ըստ երևույթին, արձանագրված է եղել դիվանում և նրանք պարտավոր են եղել «միայն զհասն տալ յարքունիս»։

Որ, իրոք, հայ հոգևորականությունն ունեցել է ինչ որ արտոնություն արքունի հարկերի նկատմամբ՝ այդ կարելի է թերևս եզրակացնել «Ներսիսի կաթուղիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի» հինգերորդ կանոնից՝ «նոյնպէս և ոգէոք մի իշխեսցեն մտից սրբոյ եկեղեցւոյ, զի անիրաւ է, վասն անուսումնութեանն ընդ զինուորս կացցեն և զհայրենի հող և ջուր կալցեն, և յարքունիս հարկ, և զորդիս ի դպրոց տացեն, զի ուսցին» (տե՛ս Կանոնագիրք հայոց, էջ 109)։ Եթե ոգեոք հոգևորականները, կորցնելով իրենց արտոնությունները, զրկվում էին հայրենի հողից ու ջրից և վճարելու էին «յարքունիս հարկ», ինձ թվում է՝ կարելի է ենթադրել, որ պաշտոնավարող հոգևորականներն արքունի այդ հարկից ազատ են եղել։ Ուրեմն՝ հոգևորականության արտոնյալ հարկային դրությունը կարծես թե հաստատվում է և այս վկայությամբ։ Տաբարիի վերոհիշյալ տեղեկության համաձայն հոգևորականությունն ազատված է եղել Պարսկաստանում gezith-ից գլխահարկից։ Ի նկատի առնելով կարևոր այս վկայությունը և «հաս»-ի հավանական նշանակությունը՝ իբրև հողային հարկ, որ վերև ենթադրեցինք, ինձ թվում է՝ կարող ենք հավանական համարել, որ հայ հոգևորականությունը՝ Հազկերտ Բ-ի քաղաքական խստություններից հետո՝ պարտավոր է եղել «տալ յարքունիս» հողային հարկ՝ «հաս», բայց ազատ է եղել գլխահարկից։

Եթե այս իմ դիտողությունն ուղիղ ենթադրվի և «հաս»-ն ընդունվի իբրև հոմանիշ «խարաճ»-ի, իմ կարծիքով, անհիմն չպիտի համարվի Գոշի Դատաստանագրքի «ի պեկար արկին» խոսքերը

---

տասխանում է Թովմա Արծրունու «հարկ» և «հաս»-ին։ Այս համեմատությունից և թերևս կարելի լինի ենթադրել, որ «բեկար»-ը համապատասխան կարող է լինել «հաս»-ին՝ հողային նշանակությամբ։

հասկանալ Դվինի կանոնի համապատասխան նշանակությամբ և «բեկար»-ը ենթադրել համանիշ հայերեն «հաս»-ի և արաբերեն «խարաճ»-ի։ Այդ դեպքում, բնականաբար, Գոշի հատվածի վերջում «զհարկսն» բառը պետք է համարել աղճատումն Դվինի կանոնի «հասն» բառի։

Հետաքրքիր է շատ, որ Մխիթար Գոշի վերոհիշյալ հատվածը և, ըստ երևույթին, նաև «ի պեկար արկին» խոսքերը՝ Սմբատ Գունդըստաբլը հասկացել է բոլորովին այլ կերպ։ «Ապա երբ ուժվորեցին պարսիկք ի վերայ հայոց,— ասում է նա իր Դատաստանագրքի ԽԲ կանոնում,— նա տանէին զիրիցնին ի հեծել» (I. Karst, Sempadscher Kodex, B. *I, ԽԲ, էջ 65)*։ Սմբատ Գունդստաբլի ԽԲ կանոնի այս հատվածը խմբագրված է, ամենայն հավանականությամբ, Գոշի ՃՋ կանոնի վերև առաջ բերված վկայության հետևությամբ։ «Բեկար»-ը Գոշի կանոնում Սմբատ Գունդստաբլը, ըստ երևույթին, հասկացել է ոչ իբրև հարկ, այլ որպես «երէց»-ների զինվորական պարտավորություն՝ ծառայելու արքունի հեծելազորքում։

Քննենք «բեկար»-ի նշանակության մասին կարևոր այս նոր ակնարկը։ Եթե «բեկար»-ն ընդունենք իբրև «երէց»-ների զինվորական պարտավորություն, այդ դեպքում՝ վերև առաջ բերված վկայությունները կստանան բոլորովին նոր ու անակնկալ իմաստ։ 901 թվի Կոթայ վանքի արձանագրությունը մեկնելու ենք այն իմաստով, որ Սմբատ իշխանն Աստվածածնի քահանաներին ու սպասավորներին ազատել է արքունի հարկից ու հեծելազորքի մեջ ծառայելու պարտականությունից։ Պետք է ենթադրենք, որ Աշոտ Բագրատունուն և նրա որդուն՝ Սմբատ Ա-ին, հանձնարարված է եղել Հայաստանում թե արքունի հարկերի և թե զինվորագրության վերահսկողությունը։ Մխիթար Գոշի «ի պարսից թագաւորության ժամանակս ի պեկար արկին» վկայությունը պետք է բացատրենք, իբրև հոգևորականության պարտադիր ծառայություն Պարսկական Հայաստանի հեծելազորքի շարքերում։ Բոլորովին նոր լուսաբանություն կստանա Դվինի ժողովի ութերորդ կանոնի հատվածը, որի մեջ հիշատակված է «բեկար»-ը։ Այդ կանոնում ասված է, որ «որդեգրեալ»-ը «զկէս շնորհին կալցէ յաղագս ձեռնադրութեան, ազատ ի հարկէ և ի բեկարէ»։ Եթե «բեկար»-ը մեկնենք իբրև պարտադիր զինվորական ծառայություն նաև Է-րդ դարում, անհրաժեշտորեն, պետք է ենթադրենք, որ 645 թվի քաղաքական խառն շրջանում հոգևորականությունը կարողացել է ազատվել զինվորագրումից, որին ենթարկված է եղել Սասանյան տիրապետության ժամանակ։

«Բեկար»-ի հնագույն նշանակությունը, ինչպես տեսնում ենք, մութ ու անորոշ է։ Վերոհիշյալ վկայություններից, ինչպես տեսանք, կարելի է մոտավորապես գուշակել, որ «բեկար»-ը կամ հողային հարկ է արքունի, կամ զինվորական ծառայության պարտավորություն՝ Սասանյան թագավորության և Արաբական խալիֆայության հանդեպ։

Այս ենթադրություններից ինձ ավելի հավանական է թվում առայժմ առաջինը։ Երկրորդ ենթադրությունը դժվար է հաշտեցնել մատենագրական մի շարք վկայությունների հետ, որոնց մեջ շեշտված է շարունակ, որ եկեղեցու պաշտոնեության մեջ չպետք է ընդունվեն «հեծեալ»-ները և զինվորականները։ Ուշադրության արժանի են այդ տեսակետից հետևյալ վկայությունները. 1. Դվինի ժողովի վեցերորդ կանոնը, հրատ. Արս. Ղլտճյանի, էջ 123՝ «Ոմանք յուխտէ եկեղեցւոյ զկարգ և զպաշտօն թողին և զհեծելութիւն ստացան։ Արդ՝ եթէ դառնան ի չար ճանապարհէն՝ օրհնեալ են ի տեառնէ և ընկալեալք ի մէնջ. ապա թէ ոչ, իշխանութիւն լիցի վարդապետին զշնորհս եկեղեցւոյ հանել յայնպիսեացն և արժանաւոր քահանայից և պաշտօնէից մերձաւորաց տալ, որք սրբոյ եկեղեցւոյ զկարգըն զգուշութեամբ կատարեն». 2. Կանոնք Սահակայ, հրատ. Արս. Ղլտճյանի, Զ, էջ 18՝ «այլ զտգէտս և զզինուորս ամենևին իսկ պարտ է որոշել ի շնորհէն վայելից». 3. Կանոնք Սիմէոնի Աղուանից կաթուղիկոսի (Տ-րդ դար), հրատ. Ա. Ղլտճյանի, էջ 203, «մի ամենևին զինուոր մարդկան հեծելոց և մաքսապետաց, մի որ իշխեսցէ տալ զեկեղեցւոյ իշխանութիւն»։ Հմմտե նաև Կանոնք Ներսիսի կաթողիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի, հրատ. Ղլտճյանի, Ն, էջ 108. Կանոնք Սիմէոնի կաթողիկոսի, Դ, էջ 204 ևն։

«Բեկար»-ի պարսկական ծագումը, որ մատնացույց է արել Նիկ. Ադոնցը, ինձ ևս հավանական է թվում։ Ինչպես վերև տեսանք, bekâr âmadan դարձվածքը Նիկ. Ադոնցը թարգմանել է «Գործի գնալ», ուրեմն՝ նոր պարսկերեն bekâr-ը նա հասկացել է իբրև «գործ, աշխատանք»։ Իր այդ նշանակությամբ պարսկերեն bekâr-ը կարող էր, իսկապես, corvée-յի (corrogata opera) իմաստ ստանալ, բայց ոչ հողային հարկի։

Բայց ճի՞շտ է արդյոք որ պարսկերեն bekâr-ն ունեցել է վերոհիշյալ միայն նշանակությունը։

Միրզա Աբդուլլա Գաֆֆարովի պարսկերեն-ռուսերեն լիակատար բառարանում bekâr-ը թարգմանված է՝ пригодный, годный, полезный, այսինքն՝ «պիտանի, օգտակար», bekâr âmadan՝ пригодиться, быть полезным, приносить пользу այսինքն՝ «պիտա-

նի, օգտակար լինել, օգուտ բերել»[1]։ Նմանապես նաև Կ. Զալեմանի ու Վ. Ժուկովսկու «Պարսկերեն քերականության» մեջ bekâr âmadan թարգմանված է՝ Zweckdienlich sein, être utile[2]։ Bekâr-ի իմաստն այստեղ կապ ունի օգուտ և շահ գաղափարների հետ։ Հողային եկամտային հարկն էլ հենց աշխատանքից, օգուտից, արդյունքից տրվող հարկ էր։ Թռուցիկ այս դիտողությունը ես չեմ համարում, իհարկե, բավարար ու համոզիչ։ «Բեկար» բառի գործածությունը հարկի իմաստով այնքան կարևոր մի խնդիր է, որ կարոտ է, անշուշտ, հատուկ քննության լեզվագետների ու պարսկագետների կողմից։

Ամփոփելով վերոհիշյալ իմ դիտողությունները «բեկար»-ի մասին, ստանում ենք հետևյալ կարևոր եզրակացությունները. 1. Որ «բեկար»-ը Դվինի ժողովի իններորդ կանոնում, Կոթայ վանքի 901 թվի արձանագրության, Հովհաննես կաթողիկոսի պատմության մեջ, նաև Մխիթար Գոշի Դատաստանագրքում չունի corvée-յի կամ барщина-ի նշանակություն՝ այդ բառերի այժմյան հասկացողությամբ. 2. որ «բեկար»-ը կարող է լինել կամ արքունի հարկ, հավանորեն, հողային, կամ զինվորական ծառայության պարտավորություն, եթե այս վերջին ենթադրությունը կարելի լինի հաստատել փաստական որևէ նոր տվյալներով և վերացնել այն դժվարությունները, որ վերև մատնացույց եմ արել. 3. որ «բեկար»-ը, հիշատակված լինելով Դվինի 645 թվի ժողովի կանոններում, գոյություն ունեցած պիտի լիներ մարզպանական Հայաստանում։

Այս կետերից երկրորդը, ինչպես տեսնում ենք, սոսկ մի ենթադրություն է, որ անհրաժեշտ է հետագայում հիմնավորել և ապացուցել ավելի որոշ ու հաստատուն վկայությունների օգնությամբ։

## «ԿՈՌ» ԵՎ «ՊԱՀԱԿՈՒԹԻՒՆ»

Պրոֆ. Նիկ. Ադոնցը բացի «բեկար»-ից «կոռ»-ը ևս հիշատակել է իր աշխատության մեջ, նույնացրել է այդ բառը պարսկերեն kâr-ի հետ[3], որ նշանակում է «աշխատանք» և վերագրել է նրան նույն

[1] Мирза Абдулла Гаффаров. Полный персидско-русский словарь, т. I, Москва, 1914 г.

[2] C. Salemann und V. Schukovski, Persische Grammatik, Berlin, 1889, էջ 116

[3] Հայկական «կոռ»-ը նույնացնելու համար պարսկերեն kâr-ի հետ հարկավոր է ցույց տալ լեզվական այն օրենքը, որի հիման վրա պարսկերեն â-ն դառնում է հայերենում ո։

իմաստը, ինչ որ «բեկար»-ին, այսինքն՝ համապատասխան է համարել ֆրանսերեն corvée-ին և ռուս. барщина-ին[1]։ Պրոֆ. Ս. Եղիազարովը իր «Исследования по истории армянского права» ուսումնասիրության մեջ «կոռ»-ը համարել է հատուկ հարկ, որ առնվում էր աշխատավորից և մեկ զույգ եզից կամ գոմեշից, որ լծված էին արորին, սայլին կամ կամին։ Նրա կարծիքով «կոռ» անվանվել է թե անասունների այդ մեկ լուծը և թե այն հարկը, որ առնում էին յուրաքանչյուր այդ լուծից[2]։ Սրեմն՝ «կոռ»-ը նա համապատասխան է համարել ռուսական соха-ին, որ ինչպես հայտնի է, 13-րդ դարից սկսած դառել էր հարկային որոշ միավոր։ Այս բացատրությունը, եթե ուղիղ լիներ, հին Հայաստանի հարկային կարգերի համար կլիներ, անշուշտ, կարևոր ու հետաքրքիր մի նորություն։ Սակայն հարգելի պրոֆեսորի այս կարծիքը ևս սխալ է և արդյունք է, պարզապես, անախորժ մի թյուրիմացության։ Վերոհիշյալ իր հետևությունները «կոռ»-ի մասին նա արել է, հիմնվելով դարձյալ Մ. Էմինի «Аямянския надписи» աշխատության վրա, որի մեջ «կոռ»-ը թարգմանված է подать և «կոռ»-ի վերաբերյալ հատվածները թարգմանված են միանգամայն սխալ (տե՛ս էջ 14 և 73)։

«Կոռ»-ի խնդիրը՝ նրա բովանդակությունը և ծավալը՝ Հայաստանի տնտեսական կյանքի կարևորագույն խնդիրներից մեկն է, ուստի հարկավոր եմ համարում առաջ բերել «կոռ»-ի վերաբերյալ պատմական հնագույն տեղեկությունները, որ առայժմ ինձ հայտնի են։ «Կոռ»-ը, գլխավորապես, հիշատակված է արձանագրություններում։ 1. Վիմական տարեգիր, էջ 10, Մրեն 992 թ. «Յանուն Աստուծոյ այս իմ հրամանք են Գագկա Շահիազնշահի. ազատեալ իմ զՄրենոյ կոռն, որ ի Նախճաւանի էր, զմարդոյ և զեզին, ի ձեռն խնդրոյ աստուածապատիւ տեառն Սահակայ Արշարունեաց եպիսկոպոսի». 2. Վիմակ. տարեգ. էջ 27՝ Անի, 1057—1063 թ. (պետք է լինի 1059—1064, տե՛ս վերև էջ 19, ծան). «և ազատեցին («ողորմութեամբ սուրբ և ինքնակալ թագաւորին Կոստանդեա Դուկի») զվեցկէ կոռ, և զայլի, եւ զկամին, եւ զանգարիոն և կատապան ով և լինի, ատ սերմ ո. մոդ եւ ծախք զընծեյոցն. զայլն տանուտէրքն առնեն իւրեանց տամբ». 3. Վիմակ. տարեգ. էջ 43, Հառիճայ, 1201 թ. «եւ զառաջին սահմանքն, որ բուն լեալ էր, հաստատեցի ի Սահմանախաչէ ի Հառիճա դետն կոռ մարգով, Գբերովն, Յամաք ձորով, Ծինարին Հարով,

---

[1] Армения в эпоху Юстиниана, էջ 484։

[2] Исследования по истории армянского права, էջ 41։

Գոմցեց ձորովն, Արենաղբերով, հին Հաւիճաւով». 4. Վիմակ. տարեգ. էջ 80՝ Դսեղ, 1237 թ. «Յառաջնորդութեան Տիրացու վարդապետին ես Աշոտ, որդի Գուրգէի, միաբանեցայ վանիս եւ ետու Աստուածածնիս երկու մեծ կոռավար եւ հաստատեցի արձանագրով». 5. Վիմ. տարեգ. էջ 83՝ Դսեղ, 1241 թ. «Ես Գրիգոր, որդի Մարծպանաց, յետ մահուան հաւր իմոյ շինեցի զԳրիգորաշէն եւ ետու յիմ վանքս եւ Սիրեկայ զոմոց տափն եւ մեծ կոռավարն Ագարակի Փայտաշէնու կէսն եմ». 6. Վիմ. տարեգ. էջ 123՝ Սբ. Սիոն, 1283 թ. «Նուէր ի սբ. ուխտս զՔարաթաղին այգին վերին հատովն... կոռ արտով»... եւն. 7. Վիմ. տարեգ. էջ 161՝ Ջագավանք, 1325 թ. «Ի պարոնութեան Զաքարիա, թոռն Աւագին, մեք Դաւիթ եւ Վահապ Եփաթա և որդիք մեր Սատրիկ եւ Բահադին եւ Աւլուլա վասն յուսոյն, որ առ Աստուած եւ մեր արեւուս համար թողաք զվանաց կոռս զմարգո, եզին, իշո, զամենայն ցեղ կոռ»։ «Կոռավար»-ը հիշվում է նաև 881 թվի «Սաղոմօն» Սյունյաց եպիսկոպոսի հիշատակագրում, որ առաջ է բերված Ստեփանոս Օրբելյանի պատմության մեջ (Թիֆլիս 1911, գլ. Խ, էջ 215)։

«Կոռ»-ը, իմ կարծիքով, հիշատակված է եղել նաև Դվինի 645 թվի ժողովի ԺԱ կանոնում։ Այդ վկայությունը, որ ամենահինն է ու կարևորը, անհայտ է մնացել մինչև այժմ, որովհետև «կոռ»-ի վերաբերյալ հատվածը կանոնում աղճատվել ու փոփոխման է ենթարկվել տգետ գրիչների կողմից։ Աղճատումն ակներև է դառնում, երբ դեմ առ դեմ ենք դնում Դվինի ժողովի ԺԱ կանոնը և Մխիթար Գոշի Դատաստանագրքի Բ մասի ՃԳ կանոնը, որը Դվինի ժողովի նույն կանոնն է Գոշի խմբագրությամբ։

| Դվինի ժողովո ԺԱ կանոնը | Մխիթար Գոշ Բ. մասն, ՃԳ |
|---|---|
| *«Ոմանք յաղատաց ի վերայ տկարանոցաց իշխանութիւն առնեն, և որպես ի կենդանեաց՝ հարկս պահանջեն և ի կերակուրս և յըմպելիս զիւրեանց զգործակալս մատուցանեն, կռուով և պատուհասիւ նեղեն, զողորմելի եղբարսն չարչարեն անխղճաբար» (Կան. Հայոց, հրատ. Արսեն Ղլտճյանի, էջ 127—128)։* | *էջ 412. «Ոմանք ի տկարանոցս իշխանութիւն առնեն եւ հարկս եւ կերակուրս եւ ըմպելիս պահանջեն բռնութեամբ, և զիւրեանց գործակալս ի վերայ գումարեն եւ կոռով եւ պահակութեամբ նեղեն եւ զողորմելի եղբարսն չարչարեն անխղճաբար»։* |

Այս համեմատությունից պարզ երևում է, որ Դվինի կանոնում բնագիրը աղճատված է և «կռուով և պատուհասիւ» խոսքերը, որ անտեղի են ու անհարմար, ծագել են «կոռով և պահակութեամբ» ուղիղ ընթերցվածի աղավաղումից։ Մխիթար Գոշը, անկասկած.

ունեցել է ձեռքի տակ Դվինի կանոնի բնագիրն առանց այդ աղճատման։ Կարծում եմ, որ այս սրբագրության դեմ և ոչ մի առարկություն չի կարող լինել, որովհետև աղճատումն ակներև է ու անվիճելի։

Այս ուղղումը հին հայոց ներքին կյանքի լուսաբանության տեսակետից ունի խիստ մեծ նշանակություն, որովհետև Դվինի կանոնի վկայությամբ հաստատապես որոշվում է, որ «կոռ»-ը գոյություն է ունեցել Հայաստանում ոչ միայն Բագրատունյաց ու հետագա շրջաններում, այլև 645 թվին։ Եթե այդ այդպես է, ուրեմն, կարելի է նաև ենթադրել, որ «կոռ»-ը, ամենայն հավանականությամբ, գոյություն ունեցած պիտի լիներ Հայաստանում նաև մարզպանության շրջանում[1]։

Առանց Դվինի ժողովի հետաքրքիր այդ տեղեկության կարևոր այս խնդիրը կմնար մութ ու անլուծելի։

«Կոռ»-ի նշանակությունը վերոհիշյալ բոլոր հատվածներում այնքան պարզ է ու որոշ, որ կարոտ չէ առանձին լուսաբանության։ «Կոռ»-ը, անտարակույս, այն պարտադիր աշխատանքներն էին, որոնք, ինչպես միջնադարյան corvée-ն գերմ. Frohndienst-ը և ռուս. барщина-ն կատարվելու էին ձրի կալվածատիրոջ մոտ։

Իմ կարծիքով, միանգամայն սխալ է ու անհիմն Յ. Կարստի ենթադրությունը, որ իբր թե «կոռ»-ը Հայաստանում, ինչպես և արևելյան սլավոնների ու ռուսների մոտ, առաջ է եկել Բյուզանդական ազդեցությամբ և իբր թե այդ է պատճառը, որ հայկական «կոռ»-ը, և, ընդհանրապես, հարկային սիստեմը նմանություն ու ազգակցություն ունեն արևելյան-սլավոնականի ու, մանավորապես, ռուսականի հետ, որոնք նույնպես ենթարկվել են Բյուզանդիայի ազդեցության (I. Karst, Sempadscher Kodex, B. II, 1905, էջ 12)։ Այդ

[1] Կարևոր է այստեղ հիշել, որ «կոռ»-ը մարզպանության ժամանակ գոյություն է ունեցել նաև Սասանյան Պարսկաստանում։ Այդ մասին Տաբարիի պատմության մեջ կա ուշագրավ մի վկայություն։ Խոսելով երկարատև սովի ու ժողովրդի ծանր դրության մասին Սասանյան Պերոզ թագավորի ժամանակ (457—484 թ.) Տաբարին հաղորդում է, որ Պերոզ թագավորը «նամակների միջոցով հայտարարում է իր ամբողջ ժողովրդին, որ ազատում է նրան հողային հարկից և գլխահարկից, հանրօգուտ նպատակների համար ծանրություններից և կոռից, որ նրանց շնորհում է լիակատար ազատություն և հրամայում է, որ նրանք հոգան ու մտածեն իրենց սնունդի և պահպանության մասին»։ Տե՛ս Th. Noeldeke, Tabari, էջ 112։ «Da erkärte er durch Briefe seinem ganzen Volke, dass er sie von Grund und Kopfsteuer, von Auflagen für gemeinnützige Zwecke und vom Frohndienst entbinde, dass er ihnen volle Freiheit gebe und ihnen geblete, sich um ihre Ernährung und Erhaltung zu bemühen:

ենթադրությունը ճիշտ չէ, որովհետև թե ինքը ֆեոդալիզմը և թե նրան առանձնահատուկ տնտեսական ներքին կարգերը՝ ազատ գյուղացիության ճորտացումը և օգտագործումը, որպես աշխատող ձրի ուժ, ոչ թե իրավական փոխառություններ են, ինչպես լեզվի որոշ բառապաշարը, այլ ամեն մի երկրի տնտեսական ու ներքին զարգացման արդյունք։ Հայկական «կոռ»-ը չի կարող Բյուզանդիայի ազդեցությամբ առաջ եկած լինել նաև այն պատճառով, որ «կոռ»-ի գոյությունը Բյուզանդական կայսրության մեջ նրա ֆեոդալացումից առաջ, որ տեղի է ունեցել շատ ավելի ուշ քան Հայաստանում, դրեթե անհայտ մի խնդիր է և հաստատուն կերպով դեռ ապացուցված չէ։

Միջին դարերում, ինչպես հայտնի է, տարբերել են ճորտ գյուղացիության երկու տեսակ գլխավոր պարտադիր աշխատանքներ՝ manoperae (գերմ. Handfrohnen) և carroperae (գերմ. Fahr- կամ Spannfrohnen)։ Առաջինն այն աշխատանքներն էին, որ գյուղացին կատարում էր ինքը, երկրորդը՝ այն որ նա կատարում էր իր անասուններով ու լծասարքով։ Այդ երկու տեսակ աշխատանքներն էլ, ինչպես երևում է վերև առաջ բերված վկայություններից, գոյություն են ունեցել Հայաստանում Բագրատունյաց ու հետագա շրջաններում, հավանորեն, նաև արաբական ու մարզպանության ժամանակ։ 992 թվի Մրենի արձանագրության մեջ հիշատակված է՝ «զՄրենոյ կոռն, որ ի Նախճաւանի էր, զմարդոյ եւ զեզին», 1059—1064 թվի Անիի արձանագրության մեջ՝ «զվեցկէ կոռ եւ զսայլի, եւ զկամին, եւ զանգարիոն», իսկ 1325 թվի Ջագավանքի արձանագրության մեջ՝ «զվանաց կոռս զմարդո, եզին, իշո, զամենայն ցեղ կոռ»։ Այս վկայություններում հիշված «մարդոյ կոռ»-ը համապատասխանում է, անշուշտ, միջնադարյան manoperae կամ գերմ. Handfrohnen անվանված ձրի աշխատանքներին, իսկ «վեցկէ, սայլի, կամին, եզին, իշո» կոռի տեսակները համապատասխանում են միջնադարյան carroperae կամ գերմ. Fahrfrohnen աշխատանքներին։

Ինձ թվում է, որ «վեցկէ կոռ»-ը, ինչպես երևում է «վեցկի» ժողովրդական բառի այժմյան նշանակությունից, այն վարուցանի պարտադիր աշխատանքներն էին, որ գյուղացին կատարելու էր իր արորով ու իր լծկաններով։ Նմանապես և «կամին կոռ»-ը կամ անեյու աշխատանքներն էին, որ գյուղացին պարտավոր էր կատարել դարձյալ իր կամով ու լծկաններով։ Կարող էին լինել, իհարկե, դեպքեր, երբ գյուղացին վարուցանի ու կալի պարտադիր աշխատանքները պետք է աներ կալվածատիրոջ գործիքներով ու լծկաններով, բայց այդ, իմ կարծիքով, չէր լինի այլևս «վեցկէ կոռ» կամ

«կամին կոռ», այլ կլիներ «մարդոյ կոռ»։ «Սայլի, եզին, իշո կոռ»-ը հասկանալի են։ Այդ այն պարտադիր ձրի աշխատանքներն էին, որ գյուղացին անելու էր կալվածատիրոջ մոտ իր բեռնակիր անասուններով կամ սայլով։ Այս «կոռ»-ը հիշվում է նաև Մխիթար Գոշի Դատաստանագրքի Ա կանոնում (Բ մասն, էջ 316)՝ «Ձիոյ և ջորւոյ և իշոյ մի լիցի հարկ, զի նոքօք բազում անգամ[1] ծառայէ զտէրունսն»։

Գոշի Դատաստանագրքում առանձնապես կարևոր է հետևյալ վկայությունը «կոռ»-ի քանակական չափի մասին. «Այսպէս եւ յաւուրս շաբաթուց եօթնէ մին գործիցէ իշխանին եւ տէրանն. այլ աւելի աշխատելն զձեռամբ անկեալն անիրաւութիւն մեծ է» (մասն Բ, Ա, էջ 315)։

Այս տեղեկությունը, ինձ թվում է, որ մոտավորապես համապատասխան պիտի լինի «կոռ»-ի օրերի միջին քանակին, որ, ըստ երևույթին, սովորական է եղել ԺԲ-րդ դարի երկրորդ կեսում։ Նույն կանոնի վերջին խոսքերից կարելի է սակայն հետևցնել, որ իրական կյանքում գոյություն են ունեցել «կոռ»-ի ավելի ծանր պայմաններ։ Ուշադրության արժանի է նույն կանոնում նաև հետևյալ հատվածը՝ «յեօթնէ մին գործիցի իշխանին ու տէրունի»։ Այս խոսքերից կարելի է, իմ կարծիքով, հետևցնել, որ շինականները «կոռ»-ի պարտականություն են ունեցել բացի իրենց անմիջական տիրոջից նաև երկրի իշխանի հանդեպ, որին ենթարկված էր գավառը կամ շրջանը։

«Կոռ»-ի 52 օր տևողությունը պետք է համարել շինականների համար բավական ծանր թեև, պետք է ասել, որ Արևմտյան Եվրոպայում նույն այդ ժամանակները գոյություն են ունեցել «կոռ»-ի շատ ավելի ծանր պայմաններ։ Յ. Կուլիշերի ասելով, Թ—ԺԱ դարերում «կոռ»-ի աշխատանքներն Արևմտյան Եվրոպայում, սովորաբար, կազմել են ճորտական գյուղացիության աշխատանքի օրերի կեսը՝ երեք օր շաբաթվա ընթացքում[2]։ Այս վկայությունը մոտավո-

[1] Այս կանոնի առթիվ Վ. Բաստամյանցը ծանոթության մեջ հաղորդում է, որ «իր օրինակի մեջ լուսանցքի վերա գրած է՝ պատահմամբ (փխ. «բազում անգամս»), իսկ №—488, 749 և Սին. Կարապ. օր. մեջ գրած է տողի ընթացքում՝ միայն պատահմամբ ծառայել նոքօք զտէրանսն»։ Հիմնվելով այս ծանոթության վրա, կարելի է, իմ կարծիքով, ենթադրել, որ Դատաստանագրքի խմբագրությունից հետո այս «կոռ»-ը եղել է որոշ տեղերում պատահական ու բացառիկ։ Բայց հնարավոր է նույնպես, որ արտագրողները, շեշտելով այս «կոռ»-ի պատահական լինելը, նպատակ ունեն արդարացնել ձիուց, ջորուց և իշուց առնվող հարկերը։

[2] Տես I. М. Кулишер, Лекции по истории экономического быта Западной Европы, Петроград, 1918, էջ 48.

-պապես ճիշտ կարող է լինել, իմ կարծիքով, գյուղացիության ճնշված ու ստորին խավերի համար։ Ինչպես հայտնի է, նույն այդ ժամանակաշրջանում, նայած տեղին ու ժամանակին, գյուղացիության մի ստվար մասը զտնվել է Արևմտյան Եվրոպայում ավելի ազատ ու տանելի վիճակում և պարտավոր է եղել աշխատել կալվածատիրոջ մոտ, մեծ մասամբ, 12 օր տարվա ընթացքում, իսկ երբեմն՝ դրանից էլ պակաս։

Ի նկատի առնելով հայ շինականների համեմատաբար բարեկեցիկ դրությունը, Ե-րդ դարում, ինչպես կարելի է, իմ կարծիքով, եզրակացնել Շահապիվանի ժողովի կանոններից[1], ինձ թվում է, որ «կոռ»-ը եթե նա գոյություն ունեցած լիներ հնագույն այդ շրջանում, կարող էր ավելի մեղմ եղած լինել, քան Բագրատունյաց ու հետագա ժամանակներում։

Վերև առաջ բերված «կոռ»-ի վերաբերյալ վկայություններից հետաքրքիր է, մասնավորապես, 1059—1064 թվի Անիի արձանագրությունը, որի բովանդակությունից երևում է, որ «կոռ»-ի պարտականություններ ունեցել է «Անի մայրաքաղաքը»։ «Անուամբ Տեառն ամենակալի եւ ողորմութեամբ սուրբ եւ ինքնակալ թագաւորին Կոստանդեա Դուկի,— հաղորդում է արձանագրությունը,— կամ եղև իմ Բագրատ մագիստրոսի եւ արևելից կատապանիս Վխկացույս առնել ողորմութիւն մայրաքաղաքին Անւո, յորժամ առին զտանուտրութիւնս Մխիթար իպատոսն, Կրտին որդին, եւ Գրիգոր, Լապաստակի որդին, սպաթար կանկիտատն, եւ Սարգիս, Արտաւազայ որդին, սպաթար կանկիտատն, և ազատեցին զվեցկէ կոռ, եւ զսայլի եւ զկամին, եւ զանգարիան եւ կատապան ով եւ լինի, սա սերմ ու մոդ եւ ծախք զընծելոցըն. զայլն տանուտէրքն առնեն իւրեանց տամբ, որ չհասնի ի յԱնի ոչ ինչ ույժ» (Վիմ տարեգ., էջ 27)։

Արդ, ինչպե՞ս պիտի հասկանալ արձանագրության այս վկայությունը, որ «կոռ»-ի պարտադիր աշխատանքներից ազատել են Անի մայրաքաղաքը։ Դժվար է, իհարկե, ենթադրել, որ «կոռ»-ի պարտականություններ կարող էր ունենալ Անիում բնակվող «ազատ»-ների դասը։ Ըստ երևույթին, այս վկայությունը վերաբերում է «ռամիկ» ժողովուրդին, հավանորեն, Անիի տանուտերերի իշխանության տակ գտնվող այն «ռամիկ շինականներին», որոնք գտնվել են ճորտական վիճակում։

Վերոհիշյալ վկայություններում հիշատակված են նաև «կոռա-

[1] Տե՛ս Հ. Մանանդյան, Դիտողություններ հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում։ Երևան 1925, էջ 41։

վար» հողեր, որոնք նվեր էին տրված եկեղեցիներին կամ վանքերին։ «Կոռավար» բառը գործ է ածված, անշուշտ, այն հողերի վերաբերմամբ, որոնք մշակված էին «կոռ»-ի միջոցով։

Արդ, եթե այդ հողերը նվեր էին տրվում, իբր «կոռավար», ինչպես ասված է արձանագրություններում, հարց է առաջ գալիս, թե արդյոք այդ հողե՞րն էին միայն անցնում եկեղեցուն, թե՞ նաև «կոռ»-ը, այսինքն՝ նաև նրանց մշակման պարտադիր ձրի աշխատանքները։ Քանի որ արձանագրությունների մեջ շեշտված է, որ նվեր են տրվում «կոռավար» որոշ հողեր, ինձ հավանական է թվում, որ «կոռ»-ի աշխատանքներն այնուհետև կատարվելու էին նույն հողերի վրա նոր տիրոջ օգտին։ «Կոռավար» հողերի ատարացման ու փոխանցման վերաբերյալ կարևոր այս խնդիրը կարոտ է, իհարկե, դեռ առանձին քննության նոր ավելի որոշ փաստերի օգնությամբ։

«Կոռ»-ի նշանակության վերաբերմամբ կա մի ընդհանուր հարց ևս, որ հարկավոր է պարզել։ Ֆրանսիական corvée-ն և գերմանական Frohndienst-ը, ինչպես հայտնի է, ունեցել են ընդարձակ իմաստ և գործ են ածվել նաև պետական ու հասարակական բնույթ ունեցող աշխատանքային պարտականությունների համար։ Այդպիսի աշխատանքներ էին, օրինակ, ճանապարհների շինությունն ու նորոգումը (corvée des routes), փոխադրական միջոցների հայթայթումը ևն։

Ռուսաստանում, ընդհակառակը, барщина կոչվել են միայն այն պարտադիր ձրի աշխատանքները, որ կատարվել են կալվածատիրոջ օգտին։ Հայկական «կոռ»-ը ունեցել է, իմ կարծիքով, նույնպիսի ընդարձակ իմաստ, ինչպես corvée-ն և Frohndienst-ը։ «Կոռ»-ի այդ ընդարձակ իմաստը ԺԷ-րդ դարում պարզ երևում է Զաքարիա սարկավագի հետևյալ հետաքրքիր վկայություններից. 1. Պատմագրություն, Վաղարշապատ 1870, Հատ. Ա, էջ 45՝ «Սա (Ամիրգունայ խանը) ի տիրելն իւրում Երևանայ, իսկոյն ձեռն էարկ շինութեան և մարդաշատութեանս։ Նախ սկսաւ շինել զբերդն, և ապա ապարանս, և զայգիս, և զբուրաստանս, և զպարտէզս, և հանել զառուս, և առաւելուլ զջուրսն։ Այլ և ի տեղիս տեղիս թեթևացոյց զհարկն, և երարձ զծանր լուծ ի պարանոց և ռամկաց։ Բայց զի բազմացոյց զուսխրայն՝ այսինքն կոռն. քանզի որպէս ասացաք՝ թէ շինածս առնէր. վասն այնորիկ բազմացոյց զկոռն»։ 2. Նոյնը, Հատ. Բ, էջ 11՝ «և հրամայեաց Քօռ-խազնատարն ուսխրայ հանել՝ այսինքն կոռ՝ առ ի պեղել զձիւնն, և բանալ ճանապարհ զօրացն. և զոր ինչ ի ցերեկի պեղէին, գիշերն (իգիշերին) լնոյր հոսանն. բազումս չարչարեցան, և ոչ եղև օգուտ ինչ»։

Ինձ թվում է, որ նույն այս ընդարձակ նշանակությունը «կոռ»-ը, հավանորեն, ունեցած կլիներ նաև հնագույն ժամանակներում։ Մխիթար Գոշի վերոհիշյալ վկայությունը, որ «յաւուրս շաբաթու յեօթնէ մին գործիցի իշխանին եւ տէրունի» (էջ 315)՝ կարող է թերևս մի ակնարկ համարվել «կոռ»-ի այդ լայն նշանակության ԺԲ-րդ դարում։ Այս հատվածում «տէրունի» անվանված աշխատանքները, անշուշտ, այն «կոռ»-ն է, որ պահանջվում էր կալվածատիրոջ օգտին, իսկ «իշխանին» անվանվածը՝ կարող է վերաբերվել այն պետական ու հասարակական բնույթ ունեցող պարտադիր աշխատանքներին, որ կատարվելու էին երկրի իշխանի հրամանով։ Ինչպես ԺԷ-րդ դարում, նույնպես և այս շրջանում, «կոռ» են անվանվել, հավանորեն, թե առաջին և թե վերջին կարգի աշխատանքները։

Դվինի 645 թվի ժողովի ԺԱ կանոնում, ինչպես վերև տեսանք, հիշատակված է եղել բացի «կոռ»-ից նաև «պահակութիւն»-ը։ «Ոմանք յազատաց,— ասված է եղել կանոնում,— ի վերայ տկարանոցաց իշխանութիւն առնեն, և որպէս ի կենդանեաց՝ հարկս պահանջեն և ի կերակուրս և յըմպելիս զիւրեանց գործակալս մատուցանեն, կոռով և պահակութեամբ նեղեն, զողորմելի եղբարսն չարչարեն անխղճաբար»։ «Պահակութիւն»-ն այս հատվածում, ինչպես երևում է այդ բառի այժմյան իսկ նշանակությունից, ըստ երևույթին, պարտադիր ձրի աշխատանքներն էին՝ պահպանության ու հսկողության, որ գոյություն են ունեցել նաև Արևմտյան Եվրոպայում։ Որ «պահակութիւն»-ը «կոռ»-ի հատուկ մի տեսակն է եղել ոչ միայն յոթերորդ, այլև հինգերորդ դարում, այդ կարելի է գուշակել Նոր Կտակարանի հայերեն թարգմանությունից, որի մեջ հունարեն angareuo (լատիներեն angario) բառի դիմաց, որ գործածական էր պարտադիր ձրի աշխատանքների համար, հայերենն ունի «պահակ ունել» (Մատթ. ԻԵ, 32, Մարկ. ԺԵ, 25) կամ «տարապարհակ վարել» (Մաթտ. Ե, 41) համապատասխան թարգմանությունը։

---

# ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍԻ ՆՈՎԵԼՆԵՐԸ ՀԱՅԵՐԻ ԺԱՌԱՆԳԵԼՈՒ ԿԱՐԳԻ ՄԱՍԻՆ[1]

*Հայ իրավունքի պատմությունը ուսումնասիրելիս ուշադրության արժանի խնդիրներից մեկը՝ Հայաստանում Հռոմեական իրավունքի գործադրության խնդիրն է։*

*Դժբախտաբար այդ խնդրի պարզաբանումը դեռևս զգալի դժվարություն է ներկայացնում՝ թե մեզ հասած պատմական վավերագրերի աղքատության և թե պատմական սակավաթիվ մնացած նյութերը հավաքելու, հրատարակելու և նրանց քննական լուսաբանությանը վերաբերող նախնական պատմա-բանասիրական աշխատանքների անբավարար լինելու պատճառով։*

*Անկարող լինելով դնել այդ խնդիրը իր ամբողջ ծավալով, ներկա հոդվածում մենք սահմանափակվում ենք Արևմտյան կամ Կայսերական Հայաստանում ժառանգման կարգի փոփոխությանը վերաբերող Յուստինիանոսի նոր օրենքների [նովելների] ուսումնասիրությամբ։ Ընդ որում, վերլուծման ենթարկելով պատմական փաստաթղթերի տվյալները, մենք կաշխատենք որոշել հին հայերի մոտ ընդունված ժառանգման բնույթը և պարզել հռոմեական իրավունքի սկզբունքների հնարավոր ազդեցությունը Հայաստանի ժառանգական հարաբերությունների հետագա զարգացման վրա։*

*Սակայն նախապես անհրաժեշտ է ասել մի քանի խոսք Հայաստանի քաղաքական վիճակի և այն պատմական պայմանների մասին, որ այնտեղ եղել են։*

*Ինչպես հայտնի է, Հայաստանի արևմտյան մասը ընկավ Հռոմի իշխանության տակ դեռևս մինչև մեր թվականության սկիզբը։ Այ-*

---

[1] *Տես՝* Новеллы Юстиниана о порядке наследования у армян «Известия АН. Арм. ССР. 1952» № 5

նուհետև ժամանակի ընթացքում հետզհետե միացվել են կայսրության նաև Հայաստանի մի քանի այլ մարզեր։ Այդ մարզերի իրավական դրությունը, որոնք տարբեր ժամանակներում էին մտել Հռոմեական կայսրության կազմի մեջ և տարբեր քաղաքական պայմաններում, եղել է խիստ տարբեր։

Մինչդեռ, այսպես կոչված, Փոքր Հայքի հողերը, որոնք տեղավորված էին Եփրատ գետի ձախ ափի երկարությամբ, ենթարկվել էին հռոմեացիներին դեռևս Միհրդատ Պոնտացու անկումից հետո և ժամանակի ընթացքում կազմել էին Հռոմեական կայսրության օրգանական մասը, կայսրությանը միացրած նախկին Մեծ Հայքի մարզերը [374 և 387 թթ.] իրենց ներքին կազմակերպությամբ եղել են անկախ և կառավարվում էին մեծ մասամբ տեղական իշխանների միջոցով, որոնք Պրոկոպիոս պատմիչի մոտ կոչվում էին սատրապներ։

Արևմտյան Հայաստանի քաղաքական կախումը նախ Հռոմեական հանրապետությունից և կայսրությունից, իսկ ավելի ուշ Բյուզանդական կայսրությունից, առաջ բերեց արևմտյան հայերի սերտ մերձեցում և մշակույթի շփում հունա-հռոմեական աշխարհի հետ։ Ներգրավվելով կայսրության կյանքի հունի մեջ, Հայաստանի այդ մասը չկարողացավ զերծ մնալ կայսրության մշակույթի և կրթության ազդեցությունից։ Այդ ազդեցությունը ուժեղացավ հատկապես Յուստինիանոսի ժամանակվանից և մասամբ կապված է այդ կայսեր բարենորոգչական գործունեության հետ, որը ձգտում էր հռոմեականացման ենթարկել կայսրության իշխանության տակ գտնվող Հայաստանի մարզերը։

Այդ խոշոր աշխարհակալի խիստ միտումնավոր ու մտածված քաղաքականությունը, ինչպես և դարերի ընթացքում տեղի ունեցող հայերի մոտիկ հարաբերությունները կայսրության հետ, պետք է, անշուշտ, թողնեին իրենց հետքերը հայ ժողովրդի հոգեկան կյանքի վրա և հատկապես նրա այն հատվածի, որը գտնվում էր Կայսերական Հայաստանում։

Եվ իրոք, հայկական մատենագրությունը, որ հայերի քրիստոնեություն ընդունելուց հետո համակված է եղել սուրբ-քրիստոնեական գաղափարներով, սկսած VI—VII դարերից կրում է հունա-բյուզանդական մտքի ու գիտության որոշ ազդեցությունը։

Հայ մտավորականության հունասիրական այդ նոր հոսանքը նկատելի է ոչ միայն հին հայկական գրականության մեջ, այլև հայերի մտավոր ու մշակութային այլ դրսևորումների մեջ։ Կարո՞ղ է այնուհետև կասկած լինել նրանում, որ իրավունքի ասպարեզում ևս

Արևելյան-Հռոմեական կայսրության իրավական գաղափարները պետք է ունենային որոշ ազդեցություն հին Հայաստանի իրավական կենցաղի վրա։

Դժբախտաբար, շնորհիվ եղած թերի ու կցկտուր պատմական տվյալների, հին հայերի ներքին կյանքը կարելի է պատկերացնել միայն ընդհանուր գծերով։

Երկրի անկախության ժամանակաշրջանում Արշակունիների օրով Հայաստանը մասնատված է եղել բազմաթիվ իշխանություններ և ունեցել է ֆեոդալական-նախարարական պետական կազմակերպություն։ Ըստ երևույթին յուրաքանչյուր իշխանություն կամ նախարարություն ունեցել է իր ինքնուրույն ներքին կազմակերպությունը, և իրավունքի ու դատական խնդիրներում ղեկավարվել է իր նախնիներից ժառանգած իրավական նորմաներով, այսինքն՝ սովորույթի իրավունքով։ Նախարարական երկրների տարբերության համապատասխան, տարբեր են եղել նաև այնտեղ տիրող սովորույթները։

Քրիստոնեության ընդունումը IV դարի սկզբում ունեցավ այն հետևանքը, որ Հայաստան մուտք գործեց եկեղեցական կանոնական իրավունքը, որը և իր արհայտությունը ստացավ հայ ժողովրդի կյանքի բոլոր իրավական ասպարեզներում։ Նախարարությունների սովորական իրավունքը շատ դեպքերում հակասում էր քրիստոնեական եկեղեցու ուսմունքին, որը ուներ իր կանոնական օրենքները։ Ընդմին, հենց այդ ժամանակաշրջանում Հայաստանում ապրում էին բազմաթիվ կրթված անձինք՝ ասորիներ և հույներ, որոնք ընտելացել էին իրենց իրավունքին և, իհարկե, չէին ուզենա ենթարկվել տեղի սովորական իրավունքին։

Քրիստոնեության ընդունման կապակցությամբ հայ հասարակայնության մեջ տեղի ունեցած փոփոխությունները, բացի կանոնական իրավունքի փոխառումից, առաջ բերին հայ եկեղեցու ինքնուրույն օրենսդրական գործունեություն, որի գլխավոր արտահայտությունը եղել են տեղական եկեղեցական ժողովների որոշումները։

IV դարի վերջերին Արշակունիների անկման հետևանքով Հայաստանը բաժանվեց երկու դարավոր ախոյանների՝ հռոմեացիների և պարսիկների մեջ։

Բացի քաղաքական ինքնուրույնության վերացումից, հայ ժողովրդի պատմության այդ շրջադարձը երկրի ներքին կազմակերպության մեջ սուր փոփոխություններ առաջ չբերեց։ Նախարարություններում գոյություն ունեցող իրավական հարաբերությունները երկար ժամանակ մնում էին համարյա անփոփոխ՝ ինչպես Հռոմեա-

կամ, այնպես էլ Պարսկական Հայաստանում։ Սակայն Կայսերական Հայաստանում այդ ազատությունը հետզհետե սկսեց խեղդվել։

Պրոկոպիոս պատմիչի[1] վկայության համաձայն հայկական սատրապներից ոմանք բացարձակորեն անցան Զենոն կայսեր դեմ ապստամբած զորավարների կողմը։ Այնուհետև, հաղորդում է Պրոկոպիոսը, հայկական սատրապները իշխանության էին կոչվում ժառանգական կարգով և այդ իշխանությունը պահում էին մինչև իրենց մահը։ Սակայն 485 թվին Զենոն կայսրը, ապստամբությանը մասնակցելու համար, իբրև պատիժ, նրանց պաշտոնանկ արեց և որոշեց, որպեսզի սատրապական իշխանությունը տրվի արժանավոր անձանց ըստ կայսեր ընտրության։ Այդ ռեֆորմը ներշնչված է եղել, անշուշտ, արևմտա-հայկական սատրապությունները կիսանկախ երկրներից կայսերական նահանգների վերածելու դիտավորությամբ։

Այդ շրջանների վերամիավորման քաղաքականությունը ավարտվեց Յուստինիանոս կայսեր բարենորոգումներով, որոնք միանման ընդգրկում էին թե վարչական, թե դատավարական և թե օրենսդրական բնագավառները։

Համաձայն 31-րդ նոր օրենքի՝ «Հայաստանում չորս կառավարիչներ հաստատելու մասին», որը հրատարակված է եղել 536 թվին և ուղղված է Իոհաննես պրեֆեկտին, կայսրության ենթակա բոլոր մարզերը ենթարկվել են նոր վարչական բաժանման՝ չորս Հայաստանների, և լիակատար կերպով վերակազմվել են ընդհանուր պետական հիմունքներով։

Երկրի վերակազմության հետ միաժամանակ բարեփոխման է ենթարկվել դատավարությունը և կարգադրություն է արվել ենթարկել հայերին ընդհանուր կայսերական օրենսդրությանը։

Հավաստի վավերագրերի թվում, որոնք վկայում են Հայաստանում Յուստինիանոսի կատարած բարենորոգչական գործունեության մասին, բացի 31-րդ նոր օրենքից, պահպանվել են նաև երկու այլ օրենքներ, որոնք նվիրված են հայերի ժառանգականության իրավունքին։ Մեր այս ուսումնասիրությունը նվիրված է հենց այդ խնդրին։

Բերում ենք այդ նոր օրենքների մեր թարգմանությունը ամբողջությամբ, որը կատարված է հունարեն բնագրից, և որտեղ այլ թարգմանությունների համեմատությամբ թույլ են տրված մի քանի շեղումներ[2]։

---

[1] De Aedificiis III, 1.

[2] *Համեմատե նաև Ն. Ադոնցի թարգմանությունը,* «Армения в эпоху Юстиниана», СПб., *1908, էջ 179—184։*

*Ներածություն.*

«Մենք ցանկանում ենք նաև ազատագրել հայերին նախկին անարդարությունից, փոխանցել բստ ամենայնի մեր օրենքներին և շնորհել նրանց պատշաճ հավասարություն:

*Գլուխ I.*

*Մենք նորերս իմացանք, որ նրանց մոտ գոյություն ունի մի ինչ-որ բարբարոսական և դաժան օրենք, որը անվայել է թե հռոմեացիներին և թե մեր պետության արդարացի ոգուն, այսինքն՝ որ ծնողներին ժառանգում են տղամարդիկ, այլ ամենևին ոչ կանայք։ Այդ պատճառով, ներկա սրբազան օրենքով մենք հրամայում ենք քո մեծաշուք անվանը, որպեսզի ժառանգական կարգերը լինեն միևնույնը և որպեսզի այն բոլորը, ինչ որ սահմանված է հռոմեական օրենքներով տղամարդկանց վերաբերմամբ, ինչպես և կանանց համար ուժ ունենան նաև Հայաստանում։ Չէ՞ որ հենց նրա համար ուղարկեցինք նրանց մեր օրենքները, որպեսզի նոքա կառավարվեն նրանց համաձայն։*

*§ 1. Եվ որովհետև արդեն անցածի համար հարուցել նոր գործեր կլիներ բոլորովին անտեղի, ուստի մենք հրամայում ենք, որպեսզի այս օրենքը ուժ ունենա մեր բարեպաշտ թագավորության ժամանակից, այնպես որ այդ ժամկետից սկսած մինչ այժմ մեռած անձանց ժառանգության հետ պետք է վարվել համաձայն սույնի, բացի այն դեպքերից, երբ գործը արդեն վճռված է իրենց կողմից և նրանց մեջ հաշտեցում է կատարվել այլ կերպ։ Իսկ եթե տեղի է ունեցել նման մի բան, հրամայում ենք թողնել այդ ուժի մեջ և բոլորովին չդիպչել։*

*§ 2. Մենք կամենում ենք, որպեսզի կանայք մասնակցեն նաև տոհմային կոչված կայքի ժառանգմանը, սկսած ցույց տրված ժամանակից։ Իսկ այն դեպքում, եթե գտնվեն անձինք, որոնք իրենց աղջիկներին, որ թեև չեն կոչված իրենց մոտ սովորական ադիաֆետ ժառանգմանը, այնուամենայնիվ գրել են իբրև ժառանգ, նրանք ևս և նրանցից ծնված զավակները պետք է մասնակցեն տոհմային կայքի ժառանգմանը։*

*Վերջաբան.*

*Այսպես, ուրեմն, մեզ համար բարեհաճ, սույն սրբազան օրենքի մեջ հայտարարվածը թող քո գերազանցությունը պահպանե և հանձ-*

նե ի կատարումն, որպեսզի մեր օրենքները ունենան ըստ ամենայնի ուժ և գերիշխումː Իսկ այս օրենքը, ինչպես մենք արդեն ասացինք, գործողության մեջ է մտնում մեր թագավորության սկզբնավորությունից. այդ ամբողջ՝ անցած ու այնուհետև հետագա ժամանակվա համար պետք է խստիվ ղեկավարվել նրանով և բոլորը պետք է այն կատարենː

## Dat. XVII. K. Aug. Bilisario V. C. Cons.

Const. *47*=Nov. *21*. «Նրա մասին, որպեսզի հայերը ամենում հետևեն հռոմեական օրենքներին»ː

Նույն կայսրը Հայաստանի ենթահյուպատոս գերաշնորհ Ակակիոսինː

Ներածություն.

Ցանկանալով, որ Հայկական երկիրը լիովին բարեկարգվի և ոչ մի բանով չտարբերվի մեր պետության մնացած մասից, մենք մտցրինք հռոմեական հաստատություններ, վերացնելով նրանց նախկին անունները, սովորեցրինք նրան օգտվել հռոմեական կարգերով և կարգադրեցինք, որպեսզի նրանց մոտ ուրիշ օրենքներ չլինեն, բացի այն, որոնք ընդունված են հռոմեացիների մոտː

Մենք գտանք նաև անհրաժեշտ ուղղել նրանց մոտ սույն օրենքով այն վատ չարիքը, որպեսզի ժառանգությունները՝ ծնողներից, եղբայրներից և այլ տոհմայիններից չպատկանեն միայն տղամարդկանց և ոչ երբեք կանանց. այլև, որպեսզի կանայք առանց օժիտի մարդու չգնան և չգնվեն այն անձանց կողմից, որոնք ցանկանում են նրանց հետ կենակցելː

Մինչ այժմ այդ նրանց մոտ տեղի է ունենում, իբրև ինչ-որ բան՝ խիստ բարբարոսական. և ոչ միայն ընդունված է նրանց մոտ այդ ամբողջ վայրենությունը, այլև ուրիշ ժողովուրդներ ևս անպատկառ են վերաբերվում դեպի բնությունը և ստորացնում են կանացի սեռը, կարծես նա աստծուց չի ստեղծված և չի ծառայում սերունդի հարատևմանը, այլ իբրև ինչ-որ կարևորություն չունեցող և արհամարհված բան մատնված է պատվազուրկ դրությանː

Գլուխ I.

Ուստի և մենք հրամայում ենք սույն սրբազան օրենքի զորությամբ, որպեսզի հայերի մոտ ևս ուժ ունենա նույնը, ինչ որ ընդունված է մեզանում կանանց ժառանգություն ստանալու վերաբերմամբ, և որպեսզի ոչ մի տարբերություն չլինի տղամարդկանց

*և կանանց սեռի մեջ։ Ինչպես սահմանված է մեր օրենքներում և ինչ ձևով որ ժառանգում են ծնողներին, այսինքն՝ հորը և մորը, պապին ու տատին և այլն, կամ վայրընթաց գծով, այսինքն՝ որդուն կամ աղջկանը, ինչպես որ նրանց ժառանգում են, նույնը պետք է լինի նաև հայերի մոտ. և ոչ մի բանում Հայաստանում իրավական չափերը չպետք է տարբերվեն հռոմեականից։*

*Որովհետև հայերը մտնում են մեր պետության կազմի մեջ, մյուս ժողովուրդների հետ ենթարկվում են մեզ և օգտվում են մեր բոլոր բարիքներից, ուստի և նրանց մոտ կանայք չպետք է դուրս մնան մեզ մոտ գոյություն ունեցող հավասարությունից։ Բոլորի համար միանման պետք է պարտադիր լինեն մեր օրենքների նորմաները, ինչպես այն, որ ժողոված են հներից և անց են կացված մեր Ինստիտուցիաների և Դիգեստների մեջ, այնպես և այն, որոնք հրատարակված են նախկին կայսերական ու մեր օրենսդրությունների հիման վրա։*

## *Գլուխ II.*

*Այսպես, ուրեմն, մենք հրամայում ենք, որպեսզի այդ բոլորը ուժ ունենա հավիտենականապես, սկսած ու ներառյալ ընթացիկ ինդիկտից, երբ հորինված է սույն օրենքը. իսկ մտնել ավելի հին օրենքների քննարկման մեջ և բարձրանալ դեպի հին ժամանակները, կտանի ավելի շուտ դեպի խառնաշփոթություն, քան դեպի օրինականություն։ Բայց սույն 14-րդ ինդիկտի ժամանակից ներառյալ, և հետագա բոլոր ժամանակի համար, ինչպես մենք ասացինք, ժառանգումը պետք է լինի հավասար և այն ամենը, ինչ որ վերաբերում է ժառանգման բոլոր վիճելի գործերին, պետք է կատարվի միատեսակ՝ ինչպես կանանց վերաբերմամբ, այնպես էլ տղամարդկանց։ Իսկ այն ամենը, որ կատարվել է առաջներում, թույլ ենք տալիս թողնել նախկին դրության մեջ՝ գործը վերաբերում է տոհմական սեփականություններին, թե մյուսներին. իսկ կանանցի սեռի անձինք չպետք է մասնակցեն արդեն բաժանված տոհմային հողերին կամ ժառանգումներին, որոնք տեղի են ունեցել մինչև 13-րդ ինդիկտը ներառյալ։ Իսկ հիշված ժամկետին, այսինքն՝ 14-րդ ինդիկտից սկսած, մենք հրամայում ենք, որպեսզի ուժ ունենան մեր օրենսդրությունները։*

## *Վերջաբան.*

*Մեր որոշումները, որ հայտարարված են սույն սրբազան օրենքով, թող քո մեծաշքությունը և նրա, որոնք քեզանից հետո վա-*

*բելու են այդ պաշտոնը, աշխատեն կատարել հավերժ ժամանակներում։*

Dat. XV. K. Apr. Const. post. Bilisarii V. C. consul.

*Մեջ բերված օրենսդրություններից երկրորդը հասցեագրված է Ակակիոս փոխհյուպատոսին և թվարկված է 536-րդ տարվա մարտի 18 թվով, իսկ առաջինը չունի վերնագիր, ուստի և չի կարելի որոշել, թե ո՞ւմ է ուղղված եղել։ Նրա երևան գալը, իհարկե, պետք է տանել մինչև 536 թվի նոր օրենքի հրատարակումը, ինչպես այդ երևում է վերջինի բովանդակությունից։ Նրա հրատարակության տարին ձեռագրերից մեկում ցույց է տրված 535 թվի հուլիսի 23-ը։*

*Այդ երկու վավերագրերի բովանդակությունից, ինչպես և Հայաստանում չորս կառավարիչներ սահմանելու նոր օրենքից որոշակի երևում է, որ Կայսերական հռոմեական օրենսդրության ուժի տարածումը Կայսերական Հայաստանի վերա վերաբերում է Յուստինիանոսի ժամանակին։ Իսկ մինչ այդ, ակներևորեն պետք է գործադրություն ունենային սովորական տեղական օրենքի նորմաները։ Ինչպես պնդում է կայսրը, համաձայն հայերի աղիաֆետ սովորության՝ կանայք չէին մասնակցում ժառանգմանը։ Այդ հաղորդագրությունը շատ հետաքրքրական է։*

*Ժառանգական օրենքի պատմության զարգացման մեջ նույն երևույթը, ինչպես հայտնի է, հանդիպում է հին դարաշրջաններում նաև ուրիշ ժողովուրդների մոտ։ Օրինակ՝ հայտնի է, որ հին հույների մոտ* ab intestato *ժառանգման դեպքերում տղամարդկանց գերադասություն էր տրվում կանանց հանդեպ։ Նմանապես հին ռուսական օրենքը ևս, ինչպես և հին գերմանականը, ժառանգման օրենքի մեջ տղամարդկանց ու կանանց չէր հավասարեցնում։ Այսպես, Բուրգունդական իրավունքը թույլ էր տալիս աղջիկներին ժառանգելու, եթե միայն տղաներ չկային։ «Ռուսկայա պրավդա»* [«Русская Правда»] *գրքի 89-րդ հոդվածում գրված է՝ «Եթե տանը լինի քույր, նրան ժառանգություն չի հասնում, այլ նրան պետք է տան մարդու».* [Аже будет сестра в дому то той задниця не имати, но отдадять ю за мужь братия, како си могуть].

*Վլադիմիրսկի-Բուդանովի*[1] *կարծիքով՝ «որդիներ լինելու դեպքում, աղջիկներին ժառանգությունից բացառելը սլավոնական և գերմանական իրավունքի ընդհանուր սկզբունքն է», ընդ որում, ժառանգման հատուկ կարգով աղջիկները չեն ժառանգում նաև այն*

---

[1] М. Ф. Владимирский-Буданов. Обзор истории русского права, изд пятое, 1907, стр. 494։

դեպքում, եթե որդիներ չեն մնացել, ինչպես «Ռուսկայա պրավդա»-ի [«Русская Правда»] համաձայն—«սմերդ»-ների դասում։ Գիտնականները այդ կարգը համարում են ժառանգման իրավունքի նախնադարյան ընտանեկան հիմունքը, ըստ որում ընտանիքը իբրև ամբողջություն է հանդիսանում իր ունեցվածքի սեփականատերը։

Հասկանալի է թե ինչու կանայք զրկված են եղել այդ ունեցվածքին տիրանալու իրավունքից, որովհետև նրանց կապը ընտանիքի հետ, որտեղ նրքա ծնվել են, եղել է անկայուն։

Վերոհիշյալ օրենսդրությունների բովանդակությունից չի երևում, թե արդյոք հայերի մոտ աղջիկները եղե՞լ են զրկված ժառանգական իրավունքներից եղբայրների բացակայության դեպքում ևս, թե միայն նրանց առկայության դեպքում։ Յուստինիանոսի հաղորդագրությունը, որ «ծնողներին ժառանգում են տղամարդիկ, այլ ոչ կանայք», ցույց է տալիս, որ կարծես կանացի սեռի անձինք բոլորովին զրկված են եղել ժառանգական իրավունքից՝ ո՛չ միայն եղբայրներ ունենալու, այլև չունենալու դեպքում։

Ժառանգական իրավունքի զարգացման սկզբնական փուլերը ուսումնասիրելիս, շատ հետաքրքիր է, ի միջի այլոց, կողմնակի ազգականների ժառանգման խնդիրը։ Կողմնակի ազգականներից հետո, նաև տոհմի մնացած անդամների ժառանգելու փաստը պատմական տեսակետից ներկայացնում է, անշուշտ, զգալի հաջողություն այն դրության համեմատությամբ, որպիսին դիտվում է ժառանգական իրավունքի զարգացման ցածր աստիճաններում։

Օրինակ, հայտնի է, որ հնագույն հռոմեական իրավունքով՝ ժառանգել են միայն sui, իսկ ագնատները և gentiles թույլ են տրվել ավելի ուշ։ Նմանապես հին ռուսական իրավունքով, համաձայն «Ռուսկայա պրավդա» կանոնագրքի, կողմնակի ազգականների ժառանգումը թույլատրված չի եղել, առավել ևս հեռու ազգականությանը, և որդիներ չունենալու դեպքում, ժառանգությունը դառնում էր տիրացուրկ և անցնում էր իշխանին։

Հետզհետե ժառանգման իրավունք ունեցող ազգականների շրջանակի ընդարձակումը, որը փաստ է, հանդիսանում է, իբրև արդյունք, ժառանգական իրավունքի պատմական զարգացման։

Այդ կապակցությամբ, չափազանց հետաքրքրական է, որ վերոհիշյալ 21-րդ նոր օրենքում կա պարզ ցուցմունք հայերի մոտ կողմնակի գծով ժառանգելու իրավունքի գոյության մասին հետևյալ հատվածում.

«մենք կարևոր գտանք նաև սույն օրենքով ուղղել նրանց մոտ այն վատ չարիքը, որպեսզի ծնողներից, եղբայրներից և

այլ տոհմայիններից մնացող ժառանգությունները չպատկանեին միայն տղամարդկանց և երբեք կանանց»։

Ինչ կարգով էին կոչվում կողմնակիները ժառանգման՝ վերադաս ժառանգներից առա՞ջ, նրանց հետ միասի՞ն, թե՞ նրանցից հետո, դրա մասին ոչինչ չգիտենք։ Մեջ բերված 21-րդ նոր օրենքի հատվածից երևում է միայն, որ կողմնակիներին և մյուս ազգականներին թույլ էր տրվում մասնակցել ժառանգությանը։ Սակայն, հայերի մոտ ժառանգական իրավունքի զարգացման առանձնահատուկ գիծը եղել է այն, որ ժառանգողների շրջանի ընդարձակումը նրանց մոտ տարածվում էր միայն արական սեռի անձանց վրա, և ոչ կանանց։ 21-րդ նոր օրենքում պարզ ցույց է տրված, որ կանայք հայերի մոտ չէին ստանում ժառանգություն՝ ոչ միայն ծնողներից հետո, այլև եղբայրներից ու մնացած տոհմայիններից հետո։

Յուստինիանոսի հաղորդագրությունից երևում է, բացի այդ, որ հայերի մոտ կանայք ոչ միայն զրկված են եղել ժառանգական իրավունքից, այլև մարդու էին գնում առանց օժիտի և փեսացուները նրանց գնում էին։ Ուստի Յուստինիանոսը վերոհիշյալ 21-րդ նոր օրենքում նշում է այդ սովորության անթույլատրելիությունը և հրամայում է.

«որպեսզի կանայք առանց օժիտի մարդու չգնան և չգնվեն այն անձանց կողմից, որոնք ուզում են նրանց հետ կենակցել»։

Կանանց գնումը, ինչպես հայտնի է, շատ հին ծագում ունեցող սովորույթ է։ Նա նախ և առաջ հանդիսանում է առևանգման հակադարձ կողմը և պետք է երևան գար փաստական առևանգման եռուզեռի ժամանակ։ Տուժող կողմին նյութական հատուցում տալը լինելու էր իբրև միջոց առևանգվածի ծնողների հետ հաշտեցնելու համար։

Հին հռոմեական իրավունքի մեջ ամուսնության այդ ձևը, որ հայտնի էր coemptio անվան տակ, և որը կատարվում էր իբրև imaginaria venditio, ներկայացնում է իրենից նախկինում փաստորեն գնելու վերապրուկը։ Ռուսական սկզբնական տարեգրության մեջ [начальная летопись] Վլադիմիր Սուրբի մասին ասված է հետևյալը՝ «вдасть за вено грекам Корсунь царице дела»։ Ամուսնության կարգը՝ հարսնացուներին գնելու միջոցով եղել է նաև հին-գերմանական իրավունքում, այնտեղ ամուսինը կնոջ վրա իշխելու իրավունքը [Mundium] պետք է գներ այն անձնավորությունից, որին այդ իրավունքը պատկանում էր մինչև ամուսնությունը։ Այդ նպատակով նա պետք է վճարեր կնոջ արժեքը։

Քրիստոնեությունը ընդունելուց հետո, թեև հայերի մոտ մտավ ամուսնության ձևակերպման կարգը համաձայն եկեղեցական կանոնների, սակայն այդ կանոնները, ըստ երևույթին, չէին գործադրվում հայկական կյանքում իրենց ամբողջ խստությամբ, և տեղական հին սովորությունները դուրս էին գալիս եկեղեցական որոշումներից ավելի ուժեղ։ Մխիթար Գոշի Դատաստանագրքում, որ կազմված է եղել 1184 թվին, կան երեք հոդվածներ, որտեղ սահմանված են խիստ պատիժներ կանանց առևանգողների և նրանց գործակիցների համար։

Մինչև Յուստինիանոսի ժամանակը Հայաստանի ամուսնական կարգի այդ առանձնահատկությունները, բնականաբար, հոռմեացիների կողմից պետք է համարվեին «բարբարոսական»։ Ուստի և Յուստինիանոս կայսրը ուզեց տարածել հայերի վրա հռոմեական իրավունքի դոտալ համակարգը, որը ստացավ իր վերջնական մշակումը հենց նրա օրով։ Իսկ ինչո՞ւմն էր կայանում կայսրության այդ դոտալ հաստատությունը (ինստիտուտը)։

Այդ հաստատության հիմունքները եղել են dos և donatio propter nuptias. ընտանեկան կյանքի ծախքերը ապահովելու համար տղամարդը կնոջ կողմից ստանում էր օժիտ, որը և կոչվում էր հռոմեացիների մոտ dos, իսկ հույների մոտ ferne կամ proix։ Dos-ի հետ զուգահեռաբար տղամարդը իր կողմից տալիս էր «ամուսնական նվեր»—donatio propter nuptias, որը մինչև Յուստինիանոսը կոչվում էր donatio ante nuptias. Այդ նվերը իր չափով պետք է համապատասխան լիներ dos-ին և հատկացվում էր նմանապես ad onera matrimonii sublevanda։

21-րդ նոր օրենքի բովանդակությունից երևում է, որ կայսրը ուզում էր այդ կարգերը մտցնել նաև հայկական երկրում։

Բայց ի՞նչպես կարելի կլիներ անցկացնել այդ բարեփոխությունը այն դեպքում, եթե իրենք բնակիչները անսասանելի կերպով ենթարկվելու լինեին տեղական հին իրավունքին, որը ամրապնդված և սրբագործված էր սովորության հարակցությամբ։ 21-րդ նոր օրենքը, որը հասցեագրված էր Ակակիոս փոխհյուպատոսին, օժիտ տալու ստիպման պարտականությունը դնում էր, ըստ երևույթին, կայսերական իշխանությունների վրա։ Եվ այդ խորթ չի եղել կայսերական օրենսդրությանը։ Դիգեստների մեջ եղել է ցուցմունք, որ իշխանությունները կարող էին պարտադրել հորը սահմանել օժիտ և այդ դեպքում որոշում էին dos-ի չափը։

Վերևում քննության առնելով Յուստինիանոսի օրենսդրություններին վերաբերող հաղորդագրությունները հայերի ադիաֆետ ժա-

ռանգման մասին, մենք անուշադիր էինք թողել ժառանգական իրավունքի էական խնդիրներից մեկը, այն է՝ ժառանգում ըստ կտակի։ Արդյոք եղե՞լ է հայտնի ժառանգման այդ ձևը Հայաստանում նոր օրենքների հրատարակման պահին։

Հին հայկական պատմիչների հաղորդագրություններից երևում է, որ կտակները այդ դարաշրջանում խորթ չեն եղել հին հայերին։ Ղազար Փարպեցու[1] հաղորդագրության համաձայն Սահակ կաթողիկոսը [մեռել է 439 թվի սեպտեմբերի 7-ին], որդի չունենալու պատճառով, իր բոլոր ունեցվածքը թողել է հավերժապես, իբրև ժառանգություն, իր միակ աղջկանը՝ Մամիկոնյան իշխանուհուն և նրա սերունդներին։ Կտակը աղջկա օգտին պատմիչը բացատրում է նրանով, որ «Սահակը չի ունեցել որդի»։ Հետևաբար, ժառանգումը ըստ կտակի գոյություն է ունեցել հայերի մոտ Յուստինիանոսի նոր օրենքների հրատարակումից շատ առաջ։

Ավելի քան հավանական է, որ Հայաստանում ժառանգման այդ ձևի երևան գալը պետք է վերագրել որոշ չափով քրիստոնեական հոգևորականության ազդեցությանը։ Հայերի քրիստոնեության ընդունումը IV դարի սկզբում և քրիստոնեական եկեղեցու իրավական գաղափարների փոխադրումը նրանց մոտ, հավանորեն, պետք է ունենային իրենց ազդեցությունը տեղական իրավունքի վրա, գլխավորապես ընտանեկան և ժառանգական իրավունքի բնագավառում, որովհետև ժառանգման գործերը, սերտ կապ ունենալով ընտանիքի հետ, ենթակա էին հոգևորականության իրավասությանը։ Այսպիսով, ըստ երևույթին, կտակի գաղափարը առաջ քաշեց եկեղեցին և այդ միջոցով մտցրեց գույքի փոխանցման նոր կարգը։

Հայերի մոտ կտակային կարգադրությունների գոյության մասին, բացի հին հայկական պատմիչների տվյալներից, մատնանշում է նաև Յուստինիանոսի վերոհիշյալ հրովարտակը։ I հրովարտակի § 2 գլխում կարդում ենք.

«Իսկ այն դեպքում, եթե գտնվեն անձինք, որոնք իրենց աղջիկներին, որոնք թեև չեն կանչվում սովորական նրանց մոտ ագրաֆետ ժառանգմանը, այնուամենայնիվ գրանցել են իբրև ժառանգ, ապա ուրեմն նոքա ևս և նրանցից ծնված երեխաները պետք է մասնակցեն տոհմային գույքի ժառանգմանը»։

Այդ հաղորդագրությունը, ինչպես տեսնում ենք, ոչ մի կասկած չի թողնում նրանում, որ հայերի համար կտակները խորթ չեն եղել։

[1] Տե՛ս գիրք I, գլ. 18 էջ 37 [Տփխիս 1904]։

Ըստ որում՝ «գրանցել են իբրև ժառանգ» խոսքերը վկայում են, որ այդ կտակները եղել են գրավոր։

Աղջիկների նշանակումը իբրև ժառանգ, հակառակ ադիաֆետ սովորույթի, իրավունք է տալիս սահմանել կտակարարի կամքի որոշ կամայականություն։ Կտակները, որոնց մասին ակնարկում է Յուստինիանոսը, ըստ երևույթին, չեն եղել գույքի բաշխում օրինական ժառանգների մեջ, այլ նպատակ են ունեցել փոխել ժառանգման սովորական կարգը։ Ուստի և ավելի քան հավանական է, որ հայերի մոտ կտակով ժառանգելը, կարող էր էականապես տարբերվել ժառանգման սովորական կարգից։

Սակայն հարց է ծագում, թե ինչո՞ւ հիշված կտակները աղջիկների օգտին չէին բավարարում կայսրին։ Կարծում ենք, որ այդ խնդրի լուծումը դժվարություն չի ներկայացնում։ Յուստինիանոսի հրամանը աղջիկների մասնակցության մասին, որոնք նշանակված են եղել իբրև ժառանգ, նաև տոհմային կալվածքների ժառանգմանը, կարելի է բացատրել միայն նրանով, որ տոհմային հողերի նկատմամբ հայերի ադիաֆետ սովորույթը մնում էր անխախտ և կտակարարի կամքը չէր կարող խախտել այն նույնիսկ իրենց աղջիկների շահերի համար։ Կտակարարի ազատությունը, ինչպես երևում է, չէր տարածվում տոհմային սեփականությունների վրա, որոնք կարող էին անցնել միայն ժառանգման ադիաֆետ կարգով։

Ուստի մեզ թվում է, որ Ադոնցը[1] միանգամայն արդարացի է, երբ պնդում է, որ ֆեոդալական-նախարարական Հայաստանում տոհմային հողերը անցնում էին ագնատային գծով, հանելով կանանց ժառանգմանը մասնակցելու գծից։ Ինչ որ նման բան մենք հանդիպում ենք գերմանական ցեղերի մոտ։

Հայերի մոտ ադիաֆետ ժառանգման սովորույթի հետ զուգընթաց կտակով ժառանգելու գոյության խնդիրը ներկայացնում է մեծ հետաքրքրություն, որովհետև կտակային կարգադրությունների ազատությունը թեև լրիվ չի եղել, սակայն ցույց է տալիս ընտանիքի հոր իրավունքների բարձրացումը։ Յուստինիանոսի նոր օրենքները, ըստ երևույթին, հանդիպում են հայերին անձնական իրավունքների անցման դրության մեջ։

XII դարում, Մխիթար Գոշի Դատաստանագրքի երևան գալու պահին, կտակների ազատության զարգացման ընթացքը մենք գտնում ենք ավարտված։ Այդ ժամանակին ընտանիքի մեծի անձնավորությունը այնքան էր ուժեղացել, որ նա կարող էր նշանակել ժառանգ նույնիսկ կողմնակի մարդու։

[1] Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, СПб., 1908, էջ 194։

Յուստինիանոսի նոր օրենքների մի քանի տվյալների հիման վրա մենք աշխատեցինք հնարավոր չափով լուսաբանել ժառանգական կարգերը և ժառանգման բնույթը հայերի մոտ այդ կայսեր ժամանակ։ Սակայն մեզ մնում է պարզել նաև մեկ խիստ կարևոր խնդիր։ Ինչպես հիշատակված տվյալներից երևում է, Յուստինիանոս կայսրը ցանկանում էր տարածել կայսերական օրենսդրության ուժը հայերի վրա։ Սակայն հարց է ծագում, թե ինչո՞ւ նա, կռվելով հայերի «բարբարոսական» սովորույթների դեմ, իր գլխավոր ուշադրությունը դարձրել էր հատկապես ժառանգական իրավունքի վրա և հրատարակել էր այդ խնդրին վերաբերող առանձնապես նոր օրենքներ։

Ն. Ադոնցը վերև հիշված «Армения в эпоху Юстиниана» իր աշխատության մեջ մանրամասն կանգ է առնում այդ խնդրի վրա և տալիս է շատ հետաքրքիր բացատրություն։ Ադոնցի կարծիքով, բերված երկու վավերագրերը, անշուշտ, վերաբերում են այն միջոցառումներին, որոնք ուղղված են ընդդեմ Հայաստանի ֆեոդալական կարգերի և ծառայում են իբրև բանալի Յուստինիանոսի բարենորոգումների սատարը բացելու համար[1]։

Մենք կարծում ենք, որ հիշված օրենսդրությունների հրատարակման համար իբրև դրդապատճառ թեև կարող էին լինել մասամբ քաղաքական բնույթ ունեցող խորհրդածություններ, սակայն իբրև հիմք ծառայել են, գլխավորապես, միանգամայն այլ նկատառումներ։ Ժառանգության խնդրում հայուհիների իրավահավասարության մեծադղորդ պաշտպանությունը, որը կազմում է նոր օրենքների էությունը, ներշնչված է եղել մեր կարծիքով՝ հռոմեացիների կենսական շահերով, որոնք խառն ամուսնական կապի մեջ էին մտել հայուհիների հետ։

Հայկական երկիրը հետզհետե հռոմայականացնելու հետևանքով, որը սկսված է եղել դեռևս Յուստինիանոսի նախորդների ժամանակ, խառն ամուսնությունների քանակը Հայաստանում ավելի ու ավելի շատանում էր։ Դրան նպաստում էր նաև այն հանգամանքը, որ ազգագրական տեսակետից Արևմտյան Հայաստանի մեծագույն մասը բաղկացած էր խառն բնակչությունից։ Միաժամանակ այնտեղ էին գալիս կայսերական զորքեր և բազմաքանակ բարձր պաշտոնեություն։

Համախակի տեղի ունեցող խառն ամուսնությունների ժամանակ հայ հարսնացուները, համաձայն տեղական սովորույթների, ոչ միայն չէին ստանում ժառանգությունից որոշ մաս, այլև մարդու

---

[1] «Армения в эпоху Юстиниана», էջ 196։

էին տրվում առանց պատշաճ օժիտի։ Մինչդեռ հռոմեուհիները, որոնք ամուսնանում էին հայ ծագում ունեցող անձանց հետ, կարող էին ստանալ և՛ օժիտ, և՛ ժառանգություն։

Անշուշտ, հենց այդ էր վրդովեցրել հռոմեացիներին։ Բացի նյութական վնասից, որ հասնում էր իրենց, առաջ էր գալիս տեղական իրավական նորմաների բախում կայսերական օրենսդրության իրավական գաղափարների հետ։ Այդ պարագան ունի, իհարկե, զուտ իրավական բնույթ, և մենք համարում ենք այդ մերձավոր ու հավանական առիթ՝ քննարկվող նոր օրենքները հրատարակելու համար։

Պետք է հատկապես նշել, որ հայերի ժառանգական կարգերի անպատեհությունը պետք է ուրիշներից ավելի սուր կերպով զգային հռոմեական բարձր պաշտոնեության և ազնվականության անձինք, որոնք ամուսնությամբ կապված էին հայուհիների հետ։ Հայերի ադիաֆետ սովորույթը նրանց զրկում էր զգալի հարստություններից, որոնց նկատմամբ նրքա կարող էին ունենալ որոշ իրավունքներ, եթե Հայաստանում տիրապետող լինեին կայսերական ժառանգական սկզբունքները։ Օգտվելով արքունիքում ունեցած իրենց ազդեցությունից, կարծում ենք, որ հենց նրքա կարող էին դրդել կայսրը հրատարակելու վերոհիշյալ հրովարտակը՝ «Հայերի ժառանգման կարգի մասին»։

Այդ ենթադրությունը, իմ կարծիքով, հաստատվում է նրանով, որ 535 թվի հրովարտակը պետք է ուժ ունենար ոչ թե հրատարակման օրից, այլ Յուստինիանոսի գահը բարձրանալու ժամկետից [527 թվից], այսինքն՝ նրա գործողությունը պետք է տարածվեր հրատարակման ժամանակին նախորդող իրողություններին։

Այդ օրենքի ներգործության հետադարձ ուժը պարզորոշ ցույց է տալիս, որ օրենսդիրը տվյալ դեպքում ղեկավարվել է որոշ անձնական նկատառումներով։ Եվ մեզ միանգամայն հավանական է թվում, որ այդ օրենքը ծառայել է իբրև գործիք շահագրգռված մարդկանց անձնական նպատակների համար։ Եթե հրովարտակի ազդեցությունը տարածվեր միայն հետագա ժամանակների վրա, այդ դեպքում դժգոհ ու շրջանցված հռոմեացիները, որոնց ազդեցությամբ հրատարակված է եղել հրովարտակը, ոչինչ չէին շահի, որովհետև նրքա արդեն ամուսնացած էին և նրանց կանայք արդեն զրկված են եղել ինչպես օժիտից, այնպես էլ ժառանգությունից։

Սակայն, նոր օրենքի կիրառումը անցած տարիների նկատմամբ անպայման պետք է առաջացներ բարդություններ և խառնաշփոթություն. բացի այդ, հայերի աչքում այդ օրենքը պետք է երևար

ավելի քան անիրավացի և հեշտությամբ կարող էր խախտել ամեն մի հարգանք դեպի իրենց մոտ ներմուծվող հռոմեական իրավունքը։

Կայսրը, ըստ երևույթին, շուտով հասկացավ իր սխալը և 21-րդ նոր օրենքում նոր կարգադրություն արեց, սահմանափակելով օրենքի գործադրության ժամկետը 14-րդ ինդիկտի սկզբից [535 թվի սեպտեմբերից]։

Թե ի՞նչ վիճակ են ունեցել Յուստինիանոսի բարեփոխությունները կայսերական Հայաստանում, ունեցե՞լ են արդյոք նրա անցկացրած միջոցառումները գործադրություն անվերադարձ կերպով, դրա մասին, դժբախտաբար, պատմական հիշատակարանները չեն տալիս անհրաժեշտ տեղեկություններ։ Մենք չենք կարծում, որ կարելի լիներ արագությամբ և հեշտությամբ բարեփոխել հայկական կյանքի առանձնահատուկ կենցաղը։ Բռնությամբ պարտադրելով հայերին ընդունել հռոմեական իրավունքի գաղափարները, Յուստինիանոսը չէր նախատեսել, իհարկե, որ ամեն մի ժողովրդի իրավունքը սերտ կախում ունի այդ ժողովրդի սոցիալական և տնտեսական կյանքի պայմաններից։

Հռոմեական ժառանգական իրավունքի հիմքերը արդյունք էին հռոմեացիների բազմադարյան պատմական զարգացման։ Տոգորված լինելով անհատականության սկզբունքներով, այդ հիմունքները, իհարկե, չէին կարող համապատասխան լինել հայկական կյանքի պայմաններին։

Հետաքրքիր է, որ հին հայկական օրենքի ժողովածուները, որ կազմված են եղել 12 և 13-րդ դարերում, ցույց են տալիս, որ հայերի մոտ ամենուրեք տիրապետող է եղել ժառանգման ընտանեկան սկզբունքը արյունակցական սկզբունքի փոխարեն, որը հատուկ է Յուստինիանոսի իրավունքի նորմաներին։ Բացի մի քանի շեղումներից, ժառանգման բնույթը նրանց մոտ մնացել է նույնը, որը նշված է եղել Յուստինիանոսի նոր օրենքներում։

Ճիշտ է որ հռոմեական իրավունքը ունեցել է ազդեցություն հայերի ժառանգական իրավունքի մի քանի երկրորդական երևույթների վրա, սակայն ժառանգման հիմնական ընտանեկան սկզբունքը նրանց մոտ մնացել էր համարյա անդրդվելի։

Պետք է նաև նկատի ունենալ, որ հայ հոգևորականությունը հայերի հին ադխաֆետ սովորության նմանություն էր գտնում Մովսեսյան օրենսդրության մեջ և իր կողմից պաշտպանում էր այդ կարգը եկեղեցու հեղինակությամբ։

# ՀԵՐԱԿԼ ԿԱՅՍԵՐ ՊԱՐՍԿԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԻ ԸՆԹԱՑՈՒՂԻՆԵՐԸ[1] (ՄԱՐՇՐՈՒՏՆԵՐԸ)

*Հերակլ կայսեր պարսկական արշավանքների ընթացուղիները դեռևս վերջնականապես որոշված չեն պատմական գրականության մեջ։ Բացատրվում է այդ ոչ թե սկզբնաղբյուրների աղքատիկ կամ անորոշ հաղորդագրությունների պատճառով, այլ բացառապես նրանով, որ Հերակլի դարաշրջանի իրադարձությունները ուսումնասիրող գիտնականները հնարավորություն չեն ունեցել լուսաբանել այդ խնդիրը, որովհետև Հայաստանի ռազմական ճանապարհների ուղղությունները բավարար չափով պարզաբանված չեն եղել։*

*Ինչպես հայտնի է, հնագույն մագիստրալ ճանապարհների ուղղությունները, որ Փոքր Ասիայից և Սև ծովի արևելյան երկրամասերից Հայաստանի վրայով գնացել են Պարսկաստան, պարզվել են նոր ժամանակներում։ Այդ ճանապարհները իրենց վրա տեղադրված կայարաններով, որ մանրամասն նկարագրված են հռոմեական [մեր թվարկության] IV դարի համաշխարհային* «Tabula Peutingeriana» *կոչվող քարտեզում, քննարկված և համարյա ամբողջությամբ մեկնաբանված են վերջին տասնամյակների պատմական-աշխարհագրական աշխատություններում[2]։ Որոշ տեղեկություններ*

---

[1] Տես «Византийский временник» том III, Москва, 1950 г., էջ 133—153։

[2] Տես Markwart, Skizzen zur historischen Topographie und Geschichte von Kaukasien, Wien, 1928, նաև իմ աշխատությունները՝ «О торговле и городах Армении», Երևան, 1930, 101—124. «Հայաստանի հին ճանապարհները»—Գիտության և Արվեստի տեղեկագիր, Երևան, 1931, № 5, էջ 65—89. «Մանր հետազոտություններ», Երևան, 1932, էջ 3—21. «Հայաստանի գլխավոր ճանապարհները ըստ «Tabula Peutingeriana», Երևան, 1936, էջ 5—270։

պատմական Հայաստանի հիմնական ճանապարհների մասին կան նաև արաբական, հայկական և իտալական IX—X և XIV դարերի ճանապարհացույցներում։ Այդ ճանապարհացույցներին վերաբերող հետազոտություն տրված է «О торговле и городах Армении» իմ աշխատության երկրորդ հրատարակության մեջ։

Հայաստանի գլխավոր ճանապարհների մասին աղբյուրների այդ նոր տվյալները հնարավորություն են տալիս ուսումնասիրել VII դարի սկզբներում տեղի ունեցած բյուզանդական-պարսկական կռիվների աշխարհագրական իրադրությունը և բավականաչափ ճշգտությամբ որոշել Հերակլ կայսեր պարսկական ռազմերթի ընթացուղիները։

* *
*

VI դարի վերջին տարիները և VII դարի սկիզբը եղել են, ինչպես հայտնի է, Բյուզանդիայի և Պարսկաստանի մեջ տեղի ունեցած ամենասուր կռիվների ժամանակը։ 602 թվին բյուզանդական գահը բարձրացավ Փոկասը, և նրա հրամանով մահապատժի ենթարկվեցին Մավրիկիոս կայսրը և նրա որդիները։ Այդ սպանությունները պարսից Խոսրով թագավորի համար, որը պարտավոր էր Մավրիկիոսին իր թագավորության վերականգնման համար, ծառայեցին իբրև առիթ համառ կռիվներ վարելու Բյուզանդիայի դեմ, որ տևեց մոտավորապես քառորդ դար։ 604—605 թվերին պարսիկները հարձակվեցին և վերցրին սահմանապահ հզոր Դարա ամրոցը։ 606 թվին նրանք հաղթական երթով ներխուժեցին Բյուզանդական Հայաստան, Միջագետք և Ասորիք։ Խոսրովի Շահր-Վարազ զորավարը գրավեց մի քանի տարում Եդեսիան, Անտիոքը, Դամասկոսը և Ասորիքի մյուս քաղաքները։ 614 թվին նա պաշարեց և վերցրեց Երուսաղեմը։ Քաղաքը անխնա քարուքանդ արավ, իսկ բնակիչներին կոտորեց կամ գաղթեցրեց Իրան։ Քրիստոնյաների սրբություն— «Խաչի փայտը», որի վրա, ըստ ավանդության, խաչված է եղել Քրիստոսը, ուղարկեց Պարսկաստան։ Երուսաղեմը վերցնելուց մի քանի տարի հետո Շահր-Վարազը գրավեց Ալեքսանդրիան և նվաճեց Եգիպտոսը [619 թ.]։ Խոսրովի մյուս զորավար Շահենը ներխուժեց Կիլիկիա [615 թ.], գրավեց Կեսարիան և, առաջ գնալով դեպի արևմուտք, հասավ Բոսֆորին ու գրավեց Քաղկեդոնը։

Սակայն կարճ ժամանակից հետո պարսիկների բախտը փոխվեց։ Մահացու վտանգը, որ կախված էր կայսրության վրա, ստիպեց

բոլորին համախմբվել կառավարության շուրջը։ Հերակլ կայսրը անձամբ իր վրա վերցրեց գլխավոր հրամանատարի պարտականությունները և 622 թվի ապրիլի 5-ին, Զատկի երկրորդ օրը գնաց Փոքր Ասիա և սկսեց կռիվը պարսիկների դեմ։

Մեկնելով Կոնստանդնուպոլսից, Հերակլը ծովային ճանապարհով ժամանեց Պիլա[1] նավահանգիստը, որը Գիբոնը, Նյոլդեկեն և ուրիշները սխալմամբ նույնացրել են Կիլիկիայի Իսսոսին[2]։ Իսկ իսկապես, ինչպես այժմ պարզված է, Թեոֆանի մոտ հիշված Պիլա նավահանգիստը գտնվել է Պրոպոնդիտայի Աստականի ծովածոցի ափին, Նիկոմեդիայի հարավում։

Ժամանելով Փոքր Ասիա, համարյա 622 թվի ամբողջ ընթացքում նա զբաղված է եղել իր զորաբանակի ուսուցմամբ և պատրաստությամբ առաջիկա արշավանքի համար դեպի Պարսկաստանի խորքը։ Առաջ շարժվելով արևմուտքից դեպի արևելք, կայսերական զորքերը մտան Կապադովկիա, որտեղ մի քանի հաջող ընդհարումներ ունեցան Շահր-Վարազի զորքերի հետ։ Իսկ հետո, հանգստանալով Պոնտոսի ձմեռային բնակարաններում, նրանք Հերակլի առաջնորդությամբ հանկարծակի առաջ շարժվեցին Հայաստանի վրայով դեպի Ատրպատական [623 թվին]։

Հերակլի այդ առաջին պատժիչ արշավանքի մասին պարսիկների դեմ բյուզանդական աղբյուրները ցուցմունքներ համարյա չեն տալիս։ Այդ ուղեգծի մասին կան հաղորդագրություններ հայկական աղբյուրներում՝ Սեբեոսի, Մովսես Կաղանկատվացու և Թովմա Արծրունու մոտ։ Այդ հեղինակների վկայությունները, որ կարոտ են բացատրության, ավելորդ չեմ համարում բերել ամբողջությամբ, ընդգծելով այն տեղերը, որոնք վերաբերում են Հերակլի ընթացուղուն։

I. Սեբեոս. գլ. ԻԶ, Թիֆլիս, 1912 թ., էջ 147.

«Զուեաց գնաց Երակլոս ԾԻ հազարաւ, և երթեալ ի դուռն թագաւորին պարսից. և ճանապարհ կալեալ ընդ կողմանս հիւսիսոյ՝ ել դէպ ուղիղ ի Կարնոյ քաղաք, և հասեալ ի Դուին Այրարատեան՝ աւերէ զնա և զնախնեաւն։

Եւ դիմեալ ի Գանձակ Ատրպատականի, կործանէ և զԲագինն Հրատին մեծի՝ որում Վրշնասպն կոչէին»։

II. Մովսես Կաղանկատվացի, Պատմություն Աղվանից աշխարհի, գլ. Ժ, էջ 147—149, Թիֆլիս, 1913 թ. «Եւ դուռն

---

[1] Տե՛ս Theoph. A. M. (աշխարհի ստեղծագործությունից) 6113.

[2] Nöldeke, Aufsätze zur persischen Geschichte, Leipzig, 1887, S. 126:

պալատանն թողեալ ի ձեռս որդւոյն իւրոյ՝ թագ կապեալ նմա նստուցանէր փոխանակ իւր յաթոռ թագաւորութեան։ Ոչ հարկանէր ընդդէմ զօրացն Պարսից, որք պատեալ պաշարեալ ի հնազանդութեան ունէին զաշխարհս և զքաղաքս նորա, ոչ անցանէր մօտ առ նոքօք և ոչ գրգռէր զնոսա ի մարտ պատերազմի. այլ թողեալ զնոսա անդէն յերկրի իւրում՝ եկն եւ ընդ ծով ճանապարհ կազմեալ ընդ աշխարհն Եգերացւոց, գայ ընդ Հայս և անցանէ ընդ գետն Երասխ, և խորհէր հանպատրաստի ունել զմեծ թագաւորն Խոսրով։ .....Իսկ կայսրն մեծ Հերակլիոս իբրև ետես եթէ խոյս ետ չերեւաց նորա թագաւորն պարսից, դարձեալ ի պնդելոյ զհետ նորա. և աստպատակ սփռեալ զկողմամբքն Ատրպատականու մինչև ցտեղին՝ անուանեալ Գայշավան, տեղի ամրոցաց ջերմութեան ընտրեալ յառողջութիւն հովասնութեան թագաւորացն Պարսից՝ որ է ի սահմանս Մարաց աշխարհին, աւերէր, քանդէր, գերէր զերկիրն ամենայն»։

*III. Թովմա Արծրունի, Պատմութիւն տանն Արծրունեաց, Թիֆլիս, 1917, էջ 159, գլ. Գ.* «Եւ Հայրակղի ժողովեալ զամենայն արևելեայս իբրև ՃԻԲ դիմէ ի վերայ Խոսրովայ։ Եւ ճանապարհ արարեալ ընդ կողմն հիւսիսոյ՝ ել դէպուղի ի Կարնոյ քաղաք և անցանէ ի Շիրակ, և հասեալ ի Դուին՝ աւերէ զնա և զնախճաւան և զՈրմի, և դիմեալ ի Գանձակն Ատրպատականի՝ բրէ զնա, աւերէ զԱհմադան և զՄայ. կործանէ զբագին Հրատին մեծի, որում Վշնասպն կոչեն»։

Պետք է նշել, որ Մովսես Կաղանկատվացու սածին հարում է մոտավորապես Եվտիքիոս պատրիարքը [X դ.], որը ցույց է տալիս Հերակլի առաջին արշավանքի ճանապարհը Կոստանդնուպոլսից դեպի Տրապիզոն[1]։ Սակայն այդ ծովային ճանապարհի դեմ բերված են լուրջ առարկություններ Գերլանդի հոդվածում, որ տպված է Byzantinische Zeitschrift[2] ժուռնալում։ Եվ իսկապես այդ խնդրի ուշադիր քննությամբ դժվար չէ համոզվել, որ Մովսես Կաղանկատվացին իր հաղորդագրության մեջ նկարագրում է Հերակլի առաջին արշավանքի իրադարձությունները, բայց թյուրիմացությամբ ցույց է տալիս երկրորդ արշավանքի ճանապարհը։

Վերոհիշյալ տվյալներից, անշուշտ, արժանի են ավելի մեծ ուշադրության Սեբեոսի և Թովմա Արծրունու վկայությունները։ Թով-

---

[1] *Տե՛ս* Eutychii Patriarche Alexandriae Annales, P. G. III

[2] Gerland, Die persischen Feldzüge des Kaisers Herakleios, Bz., III 1894, S. 345

մա Արծրունու հաղորդագրության մեջ մենք ունենք քաղվածք նույն Սեբեոսից, սակայն ուրիշ, ավելի ընդարձակ օրինակից։

Համաձայն այդ հավաստի աղբյուրների, Հերակլ կայսեր առաջին պարսկական արշավանքի ընթացուղին սահմանվում է բավականաչափ որոշակիությամբ։ Այդ ընթացուղին կարելի է ենթադրել Պոնտոսից և Փոքր Հայքից դեպի Թեոդոսուպոլիս [Կարին], այդտեղից

Քարտեզ 1.

այժմյան Սարիղամիշի վրայով և Վանանդ ու Շիրակ գավառներով դեպի Դվին քաղաքը և ապա Նախիջևանի վրայով դեպի Գանձակ։ Այդ ճանապարհի առաջին մասը [մինչև այժմյան Քեփրիքեյ] որոշվում է բավականաչափ ճշտությամբ Պևտինգերյան քարտեզի ուղեգծով, որը մանրամասն քննարկված և պարզված է իմ պատմական-աշխարհագրական «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները»[1] աշխատության մեջ։ Այդ գծի վրա, ըստ Պևտինգերյան քարտեզի, գտնըվում էին հետևյալ կայարանները[2] Satala *20* Salmalasso *20* Darucinte *20* Aegea *15* Lucus Basaro *22* Sinara *15* Chalchdiara *12* Autisparate *15* Tharsidarate *20* Datamisa *10* Adconfluentes։

Ճանապարհը գնում էր Լիկ-Կելկիտ գետի վերին հոսանքի շըր-

[1] Երևան, 1936, էջ 61—81. Համեմատե նաև իմ աշխատությունը «О торговле и городах Армении», էջ 116—120։

[2] Կայարանական կետերի մեջ, թվանշաններով նշանակված են տարածությունները հռոմեյական մղոններով [1.4815 կիլոմետր]։

ջանից դեպի Եփրատ, և ապա այդ գետի աջ ափի երկարությամբ դեպի Գաղտառիճ [Chalchdiara], որը գտնվում էր Եփրատի գետանցի մոտ, այժմյան Աշկալայից ոչ հեռու, և այդտեղից Կարին-Թեոդոսուպոլիս շրջանի ու այժմյան Հասան-Ղալայի և Քեփրիքեյի վրայով Բասեն-սու և Արաքս գետերի միախառնման մոտակա տեղը։

Բյուզանդական զորքի հետագա ճանապարհը, ինչպես երևում է Թովմա Արծրունու վկայությունից, որոշվում է այժմյան Սարիղամիշի և Կարսի վրայով դեպի հին հայկական Շիրակի գավառը և այնտեղից — Դվին։ Ուշագրավ է, որ հենց այդ ճանապարհով՝ Շիրակի, Վանանդի և Թեոդոսուպոլիս քաղաքի վրայով է վերադարձել դեպի Կեսարիա [613 թ.], ինչպես հաղորդում է Սեբեոսը, Պարսկական Հայաստան մտած բյուզանդական զորավար Ֆիլիպպիկը[1]։

Դվին քաղաքը, որ եղել է մարզպանների նստավայրը և Պարսկական Հայաստանի մայրաքաղաքը, ինչպես երևում է Սեբեոսի և Թովմա Արծրունու վերևում հիշված հաղորդագրություններից, գրավված և ավերված է եղել[2]։ Հետևաբար կարելի է ենթադրել, որ Դվինը ցույց է տվել Հերակլին դիմադրություն։ Նույն վիճակն է ունեցել նաև Նախիջևանը և, ըստ երևույթին, Ուրմիա քաղաքը։

Նախիջևանից Հերակլի զորքը գնացել է դեպի Արաքս գետը, անցել է այն և առաջ շարժվելով դեպի հարավ, մտել է Ատրպատականն և գնացել է դեպի այդ մարզի Գանձակ մայրաքաղաքը։ Հերակլի սրընթաց ասպատակության նպատակը եղել է՝ վրեժ առնել Խոսրովից այն աղետների համար, որ պատճառել էին կայսրությանը, ուստի ամբողջ Ատրպատականը ենթարկվել է հրի ու սրի։

Նախիջևանից դեպի Գանձակ Ատրպատականի շրջանը տանող հիմնական և բնական ճանապարհները եղել են հին մագիստրալ գծերը Մարանդի և Թավրիզի վրայով, կամ Խոյի և Տասվիջի վրայով։ Վերջին գիծը, որը համապատասխանում է Պևտինգերյան քարտեզի Gobdi — Paresaca — Ecbatanis գծին, ինչպես պարզված է իմ պատմական-աշխարհագրական՝ «Հայաստանի գլխավոր ճանապարհները»[3] աշխատության մեջ, գնում էր Խոյից դեպի Տասվիջ հարավ-արևելյան ուղղությամբ և այդտեղից Ուրմիա լճի արևելյան ափով Գանձակի շրջանը։

Հերակլի արշավանքի ճանապարհը, հավանական է ենթադրել Պևտինգերյան քարտեզի հին ուղեգծով։ Այդ ենթադրությանը իբրև

[1] Տե՛ս Սեբեոս, թարգմ. Մալխասյանցի, Երևան, 1939, էջ 70 [գլ. XXXII]։

[2] Տե՛ս նաև Georgie Pisidae Heraclias, 2. 163 [1837, Bonnae]։

[3] Երևան, 1936, էջ 164—171 և 247—248։




Քարտեզ 2.




Քարտեզ 3.

ապացույց կարող է ծառայել այն, որ բյուզանդական զորքերի ավերած քաղաքների թվում, Թովմա Արծրունու մոտ հիշվում է Ուրմիա քաղաքը, որը գտնվում էր Խոյ-Տասվիջ մագիստրալից դեպի հարավ-արևմուտք, իսկ Թավրիզ քաղաքը, որը այն ժամանակը եղել է Ատրպատականի[1] նշանավոր կենտրոնը և գտնվում էր Նախիջևանից դեպի Գանձակ տանող ճանապարհի վրա, աղբյուրներում բոլորովին չի հիշվում։

Իր արագ հարձակման ժամանակ, որը Գեորգ Պիսիդան համեմատում է կայծակի հետ, չհանդիպելով դիմադրության, Հերակլը վերցրեց գրոհով Խոսրովի աթոռանիստ Գանձակը և ենթարկեց ավերածության ու քանդեց այնտեղ գտնվող կրակարանի տաճարը։ Այդ եղել է վրեժ Երուսաղեմի ավերման և խաչի գերևարության։ Գանձակի տեղադրությունը, ինչպես հայտնի է, որոշել է Ռավլինսոնը Թախտ-ի-Սուլեյմանի ավերակների տեղում, որոնք գտնվում են այժմյան Մարաղայից դեպի հարավ-արևելք[2]։ Գանձակը ավերելուց հետո բյուզանդական զորքերը, ցրվելով ամբողջ մարզում, սկսեցին թալանել և ավերել շրջակա տեղերը։ Թովմա Արծրունու վերևում հիշված վկայությամբ, բացի Գանձակից նրանք ավերել էին նաև Համադանը և Մայը[3]։

Թեոֆանը հաղորդում է նաև, որ Հերակլը Գանձակը ավերելուց հետո գրավեց Թեարմայսը, այրեց այդ քաղաքը և այնտեղ գտնվող տաճարը և այնուհետև հետապնդեց Խոսրովին լեռնային կածաններում[4]։ Թեարմայս քաղաքի անունը և տեղը դժբախտաբար չեն ենթարկվում բացատրության։ Դ'Անվիլը նմանեցնում է այդ քաղաքը[5] Ուրմիա քաղաքին, որ, իհարկե, միանգամայն անհավանական է։ Հոֆմանը ենթադրում է, որ Թեոֆանի բնագրում կա խառնաշփոթություն։ Θηβαρμαϊς-ը առաջարկում էր ուղղել և կարդալ βηθαρμαϊς և դրա համար նա հնարավոր էր գտնում եզրակացնել, որ Թեոֆանի մոտ հիշված Θηβαρμαϊς-ը համապատասխանում է Betn-Armaye[6] գավառին, որ գտնվում էր Զագրոս լեռնաշղթայից դեպի արև-

---

[1] Տե՛ս Փավստոս, Պատմություն Հայոց, Վենետիկ, 1889, էջ 149 [IV, 25] և էջ 157 [IV, 39]։

[2] Rawlinson, Memoir on the Site of the Atropatenian Ecbatana, JRGS, X, 1841.

[3] Մայ-ի տեղեկագրության մասին տես Մարկվարտի մանրամասն բացատրությունը, նրա «Eranschahr» աշխատության մեջ, Berlin, 1901, էջ 18—20։

[4] Theoph. A M. 6114.

[5] Տես Mém. d'Acad. des Inser. et Belles Lettres, t. 32, p. 560.

[6] G. Hoffmann, Auszüge aus syrischen Akten persischer Märtyrer, Leipzig, 1880, S. 252.

մուտք։ Սակայն, ինչպես մեզ հայտնի է, Հերակլը իր առաջին արշավանքի ժամանակ այնտեղ բոլորովին չէր մտել։

Ուշքի գալով անհաջողությունից, որ առաջացել էր անսպասելի, հանկարծակի հարձակումից, Սասանյան Պարսկաստանը սկսեց ցույց տալ Հերակլին լուրջ դիմադրություն և կանչեց Ասորիքից Շահր-Վարազին։ Ձմեռը արդեն մոտենում էր և բյուզանդական զորքի դրությունը կարող էր կրիտիկական լինել։ Դրա համար Հերակլը որոշեց ետ քաշվել Աղվանք, հույս ունենալով, որ այնտեղ նա կկարողանա մեծացնել իր ուժերը, միացնելով Անդրկովկասի քրիստոնյաներին։

Ատրպատականի Գանձակ քաղաքից ետ քաշվող Հերակլի զորքերի ընթացուղու մասին մեզ տեղեկություն է տալիս Սեբեոսը [Թիֆլիս, 1912, գլ. ԻԶ, էջ 148].

> «Ազդ լինի Երակլի կայսեր եթէ եկն հոռեամ [Շահր-Վարազ] ի Մրծվին. առնու զգալըս իւր և գերութիւն, և դառնա առ ամուր աշխարհաւն Մարաց գայ հասանէ ի Փայտակարան»:

Ինչպես երևում է Թեոֆանի հաղորդագրությունից, բյուզանդական զորաբանակը այդ ճանապարհին ենթարկվել է պարսիկների համախակի հարձակումներին և կորցրել է բոլոր գերիներին — ըստ Թեոֆանի վկայության՝ 50.000 հոգի[1]։

Սեբեոսի վերևում հիշված հաղորդագրությունից երևում է, որ Հերակլը գնացել է Աղվանք «մեդացիների ամուր երկրի վրայով» և Փայտակարանի վրայով։ Սեբեոսի այդ ցուցմունքները, ինձ թվում է, հնարավորություն են տալիս որոշել մեծ հավանականությամբ նաև Հերակլի այդ ճանապարհը դեպի Աղվանք։ «Մեդացիների ամուր երկրի» տակ, հավանորեն, պետք է ենթադրել պարսկական Ադրբեջանի հյուսիս-արևելյան շրջանի լեռները, որ ներկայումս կրում են Ղարադաղ անունը, իսկ Փայտակարան անվան տակ այն մարզը կամ քաղաքը, որ գտնվում էին Արաքսի ներքին հոսանքի մոտ, Շուշի քաղաքից դեպի հարավ արևելք։

Սեբեոսի մոտ հիշված տեղերի որոշմամբ, Հերակլի ընթացուղին որոշվում է Ատրպատականի Գանձակ քաղաքի շրջանից այժմյան Միանե և Արդաբիլի վրայով դեպի Արաքսի ներքին հոսանքի շրջանը, որտեղ գտնվում էր Փայտակարանը։ Այդ հին ճանապարհը մանրամասն նկարագրված է արաբական աղբյուրներում՝ Ալ-Իստախրիի, Իբն-Հաուկալի և ուրիշ աշխարհագիրների մոտ հետևյալ ուղղությամբ՝ Արդաբիլ—Բերզենդ—Բալխաբ—Վարսան—Բայլական[2]։ Կա-

---

[1] Theoph. A. M. 6114.

[2] Տես Н. А. Караулов. Сведения арабских писателей о Кавказе, Ар-

րաուլովի կարծիքով ճանապարհը Արդաբիլից դեպի Վարսան, որը նույնական է հայկական աղբյուրների Վարդանակերտին, գնում էր Ղարասու գետի հոսանքով[1]: Իսկ Վարսանի կամ Վարդանակերտի ավերակները, ինչպես ցույց է տալիս Մինորսկին, գտնվում են Արաքս գետի ափին և այժմ կոչվում են Ալտանի ավերակներ[2]:

Հին Փայտակարանի մարզից, որ գտնվում էր այժմյան Շուշի քաղաքից դեպի հարավ-արևելք, բյուզանդական զորքը, ինչպես երևում է Մովսես Կաղանկատվացու հաղորդագրությունից, ուղևորվեց դեպի Ուտի և այնտեղ գրավեց Աղվանքի Պարթավ մայրաքաղաքը: Այնտեղ նա տեղավորվեց ձմեռելու բնակարաններում [623—624]:

«և անտի [Պարսկական Ադրբեճանից] դարձեալ՝ կամէր [Հերակլ] ձմերել ի կողմանս Աղուանից, Վրաց և Հայոց աշխարհաց: Ուստի և գիր արարեալ առ իշխանս և առաջնորդս աշխարհաց, զի ինքնակամ կամօք ելցեն ընդ առաջ նորա և ընկալնուցուն և պաշտեսցեն զնա հանդերձ զօրօքն իւրովք յատուրս ձմերանւոյ. ապա եթէ ոչ՝ համարեսցին առաջի նորա իբրև հեթանոսք, առցին ամուրք նոցա և գերեսցին սահմանք աշխարհացն այնոցիկ ի զօրաց նորա: Իբրև լուան զայս ամենայն պետք և իշխանք աշխարհիս Աղուանից, ի նոյն ինքն ի հրամանէ խոսրովու թողեալ զմեծ քաղաքն Պարտաւ, ելեալ գնացին ամրացան ի տեղիս տեղիս... Իսկ իբրև եկն եհաս զօրն Հոռվմայեցւոց անթիւ բազմութիւն յոյժ՝ բնակեցան յՈւտի գաւառի առ հեղեղատովն, որի մէջ սահմանաց գեղջն Կաղանկատուց. և կոխեցին քանդեցին զգեղեցիկ ստացուածս այգեստանեայց և գեօղաստանեայց ընդ որս անցանէին, և անտի չուեալ, բանակեցան առ հեղեղատովն Տրտուայ մօտ ի գիւղն Դիւտական»[3]:

Այդ հաղորդագրության մեջ հիշված Կաղանկատույք գյուղը, ինչպես մանրամասն պարզված է իմ «Հայաստանի գլխավոր ճանապարհները»[4] աշխատության մեջ, գտնվում էր Թարթառ գետի ձախ

---

мении и Азербайджане. Сборник материалов для описания местностей и племен Кавказа, XXIX [1901] և XXXVIII [1908].

1 Сборник мат. для описания местн. и племен Кавказа, XXIX, էջ 67, ծան. 59

2 Տես V. Minorsky, Hudud-al-Alam, London, 1937, p. 398

3 Մովսես Կաղանկատվացի, Պատմութիւն Աղուանից աշխարհի, Թիֆլիս, 1913, էջ 149—150:

4 Տե՛ս «Հայաստանի գլխավոր ճանապարհները», 1936, էջ 200—202 և 250:

կողմում, այժմյան Մանդակիս գյուղից ոչ հեռու, Պարթավից մոտավորապես 50 կմ դեպի արևմուտք։

624 թվի ընթացքում կայսրության և Սասանյան Պարսկաստանի մեջ կատաղի կռվի թատերաբեմը եղել է Աղվանքը և Պարսկական Հայաստանը։ Այդ տարվա պատերազմական գործողությունների մասին մանրամասն, սակայն անորոշ և վիճելի տեղեկություններ է տալիս Թեոֆանը, որի հաղորդագրությունները ճշտում և լրացնում են Սեբեոսը և Մովսես Կաղանկատվացին։ Ինչպես երևում է նրանց հաղորդագրություններից Աղվանքում Հերակլի դեմ սկզբում գործել է միայն Շահրապլականի զորաբանակը. սակայն հետո նրան օգնության են եկել մեկը մյուսի հետևից երկու զորաբանակներ՝ Շահըր-Վարազի և Շահենի հրամանատարությամբ։ 624 թվի գարնանը, ինչպես կարելի է եզրակացնել Թեոֆանի պատմվածքից, օգնություն է ստացել լազերից, ապազգներից և իբերներից նաև Հերակլ կայսրը[1]։ Նույն հեղինակի վկայությամբ, Հերակլը ունեցել է մի քանի հաջող ընդհարումներ Շահրապլականի[2] զորքերի հետ, բայց հետո, Շահր-Վարազի և Շահենի զորաբանակների գալուց հետո, պարսիկներին հաջողվել է, ինչպես հաղորդում է Սեբեոսը[3], շրջապատել նրա զորքը, որը ընկել է ճգնաժամային դրության մեջ։

«Ազդ եղև Խոսրովու՝, եթէ դարձաւ Երակլոս և եհաս ի Փայտակարան, և կամի ընդ Աղուանս անցանել ի Վիրս. հրաման ետ զաւրավարի իւրոյ Շահր--Վարազա՝ զի զառաջն կալցի։ Եւ նա փութով հասանէ յԱյրարատ, և անցանէ ի Գարդման ընդդեմ նորա, և բանակի ի միւս Տիգրանակերտի յանդիման նորա։ Եւ Շահենն ԼՌ զօր հասեալ բանակեցաւ ի թիկանց Երակլի ի Տիգրանակերտ աւանի։ Եւ էին սոքա աստի, և նոքա անտի բանակեալ։ Եւ բանակն Երակլի ի մէջ նոցա երկոցունց»։

Սեբեոսի այդ վկայությունը, որտեղ կան ճիշտ և արժեքավոր տեղագրական ցուցմունքներ, դժբախտաբար, չի ստացել պատշաճ լուսաբանություն պատմական աշխատություններում, հին Աղվանքի աշխարհագրության թույլ ուսումնասիրված լինելու հետևանքով։

Սեբեոսի վկայությունից երևում է, որ Շահր-Վարազի զորաբանակը տեղավորված է եղել Գարդման գավառում, որը գտնվում էր այժմյան Շամքոր և Գյանջա քաղաքներից հարավ և Շամքոր գետից դեպի արևելք, որտեղ և պետք է ենթադրել «մյուս Տիգրանակերտի» տեղադրությունը։ Դժվար չէ կռահել, որ Շահր-Վարազը,

---

[1] Theoph A. M. 6115։

[2] Նույնը։

[3] Տե՛ս Սեբեոս, Թիֆլիս, 1912, գլ. ԻԶ, էջ 148։

որը առաջացել էր Գարդմանի կողմից, նպատակ է ունեցել կանխել Հերակլի զորքերի տեղաշարժը դեպի արևմուտք և ներխուժումը դեպի Վրաստանի սահմանները։ Իսկ Շահենի զորքը, որ տեղավորվել էր Տիգրանակերտ փոքրիկ վայրում, պետք է կտրեր Հերակլի ճանապարհը դեպի արևելք և հարավ։




Քարտեզ 4.

Տիգրանակերտի տեղադրությունը, որտեղ տեղավորված է եղել Շահենի բանակը, որոշվում է միանգամայն ճիշտ Հերակլի թիկունքում, մոտավորապես 40—45 կմ Կաղանկատույքից դեպի հարավ-արևելք։ Այդ տեղի ավերակները գտնվում են Շահբուլաղ բերդի և այժմյան Տարնաուտ գյուղի մոտ, որ գտնվում են այժմյան Աղդամից 8—10 կմ դեպի հյուսիս և Եվլախ — Շուշի ճանապարհից մի քանի կիլոմետր հեռավորության վրա դեպի արևմուտք[1]։

Ընկնելով թշնամու շրջապատման մեջ, Հերակլը իրեն չկորցրեց։ Նա սրընթաց գրոհով հարձակվեց Շահենի զորքերի վրա, որ գտնվում էր «Տիգրանակերտ» փոքր վայրում, ջարդեց և ցրեց նրան ու իր համար ճանապարհ բացեց դեպի հարավ՝ հին Սյունիքի վրայով։

Հերակլի զորքերի նահանջի ընթացուղու մասին Աղվանքից դեպի Պարսկական Հայաստան պատմական աշխատություններում

[1] Մ. Բարխուդարյանց, Արցախ, 1895, էջ 28։

*սովորաբար տրվում են սխալ լուսաբանություններ, որոնք հիմնըված են պարզ թյուրիմացության վրա։*

*Այդ սխալները բացատրվում են Թեոֆանի հունարեն բնագրի վրիպակով, որը կարելի է հեշտությամբ ուղղել Սեբեոսի արժեքավոր վկայության օգնությամբ։*

*Թեոֆանի և Սեբեոսի համապատասխան վկայությունները բերում եմ ամբողջությամբ և հարազատ թարգմանությամբ, ընդգծելով այն տեղերը, որոնք վերաբերում են Հերակլի ճանապարհի ուղղության։*

1. *Թեոֆան,* A. M. *6115 [թարգմ. Օբոլենսկու և Տերնովսկու, Մոսկվա, 1890, էջ 250]՝ «Այս կռիվների ժամանակ եկավ Սաինը [Շահենը] իր զորքով, և նրան Հերակլը ջարդեց, նրա զորքից շատերին ոչնչացրեց, իսկ մյուսներին ցրեց փախուստում և նրանց գլխավոր դրոշը վերցրեց։ Սարվարազանը [Շահր-Վարազը], միանալով Սաինին, հավաքեց ազատված զինվորներին և նորից մտածում էր գնալ Հերակլի դեմ։* **Բայց կայսրը գնաց Հոնների երկիրը [պետք է ուղղել «Սինի»], նրանց անանցանելի երկրները խորդուբորդ և դժվարին ճանապարհներով:** *Բարբարոսները գնացին նրանց հետևից։ Այն ժամանակը լազերը աբազգիների հետ, վախենալով, ետ քաշվեցին հռոմայեցիներից»։*

2. *Սեբեոս, Թիֆլիս, 1912, գլ. ԻԶ, էջ 148.*
*«Իբրև ետես Երակլոս, եթէ ի մէջ արկին զնա՝ դարձաւ ի վերայ զաւրուն՝ որ ի թիկանց կողմանէ, հապճէպ զաւրութեամբ եհար զնա և խորտակեաց և* **գնաց ընդ Ծղուկս. և թափեցաւ ընդ լեռնակողմն ի դաշտն Նախճաւանն ի ձմեռան ժամանակի»:**

*Համաձայն այդ վկայությունների Հերակլի ընթացուղին Աղվանքից դեպի Նախիջևան որոշվում է լիակատար պարզությամբ՝ Տարտառի շրջանից [«Տիգրանակերտ փոքր վայր»] Եվլախ—Շուշի ճանապարհով, Շուշիի և Գորիսի վրայով դեպի Սյունիքի Ծղուկ տեղը և այնտեղից Անգեղակոթի ու Բիչենաղի լեռնանցքի վրայով դեպի Նախիջևան։ Ուստի դժվար չէ կռահել, որ Թեոֆանի հունարեն բնագրում* Οὔννων *հասարակ վրիպակ է փոխանակ* Σὔννων[1]*-ի։*

*Միանգամայն պարզ է նաև, որ պետք է ժխտել գիտնականների ենթադրությունները, որոնք Հերակլի ճանապարհը Աղվանքից*

---

[1] *Հայաստանի ծայրամաս Սյունիքը Եվսեբիոս Կեսարացու մոտ անվանվում է* Σαυνια *կամ* Συννιά *նրա* Praeparatio evang., 2, 89 [277]. *այդ նույն գավառը Կոնստանդին Ծիրանածինի մոտ անվանված է* Συνη. De ceremoniis, *էջ* 687, *և ուրիշ հեղինակների մոտ։*

ցույց են տալիս ոչ թե դեպի Սյունիք, այլ դեպի Հոնների, Սաբիրների երկիրը և կամ սակերի շրջանը — դեպի Սակաշեն[1]։

Մանրամասն և ճշգրիտ տեղեկություններ Հերակլի հետագա ճանապարհի մասին, Նախիջևանի շրջանից դեպի հին-հայկական Ապահունիք, տալիս է Սեբեոսը իր հետևյալ հաղորդագրության մեջ՝

«Իսկ նորա [Հերակլը] հասեալ անցանէ ընդ հուն գետոյն Երասխայ՝ յաւանն Վրջունիս և բանակի յանդաստանս նորա։ Եւ զաւրն պարսից հասեալ՝ ոչ կարացին անցանել զգետովն այն աւրն։ Հասանէ Երակլոս ի Բագրևանդ և անցանէ յԱպահունիս, և բանակի ի գեղն՝ որ կոչի Հրճմունք։ Եւ Շահր-Վարազ սփռէր զզաւրս իւր յԱղիովիտ, և ինքն այրընտիր եղեալ զհազար սպառազինաց վառելոց քաջաց։ Եւ երթեալ նստի յԱրճէշ գաւառի՝ դարանամուտ լինել, որպէս զի ի մէջ գիշերին անկցի ի վերայ բանակին Երակլի»[2]։

Հերակլի վերևում հիշված ճանապարհը ևս Նախիջևանից դեպի Ապահունիք դժվար չէ որոշել Պետինգերյան քարտեզի տվյալների օգնությամբ։ Նախիջևանի շրջանից Հերակլի զորքերը, անցնելով Արաքս գետը, գնացին Վրնջունիս գյուղի վրայով դեպի Խոյ և ապա գնացին Բագրևանդ Պետինգերյան քարտեզի գծով՝ Gobdi [=Խոյ]—Nasabi [=Նվարսակ]—Artaza [=Արտազ]—Sorvae Ortispi [=Որդրսպու][3]։ Նախիջևանից ճանապարհը գնում էր հարավ-արևմտյան ուղղությամբ դեպի Խոյ և այնուհետև հյուսիս արևմտյան ուղղությամբ դեպի Աղ-չայ գետի ակունքները. այդտեղից նույն հյուսիս արևմտյան ուղղությամբ դեպի այժմյան Կարաքենդ, որից ոչ հեռու գտնվում էր Պետինգերյան քարտեզի Ortispi կայարանը, և ապա Բագավանի [=Ուչ քիլիսա] վրայով, որ գտնվում էր Բագրևանդում, դեպի Ապահունիք, որը տեղադրված էր Սիփան լեռից դեպի հյուսիս Արածանի գետի ավազանում։

Հրճմունք գյուղը Ապահունիքում, որի մոտ տեղավորվել էին կայսերական զորքերը, Ասողիկի մոտ անվանված է—Խրճառնք կամ Խարճառք[4]։ Նրա տեղադրության խնդիրը, դժբախտաբար, մնում է

---

[1] H. Gelzer, Abriss der Byzantinischen Kaisergeschichte. տես Krumbacher, Geschichte der Byzantinischen Litteratur, 1897, S. 948. Gerland, Die persischen Feldzüge des Kaisers Herakleios, Byz. Zeitschr., III, S. 354. Кулаковский, История Византии, т. III, էջ 343—344 և ուրիշ։

[2] Տե՛ս Սեբեոս, Թիֆլիս, 1912, էջ 149, գլ. ԻԶ։

[3] Տե՛ս «Հայաստանի գլխավոր ճանապարհները», էջ 139—162 և 246—247։

[4] Տե՛ս Ասողիկ, Հրատարակություն Մալխասյանցի, 1885, էջ 116, [II, գլ. 3]։

քայ։ Հաճելի կլիներ համադրել այդ գյուղը այժմյան «Բորչուկին», որ գտնվում է Արածանի գետից դեպի արևմուտք, մոտավորապես 15—20 կմ դեպի հյուսիս-արևմուտք այժմյան Դուտախ-Այնթապից[1]։




Քարտեզ 5.

Հերակլի Ապահունիք գալուց հետո տեղի ունեցավ պարսիկների հետ նոր ընդհարում, որի մասին տեղեկություններ են տալիս Սեբեոսը և Թեոփանը։

1. Սեբեոս, Թիֆլիս, 1912, գլ. ԻԶ, էջ 149—150։

«Ապա լուեալ Երակլի ի ձեռն արձակելոյ լրտեսաց՝ եթէ եկն Խոռեամ [Շահր-Վարազ], և դարանակալ եղև ի վերայ քո։ Յայնժամ Երակլոս ընտրեաց արս ընտիրս յիւրոց զօրացն և ձիընտիր առնէ, և յարձակի ի վերայ նորա քան հազարաւ, և հասեալ յԱղի գտանէ զաւրսն յառաջամարտիկ հինգ հարիւր։ Նախ՝ զնոսա կոտորէ. և զերծեալ մի ոմն ի հեծելոցն՝ հասեալ ի յԱրճէշ գոյժ արկանէ Խոռեամայ՝ եթէ հասեալ է թշնամին ի վերայ քո, և կոտորեցին զզաւրն պէշոպա յԱղի։ Եւ բարկացաւ Խոռեամ ի վերայ առնն, հրամայեաց զնա կապել ոտիւք և ձեռաւք, և ասէ. «Երակլոս ցարդ չինէն փախստական գնայր. արդ եկեալ հասեալ եմ այսպիսի զինու, և նա չինէն ո՞չ փախիցէ»։

[1] Տե՛ս «Բորչուկ» նախկին գլխավոր շտաբի 10 վերստանոց քարտեզում։

Այն ինչ նորա բանքն ի բերան էին, և նոքա հասին ասպ-պով ի վերայ նոցա, պաշարեցին զքաղաքն երեք կուսէ, և բոր-բոքեցին զնա հրով և այրեցին զզաւրացն բազմութիւն։ .....Բայց Շահր-Վարազ զերծաւ՝ նստեալ ի վերայ նժոյգ երիվարի. այնպէս զերծեալ գնաց առ զաւրս իւր, զոր ժողո-վեալ էր յԱղիովիտ գաւառի»։

2. Թեոֆան [Թարգմ. Օբոլենսկու և Տերնովսկու, Մոսկվա, 1890, A. M. 6115, էջ 250]. «Մինչ այդ կայսրը, շարունակելով ճանապարհը, եկավ Պարսկական Հայաստանի երկրները։ Եվ որովհետև այդ երկիրը գտնվում էր պարսից իշխանության տակ, ուստի և շատերը հավաքվեցին Սարվարազանի մոտ [Շահր-Վարազի] և շատացրին նրա զորքը։ Ձմեռը վրա հասնե-լու պատճառով այդ ժողովուրդը ցրվեց իրենց տները, որի մա-սին տեղեկանալով, Հերակլը մտադրվեց գիշերը հանկարծակի հարձակվել։ Ձմեռվա պատճառով բարբարոսները ոչ մի կաս-կած չունեին, և կայսրը ջոկելով ամուր ձիեր և զորքից քաջե-րին, բաժանեց նրանց երկու մասի, և մի մասը ուղարկեց առա-ջուց ընդդեմ բարբարոսների, իսկ ինքը մյուսների հետ գնաց նրանց հետևից։ Գիշերը նրանք արագությամբ գրավեցին Սալ-վանի փոքրիկ տեղը ժամը 9-ին։ Այնտեղ եղած պարսիկները տեղեկանալով հարձակման մասին, վեր թռան և նետվեցին նրանց դեմ, սակայն հռոմեացիները նրանց բոլորին էլ ոչըն-չացրին, բացի մեկից, որը լուրը տարավ բարբարոսին։ Նա վեր կացավ նստեց ձիու վրա և մերկ ու բոբիկ փրկության դիմեց փախուստի միջոցով։ Նրա կանանց և ամբողջ պարսկական ազնվականներին՝ կառավարիչներին, սատրապներին և ընտ-րովի զինվորներին, որոնք բարձրանալով կտուրների վրա կռ-վում էին, ոչնչացրեց հրկիզմամբ»։

Հերակլի, Շահր-Վարազի դեմ տարած հաղթանակի մասին մեջ բերված Սեբեոսի և Թեոֆանի հաղորդագրություններում, ինչպես տեսնում ենք, էական տարաձայնություններ չկան։ Սակայն, ան-շուշտ, Սեբեոսի հաղորդած տեղեկությունները մեծ արժեք ունեն, որովհետև ճշտում են իրադարձության աշխարհագրական պայման-ները։

Հերակլի գիշերային հարձակման ճանապարհը որոշվում է Ապահունիքից այժմյան Պատնոսի կամ Զոմիկի վրայով, այսինքն՝ լեռնային շրջանի վրայով, որտեղ, ինչպես իմ կողմից պարզված է

եղել, գտնվում էր Պետինգերյան քարտեզի ամրացված Tsumbo կամ Ծումբ կայարանը[1]։

Պատնոսից և Ջոմիկից դեպի Արճեշ գնացող ճանապարհի վրա ներկայումս էլ գտնվում է Աղի լեռնանցքը, որը գտնվում է Արճեշից 20—25 կմ դեպի հյուսիս[2], և դժվար չէ կռահել, որ պարսկական առաջատար զորագնդին է հանձնարարված եղել այդ լեռնանցքի պաշտպանությունը։ Հենց այդտեղ լեռնանցքի մոտ կարելի է ենթադրել և Աղի փոքրիկ վայրի տեղադրությունը[3]։

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, Հերակլի այդ արշավանքի ընթացուղին ևս պարզվում է բավականաչափ որոշակիությամբ։ Դժվար չէ կռահել, որ Թեոփանի մոտ հիշված Սալվանի փոքրիկ տեղը Աղի գյուղի աղավաղված անունն է, այսինքն՝ Ասի-Ավան [ =Σαλ-(α)βανόν]: Հիմնվելով ներկա ուսումնասիրության նոր տվյալների վրա, կարելի է, բացի այդ, եզրակացնել, որ հազիվ թե հավանական լինի Նորման Բեյնզի ենթադրությունը, որ իբր թե 624 թվի վերջերին տեղի ունեցած իրադարձությունների ժամանակ Հերակլը վերցրած լինի Վան քաղաքը[4]։

Շահր-Վարազի դեմ տարած հաղթանակից հետո, Հերակլի զորքերը ձմեռը անցկացրին Վանա լճի հյուսիսային հայկական գավառներում։ Իսկ մարտի սկզբին, ինչպես մանրամասն հաղորդում է Թեոփանը, Հերակլը այդտեղից գնաց դեպի Կիլիկիա և այնտեղից Սեբաստիա։

Թեոփանի համապատասխան վկայությունները այնքան հավաստի և արդարացի են, որ մեզ հնարավորություն են տալիս բավականաչափ ճշտությամբ որոշել նաև Հերակլի ընթացուղին դեպի Ասորիք [Սիրիա]։

> «Այն տարվա մարտի 1-ին,— հաղորդում է Թեոփանը,— Հերակլ կայսրը հավաքելով իր զորքը, խորհուրդ արավ՝ թե ինչ ճանապարհով իրենք գնան. երկու ճանապարհ կային նեղ և դժվար՝ մեկը տանում էր դեպի Տարանտ, մյուսը — դեպի Սիրիական երկիրը։ Ճանապարհը դեպի Տարանտ կարճ էր, բայց սպառնում էր ամեն տեսակ սննդամթերքի պակասությամբ. Ճանապարհը դեպի Սիրիա, որ գնում էր Տավրոսի վրայով, ներկայացնում էր առատություն և հարմարություն սննդա-

[1] Տե՛ս «Հայաստանի Գլխավոր ճանապարհները», էջ 104—106 և 243։

[2] Տե՛ս Acu Կովկասի գլխավոր շտաբի 10 վերստանոց քարտեզում։

[3] Acu գյուղի և լեռան մասին տե՛ս Հյուբշմանի դիտողությունը նրա «Die altarmenischen Ortsnamen» աշխատության մեջ, 1904 թ.։

[4] Տե՛ս The Cambridge Medieval History II, 1936, p. 294.

մթերքների նկատմամբ։ Բոլորը վճռեցին ընտրել այդ ճանապարհը, թեև նա խորդուբորդ էր և ծածկված էր խոր ձյունով։ Մեծ դժվարությամբ անցնելով այդ ճանապարհը, յոթը օրում հասան Տիգրիս գետին, որը անցնելով, գրավեցին Մարտիրոպոլը և Ամիդը։ Այդտեղ հանգիստ առան և զորքը, և գերիները»[1]։

Վանա լճի հյուսիսային շրջանից դեպի Փոքր Ասիա տանում էին, ինչպես միանգամայն ճիշտ ցույց է տրված Թեոֆանի մոտ բերված հաղորդագրության մեջ, երկու պատմական ճանապարհ։ Մի ճանապարհը գնում էր Մանազկերտի վրայով դեպի Կարին — Թեոդոսուպոլիս և այնտեղից դեպի Սատաղ և Փոքր Հայք, իսկ մյուսը՝ Տավրոսի լեռների վրայով դեպի Մարտիրոպոլ — Ֆարկին և այնտեղից Մելիտենե։ Որովհետև Հերակլի զորքը ետ նահանջեց երկրորդ ճանապարհով, ուստի դժվար չէ եզրակացնել, որ Թեոֆանի մոտ հիշված մյուս ճանապարհի ուղղությունը դեպի Տարանտ պետք է ենթադրել Թեոդոսուպոլսի և Սատաղի վրայով։ Այդ ճանապարհը թեև ինչպես կարճ և հարմար էր, սակայն զորքի համար ճարել սննդամթերք այդտեղ, իհարկե, դժվար էր լինելու, որովհետև Հերակլի զորաբանակը 624 թվի գարնանը այդ ճանապարհին սնվում էր կողոպուտի միջոցով։

Պետք է նշել, որ «ճանապարհը դեպի Տարանտ» Կուլակովսկին ենթադրում է հին հայկական Տուրուբերան նահանգի վրայով, որտեղ գտնվում էր Տարոնը[2]։ Այդ ակնհայտնի թյուրիմացություն է, որովհետև Տուրուբերանի և Տարոնի վրայով գնում էր Թեոֆանի մոտ հիշված «ճանապարհը դեպի Սիրիա», որով ետ նահանջեց 625 թվին Հերակլի զորաբանակը։ Վերևում հիշված Տարանտը Սեն-Մարտենը նույնացրել է Փոքր Հայքի Derendeh գավառին, որը հայերը անվանում էին Daranda, իսկ Սիրիացիք՝ Touranda[3]։ Այդ կարծիքը ես համարում եմ քիչ հավանական։ Ես կարծում եմ, որ Թեոֆանի մոտ Ταραντος, որը խիստ աղճատված է, կարող է համապատասխան լինել Կարին մարզի անվանը, հունարեն Καρρηνός կամ Καρηνῖτις[4], որի վրայով անցնում էր հիշված կարճ ճանապարհը։

Հերակլ կայսեր ընթացուղու ուղղությունը Վանա լճի շրջանից

---

[1] Летопись византийца Феофана, перев. Оболенского и Терновского, М, 1890, էջ 233 [A. M. 6116]

[2] Ю. Кулаковский. История Византии, т. III, 1915, էջ 72

[3] Տես Histoire du Bas-Empire par Leban, Paris, 1830, p. 108, ծանոթ. 3։

[4] Strabo XI, 14, 5 (528) և C. Müller, Claudii Ptolemaei geographia I, 1911, p. 937։

դեպի Մարտիրոպոլ — Ֆարկին որոշվում է առանց դժվարության Պետինգերյան քարտեզի Artaxata — Tigranocerta մագիստրալի երկարությամբ, որը որոշված և մանրամասն նկարագրված է իմ «Հայաստանի գլխավոր ճանապարհները» աշխատության մեջ[1]։ Այդ ճանապարհի վրա, որ գնում էր Մուշի հովիտի և Տավրոսի լեռնաշղթայի վրայով դեպի Բատման-սուի ակունքները և այնտեղից այժմյան Կիլտիզ և Ներջիկ գյուղերի վրայով դեպի Մարտիրոպոլ [հին Տիգրանակերտ], Պետինգերյան քարտեզի վրա ցույց են տրված հետևյալ կայարանները՝ Elegacana [հին հայկ. Եղեգական] 15 Dagnevana [հին հայկ. Դոնեվանք] 26 Molchia 32 Vastauna կամ Bastavena [այժմյան Բոստաքենդ] 26 Patansana կամ Patransana [հին հայկ. Պատրանսավան] 27 Dyzanas կամ Dizanas 22 Cyldiza [այժմյան Կիլտիզ] 20 Zanserio կամ Zancerion [սիրիակ. Զոնիկարտ] 30 Tigranocerta [Ֆարկին — Մարտիրոպոլ][2]։




Քարտեզ 6.

Հեռավորությունը Վանա լճի շրջանից մինչև Մարտիրոպոլ—Հին Տիգրանակերտ, ինչպես տեսնում ենք, կազմում է մոտավորապես

[1] Երևան, 1936, էջ 85—104 և 241—242։

[2] Կայարանների մեջ եղած թվանշանները ցույց են տալիս տարածությունը հռոմ. մղոններով [1.4815]։

200 հռոմեական մղոն կամ 300 կմ, և այդ տարածությունը կայսերական զորքերը կարողացել էին անցնել մոտավորապես 10 օրում. իսկ մինչև Տիգրիսի ակունքները Գիզանաս կայարանի մոտ նրանք կարողացել էին հասնել, ինչպես միշտ ցույց է տրված Թեոֆանի մոտ, 7 օրում։ Թեոֆանի վկայության մեջ Տիգրիս գետի անվան տակ, ինչպես և Քսենոֆոնի Անաբասիսում [IV, 4, 3], ենթադրվում է ըստ երևույթին Նիմֆի գետը, կամ այժմյան Բատման-սուն։ Հետաքրքիր է նաև, որ Թեոֆանը իր հետագա պատմվածքում Նիմֆի անվանում է այն գետը, որ հոսում էր Ամիդի մոտ, այսինքն՝ այժմյան Տիգրիսը։

Հերակլի զորքերը դադար առան Մարտիրոպոլի և Ամիդի շրջանների միջև։ Այստեղ նրանց հասավ Շահր-Վարազը, որը համառորեն հետևում էր Հերակլին և փորձում էր նրան պատժել[1]։ Նիմֆի գետը, այսինքն՝ այժմյան Տիգրիսը, անցնելուց հետո, Հերակլի հետագա ճանապարհը ցույց է տրված Թեոֆանի մոտ Սամոսատի և Գերմանիկեի վրայով դեպի Ադանա և դեպի Սարա գետը ու այնտեղից Սեբաստիայի վրայով դեպի Պոնտոս, որտեղ Հերակլի զորքը անցկացրեց 625—626 թվի ձմեռը։

624—625 թվերի Հերակլի կռիվները, ինչպես հայտնի է, Թեոֆանը փառաբանում է իբրև հաղթանակների անընդհատ շարք։ Ավելի ճիշտ գնահատական է տրված այդ իրադարձություններին Մովսես Կաղանկատվացու պատմական աշխատության մեջ՝ որտեղ ասված է հետևյալը՝

«Զի թէպէտ և հարուածք մեծամեծք եղեն զօրացն Պարսից, սակայն հանին տարան արկին զնա յաշխարհն իւր, և անդէն կալան զքաղաքն, զոր հանին բռնութեամբ ի նմանէն»[2].

Հերակլի պատերազմական գործողությունների մասին կարելի է ճիշտ համարել նաև Նյոլդեկեի հետևյալ գնահատականը։

«Նրա [Հերակլի] համարյա արկածային տեղաշարժերը տեղից տեղ, որոնց ընթացքում նա սովորաբար չուներ կապ թիկունքի հետ, և պետք է հանդիպեր մեծ դժվարությունների իր զորքերը պարենավորելու ընթացքում, բնորոշում են Հերակլին, իբրև մեծ զորավար և խոշոր քաղաքագետ»[3]։

---

[1] Theoph A. M. 6116.

[2] Մովսես Կաղանկատվացի, Աղվանից պատմութիւն, Թիֆլիս, 1913, էջ 150—151։

[3] Nöldeke, Aufsätze zur persischen Geschichte, 1887, S. 126։

* *
*

Պայքարը Սասանյան Պարսկաստանի և Բյուզանդական կայսրության միջև շարունակվեց առանձին կատաղությամբ 626 թվին։

Ետ քշելով Հերակլին դեպի Պոնտոս և վերականգնելով իր իշխանությունը Հերակլի թողած մարզերում, Սասանյան Պարսկաստանը նորից անցավ հարձակման և ավարների հետ միացած պաշարեց Կոստանդնուպոլիսը [626 թվի ամառը]։ Շահր-Վարազի զորաբանակը առաջ էր գնում Քաղկեդոնի կողմից, իսկ Հերակլի դեմ պետք է կռիվ մղեր Շահենը։ Սակայն պարսիկների մտածված լայն ծրագիրը հաջողություն չունեցավ։ Ավարների զորավարը պարտություն կրեց [626 թվի օգոստոսի 7-ին] և պետք է պաշարումը վերացներ ու ետ քաշվեր։ Նույն տարում Շահենի դեմ հաղթություն տարավ նաև Հերակլի եղբայրը — Թեոդորոսը։

Այդ իրադարձությունների ժամանակ Հերակլ կայսրը զբաղված էր դեպի Պարսկաստանի իր երկրորդ արշավանքը կազմակերպելու գործով։ Կազմավորելով նոր զորաբանակ, նա գնաց, ինչպես հաղորդում է Թեոֆանը[1], դեպի Լազիկա։ Այդ տեղեկությունը, ինչպես ենթադրում են, արժանի է վստահության։ Ուստի հնարավոր է, որ Մովսես Կաղանկատվացու վերևում հիշված վկայությունը Հերակլի՝ ծովային ճանապարհով Եգերիա, այսինքն՝ Լազիկա ուղևորվելու մասին, վերաբերում է ոչ թե առաջին արշավանքին, այլ երկրորդ[2]։

Հիմնվելով Նիկիփորոսի հաղորդագրության վրա, Կուլակովսկին հավանական է համարում, որ ուղևորությունը դեպի Լազիկա, այսինքն՝ Կոլխիդա, Հերակլը կատարել է ծովային ճանապարհով Տրապիզոնից[3]։ Սակայն, ինչպես ներքևում մանրամասնորեն պարզվելու է, այդ ենթադրությունը խիստ վիճելի է։

Նախքան իր երկրորդ արշավանքը սկսելը, Հերակլը փնտրում էր նոր դաշնակիցներ, և գտավ նրանց, հանձինս խազարների։ Համաձայն Մովսես Կաղանկատվացու տեղեկությունների, Խոսրովի թագավորության 36-րդ տարում [այսինքն՝ 626 թվին] Հերակլ կայսրը դեսպանություն ուղարկեց խազարների առաջնորդ Ջեբուխանի մոտ [Զիեբիլ, տե՛ս Թեոֆան, A. M. 6117] և նրա հետ կնքեց զինվորական դաշինք։ Այնուհետև Խոսրովի թագավորության 37-րդ տա-

[1] Theoph A. M. *6117*։

[2] *Մովսես Կաղանկատվացի, հիշված աշխատությունը, էջ 101*։

[3] Ю. Кулаковский, История Византии, III, էջ 75. Համեմատե Nicefhori archiepiscopi Const. opuscula historica, 1880, 15,12.

*րում [627 թ.] Ջեբուխանի անհամար զորքերը, անցնելով Դերբենտի անցքը, ավերեցին աղվանների և իբերների երկիրը և պաշարեցին Թիֆլիսը*[1]*։*

*Թեոֆանի և Մովսես Կաղանկատվացու ներքևում բերվող հաղորդագրություններից երևում է, որ հենց այդտեղ, պաշարված Թիֆլիսի պատերի տակ տեղի է ունեցել Հերակլի հանդիպումը իր նոր դաշնակիցների հետ։*

*1. Թեոֆան, [հիշված աշխատ., 1890, էջ 235]* A. M. *6117. «Խազարները անցնելով Կասպից դռները, ներխուժեցին Ադրբեջանի երկիրը Զիեբլի հրամանատարությամբ, որը Կագանում իր արժանիքով եղել է երկրորդը. և որտեղով որ նրանք անցնում էին, ամենուրեք գերում էին պարսիկներին, իսկ քաղաքները և գյուղերը՝ այրում էին։ Կայսրը թողնելով լազերի հողը միացավ նրանց»։*

*2. Մովսես Կաղանկատվացի, Թիֆլիս, 1913, գլ. ԺԱ, էջ 156.*

*«Յետ այսր ամենայնի դիմէր ուղխն յարուցեալ և գետն յորձանուտ ընդդէմ Վրաց աշխարհին և պատեալ պաշարէին զփափկասուն, վաճառաշահ, հռչակաւոր մեծ քաղաքն Տփխիս։ Անդ լինէր մեծի կայսերն Հերակլիոսի. և ժողովեալ նորա զամենայն զօրս զօրութեան իւրոյ՝ գայր վաղվաղակի հասանէր առ նիզակակից օգնականն իւր։ Եւ ի մատուցանել զօժիտս և զընծայս թագաւորականս՝ ընկալեալ յոյժ բերկրեցան ի տեսանել զմիմեանս»։*

*Հիշված հաղորդագրությունների ու նկարագրված իրադարձությունների տարեթվերի մասին, ինչպես և Հերակլի դեպի Թիֆլիս գնացած ընթացուղու մասին, ինչպես հայտնի է, պատմական աշխատություններում կան անհաշտելի տարաձայնություններ։ Ելնելով Թեոֆանի ցուցմունքներից, գիտնականների մի մասը ենթադրում է, որ վերոհիշյալ անցքերը տեղի են ունեցել 626 թվին*[2]*։ Սակայն գիտնականների մյուս մասը, ինչպես ինձ թվում է, ավելի իրավացիորեն այդ անցքերը տանում է 627 թիվը*[3]*։*

*Այդ վերջին տարեթիվը հաստատվում է բավականաչափ ճշտու-*

---

[1] *Մովսես Կաղանկատվացի, հիշված աշխատ., էջ 153—156։*

[2] H. Gelzer, Abriss der hvzantinischen Kalsergeschichte, S. 948. Артамонов, Очерки древней истории Хазар, 1936, *էջ* 51—58. Lebeau, Histoire du Bas-Empire, IX, p. p. 117—119 *և ուրիշ։*

[3] Ю. Кулаковский, История Византии, III, *էջ* 93—94։

N. H. Baynes, Cambridge Medieval History, II, 1936, 297 sq.

թյամբ Մովսես Կաղանկատվացու համապատասխան հաղորդագրությունների ուշադիր վերլուծման միջոցով։

Պարզ չէ, սակայն, Հերակլի ընթացուղու ուղղության խնդիրը Եգերիա — Լազիկայից դեպի Թիֆլիս։ Սովորաբար Եգերիա—Լազիկայի տակ գիտնականները ենթադրում են Ֆազիս—Ռիոն գետի հոսանքով տարածվող երկրամասը, այսինքն՝ Կոլխիդան[1]։ Լազիկայի տեղադրության այդ մեկնաբանությամբ Հերակլի ընթացուղու որոշումը «Լազերի հողից» դեպի Թիֆլիս դժվար չէր լինի։ Այդ ճանապարհը կարելի է ընդունել այժմյան Շորապանի և Սուրամի լեռնանցքի վրայով և այնուհետև Կուր գետի երկայնությամբ։

Սակայն, բավական է դիմել Վրացական աղբյուրներին, և առաջ են գալիս մի շարք կասկածներ։ Ակներև է, որ Հերակլի պարսկական երկրորդ արշավանքին են վերաբերում վրաց աղբյուրների հետևյալ վկայությունները.

1. Տես Н. Я. Марр, Антиох Стратиг, Пленение Иерусалима персами в 614 г. [1909, стр. 25]. «Մինչ այդ Հերակլ կայսրը շտապեց զորք հավաքել և... մարտիկների անհաշիվ խմբեր բոլոր կողմերից, բազմաթիվ ցեղերից և անթիվ ժողովուրդների բազմությամբ ուղևորվեց Էվքսինյան Պոնտոսի վրայով, որը իրենից ներկայացնում է ընդարձակ ծով հյուսիսում։ Նրա հետ էր կինը։ Երբ Հերակլը հասավ Տրապիզոն, Մինգրելիայի սահմաններում, կինը ծնեց որդի, որին նա անվանեց Հերակլ։ Այդտեղից Հերակլը դեսպաններ ուղարկեց [թուրքական] թագավորի մոտ առատ նվերներով։ Թուրքական թագավորը ընդունեց Հերակլի դեսպաններին և տվեց միաբանյալ խոստում, որից հետո Հերակլը գնաց թուրքական հողը»։

2. Ջվանշիր, Համառոտ պատմութիւն Վրաստանի [Վենետիկ, 1884, գլ. 15, էջ 96—97]։

«Իսկ զՓոկաս սպանեալ Հերակլայ՝ ազգականին Մուրկայ և թագաւորեալ ի վերայ Յունաց և ածեալ զօր յարևմտից ի Թուրքաց բազում յույժ, և ել ի խնդիր կենսատու խաչին, ճանապարհ կալեալ ընդ Հայս՝ եկն ի Բզնունիս և անտի ելանէ ի Տփխիս»։

Առաջին հատվածում հետաքրքիր է այն հաղորդագրությունը, որ «Հերակլը հասավ Տրապիզոն» Մինգրելիայի սահմաններում», այսինքն, ինչպես ճիշտ նշում է Ն. Մառը, Մինգրելիայի, որ հա-

[1] Ю. Кулаковский, История Византии, т. III, էջ 75։

կացվում է Լազիկայի մոտքով, կամ «Եգերացիների երկրի»[1]։ Հետաքրքիր է, որ «Աշխարհացույցի» մեջ ևս որոշակի ցույց է տրված, որ Ջանիկը, այսինքն՝ Ճաների երկիրը, կամ լազերի, որ գտնվում էր Տրապիզոնի մարզի շրջանում, եղել է Եգերիա-Կոլխիդայի մի մասը[2]։ Ուստի կարելի է հնարավոր և նույնիսկ հավանական համարել, որ Եգերիա — Լազիկայի տակ, որտեղից Հերակլը եկել էր Թիֆլիս, պետք է ենթադրել ոչ թե Արևմտյան Վրաստանի այժմյան Մինգրելիան, այլ «լազերի երկիրը» Տրապիզոնի մարզում։

Ուշագրավ է նաև այն, որ Ջվանշիրի «Վրաստանի համառոտ պատմության» մեջ Հերակլի ճանապարհը դեպի Թիֆլիս ցույց է տրված ոչ թե Արևմտյան Վրաստանից Սուրամի լեռնանցքի վրայով, այլ Հայաստանի և Բզնունիքի [՞]։

Ենթադրել Հերակլի ճանապարհի ուղղությունը դեպի Թիֆլիս հին-հայկական Բզնունիքի վրայով, որ գտնվում էր Վանա լճի հյուսիս-արևմտյան անկյունում, իհարկե, միանգամայն անհավանական է։ Ուստի կարելի է ենթադրել, որ Բզնունիքը Ջվանշիրի մոտ աղավաղում է և կարելի է որոշ վստահությամբ ենթադրել, որ հունարեն բնագրում, որը հիմք է ծառայել վրացական հաղորդագրության, դրված է եղել հավանորեն ոչ թե «Բզնունիք», այլ βιζανα որ հիշված է Գեորգ Կիպրացու մոտ Տրապիզոնի երկրամասում թեմական քաղաքների թվում[3]։ Ջվանշիրի վկայության այդ նոր մեկնաբանությամբ Հերակլի ճանապարհը դեպի Թիֆլիս կարելի կլիներ ենթադրել ոչ թե Ցազիս-Ռիոն գետի ավազանից Սուրամի լեռնանցքով, այլ Տրապիզոնի մարզից Երզնկայի վրայով դեպի Վիզանա, որ գտնվում էր Եփրատի ափին, Կոթուրից հարավ, և այդտեղից Կարինի, Վանանդի և Շիրակի վրայով դեպի Թիֆլիս։

Մեր կողմից քննարկված Վրացական աղբյուրների վկայությունները, ինչպես տեսնում ենք, կասկածի տակ են դնում այն գիտնականների ենթադրությունը, որոնք Հերակլի ելակետը երկրորդ պարսկական արշավանքի ժամանակ ենթադրում են ոչ թե Տրապիզոնի շրջանից, այլ այժմյան Մինգրելիայից, կամ այժմյան Աջարիայից։ Կարծում եմ, որ Հերակլի ընթացուղին դեպի Թիֆլիս չի կարելի վերջնականապես որոշված համարել և մնում է դեռևս վիճելի։

Գալով Թիֆլիս, կայսերական զորքերը պաշարեցին քաղաքը խազարների հետ միասին։ Բայց պաշարումը խիստ ձգձգվեց, ուստի

---

[1] Антиох Стратиг, էջ 25, ծանոթ. 4։

[2] Армянская география, пер. Паткамова, 1877, էջ 38—39։

[3] Georgii Cyprii, Descriptio orbis Romani, ed. H. Gelzer, 1890, p. 78.

դաշնակիցները որոշեցին ժամանակավորապես այն դադարեցնել։ Խազարները վերադարձան իրենց երկիրը, իսկ Հերակլը, վերցնելով նրանցից 40.000 հեծելազոր, սրընթաց առաջ գնաց դեպի Պարսկաստանի խորքը [627 թվի աշնանը]։

Հերակլի այդ նոր արշավանքի ընթացուղին դեպի Պարսկաստան ցույց է տրված Սեբեոսի մոտ նրա հետևյալ հաղորդագրության մեջ.

«Յայնժամ առեալ Երակլի զզաւրս իւր՝ դարձաւ յերկիրն Հայոց, անցեալ ընդ Շիրակ հասանէ ի հուն գետոյն Երասխայ, և անց ընդ գետաւն առ Վաղարշակերտաւն աւանաւ, երբեալ թափեցաւ ի Գոգովիտ գաւառ: Եւ Ռոճիկ Վահանայ և զաւրուն պարսից կարծեցեալ զնոսա փախստական գնալ։ Իսկ նորա ճանապարհ կալեալ ի Հեր և ի Զարևանդ գաւառ, դէպուղիղ ի Տիզբոն ի վերայ խոսրովու։ Եւ իբրև միջամուխ եղև ի սահմանս Ատրպատական գաւառի, ապա ուրեմն լուր եղև Ռոճ Վեհանայ, առ զզաւրս իւր և գնաց զհետ նորա ի Նախճաւան քաղաք։ Այնպես փութով գնացեալ զտիւ և զգիշեր, մինչև չոգաւ հասա մերձ ի նա։ Եւ նորա անկեալ յայնկոյս լերինն Զարասպայ յերկիրն Ասորեստանեայց։ Եւ սոքա պնդեցան զհետ նորա. և նոցա դարձեալ ընդ արևմուտս՝ գնաց ի Նինուէ»[1]։

Մեջ բերված Սեբեոսի մանրամասն ցուցմունքները, աշխարհագրական տվյալների լիակատար որոշակիության շնորհիվ, հնարավորություն են տալիս պարզել բավականաչափ ճշտությամբ Հերակլի ընթացուղին Թիֆլիսից դեպի Նինվեի շրջանը։

Ճանապարհի առաջին մասը Թիֆլիսից մինչև Արաքսի հունը Վաղարշակերտի մոտ համապատասխանում է, ընդհանուր առմամբ, Պոմպեոսի ընթացուղուն, որը գնացել էր հակառակ ուղղությամբ Արտաշատի շրջանից դեպի Հարմոզիկա, որ գտնվում էր Կուր գետից և այժմյան Մցխեթից դեպի հարավ[2]։

Թիֆլիսի շրջանից Հերակլի զորքը առաջ էր գնացել Կուր գետի երկարությամբ դեպի այժմյան Բորժոմ, իսկ այնուհետև կամ Բակուրիանիի ու Խոսպիայի վրայով [Caspiae—Պևտինգերյան քարտեզի, այժմյան Ախալքալաքից ոչ հեռու] կամ Ազղուրի վրայով դեպի Մինաշա [Ad-Metcurium—Պևտինգերյան քարտեզի, այժմյան Ախալցխայից ոչ հեռու], և այդտեղից Շիրակի վրայով դեպի Վաղարշակերտ, որի տեղադրությունը պետք է ենթադրել Արտաշատից դեպի արևմուտք։ Իմ «Տիգրան II և Հռոմը» աշխատության մեջ

---

[1] Սեբեոս, Թիֆլիս, 1912, գլ. ԻԶ, էջ 150—151։

[2] Տե՛ս իմ հոդվածը՝ «Круговой путь Помпея в Закавказье», ВДИ, № 4, 1939, էջ 74—76։

ցույց է տրված, որ հետագա Վարդանակերտի մոտ, գետանցքի վրայով պետք է անցած լինեին Արաքս գետը նաև Պոմպեոսը [66 թ.] և Գոմիցիոս Կորբուլոնը [58 թ.], որոնք տանում էին իրենց զորքերը դեպի Արտաշատ շրջանցիկ ճանապարհով[1]։




Քարտեզ 7.

Անցնելով Արաքսի հունի վրայով, Հերակլի զորքը շարունակել էր ճանապարհը, ինչպես դժվար չէ որոշել, Պևտինգերյան քարտեզի Artaxata — Gobdi[2] ուղեգծով։ Այդ պատմական ճանապարհը հիշված քարտեզում գնում է հետևյալ ուղղությամբ՝ Artaxata *39*... Catispil=Ortispi, հին հայկ. Որդսպու, Կոգովիտում, այժմյան Թավրիզից ոչ հեռու] *27* Sorvae *24* Anteba [Artaza, հին հայկ. Արտազ] *24* Nasebi [հին հայկ. Նվարսակ] *17* Gobdi [Խոյ] *24* Filadelfia *20* Trispeda կամ Tarspedo [այժմյան Տասվիջ] *45* Paresaca [հին հայկ. Պարսք][3]։

Խոյից դեպի հարավ, ինչպես ցույց է տրված վերևում, հիշվում են հին աղբյուրներում երկու պատմական ճանապարհ. մեկը Մարանդի և Թավրիզի վրայով, իսկ մյուսը Տասվիջի վրայով, որ գնում

---

[1] «Տիգրան II և Հռոմը», Երևան, 1943, էջ 189։

[2] «Հայաստանի գլխավոր ճանապարհները», 1936, էջ 139—172 և 246—248։

[3] Կայարանների մեջ դրված թվերը ցույց են տալիս տարածությունները հռոմեական մղոններով [1.4815 կմ]։

էր Ուրմիա լճի արևելյան ափերով։ Հերակլի ճանապարհի ուղղությունը, որը Սեբեոսի մոտ ցույց է տրված Զարևանդի շրջանի վրայով, որը գտնվում էր Ուրմիա լճի հյուսիսում, որոշվում է ոչ թե Մարանդ — Թավրիզի վրայով, այլ Տավրիզի։

Աջի-չայ գետը անցնելուց հետո, որից ոչ հեռու գտնվում էր Պևտինգերյան քարտեզի Paresaca կայարանը, Հերակլի զորքը շարունակեց ճանապարհը, ինչպես նշված է իմ «Պատմական-աշխարհագրական մանր հետազոտություններ»[1] աշխատության մեջ, Դեհարկանի շրջանից այժմյան Միյանդուաբի վրայով դեպի Սոուղբուլաղ և այնտեղից Զարասպ [Զագրոս] լեռնաշղթայի վրայով դեպի Ասորեստան։

Անգլիական գիտնական Նորման Բեյնզը, որը ենթադրում էր հիշված ճանապարհը Ուրմիա լճի արևմտյան կողմի երկարությամբ, այսինքն՝ այժմյան Սալմասի և Ուրմիայի վրայով, բոլորովին նկատի չի առել, որ կայսերական զորքը Ասորեստան է մտել ոչ թե հյուսիսից, այլ արևելքից[2]։ Նա անցել է, ինչպես որոշակի հաղորդում է Սեբեոսը, Զարասպ լեռան մյուս կողմը, այսինքն՝ Զագրոս լեռնաշղթայի այն մասը, որտեղ գտնվում է Կելիշինի լեռնանցքը[3]։

Թեոֆանի վկայությամբ, դեռևս մինչև կայսերական զորքերի Ասորեստան մտնելը, Հերակլին թողել էին նրա դաշնակից խազարները։ Չնայելով դրան, բյուզանդական զորքը անդադար շարունակել էր իր արշավանքը դեպի Պարսկաստանի խորքը[4]։

Զարասպ-Զագրոս լեռը անցնելուց հետո Հերակլի ընթացուղու մասին որոշ տեղեկություններ հաղորդում է միայն Թեոֆանը։ Իջնելով զորքերի հետ միասին Ասորեստան, ինչպես հաղորդում է Թեոֆանը, Հերակլը մտել էր Խնայթուի մարզը[5], որը գտնվում էր Ռևանդուզից դեպի հարավ, որտեղ նա իր զորքին յոթը օր հանգիստ տվեց։ Թողնելով Խնայթուն, նա առաջ գնաց դեպի հարավ և ավերեց հարակից տեղերը։ Աղբյուրների վկայություններից երևում է, որ Հերակլի երկրորդ արշավանքը ևս, ինչպես և նրա առաջին արշավան-

[1] Երևան, 1945, էջ 13—14 և 49։

[2] Cambriedge Medieval History *II, 1936, էջ 298. Հերակլի ճանապարհը Ուրմիա լճի արևմտյան ուղղությամբ ենթադրել է նաև Կուլակովսկին* [История Византии, *III, էջ 94*]։

[3] «Պատմական-աշխարհագր. մանր հետազոտություններ» իմ աշխատությունը, էջ 9—14 և 48—49։

[4] Theoph. A. M. *6118*։

[5] Rawlinson, Memoir on the Site of the Atropatenian Ecbatana, JRGS, X, 1841, p. 73. Hoffmann, Auszüge aus syrischen Akten persischer Märtyrer. S. 216:

քը ունեցել է անխնա ոչնչացման բնույթ։ Կայսերական զորքերը հրի ու սրի էին մատնում ինչպես պարսկական քաղաքները և գյուղերը, այնպես էլ գերի վերցրած պարսիկներին։

Կռիվը Հերակլի հետ պետք է վարեր պարսից զորավար Ռախզադը, հենց նա, որը Սեբեոսի վերևում բերված հաղորդագրության մեջ անվանված է Ռոճիկ Վահան։ Այդ Ռախզադը, որ հետապնդում էր Հերակլին Նախիջևանից, ընկել էր շատ ծանր դրության մեջ, որովհետև գնում էր Հերակլի կողմից ավերված տեղերով. այդ հանգամանքը խիստ դժվարացնում էր նրա զորաբանակի մատակարարումը սննդամթերքով։ 627 թվի դեկտեմբերի 1-ին, ինչպես հաղորդում է Թեոֆանը, [A. M. 6118] Հերակլի զորքերը անցան Մեծ Զաբ գետը և բանակ դրին Նինվեի մոտ։ Նրանց հետևից նույն տեղը եկավ Ռախզադի զորքը և բանակ դրեց նրանց բանակատեղի մոտ։ Դեկտեմբերի 12-ին տեղի ունեցավ վճռական կռիվ, որտեղ պարսկական զորքը կրեց ծանր պարտություն։ Կռվում ընկան ինքը՝ Ռախզադը և նրա զորավարների մեծագույն մասը։

Տարած հաղթությունից հետո Հերակլի զորաբանակը շտապ կարգով գնաց դեպի հարավ 627 թվի դեկտեմբերի 23-ին, անցավ Փոքր Զաբ գետը և դադար առավ Խոդեմ պարսիկ ազնվականի հարուստ կալվածքում, որտեղ և տոնեց Քրիստոսի ծննդյան տոնը [627 թվի դեկտ. 25-ին]։ Այնուհետև նա մոտեցավ Խոսրովի Ռուսա կոչվող պալատին և այն ավերեց [Թեոֆան A. M. 6118]։ Իր հոդվածում, որ տպված է IRGS-ի մեջ [X, 1841], Ռավլինսոնը նմանեցնում է Ռուսան, տեղափոխելով վանկերը, Sori կամ Bet Sori-ին։

Նինվեի մոտ ջարդված պարսից զորքը, օգնություն ստանալով, շտապեց գնալ Տիզբոնի պաշտպանությանը և, շրջանցելով Հերակլին, անցավ Տորնա գետը [Թեոֆան, A. M. 6118] ու տեղավորվեց նրա ձախ ափին։ Կայսրը ենթադրեց, թե պարսիկները ուզում են ցույց տալ դիմադրություն Տորնայի կամուրջի մոտ։ Բայց երբ Հերակլը մոտեցավ, թշնամին փախավ, և կայսերական զորքը անարգել կերպով կամուրջով անցավ գետը։

Տորնա գետը անցնելով, Հերակլի զորքերը գրավեցին 628 թվի հունվարի սկզբներին Բեկլալ և Բերդարխ պալատները [Թեոֆան A. M. 6118] և Խոսրովի աթոռանիստ Դաստակերտը, որտեղ բացի այլ հարուստ ավարից, խլեցին 300 հռոմեական դրոշակներ, որ պարսիկները վերցրած են եղել տարբեր ժամանակներում։

Հիշված կետերի տեղը, չնայելով գիտական գրականության մեջ եղած տարաձայնություններին, ընդհանուր առմամբ կարելի է համարել բավականաչափ պարզված։ Սեն-Մարտենը ենթադրում էր,





Քարտեզ 8.





Քարտեզ 9.

որ Տորնա գետը, որ Պլինիոսի մոտ անվանված է Tornadotus [*VI, 27*] և Քսենոֆոնի մոտ Physcus [Anabasis *III, 4*], եղել է Տիգրիս գետի վտակը և այժմ կրում է Katri-Sou անունը[1]։ Ռավլինսոնի կարծիքով Տորնան կարելի է նույնացնել Naharvan ջրանցքի հյուսիսային գետաբազուկին, որը գտնվում էր Փոքր-Զաբ գետից 80 անգլիական մղոն հեռավորության վրա[2]։

Վերևում հիշված Բեկլալ և Բեբդարխ պալատները և թագավորական Դաստակերտ աթոռանիստը, ինչպես երևում է Թեոփանի հաղորդագրությունից [A. M. *6118*], եղել են համեմատաբար իրար մոտ և Հերակլի ու իր զորքի կողմից գրավված են եղել համարյա միաժամանակ, հունվարի առաջին օրերը։ Ուստի դժվար չէ համոզվել, որ նրանց տեղը պետք է եղած լինի այժմյան Դիալա գետի միջին հոսանքի ձախ կողմը։ Այդ գետից ոչ հեռու գտնվել է Դաստակերտը։ Սասանյան թագավորների այդ նշանավոր աթոռանիստի ավերակները, որ ներկայումս հայտնի են Իսկի-Բաղդադ անվան տակ, ինչպես պարզված է, գտնվում են Շահրաբան գյուղի մոտ, խանիկինից դեպի Բաղդադ գնացող ճանապարհի վրա, Բաղդադից 16 փարսախ և Խանիկինից 14 փարսախ հեռավորության վրա[3]։

Կողոպտելով ու ավերելով Դաստակերտը 628 թվի հունվարի 7-ին, Հերակլը գնաց ավելի հարավ Տիզբոնի կողմը, որ գտնվում էր Դաստակերտից 105—110 կմ հեռավորության վրա։ Դուրս գալով Դաստակերտից, Հերակլը անցավ երեք օրվա ճանապարհ և կանգ առավ գետից 12 մղոն հեռավորության վրա, կամ ավելի ճիշտ, Նահրավան ջրանցքից [Թեոփան A. M. *6118*], որի մոտ, Տիզբոնից 19 մղոն հեռավորության վրա կանգնած էին պարսիկ զորքերը։ Այստեղից կայսրը ուղարկեց հեծյալ հետախույզների մի ջոկատ, որը նրան հաղորդեց, որ կամուրջները քանդված են և անցումը Նահրավանի վրայով հնարավոր չէ։

Հերակլը ստիպված էր ընդհատել առաջխաղացումը և վճռեց ետ նահանջել։ Նրա նահանջի ճանապարհը որոշվում է բավականաչափ ճիշտ՝ Դիալա գետի հոսանքով դեպի վեր, իսկ հետո, Շահրիզուրի մոտ Զարասպ-Զագրոս լեռներում դժվար լեռնանցքը անցնելուց հետո դեպ Գանձակ Ատրպատականի։

Դուրս գալով Նահրավան ջրանցքի մոտակա շրջանից, Բյուզան-

---

[1] Histoire du Bas-Empire par Lebeau, ed. par M. de Saint-Martin XI, 1830, p. 136, ծան. 2.

[2] Rawlinson JRGS, X [1841], p. 93.

[3] Նույնը, p. 93 sq: Б. Бартольд, Историко-географич. обзор Ирана, 1903, էջ 132

դական զորքը ետ նահանջեց հյուսիս-արևելյան ուղղությամբ և եկավ Շահրիզուր [Թեոֆան A. M. 6118], որը գտնվում էր այժմյան Սուլեյմանիայից դեպի հարավ-արևելք, Տիզբոնի ու Ատրպատականի Գանձակի կրակապաշտների գլխավոր տաճարի կես ճանապարհին[1]։

Շահրիզուրում Հերակլը մնաց, ինչպես Թեոֆանը հաղորդում է, համարյա ամբողջ փետրվար ամիսը, և այդ ժամանակը նրա զորքերը քանդում և ավերում էին շրջակա գավառները։ Փետրվարի 24-ին Հերակլի զորքերը սկսեցին իրենց երթը Զարասպ-Զագրոս լեռների վրայով և անցնելով լեռնանցքը անընդհատ տեղացող ձյան տակ, հասան Բարզա փոքրիկ տեղը [Թեոֆան, A. M. 6118], որտեղ նրանք հանգստացան, մնալով 7 օր։ Ինչպես միանգամայն ճիշտ ցույց է տվել Ռավլինսոնը, Բիրզա փոքրիկ տեղը կարելի է նույնացնել այժմյան Berozeh[2]-ին Baneh մարզում, որը գտնվում է Ջեկետու-չայ գետի ակունքների մոտ, որ թափվում է Ուրմիա լիճը։

Սակայն, պետք է նշել, որ գիտնականներից շատերը, հիմնվելով, ըստ երևույթին, Զատկական ժամանակագրության ոչ բավարար չափով պարզ հաղորդագրությունների վրա, ենթադրում են, որ Զարասպ-Զագրոս լեռնաշղթան գտնվում էր ոչ թե Շահրիզուրի և Բարզայի միջև, ինչպես ցույց է տրված վերևում, այլ Բարզայի և Ատրպատականի Գանձակի միջև։ Բարզա փոքրիկ տեղի և Բան Բանե մարզի տեղադրությունը, որ գտնվում էին Ատրպատականի Զագրոս լեռնաշղթայից դեպի արևելք, նրանք սխալմամբ ենթադրում են այդ լեռնաշղթայից դեպի արևմուտք, այսինքն՝ Ասորեստանում[3]։

628 թվի մարտի 8-ին Հերակլը գնաց իր զորքով դեպի Ատրպատականի Գանձակ քաղաքը և այնտեղ հասավ մարտի 11-ին։ Այնտեղ նա իր զորքին տվեց երկարատև հանգիստ։ Դեռևս մինչև Գանձակ հասնելը կայսրը տեղեկություն էր ունեցել Պարսկաստանում տեղի ունեցած արյունալի հեղաշրջման մասին։ Եվ Գանձակում Հերակլի կանգառի ժամանակ նրա մոտ եկավ Կավատ թագավորի պաշտոնական դեսպանությունը, որը հաղորդելով նրան Խոսրովի մահապատժի մասին [628 թվի փետրվարի 29-ին] և Կավատի թագավորաց թագավոր հռչակելու մասին, սկսեց նրա հետ բանակցություններ խաղաղության մասին։ Դրանից հետո, 628 թվի ապրիլի 8-ին Հերակլը Գանձակից վերադարձավ Հայաստան։

---

[1] В. Бартольд, Историко географический обзор Ирана, էջ 138.

[2] JRGS, X, 1841.

[3] The Cambridge Medieval History, II, p. 299. Ю. Кулаковский, „Ист. Византии, II, էջ 102 և ուրիշ․։

*Հերակլի հետադարձ ճանապարհը Ատրպատականից Հայաստանի վրայով դեպի Բյուզանդիա ճիշտ պարզել չի կարելի, որովհետև սկզբնաղբյուրները չեն տալիս դրա մասին ճշգրիտ տեղեկություններ։ Մի քանի ցուցմունքներ դրա վերաբերմամբ կան հայկական և վրացական ուշ շրջանի աղբյուրներում, սակայն այդ վկայությունները կամ ավանդական են, կամ վիճելի, ուստի և հենվել նրանց վրա խիստ վտանգավոր է։*

*Սկզբնաղբյուրների հաղորդագրություններից հայտնի է միայն, որ Հայաստանից կայսրը գնաց դեպի վերին Միջագետք, որտեղ նշանավորեց իր Ամիդում լինելը մեծ տաճարի հիմնադրությամբ [628—629 թվականների ձմեռը]*[1]։

[1] Chronique de Denys de Tele-Mahré, Paris, 1895, p. 5:

# ԱՐԱԲԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ[1]

## (ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ)

*Արաբական արշավանքների և արաբական տիրապետության ժամանակ Հայաստանում տեղի ունեցած անցքերի մասին կարևոր տեղեկություններ են հաղորդվում ոչ միայն հայկական, այլև արաբական, ասորական և բյուզանդական աղբյուրներում. սակայն այդ տեղեկությունները խիստ հակասական են և ժամանակագրական իրենց տվյալներով՝ խառնաշփոթ ու անհաշտելի, չնայած որ Հայաստանի պատմության այս շրջանը քննության է առնված բանասիրական ու պատմագիտական բազմաթիվ աշխատություններում, սակայն ժամանակագրության վիճելի հարցերից շատերը մնում են մինչև այժմ շփոթ ու անորոշ վիճակում։*

*Ուշագրավ է նաև, որ ժամանակագրական ակնբախ այդ սխալները, մանավանդ, արաբական առաջին արշավանքների մասին Հայաստանում, կրկնվում են շարունակ ոչ միայն հայագիտական, այլև եվրոպական ու ռուսական նորագույն ուսումնասիրություններում, որ վերաբերվում են Բյուզանդական կայսրության և արաբական խալիֆայության պատմության։ Արդ՝ աչքի առաջ ունենալով ճշտված ու հաստատուն ժամանակագրության կարևորությունը, նաև ժամանակագրական այն անճշտությունները, որ հանդիպում են վերոհիշյալ աշխատություններում, առաջ ենք բերում ներքև մեր մի քանի դիտողությունները արաբական առաջին արշավանքների ժամանակագրության մասին, որ թվում են մեզ հիմնավոր ու հավանական։*

---

[1] *Տե՛ս Հ. Մանանդյան, Մանր հետազոտություններ, Երևան, 1932 թ., էջ 23—64։*

# 1. ԱՐԱԲՆԵՐԻ ԱՌԱՋԻՆ ՄՈՒՏՔԸ ՀԱՅԱՍՏԱՆ 640 ԹՎԻՆ

*Հայկական և արաբական աղբյուրների վկայություններից հայտնի է, որ արաբներն առաջին անգամ մտել են Հայաստան հարավից՝ հյուսիսային Միջագետքը նվաճելուց հետո։ Թեև այդ վկայությունները որոշ կետերում իրենց բովանդակությամբ տարբերվում են, սակայն արշավանքի ժամանակի նկատմամբ նրանք, ինչպես կտեսնենք, միանգամայն համերաշխ են։*

*Առաջին այս մեծ արշավանքի մասին հայկական աղբյուրները տալիս են հետևյալ տեղեկությունները.*

*1. «Յովհաննու Մամիկոնեանի եպիսկոպոսի, Պատմութիւն Տարօնոյ», Վենետիկ, 1832, էջ 57—58։*

*«Ապա ի սոյն ամի ելանէ, Հերակլ, և սպանանէ զԽոսրով. և յիշեաց զերդումն՝ զոր ընդ Տիրան և ընդ ինքն, և կացուցեալ մարզպան ամենայն Հայոց, և ինքն գնաց ի Կոստանդինուպօլիս։ Եւ* յետ ութ ամի *եկն Աբդռահիմ քեռորդի Մահմետի բազում աղխիւ, ութևտասն հազար առնձիոյ ընդ իւր բերեալ, խնդրէր հարկս ի Հայոց։ Իսկ Տիրան արձակեաց ժողով լինել համօրէն զօրու ի պատերազմ։ ... Իսկ Աբդռահիմ անցանէ ի Հայք և ի Բասեան, ի Վիրք և ի Ջաւախս և ի Վանանդ. և առեալ հարկս, դառնայ ի Տաճկաստան»։*

*2. «Պատմութիւն սրբոյն Ներսիսի և գիւտ նշխարաց», Սոփերք հայկականք, է, Վենետիկ, 1853, էջ 43—44։*

*«Քանզի Հերակլ արքայն Յունաց* յետ ութսուն ամի բուականին *Հայոց ելանէ ի պատերազմ ընդ Խոսրով արքային Պարսից և սպանանէ զնա. և* յետ ութ ամի այսմ լինելոյ՝ *Աբդռահիմ քեռորդին Մահմետի՝ ելանէ ութևտասն հազարաւ ի Հայս, խնդրել հարկս և կոտորել զզօրս քրիստոնէիցն որ ի Տարաւն գաւառի. և անցանէր ի Հարք և ի Բասեն, ի Վիրք և ի Ջաւախս և ի Վանանդ. և առեալ հարկս դառնայ ի Տաճկաստան»։*

*Վերոհիշյալ վկայությունները, ինչպես տեսնում ենք, գրեթե նույնն են։ Երկրորդ վկայությունը քաղված է, հավանորեն, Հովհան Մամիկոնյանի պատմությունից։ Հնարավոր է սակայն, որ իրար համապատասխանող այս վկայությունները ծագում են մի երրորդ՝ մեզ մի անհայտ աղբյուրից։*

*Երկրորդ վկայության այն տեղեկությունը, թե փոր Խոսրով Բ-ին սպանել է Հերակլը* «յետ ութսուն ամի բուականին Հայոց»,

*ճիշտ չէ։ Ինչպես հայտնի է, Խոսրով Բ-ի սպանությունը Կավատի հրամանով տեղի էր ունեցել փետր. 25-ին 628 թվին, այսինքն՝ Հայոց ՀԶ թվին (=23 հունիս 627 — 22 հունիս 628 թ.)։ Սակայն մեր հաշիվների համար այդ սխալը կարևոր չէ. կարևոր է այն, որ արաբական այս արշավանքի տարեթիվը որոշված է «յետ ութսուն» և «ութ ամի» թվականության Հայոց։*

*Հիմնվելով վերոհիշյալ վկայությունների վրա՝ պատմաբանները և բանասերները ենթադրել են արշավանքի ժամանակը 636 կամ 639 թվականներին։*

*636 թվին — Չամչյան (Պատմություն Հայոց, Բ, Վենետիկ 1785, էջ 342), Բասմաջյան (Իսկական պատմություն Հայոց, Պոլիս 1919, էջ 295) և ուրիշները, իսկ 639 թվին* — Dulaurier, [Recherches sur la chronologie arménienne, Paris, 1859, *էջ 225*]. Tournebize [Histoire politique et religieuse de l'Arménie, Paris, *1900, էջ 96*]. Arslan Kevork [Etudes historiques sur le peuple arménien, Paris, *1909, էջ 275*] *և* Morgan [Histoire du peuple arménien, Paris *1919, էջ 115*]։

*Բանասերների առաջին խումբը արշավանքի թվականը հաշվել է Խոսրով Բ-ի մահից ութը տարի հետո (628—8) 636 թվին, իսկ երկրորդ խումբը հենվել է, ըստ երևույթին,* Dulaurier-*ի հաշվի վրա (*Recherches, *էջ 225), որը երկրորդ վկայության համաձայն արշավանքի թվականը ենթադրել էր հայոց 88 թվականին, այսինքն՝ 551—88=639 թվին։*

*Ինձ թվում է, որ թե առաջին և թե երկրորդ հաշիվը չեն համապատասխանում վերոհիշյալ վկայություններին։ «Յետ ութ ամի» Խոսրով Բ-ի մահից, այսինքն՝ 628—8=636 թվից հետո՝ կստանանք ոչ թե 636, այլ 637 թիվը, իսկ* «յետ ութսուն ամի թուականին Հայոց» *և* «յետ ութ ամի այսմ լինելոյ», *այսինքն՝ 551—88=639 թվից հետո՝ արշավանքի թվականը կլինի դարձյալ ոչ թե 639, այլ 640 թվին։*

*Ի նկատի ունենալով, որ վերոհիշյալ երկրորդ վկայության մեջ ժամանակագրական տեղեկությունները ավելի լրիվ են և ծագում են, հավանորեն, սկզբնական աղբյուրից, պետք է ենթադրել, որ Հովհան Մամիկոնյանի պատմության այժմյան բնագրում ժամանակագրական նույն տեղեկությունները համառոտված են, ուստի և չեն կարող հիմք ծառայել արշավանքի թվականի որոշմանը։ Եթե այդ այդպես է, ուրեմն, առաջին այս արշավանքի ժամանակը դրրվելու է ըստ վերոհիշյալ վկայության, ոչ թե 637, այլ 640 թվականին։*

*Արաբական նույն այս արշավանքին են վերաբերում, ինչպես ճիշտ դիտել է Մկրտիչ Ղազարյանն իր* «Armenien unter der arabischen Herrschaft» *աշխատության մեջ (*Marburg, *1903, էջ 16—17), արաբական աղբյուրների հետևյալ վկայությունները.*

*1. Բելազորի, հրտր.* de Goeje, Leiben *1870, էջ 176. Հայերեն թարգմանությունն առաջ ենք բերում Բագրատ Խալաթյանցի աշխատությունից՝ «Արաբացի մատենագրեր Հայաստանի մասին», Վիեննա, 1919, էջ 74—75։*

*«Իյադ նվաճեց Ամիդ առանց ճակատամարտի՝ Ուռհայի խաղաղության հիման վերա, նույն օրինակ և Մայաֆարեկին, իսկ Կաֆարտութ ամրոցը և Մծբին՝ կռվով, նույն պայմանների հիման վերա. նույն կերպ Տուր Աբդին, Մարդին ամրոցը և Դարա, իսկ Քարդա և Բազաբդա՝ Մծբինի դաշին հիման վերա։*

*Նորա մոտ եկավ Զավազանի իշխանը և խաղաղություն կապեց նորա հետ՝ յուր հողից նորան հարկ տալու պայմանով։ Այս բոլորը կատարեցավ 19 թ. և Մուհառամի օրերից (հաշված)՝ 20 թ.։ Իյադ նվաճեց Արզն Մծբինի խաղաղության հիման վերա և՝ անցնելով կիրճից՝ հասավ Բիթլիս, եկավ Խլաթ և հաշտություն կապեց քաղաքի իշխանի հետ։ Գալով Աղի ջուրք (Ղազարյան,* Armenien unter der arabischen Herrschaft, *էջ 16՝* «Zu den saueren Quellen»=*«Թթու ջուրք»), որ Հայաստանումն է, նա չանցավ այն, այլ վերադարձավ և դրեց Բիթլիսի տիրոջ վերա նույն հարկը, որ նա Խլաթի (բնակչաց), մեծամեծաց և իշխանի վերա էր դրած։ Այստեղից Իյադ անցավ Ռաքքա, ապա Հիմս, ուր նորան Օմար կառավարիչ նշանակեց. վախճանեցավ 20 թ.»։*

*2. Տաբարի. հրտր.* de Goeje, Leiden *1879/93, 1, 2506. Հայերեն թարգմանությունը տես «Արաբացի մատենագրեր Հայաստանի մասին», էջ 80։*

*«Իյադ ուղարկեց Օսման Ի. Աբի-լ-Աասին Չորրորդ Հայք. այստեղ Սաֆֆան Ի. Մուաթթալ Սուլամին նահատակեցավ տեղի ունեցած մի ճակատամարտի մեջ։ Բնակիչք խաղաղություն հաստատեցին Օսման Ի. Աբի-լ-Աասի հետ՝ յուրաքանչյուր ընտանիքից մի դենար վճարելու պայմանով»։*

*3. Տաբարիի հիշյալ վկայությունը մեջ է բերված նաև Իբն-ալ-Աթիրի մոտ, հմմտ. «Արաբացի մատենագրեր Հայաստանի մասին», էջ 127։*

*Արաբական աղբյուրների տեղեկությունները, ինչպես տեսնում*

ենք, տարբեր են մի քանի կետերում թե իրարից և թե վերոհիշյալ հայկական վկայություններից։ Այդ շեղումները և տարաձայնությունները բացատրվում են մասամբ նրանով, որ յոթերորդ դարի անցքերի պատմությունը հիմնված է արաբական աղբյուրներում, գլխավորապես, բանավոր հիշողությունների և ավանդությունների վրա։ Բացի այդ՝ պետք է նաև ի նկատի ունենալ, որ հայկական վկայություններում հիշատակված են արաբական արշավանքները Տարոնում և Հայաստանի հյուսիսային շրջաններում, իսկ արաբական աղբյուրների մեջ՝ հյուսիսային Միջագետքում և Չորրորդ Հայքում։ Հնարավոր է նույնպես, որ արաբական զորքերը կարող էին ներս խուժած լինել զանազան ուղղությամբ տարբեր զորավարների առաջնորդությամբ։

Տաբարին և Իբն-ալ-Աթիրն արշավանքի ժամանակը դնում են Հեջիրի 19-ին, այսինքն՝ 640 թվին (Հեջիրի 19 թիվը=640 թվին, մինչև դեկտեմբերի 20-ը), իսկ Բելաձորին՝ Հեջիրի 19-ին և 20 թվի «Մուհառռամի» օրերին, այսինքն՝ 640 թվին մինչև 641 թվի հունվար ամսի կեսերը։ 20 թվին Մուհառռամ ամսի սկիզբն ընկնում է դեկտեմբերի 21-ին 640 թվի։ Ինչպես տեսանք, արշավանքի նույն այս 640 թվականը մատնանիշ է արված նաև «Պատմութիւն սբ. Ներսիսի» գրվածքում։ Ուրեմն՝ վերոհիշյալ արշավանքի ժամանակի նկատմամբ հայկական և արաբական աղբյուրների վկայությունները միմյանց հետ համերաշխ են և համաձայն։

Որ արաբների մուտքը Հայաստան չէր կարող լինել 636 կամ 637 թ.[1], այդ միանգամայն որոշ է ու անվիճելի։ Արաբները չէին կարող Հայաստան մտնել Միջագետքը և նրա գլխավոր քաղաքները գրավելուց առաջ։ Իսկ Միջագետքի նվաճումը, ինչպես հայտնի է արաբական, ասորական և բյուզանդական աղբյուրների վկայություններից, տեղի էր ունեցել 639—640 թ.։

Ասորական աղբյուրներից Միքայել Ասորին, օրինակ՝ պարզ վկայում է, որ արաբներն առաջին անգամ անցել են Եփրատ գետը և շարժվել դեպի հյուսիս «951 թվին հունաց, 29 Հերակլի, 18 արաբների, 6 Օմարի» այսինքն՝ 639—640 թ. (տես Chronique de Michel le Syrien, ed. par Chabot, T. II, էջ 426)։

Ինձ թվում է՝ հիմնվելով բոլոր այս ուշագրավ դիտողությունների վրա՝ կարող ենք վստահորեն եզրակացնել, որ արաբներն առաջին անգամ մտել են Հայաստան հյուսիսային Միջագետքի կող-

[1] Նույն այս թվականն ունի նաև Ասողիկը [Պետերբ. 1885], էջ 98՝ «Յաւուրս յայսոսիկ և յիշխանութեանն Թէոդորոսի Ռշտունւոյ յՁԹ թուականին եղև առաջին ելք ի Հայս Տաճկաց, հրամանաւ Օմարայ»։

*մից ոչ թե 636, 637 կամ 639 թվականներին, ինչպես այդ մասնացույց է արվում հայ և օտար ուսումնասիրություններում, այլ 640 թվին։*

## 2. ԴՎԻՆԻ ԱՌՈՒՄԸ՝ 640 Թ., ՀՈԿՏԵՄԲ. 6-ԻՆ, ՈՒՐԲԱԹ

*Որ արաբներն առաջին անգամ մտել են Հայաստան Միջագետքի կողմից 640 թվին, այդ դժվար չէ եզրակացնել նաև Սեբեոսի վկայությունից, որ ժամանակակից է եղել յոթերորդ դարի անցքերին։*

*Ներքև մենք կտեսնենք, որ Դվինի առումը, համաձայն Սեբեոսի վկայության, տեղի էր ունեցել 640 թվի հոկտեմբերի 6-ին։ Արաբական զորքերը եկել էին Դվին «յԱսորեստան կողմանէ»՝ Տարոնը, Բզնունիքը և Աղիովիտը նվաճելուց հետո։ Պարզ է, ուրեմն, որ Սեբեոսի վկայությունը ևս վերաբերում է արաբական առաջին արշավանքին, որ հիշված է նաև Հովհան Մամիկոնյանի և «Պատմութիւն սբ. Ներսիսի» վերոհիշյալ երկերում։*

*Կարևոր այս հետևությունը, որ անտարակուսելի է, աչքաթող է արված բանասիրական ու պատմական հայ և օտար աշխատություններում. ուստի անհրաժեշտ է նորից կանգ առնել այս խնդրի վրա և ուշադիր կերպով քննել հայկական, ասորական և արաբական աղբյուրների տեղեկությունները, որ հիմք են ծառայել Դվինի առման թվականի որոշման։*

*Վկայությունները Դվինի առման թվականի մասին բաժանվում են երեք խմբի, որ մեջ ենք բերում տեղ-տեղ հապավումներով։*

### Առաջին խումբ (ճնագույն)

*1. «Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն», Թիֆլիս, 1912, էջ 175, գլ. Լ՝*

> *«Եւ եկ գաւր ապականիչ յԱսորեստան կողմանէ ընդ ճանապարհս Ձորոյ յաշխարհն Տարօնոյ. առին զնա և զԲզնունիս և զԱղիովիտ։ Եւ ճանապարհ կալեալ ի Բերկրոյ ձորն ընդ Որդսպոյ և ընդ Գոգովիտ՝ թափեցան յԱյրարատ։ Եւ ոչ ոք կարաց ի փաւրացն Հայոց արկանել գոյժ ի Դըւին աւան. բայց արք երեք յիշխանացն, որք երթային ժողովել զզաւրն ճապաղական՝ Թէոդորոս Վահևունի, և Խաչեան Առաւեղեան, և Շապուհ Ամատունի։ Որք գնացեալ փախստական ի Դւին, և հասեալ ի կամուրջն Մեծամաւրի, ի բաց աւերեցին, և ինքե-*

անք անցեալք գոյժ արկանել ի յաւանին։ Եւ ի բերդն ժողովեցին զամենայն մարդիկ աշխարհին՝ որ եկեալ էին ի կուտս այգեստանին։

Բայց Թէոդորոսն գնացեալ ի Նախճաւան քաղաք։ Եւ հասեալ թշնամին Բուշայն ի կամուրջն Մեծամաւրի ոչ կարաց անցանել. բայց ունէին առաջնորդ իւրեանց զՎարդիկ իշխան Մոկաց, որ կոչէր Ակնիկ։ Ապա անցեալ ընդ կամուրջն Մեծամաւրի, հարին ասպատակաւ զամենայն երկիրն, և ժողովեալ զաւար և զգերութիւն բազում յոյժ, և եկեալ բանակեցան ի յեզր մայրւոյն Խոսրովակերտի։

Եւ եղև յաւուրն հինգերորդի դիմեցին ի վերայ քաղաքին. մատնեցաւ քաղաքն ի ձեռն նոցա. քանզի արկին մուխ շուրջանակի, մերժեցին ծխովն և նետաձգութեամբն զպահապանս պարսպին և կանգնեալ սանդուխս՝ ելին ի պարիսպն և անկեալ ի ներքս բացին զդուռն քաղաքին։ Եւ դիմեալ ի ներքս զաւրք թշնամեացն սատակեցին սրով զբազմութիւն քաղաքին՝ ելին և բանակեցան ի նմին բանակատեղն. որ աւր Ի էր տրէ ամսոյն՝ յատուր ուրբաթի: Եւ դադարեալ աւուրս ինչ ելին և գնացին ընդ նոյն ճանապարհ՝ ընդ որ եկեալն էին։ Եւ խաղացուցին զբազմութիւն գերւոյն՝ ԼԵ հազար ոգի։ Իսկ իշխանն Հայոց Ըշտունեաց տէրն դարանակալ եղեալ ի Գոգովիտ գաւառի՝ դիմէ ի վերայ նոցա սակաւուք։ Եւ ոչ կարաց զդէմ ունել նոցա. փախստական լինի առաջի նոցա. և նոքա զհետ մտեալ նոցա՝ սատակէին զբազումս ի նոցանէն. և ինքեանք չոքան անցին յԱսորեստան։ Եւ եղեւ այս յամս Եզրի կաթուղիկոսի: Իսկ ի ձեռն այնր պատերազմի ի կայսերէ հրաման հասեալ զաւրավարութեանն Թէոդորոսի Ըշտունեաց տեառն՝ հանդերձ պատրկութեան պատուով։

Այս ամենայն լինի ի ձեռն կաթուղիկոսին Ներսիսի՝ որ յաջորդեցաւ ի նմին ամի յաթոռ կաթուղիկոսութեան՝ փոխանակ Եզրի կաթուղիկոսի»։

2. «Անանուն ժամանակագրութիւն» Վենետիկ, 1904, էջ 77՝

«Կոստանդին՝ որդի Կոստանդիանի, թոռն Հերակղի, ամս քսաներնն։ Ի սորա երկրորդ ամին առաւ Դուին ի Տաճկաց «ի Պ. թուականին»), և եղև համար գերելոցն ԼԵՌ»։

3. Chronique de Denys de Tel e-Mahré, pub. et trad. par Chabot, Paris, 1895, էջ 6՝

*«952 թ. (640—641), արաբները պաշարեցին Դարան և հարձակվեցին այդ քաղաքի վրա...* Նույն այս թվին *արաբները պաշարեցին Դվինը (*Adabin*), ուր սպանվածների թիվը խիստ մեծ էր՝ մինչև 12 000 հայ»։*

*Համեմատ «Պատմութիւն հայոց արարեալ Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ», Թիֆլիս, 1910, էջ 58՝ «ի կոտորելն Իսմայէլի զքաղաքն Դուին երկոտասան հազար»*[1]*։*

Երկրորդ խումբ (ըստ արաբական ավանդության)

*4. Բելաձորի, տե՛ս «Արաբացի մատենագրեր Հայաստանի մասին», էջ 40՝*

*«Ինձ պատմել է Մահմեդ Ի. Սադ, որ լսած էր ալ-Վակիդից, իսկ սա՝ Աբդուլ Համիդ Ի. Ջաֆարից և սա՝ յուր հորից, թե Հաբիբ Ի. Մասլամա պաշարեց Դվին և մնաց այստեղ, մինչև պատահեցավ նորան Մավրիան հույնը. նա հարձակվեցավ նորա վերա գիշերը, սպանեց նորան և ավարի առավ նորա բանակը։ Դորանից հետո Սալման շտապեց Հաբիբի մոտ և պատահեցավ նորան Կարինում, ինչպես ճիշտ տեղեկություն ունեն պատմողները»։*

*Տես նաև էջ 43՝*

*«Այնտեղից (Արճեշից և Բաջունայիսից) Հաբիբ եկավ Արտաշատ, որ է ալ-Քիրմիզ, անցավ Ակրատ գետը և բանակեցավ Դվինի դաշտում, ուղարկելով հեծելազորը քաղաքի վերա. ինքն էս կամաց-կամաց առաջ գնաց, մինչև որ քաղաքի դռների առջև կանգ առավ։ Բնակիչք կպաշտպանվեին, նետահարելով նորա զորքը։ Հաբիբ դնել տվեց մանջալիք և սկըսեց քարկոծել նոցա, մինչև որ նոքա խնդրեցին խնայել նոցա և պարգևել խաղաղություն։ Հաբիբ համաձայնեցավ»։*

*Բելաձորի պատմելով՝ Հաբիբի և Սալմանի այս արշավանքների ժամանակ, որ տեղի էին ունեցել Օթման խալիֆի (644—656) հրամանով, արաբները նվաճել են Հայաստանը, Վրաստանը և Ատրպատականը (տես «Արաբացի մատենագրեր Հայաստանի մա-*

---

[1] *Տե՛ս նաև «Սամուէլի քահանայի Անեցւոյ, Հավաքմունք ի գրոց պատմագրաց», Վաղարշապատ 1893, էջ 80՝*

*«Արդ՝ յաւուրս Կոստանդի որդւոյ Հերակլեայ՝ առաւ Դուին ի Տաճկաց, աւէ պատմագիրն, և սպանին յաւուր միոյ յայտնութեան, ի ս. վկայարանի ս. Սարգսի Բժ-ան Ռ և արեամբ կոտորելոցն ծածկեցաւ սեղանն սուրբ և աւազանն. և զայլսն գերեցին՝ աւելի քան ԺԸՌ»։*

*սին», էջ 36—53)։ Հաբիբի արշավանքը Միքայել Ասորին* (Chronique, *II*, f. *3, էջ 440—441) դնում է Հեջիրի 25 թվին (28 հոկտ. 645—17 հոկտ. 646)։ Տաբարին (տես «Արաբացի մատենագրեր Հայաստանի մասին», էջ 89) նույն արշավանքը հիշում է Հեջիրի 24 թվին (644/645 թ.), սակայն վկայում է նաև՝ որ ըստ Վակիդիի ավանդության Հաբիբ Ի. Մասլամա Ֆիհրին նվաճել է Հայաստանը Հեջիրի 31 թվին (24 օգոստ. 651—12 օգոստ. 652 թ.)։ Այս վերջին թվականն ունի նաև Յակուբին հետևյալ հատվածում՝*

*5. Յակուբի, տես Բ. Խալաթյանց, «Արաբացի մատենագրեր», էջ 104՝*

> *«31 թ. Օսման ուղարկեց Հաբիբ Ի. Մասլամա Ֆիհրիին Հայաստան և ապա Սալման Ի. Ռաբիա Բահլիին՝ նորան օգնության»։*

*Իբն-ալ-Աթիրը ևս վկայում է, որ «31 թ. ըստ ոմանց Հայաստան նվաճեց Հաբիբ Ի. Մասլամա» (տես «Արաբացի մատենագրեր», էջ 129)։*

*Ինչպես տեսնում ենք, արաբական աղբյուրները Հաբիբ Ի. Մասլամայի արշավանքի նկատմամբ տալիս են տարբեր թվականներ։*

## Երրորդ խումբ (խառն և շփոթ)

*6. «Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի հայոց», Ս. Պետերբ. 1887, էջ 8—9, գլ. Բ. և Գ՝*

> «Ապա ի քսան եւ վեցերորդ ամի նոցին (Աբու-Բաքրայ, Ամրայ եւ Օթմանայ) *իշխանութեանն դարձեալ յարձակէին ելանել ի վերայ աշխարհիս Հայոց զօրու ծանու*... Յերկրորդ ամի Կոստանդնու կայսեր Հոռոմոց, *որ էր թոռն Հերակղի՝ ազդ եղև առ իշխանն Թէոդորոս, եթէ հէն զարթուցեալ գայ ի վերայ աշխարհիս։ Իսկ նորա առեալ զզօրս իւր՝ կամէր ունել զկիրճս ճանապարհին Ձորայոյ, այլ ոչ կարաց ժամանել յաղագս նոցա. քանզի ըստ օդաթևն արագութեան յարձակեալք իբրև օձք թևաւորք յառաջեցին թշնամիքն, և զկնի իւրեանց թողեալ զզօրսն Հայոց՝ դէմ եդեալ ընթացան ի մայրաքաղաքն Դուին։ Եւ վասն զի թափուր գտին զքաղաքն յարանց պատերազմողաց, զի ամենեքեան զհետ Թէոդորոսի իշխանին գնացեալ էին, բայց միայն զկանայս և զմանկտիս և զայլ խառնիճաղանճս, որք ոչ էին արք պատերազմի՝ հասին ի վերայ քաղաքին և վաղվաղակի առին զամրոցն, և զգտեալ արսն ի*

*նմա կոտորեցին, և զկանայս և զմանկտիս վարեցին ի գերու-
թիւն՝ ոգիս ԼՇՌ»։*

7. *«Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան, Պատմութիւն տիեզե-
րական», Ս. Պետերբ. 1885, էջ 98, 2, գլ. Բ՝*

*«Ի ՂԵ[1] ամի թուականութեան դարձեալ սաստիկ զօրու
եկեալ Տաճկաց՝ առին զԴուին քաղաք, և եղև համար գերու-
թեան ԼՇՌ և ապա տիրեցին Հայոց, Վրաց և Աղուանից»։*
*Նոյնը, էջ 120, 2, գլ. Դ՝*

*«Ապա ի ԻՉ ամի նոցին (Աբուբաքրայ, Ամրայ և Օթմա-
նայ) իշխանութեան և յերկրորդն[2] Կոստանդնի թոռին Հերակ-
լեսի՝ էլ զօրն Իսմայելի յԱսորեստանէ ընդ ճանապարհ
Ձորոյ յերկիրն Տարօնոյ. ընդ Բզնունիս, ընդ Բերկրոյ ձորն
յԱյրարատ թափեցան։ Եւ առին զԴուին քաղաք և զգտեալ
արսն ի նմա կոտորեցին, և զկանայս և զմանկունս ի գերու-
թիւն վարեցին ոգիս ԼՇՌ, որ օր* Ի տրէի ամսոյ, *ի կութս
այգեստանի։ Իսկ իշխանն Հայոց Թէոդորոս Ռշտունեաց տէր,
որ շինեաց զԱղթամարայ կղզին՝ պատերազմեցաւ ընդ նոսա
ի Կոգովիտ և ոչ կարաց յաղթել։* Եւ եղեւ այս յամս Եզրի կա-
թողիկոսի»: *Նոյնը, էջ 142, 2, գլ. Զ՝*

*«Կոստանդին որդի Կոստանդնու, թոռն Հերակլի, ամս
ԺԹ.* ի սորա Երկրորդ ամին *առաւ Դուին ի Տաճկաց»։*

8. *«Մովսեսի Կաղանկատուացւոյ, Պատմութիւն Աղուանից
աշխարհի», Թիֆլիս 1913, էջ 363, 3, գլ. ԺԵ՝*

*«Իսկ Կոստաս սորին (Կոստանդնի) որդի՝ ամս քսան և
ինն ի սորա հինգ ամին յԱրաբիա կոփւն եղև, և* ի վեցին Տա-
ճիկք Եկին ի Հայս Եւ առին զԴուին, *և որք գերեցանն երեսուն
և հինգ հազար թուեցան»։*

*Երրորդ խմբի հեղինակներից Ղևոնդը՝ Դվինի առման թվականը
որոշելիս՝ օգտվել է թե առաջին խմբի «Անանուն ժամանակագրու-
թիւն»-ից և թե երկրորդ խմբի արաբական կամ ասորական մեզ
անհայտ ինչ որ աղբյուրից։ Ասողիկը քաղել է ժամանակագրական
իր տեղեկությունները, գլխավորապես, Ղևոնդից։ Իսկ Մովսես Կա-
ղանկատվացու հաշիվը համապատասխանում է երկրորդ խմբի
ժամանակագրության։ Ուրեմն, աղբյուրների այս երրորդ խումբը*

---

[1] *Եզյանցի ձեռագիրը (Ը) ունի «ի Ղ ամի» համապատասխան «Անանուն ժամանակագրութեան» վերոհիշյալ վկայության. տե՛ս «Պատմութիւն տիեզերական», էջ 98, ծանոթ. 9։*

[2] *Բնագրում «յերրորդն», որ, հավանորեն, սխալ է։ Նույն հեղինակը (էջ 142) վկայում է, որ «ի սորա (Կոստանդնի) երկրորդ ամին առաւ Դուին ի Տաճկաց»։*

*Դվինի առման թվականի մասին չի տալիս որևէ նոր տեղեկություն, այլ մեջ է բերում նախորդ խմբերի ժամանակագրական վկայությունները, աչքաթող անելով, որ այդ վկայություններն իրար հետ անհաշտելի են և հակասական։*

*Վերոհիշյալ երեք խումբ վկայությունների մեջ Դվինի առումը դրվում է, ինչպես տեսնում ենք, հետևյալ թվականներին՝*

*1. Եզրի կաթողիկոսության վերջին տարում=640 թ.՝ Սեբեոս.*

*2. Հունաց կամ ասորոց 952 թ.=1 հոկտ. 640—641 թ. Դիոնիսիոս Տելմահարցի.*

*3. Հերակլ կայսեր թոռան Կոստանդնի երկրորդ տարում=642/643 թ. «Անանուն ժամանակագրություն», Ղևոնդ և Ասողիկ.*

*4. Հեջիրի 24 թվին=644/645 թ.՝ Տաբարի.*

*5. Հեջիրի 25 թվին=645/646 թ.՝ Բելաձորի (*), Միքայել Ասորի և Եղիաս Մծբնեցի, և կամ Աբու Բաքրի, Ամրի ու Օթմանի իշխանության 26 տարում=645/646 թ.՝ Ղևոնդ, Ասողիկ։ Աբու-Բաքրի, Ամրի և Օթմանի իշխանության սկիզբը Ղևոնդը ենթադրում է Հերակլ կայսեր 11-րդ տարում (620/621 թ.) ուրեմն՝ այս խալիֆների իշխանության 26-րդ տարին ընկնում է 645—646 թ.։*

*6. Հայոց 95 թվին=646 հունիս 18,647 հունիս 17՝ Ասողիկ, և կամ Հերակլ կայսեր թոռան Կոստանդնի վեցերորդ տարում =646/647 թ.՝ Մովսես Կաղանկատվացի։*

*Այսպիսով՝ Դվինի առման թվականը վերոհիշյալ վկայությունների համաձայն տատանվում է՝ 640, 640/641, 642/643, 644/645, 645/646 և 646/647 թվերին։*

*Այս խառն ու հակասական տեղեկությունները հիմք են ծառայել, բնականաբար, անհաշտելի տարաձայնությունների նաև բանասիրական և պատմական թե հայ և թե օտար աշխատություններում։*

*Դվինի առումը դնում են այս աշխատություններում հետևյալ թվականներին (հիշում ենք միայն այն երկերը, որ ունեցել ենք ձեռքի տակ)՝*

*1. 640 թ. հունվարի 6-ին՝ Չամչյան, Պատմութ., Բ, էջ 343*[1].

[1] *Մ. Օրմանյանը («Ազգապատում», Կոստանդնուպոլիս 1912—1913, էջ 704—705), հիմնվելով Սեբեոսի և Սամուել Անեցու վկայությունների վրա, ենթադրում է, որ «արաբական բանակը Դուինի առջև կհասնի և խօսրովակերտի անտառին մօտ բանակ կզարնէ տրէ ամսոյ 20-ին, 640 հոկտեմբեր 6-ին շարժական տոմարով, որ ճիշտ ալ կըպատասխանէ պատմութեան յիշած* յաւուր ուրբաթի և ի կուրս այգեստանին *պարագաներուն։ Երեք ամիս կըտևէ Դուինի պաշարումը, և վերջապես 641 յունուար 6-ին* յաւուր սրբոյ Յայտնութեան *(Սամ. 80), Արաբացիք քաղաքը կըգրաւեն, և անխնայ կըկոտորեն 12.000 հոգի, 35.000 հոգի ալ գերի կըտանին վաճառելու, և եկեղեցի ու ապարանք կապուտ կողոպուտ ընելով կըմեկ-*

2. 640 թ. հոկտեմբերի 6-ին՝ Ալիշան, Այրարատ, էջ 407 և 495, նաև Հ. Համբարյան, Հուշարձան, 1911, էջ 244.

3. 642 թ. հունվարի 6-ին՝ Tournebize Histoire էջ 96 և Morgan, Histoire du peuple arménien էջ 116.

4. 622 թ. հոկտեմբերի 6-ին՝ Dulaurier, Recherches, էջ 227—231, Thopdschian, Zeitschrift für armenische Philologie, II, erstes Heft էջ 64 և А. Мюллер, История ислама, перевод Медникова, I, էջ 290.

5. 645/646 թ.՝ Laurent, L'Arménie entre Byzance et l'Islam, Paris, 1919, էջ 90. Նույնը՝ 646 թ՝ էջ 180, նույնը—642 թ., էջ 371.

6. 647 թ. հոկտ. 6-ին՝ Кулаковский, История Визант., III, 1915, էջ 202.

Ժամանակագրական այս հակասությունները վերացնելու համար անհրաժեշտ էր, անշուշտ, պարզել աղբյուրների համեմատական արժեքը և որոշել, թե որը վերոհիշյալ վկայություններից կարող է համարվել վավերական ու ընդունելի։ Կարևոր այդ խնդիրը քննության է առնված երկրորդ խմբի աղբյուրների նկատմամբ Մկր. Ղազարյանի «Armenien unter der arabischen herrschaft» ուսումնասիրության մեջ։ Սակայն Ղազարյանի հիմնավոր ու համոզիչ դիտողություններն անուշադիր են թողնված գիտական հետագա աշխատություններում։

Ինչպես շատ ճիշտ դիտել է Ղազարյանը, Բելադորին որ առաջին անգամ գրի է առել Հայաստանի նվաճման վերոհիշյալ պատմությունը, ապրել է իններորդ դարում (+892) և նրա տեղեկությունները հիմնված են բանավոր ավանդությունների վրա, մինչդեռ Սեբեոսն ականատես է եղել յոթերորդ դարի անցքերին։ Երկրորդ՝ այն անցքերը, որ ըստ արաբական աղբյուրների տեղի են ունեցել Հաբիբի արշավանքի ժամանակ Հեջիրի 24/25 թվին, ինչպես՝ Կարին քաղաքի առումը, Դվինի անձնատուր լինելն առանց դիմադրության, Հաբիբի և Մավրիանոս զորավարի կռիվը և Հայաստանի, Վրաստանի ու Աղվանքի նվաճումը՝ հիշում է նաև Սեբեոսը, բայց ոչ 644—647 թվականներին, այլ յոթերորդ դարի հիսունական թվերին։ Մկր. Ղազարյանի այս դիտողություններին կարելի է ավելացնել և այն, որ հենց արաբական աղբյուրների

---

նին»։ Նոր այս ենթադրությամբ Օրմանյանը փորձում է հաշտեցնել Սեբեոսի և Սամուել Անեցու հակասական վկայությունները։ Սակայն բռնազբոսիկ այս կռահումը, անշուշտ սխալ է, որովհետև Սեբեոսի մոտ պարզ ասված է, որ արաբացիները «յաւուրն հինգերորդի դիմեցին ի վերայ քաղաքին» և «մատնեցաւ քաղաքն ի ձեռն նոցա»։

մեջ՝ Տաբարիի, Յաքուբիի և Իբն-ալ-Աթիրի երկերում՝ առաջ է բերված, ինչպես վերև տեսանք, նաև մի երկրորդ ավանդություն ըստ Վակիդիի, որը Հաբիբի և Սալմանի վերոհիշյալ արշավանքները դնում է յոթերորդ դարի հիսունական թվերին, այն է՝ Հեջիրի 31 թվականին (24 օգոստ. 651—12 օգոստ. 652 թ.)։ Արաբական այս երկրորդ ավանդությունը համապատասխանում է մոտավորապես ոչ միայն Սեբեոսի ժամանակագրությանը, այլև բյուզանդական պատմիչ Թեոֆանի վկայությանը, որն իր «Ժամանակագրության» մեջ Հաբիբի արշավանքը Հայաստան և նրա կռիվը Մավրիանոս զորավարի դեմ դնում է նույնպես Կոստանդին կայսեր 12-րդ տարում, այսինքն՝ 652/653 թ. (տես Chronographia, ed. de Boor, Lips 1883, էջ 345)։

Կարևոր այս դիտողությունները, որ աչքաթող են արված, իրավունք են տալիս եզրակացնելու, որ Հաբիբի արշավանքի արաբական այն թվականները, որոնք մեջ են բերված Բելադորիի, Տաբարիի, Միքայել Ասորու, Եղիաս Մծբնեցու, Ղևոնդի, Ասողիկի և Մովսես Կաղանկատվացու երկերում՝ ավելի քան կասկածելի են և չեն կարող հավանական համարվել ու ընդունելի։ Արաբական այդ վկայությունները վերաբերվում են ոչ թե Դվինի առաջին առմանը, որ հիշատակված է առաջին խմբի հնագույն աղբյուրներում, այլ Դվինի առմանը և Հայաստանի, Վրաստանի ու Աղվանքի նվաճմանը յոթերորդ դարի հիսունական թվականների սկզբներին։ Այսպիսով՝ ինքն ըստ ինքյան հասկանալի են դառնում և այն անհաշտելի տարաձայնությունները, որ կան Սեբեոսի և Բելադորու վկայություններում Դվինի առման մասին։ Համաձայն Սեբեոսի՝ «դիմեալ ի ներքս զաւրք թշնամեացն՝ սատակեցին սրով զբազմութիւն քաղաքին՝ ելին և բանակեցան ի նմին բանակետեղն... և խաղաղացուցին զբազմութիւն գերւոյն՝ ԼԵ հազար», իսկ ըստ Բելադորու՝ «(բնակիչք) խնդրեցին խնայել նոցա և պարգևել խաղաղութիւն. Հաբիբ համաձայնեցաւ»։

Ինչպես տեսնում ենք, ավելի քան պարզ է, որ Բելադորու վկայությունը չի վերաբերվում Դվինի առաջին առմանը, որ մանրամասն նկարագրված է Սեբեոսի պատմության մեջ։ Միանգամայն պարզ է նմանապես, որ Դվինի առաջին առման թվականը որոշելիս՝ կարող ենք անտես առնել թե երկրորդ խմբի արաբական և ասորական աղբյուրները և թե երրորդ խմբի հայկական աղբյուրները։

Իբրև միակ վստահելի աղբյուր մնում են, հետևապես, առա—

չին խմբի վերոհիշյալ վկայությունները, որոնք Դվինի առաջին առման մասին տալիս են հետևյալ թվականները.

1. Եզրի կաթողիկոսության վերջին տարին՝ Սեբեոս.

2. Հունաց կամ ասորոց 952 թ. (=640/641)՝ Դիոնիսիոս Տել-մահարցի.

3. Կոստաս-Կոստանդինի երկրորդ տարին (=642/643 թ.) և կամ «ի Ղ թուականին» (=641/642 թ.)՝ «Անանուն ժամանակա-գրութիւն» (նաև Ղևոնդ և Ասողիկ)։

Հայկական և ասորական այս վկայությունների համաձայն՝ Դվինի առաջին առումը, ինչպես տեսնում ենք, ընկնում է 640—643 թվականների շրջանում, և ուրեմն՝ Դվինի առման տարեթիվը մնում է գարձյալ անորոշ։

Չնայած սակայն նաև այս վերջին աղբյուրների տարաձայնու-թյուններին՝ մի խիստ կարևոր հանգամանք, որ մատնանիշ են արել Ալիշանը (Այրարատ, էջ 407 և 495) և Համբարյանը (հուշարձան, էջ 244), կոչված է ծառայում ճշտիվ որոշելու Դվինի առման թվա-կանը ռոմարական պարզ ու անվիճելի հաշիվների օգնությամբ։

Սեբեոսի վերև մեջ բերված վկայության մեջ մատնանշված է, ինչպես տեսանք, Դվինի առման ամսաթիվը և օրը՝ «որ աւր Ի էր տրէ ամսոյն, յաւուր ուրբաթի»:

Արդ, հայկական տոմարը լինելով շարժական՝ 640—643 քա-ռամյակին նավասարդի 1-ը գալիս է, ինչպես հայտնի է Դյուլորյեյի ժամանակագրական հաշիվներից, հունիսի 19-ին (տես Dulaurier Recherches էջ 385). սրա համեմատ էլ նույն տարիներում տրե ամսի քսանը (նավասարդի 1-ից մինչև տրե ամսի 20-ը լինում է 110 օր) համապատասխանում է հոկտեմբերի 6-ին։ Սակայն 640—643 թվերին այս վերջին ամսաթիվն ընկնում է զանազան օրեր՝

1. 640 թվին—ուրբաթ (Զատիկը՝ ապրիլի 16-ին),

2. 641 թվին—շաբաթ (Զատիկը՝ ապրիլի 8-ին),

3. 642 թվին—կիրակի (Զատիկը՝ մարտի 24-ին),

4. 643 թվին—երկուշաբթի (Զատիկը՝ ապրիլի 13-ին)։

Ուրեմն՝ հիմնվելով տոմարական պարզ ու հասկանալի այս հաշվի վրա՝ կարելի է ապահովապես եզրակացնել, որ Դվինի առու-մը տեղի է ունեցել ոչ թե 641, 642 կամ 643 թվականներին, այլ 640 թվի հոկտեմբերի 6-ին, ուրբաթ։

Այս ուղիղ հաշիվը թեև արել են, ինչպես վերև տեսանք, Ալի-շանը և Համբարյանը, սակայն մենք հարկ համարեցինք հանգա-մանորեն կանգ առնել նույն խնդրի վրա, որովհետև թռուցիկ ու համառոտ կերպով առաջադրված նրանց լուսաբանություններն ան-

տես են առնվել գիտական հետագա աշխատություններում։ Մանրախույզ այս քննությամբ ստացվում են արաբական այս արշավանքի և Դվինի առաջին առման մասին հետևյալ ուշագրավ հետեվությունները.

1. Ինչպես Հովհան Մամիկոնյանի, «Պատմություն սբ. Ներսիսի» գրվածքի, նույնպես և Սեբեոսի վերոհիշյալ վկայությունները վերաբերվում են 640 թվի արաբական առաջին մեծ արշավանքին, որը տեղի էր ունեցել Օմարի խալիֆայության ժամանակ։

2. Արաբներն այս արշավանքի ժամանակ մտել են Հայաստան Միջագետքի կողմից, նվաճել Չորրորդ Հայքը, Տարոնը, Բզնունիքը, Աղիովիտը և արշավել, հավանորեն, հյուսիս-արևմտյան ուղղությամբ Բասեն, Վանանդ, Ջավախք և Վիրք, իսկ հյուսիս-արևելյան ուղղությամբ՝ անցել են Բերկրիի ձորով Կոգովիտ ու հասել մինչև Դվին, որի առաջին առումը տեղի է ունեցել 640 թվի հոկտեմբերի 6-ին, ուրբաթ։

3. Դվինի առման տարին, ամսաթիվը և օրը ճշտիվ որոշվում են ժամանակագրական այն կարևոր տվյալների օգնությամբ, որ առաջ են բերված Սեբեոսի և Դիոնիսիոս Տելմահարցու վկայություններում.

4. Վերոհիշյալ երկրորդ խմբի աղբյուրների վկայությունները վերաբերվում են ոչ թե Դվինի առաջին առմանը, այլ Հաբիբի արշավանքին, Դվինի գրավմանը և Հայաստանի, Վրաստանի ու Աղվանքի նվաճմանը յոթերորդ դարի հիսունական թվականների սկզբներին.

5. Հայաստանում պատահած անցքերը Հաբիբի այս արշավանքի ժամանակ հիշատակված են հենց 652/653 թվերին Սեբեոսի մոտ, որը ժամանակակից էր այդ անցքերին.

6. Աղբյուրների երրորդ խմբի ժամանակագրական տեղեկությունները կարելի է անտես առնել, որովհետև այդ տեղեկությունները քաղված են առաջին և երկրորդ խմբի աղբյուրներից։

## 3. ԱՐԱԲԱԿԱՆ ԵՐԿՐՈՐԴ ԱՐՇԱՎԱՆՔՆ ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ ԿՈՂՄԻՑ՝ 642/643 ԹՎԻՆ

Համաձայն Սեբեոսի վկայության՝ արաբական առաջին մեծ արշավանքից հետո՝ Ներսես կաթողիկոսի միջնորդությամբ և Կոստաս-Կոստանդին կայսեր հրամանով Հայաստանում զորավար է կարգվել և ստացել պատրիկության պատիվ Թեոդորոս Ռշտունին։ Սեբեոսի վկայությունից երևում է, որ այդ տեղի ունեցած պիտի լի-

ներ Դվինի առաջին առումից հետո, հավանորեն, 641 թվին։ Արաբական երկրորդ արշավանքի ժամանակ Հայաստանի սահմանների պաշտպանությունը հանձնարարված է եղել Թեոդորոս Ռշտունուն և Բյուզանդական զորավար Պռոկոպին։

Արաբական երկրորդ արշավանքի մասին ունի ընդարձակ մի վկայություն միմիայն Ղևոնդը։

1. «Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի հայոց», Ս. Պետերբ. 1887, էջ 7, գլ. Բ՝

> «Եւ մեծ մասն զօրուն հասեալ ապատակէին յաշխարհն Հայոց ընդ կողմն Պարսից. և առնուին ի գերութիւն զաւանս Մարաց և զգաւառն Գողթն և զդաստակերտն Նախջաւանու. և զբազումս յարանց ընդ սուր անցուցանէին, և զայլս գերի վարեալ կանամբք և մանկտեաւ՝ անցուցանէին, ընդ գետն Երասխ ընդ հունն Ջուղայոյ։ Եւ ընդ երկուս բաժանեալ զօրքն՝ ոմանք զգերեալսն դարձուցանէին յաշխարհն իւրեանց։ Եւ գունդ մի հասեալ ապատակէին ընդ գաւառն Արտազ ի վերայ զօրավարին Յունաց, որումն անուն էր Պռոկոպ, որ էր բանակեալ ի գաւառին Կոգովտի և սահմանս Բագուձորոյ և Մարդուցայից. որում իրազեկ եղեալ իշխանն Թէոդորոս, որ էր յազգէն Ռշտունեաց՝ ազդէր զօրավարին Պռոկոպայ, «Եթէ զօր հինին Իսմայելի զարթուցեալ գայ ի վերայ մեր»։
>
> «Իսկ նորա ի բազմութիւն զօրացն ապաստանեալ և ոչ յԱստուած, որ յաջողէ զպատերազմ՝ ոչ ինչ գրէր զբանս իշխանին Հայոց։ Եւ նա մորմոքեալ ընդ կորուստ աշխարհիս Հայոց և ընդ ծուլութիւն զօրավարին՝ ոչ ունէր ժոյժ, այլ մտեալ երկրորդէր և երրորդէր զբանն։ Եւ բարկացեալ զօրավարին ի վերայ իշխանին՝ ձգէր զվարդն որ ի ձեռին զհետ նորա։ Եւ սրտմտեալ Թէոդորոս՝ ելանէր յերեսաց նորա, և նոյնժամայն հրամայէր զօրացն, որ ընդ իւրով իշխանութեամբն էին, «վառեցարուք, ասէ, և ելէք ընդդեմ Իսմայելի»։ Եւ նոքա հեծեալ յերիվարս իւրեանց՝ դարանամուտ եղեն ի սարակն, որում Եղբարսն կոչէին. և կալեալ զառաջս կրճիցն՝ զբազումս ի նոցանէ սատակէին և առեալ զկապուտ անկելոցն՝ հասուածեալ ի զօրավարէն գնացին ի գաւառն Գառնի։ Հրաման ետ ապա և Պռոկոպն իւրում զօրուն ելանել ի վերայ թշնամեացն. յորոց վերայ հեղեալ զօրն Իսմայելի՝ հարկանէին զմեծ մասն Յունաց, և զայլսն փախստական արարեալ անցուցանէին ընդ բանակն իւրեանց. և ինքեանք դարձեալ ի բանակն նոցա հանգչէին։ Եւ ասեն լինել զթիւ զօրացն Յու-

նաց աւելի քան զվեց բիւր արանց, և զիսմայելացիսն նուազ քան զբիւր մի արանց։ Եւ ի վաղիւն ժողովեալ զկապուտ բանակին, դարձեալ ընդ կրունկն՝ գնացին յաշխարհն իւրեանց։ Եւ եղև այս ի ճեան եւ երկրորդ ամի Աբու-Բաքրայ և Օթմանայ եւ Ամրի, իշխանացն Իսմայելի»:

2. Նույն արշավանքի մասին Ասողիկի համառոտ վկայությունը («Պատմութիւն տիեզերական», 1885, 2, գլ. Դ, էջ 120) առնված է Ղևոնդից։

Վերև մենք ասացինք, որ ըստ Ղևոնդի Աբու-Բեքրի, Ամրի և Օթմանի իշխանությունը սկսվել է Հերակլ կայսեր 11-րդ տարում (=620/621 թ., Հերակլը գահ է բարձրացել 610 թվի հոկտեմբերի 5-ին)։ Ղևոնդի այս վկայությունից կարելի է ըստ իս ենթադրել, որ նրա ժամանակագրական հաշիվը վերաբերվում է, հավանորեն, արաբական Հեջիրին, որի սկիզբն ընկնում է սակայն ոչ թե 620/621, այլ 622 թվին։

Բանասերների այն կարծիքը, որ իբր Ղևոնդի ժամանակագրական ցուցումներն անլուծելի են, որովհետև նրա մոտ անորոշ է Աբու-Բեքրի, Ամրի և Օթմանի իշխանության սկիզբը, ինչպես տեսնում ենք, պարզ մի թյուրիմացություն է։ Արաբական այս արշավանքի թվականը որոշվում է առանց դժվարության՝ համաձայն Ղևոնդի վերոհիշյալ ցուցման և ընկնում է Աբու-Բեքրի, Ամրի և Օթմանի իշխանության 22-րդ տարում, այսինքն՝ 641/642 թվականին, և կամ, հավանորեն, Հեջիրի 22 թվին, այսինքն՝ 642/643 թվականին։

Հակառակ Ղևոնդի այս ժամանակագրության բանասիրական և պատմական նորագույն աշխատություններում նույն արշավանքի թվականի մասին հայտնված են տարբեր կարծիքներ։ Ղևոնդի հրատարակության իր առաջաբանում Կ. Եզյանցն ասում է, որ «չէ յայտնի ստուգիւ ժամանակ այսր ասպատակի, զի ամն քան երկրորդ իշխանութեանն Աբու-Բէքրի, Օմարայ և Օթմանայ, յորում զայն դնեն Ղևոնդ և Ասողիկ՝ չէ մեկին և իմանալի մինչև ցայսօր, զի ոչ գիտեմք թէ զոր ամն թուականութեանս մերոյ համարի Ղևոնդ առաջին ամ իշխանութեան նորա»։ Նույն կարծիքին է նաև Մկրտիչ Ղազարյանը (տես Armenien unter der arabischen Herrschaft էջ 19, ծան. 1)։ Պրոֆ. Մարկվարտը Աբու-Բեքրի, Ամրի և Օթմանի 22-րդ տարին համապատասխան է համարում 653, 654 թ. (տես Osteuropäische und Ostasiatische Streifzüge 1903, էջ 441)։ Ալիշանը (Այրարատ, էջ 495) և Համբարյանը (Հուշարձան, էջ 244) նույն արշավանքի թվականը ենթադրում են 637 թվին՝ Դվինի առու-

մից երեք տարի առաջ, իսկ Tournebize-ը [Histoire, էջ 354]՝ 644 թվին։

Ինչպես տեսնում ենք, բանասերների և պատմաբանների կարծիքները ժամանակագրական այս խնդրի նկատմամբ նույնքան խառն են և հակասական, ինչպես և Դվինի առման թվականի մասին։

Ինձ թվում է սակայն, որ ուշադիր քննությամբ հնարավոր է ճշտիվ որոշել նաև այս արշավանքի տարեթիվը. անհրաժեշտ է միայն ի նկատի ունենալ անուղղակի մի շարք ցուցումներ, որ ուշադրության չեն առնվել։

Վերոհիշյալ արշավանքն Ատրպատականի կողմից անկարելի է ենթադրել 637 թվին, ինչպես այդ արել են Ալիշանը, Համբարյանը և ուրիշները, որովհետև 637 թվին արաբները դեռ նոր էին սկսել Պարսկաստանի նվաճումը և նրանք դեռևս չէին հասել Ատրպատականի կողմերը։ Հայտնի է արդեն արաբական և ուրիշ աղբյուրներից, որ արևմտյան Պարսկաստանում վճռական կռիվը պարսիկների դեմ տեղի է ունեցել Նեհավենդում, յոթերորդ դարի քառասնական թվականների սկզբներին (տե՛ս Ph. Nöldeke, Aufsätze zur persischen Geschichte, Leipzig 1887, էջ 133, նաև Horn, Geschichte Irans in islamitischer Zeit, Grundriss den iranischen Philologie, II. 5, էջ 553.

Սեբեոսը, որ ժամանակակից էր արաբական արշավանքներին, այս մեծ կռիվը «Մարաց գաւառում» դնում է «յառաջնում ամի Կոստանդեայ թագաւորին յունաց և յամի տասներորդի Յազկերտի արքային Պարսից» (Թիֆլիս 1913, էջ 181, գլ. ԼԲ), այսինքն՝ 641/642 թ.։

Պարզ է, որ վճռական կռվից հետո միայն արաբները կարող էին ներս խուժել Ատրպատական և այստեղից նաև Պարսկական Հայաստան։ Եվ, իրոք, արաբական մատենագիրները՝ Տաբարին և Յակուբին, որ այս կետում համերաշխ են միմյանց հետ, Ատրպատականի նվաճումը Մուղեյրա ի. Շոբայի առաջնորդությամբ դնում են Հեջիրի 21/22 թվին, այսինքն՝ 642/643 թվականներին (տես «Արաբացի մատենագրեր Հայաստանի մասին», էջ 82 ևն, 104)։

Կարևոր այս դիտողություններից դժվար չէ հետևցնել, որ Ղևոնդի նկարագրած Մարդուցայքի վերոհիշյալ կոտորածը չէր կարող պատահած լինել յոթերորդ դարի քառասնական թվականներից առաջ։

Ինչպես հայտնի է, Մարդուցայքի դեպքը թռուցիկ կերպով հիշատակված է նաև Սեբեոսի մոտ։ Սեբեոսի պատմելով՝ երբ Կոստաս-Կոստանդին կայսրն արշավելու էր Հայաստան՝ հույն զոր-

քերն ամբաստանում էին Թեոդորոս Ռշտունուն, համարելով նրան պատճառ Մարդուցայքի[1] կոտորածի և պահանջում էին պատժել հայերին։

«Եւ ամբաստանութիւն ամենայն զաւրացն Հոռոմին և արտունջ,— ասում է Սեբեոսը,— Ռշտունեաց տեառնէն լինէին, և զՀայոց՝ առաջի թագաւորին իւրեանց վասն հարուածոց՝ որ եղեն ի Մարդոցէսն։ Զի ասացին՝ թէ «միաբանեցան ընդ Իսմայէլացիսն. զմեզ վստահացուցին. զզաւրսն ճապաղել ետուն յասպատակ յԱտրպատական, և զնոսա ածին ի վերայ մեր յանկարծակի, և հարկանել ետուն զմեզ, և մեր ամենայն ինչ անդ անկաւ. բայց թող երթամք ի Հայս և մեր իրացն խնդիր առնեմք» (Թիֆլիս 1912, էջ 225, գլ. Լ Ե)։

Սեբեոսի այս վկայությունը, որ ժամանակակից պատմիչ է՝ մենք մեջ բերինք ցույց տալու համար, որ Ղևոնդի տեղեկությունը Մարդուցայքի կոտորածի մասին ստույգ է և պատմական։

Այդ կոտորածը, ինչպես վերև ասացինք, չէր կարող պատահած լինել յոթերորդ դարի քառասնական թվականներից առաջ։ Եվ իրավի, բացի վերոհիշյալ դիտողություններից՝ ի նպաստ մեր եզրակացության կարելի է մատնանշել նաև մի ուրիշ կարևոր ցուցում։

Այդ դեպքի ժամանակը որոշելու համար ուշադրավ է առանձնապես Դիոնիսիոս Տելմահարցու կարևոր մի վկայությունը, որ ուշադրության չէ առնվել։ Տելմահարցին իր ժամանակագրության մեջ հիշում է Պռոկոպ զորավարին և Թեոդորոսին, որոնք արշավել էին միասին մինչև Բատնա-Սառուգ։ Այդ տեղեկությունն անհրաժեշտ ենք համարում ամբողջությամբ մեջ բերել։

«955 թվին (643—644) պատրիկ Վաղենտինը՝ Հռոմայեցոց զորավարը, եկավ կռվելու արաբների դեմ։ Ահաբեկված նրանց ներկայությունից՝ նա փախավ և թողեց իր հետ եղած բոլոր հարստությունները, որ ընկան արաբների ձեռքը։

Նույն թվին Պռոկոպը և Թեոդորոսը մի խիստ ուժեղ հարձակում գործեցին և հասան մինչև Բատնա-Սառուգ։ Նրանք ավերեցին և կողոպտեցին այդ քաղաքը, վերցրին ինչ որ ցանկանում էին և վերադարձան իրանց երկիրը» (տես Chronique, publ. et trad. par Chabot էջ 6—7)։

Տելմահարցու այս հատվածն ուշադրության արժանի է այն տեսակետից, որ այստեղ ևս, ինչպես և Ղևոնդի վկայության մեջ,

[1] Սեբեոսը փոխանակ «Մարդուցայք»-ի՝ ունի «Մարդոցէք»։

Պռոկոպ զորավարը և Թեոդորոս Ռշտունին հիշատակվում են իբրև զորապետներ, որ գործել են միասին արշավող արաբների դեմ։ Դժվար չէ կռահել, որ Մարդուցայքի դեպքը եղած պիտի լինի արշավանքից հետո։

Ղևոնդի վերոհիշյալ վկայությունից հայտնի է, որ Մարդուցայքի կոտորածից առաջ Թեոդորոս Ռշտունին, թշնամանալով Պռոկոպին՝ հեռացել էր Գառնի գավառը, որը գտնվում էր Կոգովտի հարավակողմում։ Իսկ Սեբեոսը, ինչպես վերև տեսանք, հաղորդում է, որ հունական զորքերը գանգատվում էին կայսեր և մեղադրում Թեոդորոս Ռշտունուն, համարելով նրան ու հայերին պատճառ Մարդուցայքի կոտորածի։ Շատ պարզ է, ուրեմն, որ բյուզանդական զորքերի կոտորածից հետո Թեոդորոս Ռշտունին չէր կարող Պռոկոպի հետ միասին մասնակցած լինել վերոհիշյալ արշավանքին Բասնա-Սառուգի ուղղությամբ։

Ըստ Սեբեոսի՝ 646 թվին նա իբրև ծանր հանցագործ շղթայակապ ուղարկված է եղել Կոստանդնուպոլիս և արդարանալուց հետո միայն՝ նորից ստացել է զորավարության իր նախկին իշխանությունը։

Այսպիսով, Բասնայի առումը դրվելու է, ինչպես տեսնում ենք, Մարդուցայքի կոտորածից առաջ։ Ճշտվում է նաև, որ այս երկու ժամանակամերձ դեպքերը տեղի են ունեցել յոթերորդ դարի քառասնական թվականների առաջին տարիներում։

Ինձ թվում է, հիմնվելով վերև մեջ բերված ժամանակագրական տեղեկությունների և կարևոր այլ ցուցումների վրա, կարելի է այս անցքերի ժամանակը որոշել ավելի ճշգրիտ կերպով։

Տելմահարցու վկայությամբ՝ Պռոկոպի և Թեոդորի արշավանքը Բասնա-Սառուգ և պատրիկ Վաղենտինի փախուստն Արևելքից տեղի են ունեցել միևնույն թվին, այն է՝ 955=643/644 թվականին։

Արդ՝ պատմական աղբյուրների տեղեկություններից հայտնի է, որ 641 թվի նոյեմբեր ամսին Կոստաս-Կոստանդինը գահ էր բարձրացել Վաղենտինի աջակցությամբ։ Այնուհետև՝ Վաղենտինի արշավանքն ու փախուստն Արևելքից պետք է դնել համաձայն Սեբեոսի, որ ժամանակակից պատմիչ է, ոչ թե 643/644 թվին, այլ 642/643 թվականին։ Դարձյալ ըստ Սեբեոսի՝ Կոստասի կայսրության երկրորդ տարում, այսինքն՝ 643 թվին, Վաղենտինը վերադարձել էր արդեն Կոստանդնուպոլիս և «խորհէր... համբառնալ զինքն ի պատիւ թագաւորութեան»։ Թեոփանը Վաղենտինի վերադարձը և սպանությունը դնում է 644 թվին (an.m. 6136, տես Chronographia)։

ժամանակագրական այս ցուցումներից կարելի է հետևցնել, որ Պռոկոպի և Թեոդորոսի արշավանքն ևս Բատնա-Սառուգ պետք է ենթադրել 642/643 թվականին և ոչ 643/644 թվին, ինչպես հաշվում է Տելմահարցին։

Ի նկատի առնելով այս ցուցումները՝ կարող ենք դարձյալ հաստատապես եզրակացնել, որ վերոհիշյալ արաբական արշավանքի և Մարդուցայքի կոտորածի նկատմամբ terminus ante quem non պետք է ընդունել 642/643 թվականը։

Արդ՝ Ղևոնդի մոտ արաբական այս արշավանքի ժամանակը ցույց է տրված, ինչպես տեսանք, Աբու-Բաքրի, Ամրի և Օթմանի իշխանության 22-րդ տարում, հավանորեն, Հեջիրի 22 թվին, այսինքն՝ 642/643 թվականին։ Եվ որովհետև մեծ կռիվը «Մարաց գավառում» (Նեհավենդում) հիշվում է Սեբեոսի մոտ 641/642 թվին, իսկ արաբական արշավանքներն Ատրպատականում և Պարսկահայաստանում, ինչպես վկայում են արաբական աղբյուրները, տեղի էին ունեցել 642/643 թվականներին, ուստի Ղևոնդի ժամանակագրական վկայությունը կարող ենք համարել հավանական և ընդունելի։

Ըստ այսմ՝ Պռոկոպի և Թեոդորոսի արշավանքը Բատնա-Սառուգ, ինչպես և Մարդուցայքի կոտորածը, դրվելու են 642/643 թվականին։

## 4. ԱՐԾԱՓ ԲԵՐԴԻ ԱՌՈՒՄԸ՝ 650 ԹՎԻ ՕԳՈՍՏ. 8-ԻՆ, ԿԻՐ.

Արծափ բերդի առումը, որ տեղի է ունեցել արաբական մի նոր արշավանքի ժամանակ Ատրպատականի կողմից, ենթադրվում է սովորաբար 643 թվի օգոստոսի 10-ին, կիրակի։ Այս տարեթիվը և ամսաթիվը, որ հիմնված են Սեբեոսի վկայության և Dulaurier-ի տոմարագիտական հաշվի վրա (Recherches, էջ 231—232), համարել են առույգ գրեթե բոլոր բանասերները և պատմագետները[1] (տես Chazarian, Armenien unter der arabischen Herrschaft. էջ 29. Tournebize, Histoire politique et religieuse de l'Arménie էջ 354. Morgan, Histoire du penple arménien էջ 116. Marquart, Streifzüge էջ 440. Համբարյան, Հուշարձան, էջ 245)։ Սակայն այդ տարեթիվը, որ համարվել է մինչև այժմ անվիճելի, միանգամայն անհավանական է և անընդունելի։

[1] Ալիշանն Այրարատում (էջ 509) Արծափի առումը դնում է 643 թվի օգոստոսի 11-ին, իսկ Բաամաճյանը (Իսկական պատմութիւն Հայոց, էջ 296)—652 թվին։

Որպեսզի պարզ և հասկանալի լինեն մեր առարկությունները՝ մեջ ենք բերում նախ այն բոլոր վկայությունները, որ վերաբերվում են արաբական այս մեծ արշավանքին։

1. «Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն», Թիֆլիս 1913, էջ 188—191, գլ. ԼԲ—ԼԳ՝

«Եւ եղև ի գալ միւսում ամի եկն զաւրն Իսմայէլի յԱտրպատական, և բաժանեցան յերիս։ Առաջ մի յԱյրարատ, և առաջ մի ի սեփհական գնդին կողմանս. և առաջ մի յԱղուանս։ Արդ՝ որք ի կողմանս սեփհական գնդին, արշաւեալ սփռեցան և հարեալ զամենայն կողմանսն զայնոսիկ սրով սուսերի, առին զաւար և զգերութիւն։ Եւ եկին ժողովեցան ի յԾրևան՝ և մարտեան ընդ բերդին, և ոչ կարացին առնուլ։ Եկին ի յՈրդասպու, և ոչ նմա ինչ կարացին առնել։ Գնացին անտի և բանակեցան յԱրծափըս՝ հանդէպ բերդին առ ջրովն... Եւ եղև յամին երկրորդի Կոստանդնի, յամսեանն հոռի, որ աւր ԻԳ էր ամսոյն յաւուր կիւրակէի ընդ առաւաւտս՝ ճչեցին Իսմայելացիքն ի բերդին վերջոյ և առաջոյ, և հարին զնոսա սրով սուսերի։ Եւ բազումք գահավէժ լեալ սատակէին։ Եւ զկանայս և զմանկունս իջուցին ի բերդէն՝ կամէին սատակել. և ոչ գոյր թիւ գերույն, և անսասուն պաճարացն բազում յոյժ։ Եւ եղև ի վաղիւ առաւաւտուն՝ եկն եհաս ի վերայ նոցա զաւրավարն Հայոց, և եհար զնոսա անհուն կոտորածով։ Եւ էին նոքա երեք հազար ընտիր սպառազէնս յամենայն զաւրացն Իսմայէլի, և ոչ ոք զերծաւ ի նոցանէ. բայց սակաւ ճողոպրեալք հետևակք երթեալ ամրացան ի Շամբին։ Եւ ապրեցոյց տէր յաւուր յայնմիկ զբազմութիւն գերույն ի ձեռաց Իսմայէլացւոցն. և զԻսմայէլ խորտակեաց կործանմամբ մեծաւ. և մեռան Բ իշխանքըն Իսմայէլի՝ Աւթման և Ոգոմայ։ Եւ եղև յաղթութիւն մեծ զաւրավարին Հայոց, և ետ տանել զաւրավարն Հայոց զընծայս Կոստանդնի ի պատերազմէն՝ զընտիր ընտիր երիվարցն Ճ ձի, զոր առեալ արքայի ուրախ եղև ինքն և ամենայն պաղատն, և արձակեաց անդրէն շնորհակալութիւն մեծ»։

2. «Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի Հայոց», Ս. Պետերբ. 1887, էջ 11, գլ. Գ՝

«Ապա յետ այնորիկ յերեսուն եւ վեցերորդ ամի իշխանութեանն նոցա (Աբու-Բաքրայ և Օթմանայ և Ամրի) զօր ժողովեալ դարձեալ յարձակեցան ի վերայ աշխարհիս Հայոց. որոց էին գլխաւորք Օթման և Օգբայ։ Եւ իբրև հասին ի սահմանս Հայոց՝ յերիս բաժանեալ առաջս՝ սփռեցան յաւ-

*պատակս իւրեանց։ Առաջ մի հատեալ ընդ կողմն Վասպուրական աշխարհին, առին զաւանս և զամրոցս որ մինչև ի Նախջաւան քաղաք. և առաջ մի ընդ կողմն Տարօնոյ։ Եւ միւս առաջն հասեալ ի Կոգովիտ՝ պաշարէին զամրոցն Արծափաց» եւ այլն։* (Արծափի առման մանրամասնությունները համապատասխանում են Սեբեոսի հաղորդած տեղեկություններին):

*3. «Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան, Պատմութիւն տիեզերական», Ս. Պետերբ. 1885, էջ 122՝*

*Ասողիկի աղբյուրն է Ղևոնդը և թվական ցույց է տրված դարձյալ՝ «յԼԶ ամի իշխանութեան Աբու Բաքրայ, Օթմանայ եւ Ամրայ»։*

*Ինչպես վերև ասացինք, Արծափի առման թվականը որոշելիս՝* Dulaurier-*ն հենվել է Սեբեոսի վերոհիշյալ վկայության վրա՝* «յամին երկրորդի Կոստանդնի, յամսեանն հոռի, որ աւր ԻԳ էր ամսոյն, յաւուր կիւրակէի»: *Ենթադրելով արաբական այս մեծ արշավանքը և բերդի առումը «յամին երկրորդի Կոստանդնի», այսինքն՝ 643 թվին, նա հաշվել է, որ այս թվականին նավասարդի 1-ը գալիս է հունիսի 19-ին, իսկ հոռի 23-ը (նավասարդի 1-ից մինչև հոռի 23-ը լինում է 53 օր) համապատասխանում է օգոստոսի 10-ին։ Արդ՝ 643 թվի օգոստոսի 10-ը, ինչպես իրավամբ մատնանշել է* Dulaurier-*ն եղել է իրոք կիրակի։* Dulaurier-*ի այս պարզ ու համոզիչ դիտողություններից հետո՝ ժամանակագրական այս խնդիրը համարվել է բավարար կերպով լուծված և Արծափի առումը դրվել է 643 թվի օգոստոսի 10-ին, կիրակի։*

*Ուղի՞ղ է արդյոք այս թվականը, որ կրկնվում է գրեթե անընդհատ բանասիրական և պատմական ուսումնասիրություններում։*

*Ընդունելով հանդերձ որ* Dulaurier-*ի տոմարական հաշիվները միանգամայն հիմնավոր են և անվիճելի, ինձ թվում է, կարելի է հաստատապես պնդել, որ նրա մատնանշած տոմարական զուգադիպությունները պատահական են և չեն կարող հիմք ընդունվել ժամանակագրական այս խնդրի լուծման։*

*Արծափի առման թվականը որոշելիս՝ անհրաժեշտ է նախ և առաջ նկատի ունենալ, որ Սեբեոսի «Պատմութեան» մեջ պատմական անցքերը դասավորված են ժամանակագրական կարգով և անցքերի այդ հաջորդականությունը հիմնովին խախտվում է նրա մոտ հենց Արծափի առման վերաբերյալ վերոհիշյալ վկայությամբ։ Ժամանակագրական այս աններդաշնակությունը Սեբեոսի գրվածքում վրիպել է բանասերների և պատմաբանների ուշադրությունից։*

Արծափի առման վերաբերյալ վկայությունից առաջ Սեբեոսի մոտ հիշված են հաջորդական կարգով պատմական նախընթաց անցքերը, որ տեղի էին ունեցել Կոստաս-Կոստանդինի կայսրության երկրորդ, հինգերորդ և հետագա մի քանի տարիներում. օրինակ՝ պատրիկ Վաղենտինի դավադրությունը (643 թվին), Վարազտիրոցի աքսորից վերադառնալը (645/646 թվին), Թեոդորոս Ռշտունու դատը Կոստանդնուպոլսում և արդարացումը, Վարազտիրոցի փախուստը, Հայաստանի իշխան և կյուրապաղատ նշանակվելը և մահը, Թեոդորոս Ռշտունու արձակումը Հայաստան և նրա վերահաստատումը զորավարության նախկին իր պաշտոնում. և այս անցքերից հետո միայն հիշվում է արաբական մեծ արշավանքն Ատրպատականի կողմից և Արծափի առումը։

Հայ բանասերներից Ջամչյանը, Համբարյանը և ուրիշները, ժամանակագրական այս անտեղությունը վերացնելու համար, ենթադրել են, որ իբր Սեբեոսի մոտ հիշված նախընթաց դեպքերը տեղի են ունեցել Արծափի առումից առաջ՝ 642 կամ 642—644 թվականներին։ Վարազտիրոցի վերադարձն աքսորից և նրա կյուրապաղատ նշանակվելը Ջամչյանը դնում է 642 թվին, իսկ Թեոդորոս Ռշտունու հաստատվելը զորավարության պաշտոնում և Արծափի առումը՝ 642 թվին («Պատմութիւն Հայոց», 2, 344—345)։ Համբարյանը, որ Արծափի առումը ենթադրում է 643 թվի օգոստոսի 10-ին, Վարազտիրոցի աքսորից ազատվելը և հարակից մյուս դեպքերը դնում է 642 թվին (Հուշարձան, էջ 245)։ Թե այս և թե նման ենթադրությունները, իհարկե, անընդունելի են, որովհետև Սեբեոսը պարզ ու որոշ վկայում է, որ Վարազտիրոցը վերադարձել էր աքսորից «յամին հինգերորդի թագաւորութեան» Կոստանդնի, այսինքն՝ 645/646 թվականին։ Համբարյանի առարկությունը, իբր այդ թվականը հայտնի սխալ է, անշուշտ, հիմնավոր չէ։ Վաղենտինի դավադրությունը, ինչպես հայտնի է պատմական աղբյուրներից, տեղի էր ունեցել 643 թվին. այդ դավադրությունից հետո, ինչպես վկայում է Սեբեոսը, «արարին զաւրավար զԹէոդորոս զոմն[1] հաւատարիմ իշխանացն Հայաստանեայց, յայնց՝ որ ի յունաց կողմանէ». այնուհետև՝ սրա բարեխոսությամբ ազատված է եղել աքսորից Վարազտիրոցը և հաստատված իր նախկին աստիճանում։ Ինչպես տեսնում ենք, Վարազտիրոցի վերադարձն աքսորից պետք է եղած լիներ 645/646 թվին, և ոչ երբեք 642 թվականին,

[1] Այս Թեոդորոսին սխալմամբ շփոթում են Մարկվարտը և Կուլակովսկին Թեոդորոս Ռշտունու հետ, տե՛ս Marquart, Streifzüge, էջ 440 և Кулаковский, История Виз., III, 191։

ինչպես այդ ենթադրել են Չամչյանը, Համբարյանը և ուրիշները։

Ինձ թվում է, Սեբեոսի «Պատմության» ԼԲ և ԼԳ գլուխներում անցքերի ժամանակագրական հաջորդականությունը կարելի է վերականգնել ոչ թե վերոհիշյալ բանագբոսիկ լուսաբանությամբ, այլ Սեբեոսի բնագրի հավանական մի նոր ուղղումով, որը կատարելապես հաստատվում է, ինչպես կտեսնենք, հենց նույն ինքն Սեբեոսի մի քանի կարևոր այլ վկայություններով։ Բացի այդ՝ բոլոր անտեղությունները Սեբեոսի մոտ վերանում են դարձյալ հենց այն տույգ համարված թվականի սրբագրությամբ, որ վերաբերվում է Արծափի առման։

Սեբեոսի պատմության բնագիրը, որ հասել է մեզ 16-րդ դարի միայն մի աղճատ ձեռագրում, ինչպես հայտնի է, ունի բազմաթիվ աղավաղություններ։

Այդպիսի մի աղավաղություն է, իմ կարծիքով, նաև Արծափի առման վերաբերյալ «յամին երկրորդի Կոստանդնի» ընթերցվածը։ Սկզբնական բնագրում եղած պիտի լինի «յամին Ը երրորդի Կոստանդնի» կամ «յամին Թ երրորդի Կոստանդնի» և աղավաղումն առաջ է եկել Ը կամ Թ և Բ տառերի նմանությունից։

Թե որն է այս ուղղումներից գերադասելի, այդ կարելի է որոշել տոմարական հաշիվների օգնությամբ։

Սեբեոսի վկայությունից գիտենք, որ Արծափի առումը տեղի էր ունեցել «յամսեանն հոռի, որ աւր ԻԳ էր ամսոյն, յաւուր կիւրակէի ընդ առաւաւտս»։ Արդ՝ Կոստաս-Կոստանդինը թագավորած է 641 թվի նոյեմբերին, ուստի նրա կայսրության իններորդ տարին ընկնում է 649 թվի նոյեմբերից մինչև 650 թվի նոյեմբերը։ Այս թվականներին Նավասարդի 1-ը գալիս է հունիսի 17-ին և որովհետև Նավասարդի 1-ից մինչև Հոռի ամսի 23-ը լինում է 53-օր՝ ուստի Հոռի ամսի 23-ը համապատասխան կլինի օգոստոսի 8-ին։ Եւ հենց ճիշտ 650 թվին զատիկն ընկնում է մարտի 28-ին և Հոռի 23-ը կամ օգոստոսի 8-ը գալիս է իրոք կիրակի օր, ինչպես և ունի Սեբեոսը։

«Յամին Ը երրորդի Կոստանդնի» ուղղումը չի համարվում, որովհետև 649 թվին Հոռի 23-ը կամ օգոստոսի 8-ը գալիս է ոչ թե կիրակի, այլ շաբաթ։ Սակայն նույն այդ ուղղումը կարող էր ընդունելի համարվել, եթե հնարավոր լիներ ապացուցանել, որ Սեբեոսի մոտ աղճատված է նաև ամսաթիվը՝ «որ աւր ԻԳ էր ամսոյն» փոխանակ «որ աւր ԻԴ էր ամսոյն»։ Այդ դեպքում՝ Արծափի առումը կընկներ 649 թվի օգոստոսի 9-ին, որովհետև այս թվին Հոռի 24-ը կամ օգոստոսի 9-ը գալիս է դարձյալ կիրակի օր՝ համապատասխան Սեբեոսի վկայության։

Նախադասելի համարելով առաջին ուղղումը՝ Արծափի առման թվականը մենք ենթադրում ենք 650 թվի օգոստոսի 8-ին, կիրակի։

Մենք ընդունում ենք իհարկե, որ ամսաթվի և կիրակիի այս զուգադիպումը կարող է այստեղ ևս պատահական լինել, ինչպես Dulaurier-ի հաշվի մեջ. համաձայն ենք նաև, որ Արծափի առման թվականը որոշելու համար տոմարական մեր հաշիվն ինքնին բավական չէ։ Սակայն մեր առաջարկած ուղղումը հիմնված է և ուրիշ կարևոր ցուցմունքների վրա, որ հաստատում են դարձյալ նույն այս ենթադրությունը։

Մեջ ենք բերում մեր ենթադրությունը հաստատող նաև մի ուրիշ ապացույց։

Ղևոնդ երեցը, ինչպես վերև տեսանք, Արծափի առումը դնում է Դվինի առումից տասը տարի հետո։ Դվինի առումը նա ենթադրում է «ի քսան և վեցերորդ ամի նոցին (Աբու-Բաքրայ, Ամրի և Օթմանայ) իշխանութեանն»։ Այդ մեծ արշավանքը նկարագրելուց հետո՝ նա վկայում է այնուհետև, որ արաբները «դադարեցին յելանելոյ ի վերայ աշխարհիս Հայոց ամս Ժ», ուստի և Արծափի առումը նա ենթադրում է «յերեսուն և վեցերորդ ամի իշխանութեանն նոցա»։ Ըստ Ղևոնդի Դվինի առումն ընկնում է, ինչպես վերև հաշվեցինք, 645/646 թվին, ուրեմն՝ Արծափի առումը կընկնի նույն հաշվով 655/656 թվին։ Այս թվականները, անշուշտ, սխալ են։ Համաձայն Սեբեոսի և Տեղմահարցու վկայություններին Դվինի առումը, ինչպես վերև տեսանք, ճշտիվ որոշվում է 640 թվի հոկտեմբերի 6-ին, ուրբաթ։ Ղևոնդի սխալ ժամանակագրությունը ծագել է, ինչպես ասացինք, արաբական կամ այլ օտար աղբյուրների ազդեցությամբ, որոնց մեջ Դվինի առումը ենթադրված է Հեջիրի 24 կամ 25 թվին։ Հավանական է, որ այս սխալ թվականը հիմք էր ծառայելու նաև Արծափի առման թվականի սխալ որոշման։ Սակայն ժամանակագրական այս սխալ հաշիվները բնավ իրավունք չեն տալիս մեզ մերժելու Ղևոնդի պարզ ու կարևոր այն տեղեկությունը, որ Արծափի առումը տեղի է ունեցել Դվինի առումից տասը տարի հետո։ Այս տեղեկությունը, որ հիմնված է, հավանորեն, կամ ավանդության կամ թերևս գրավոր որևէ աղբյուրի վրա, կատարելապես համապատասխանում է մեր ենթադրության, և վերոհիշյալ մեր սրբագրությունը հաստատվում է այսպիսով ոչ միայն տոմարական հաշվով, այլև պատմական այլ վկայությամբ։ Ենթադրելով Արծափի առումը Դվինի առումից (640 թ. հոկտ. 6) տասը տարի հետո՝ Արծափի առման թվականը ստանում ենք ճիշտ և ճիշտ 650 թվին կամ

*«յամին Թ երորդի Կոստանդնի»՝ համաձայն վերոհիշյալ մեր սրբագրության։*

*Կարելի է մատնանշել մեր ենթադրությունը հաստատող նաև մի երրորդ ապացույց։*

*Որ Սեբեոսի բնագրում «յամին երկրորդի Կոստանդնի» ընթերցվածն ակներև մի սխալ է և մեր ուղղումը միանգամայն հիմնավոր՝ այդ պարզ երևում է արաբական նույն այս արշավանքներին վերաբերող Սեբեոսի պարզ ու որոշ տեղեկություններից։ Բանասերների ուշադրությունից վրիպել է, որ հենց ինքը Սեբեոսն Արծափի առումը և արաբական այս արշավանքներն Ատրպատականի կողմից ենթադրել է Դամասկոսում կնքված երեքամյա զինադադարի դաշինքից առաջ՝ ծովային այն պատերազմների ժամանակ, որոնք տեղի էին ունեցել 649 և 650 թվականներին։ Արծափի առումը նկարագրելուց հետո՝ Սեբեոսը շարունակում է.*

*տես էջ 191, գլ. ԼԲ (Թիֆլիս 1913)՝*

*«Իսկ այն զաւրն՝ որ կողմանս Այրարատեան, եհար սրով մինչև ի կողմանս Տայոց, Վրաց և Աղուանից՝ առ զաւար և զգերութիւն, և եկն էանց ի Նախճաւան առ այն զաւր, որ մարտ եդեալ կռուէին ընդ բերդին Նախճուանի։ Բայց սակայն ոչ կարացին առնուլ զնա։ Առին զբերդն Խրամայ, և սատակէին զնոսա սրով, և զկանայս և զմանկունս գերի վարեցին։*

*Իսկ որ ի կողմանս Պաղեստինացւոցն, հրամայեաց կազմել նաւատորմիղս բազում և եմուտ ի նաւ, և կալաւ գործ պատերազմի ընդ Կոնստանդնուպոլիս. և ոչ յաջողեցաւ նմա նաւամարտութիւնն. քանզի էլին ընդդէմ նորա զաւրացն բազմութիւն նաւաւք. և կործանեցին զնոսա ի խորս ծովուն, և զբազումս վանեցին հրով. և զբազումս փախստական արարեալ հալածեցին։ Բայց սակայն զարհուրեցաւ արքայն Կոստանդին. լաւ համարեցաւ տալ սակ, և առնել հաշտութիւն պատգամաւորաւք. և փութացուցանէին Իսմայէլացիք զլոյնս՝ զի կատարեսցեն զբան հաշտութեանն։ Իսկ թագաւորն յունաց Կոստանդին՝ քանզի մանուկ էր, ոչ իշխեաց կատարել առանց կամաց զաւրուն, և գրէ առ Թէոդորոս Ռշտունի / առ Պռոկոպ զի երթիցէ ընդ նմա Դամասկոս առ Մաւիաս իշխանն զաւրուն Իսմայէլի, և կատարեսցէ զպայման հաշտութեան ըստ զաւրուն կամացն։ Արդ՝ իբրև ետես Պռոկոպ զհրամանն արքունի, և լուաւ բանս ի զաւրացն, գնաց զհետ նոցա ի Դամասկոս առ Մաւիաս իշխան զաւրուն Իսմայէլի. և յայտնեաց զչափ սակին և աստ սահմանն և առ զհաշտութիւնն, և գնաց»։*

խնդիրը, ուրեմն, շատ պարզ է։ Արծափի առումը դրվելու է, ինչպես տեսնում ենք, Պոոկոպի կնքած զինադադարից առաջ, որի տարեթիվը Թեոփանի մոտ ևս ցույց է տրված 650 թվականին (an. m. 6142, տես Chronographia ed. de Boor)։

Արծափի առման թվականի ճշտմամբ վերականգնվում է Սեբեոսի ԼԲ և ԼԳ գլուխներում պատմական անցքերի ժամանակագրական հաջորդականությունը։ 646 թվին Թեոդորոս Ռշտունին շղթայակապ տարվել էր Կոստանդնուպոլիս. արդարանալուց և զորավարության իր նախկին պաշտոնում վերահաստատվելուց հետո՝ նա վերադարձել էր Հայաստան, հավանորեն, 649 թվին. այնուհետև, ինչպես վկայում է Սեբեոսը, «ի գալ միւսում ամի», այսինքն՝ 650 թվին, տեղի էին ունեցել արաբական մեծ արշավանքներն Ատրպատականի կողմից և Արծափի առումը։

Ինչպես տեսնում ենք, Արծափի առման տարեթվի մեր նոր լուսաբանությամբ վերանում են ժամանակագրական այն անտեղությունները և թյուրիմացությունները, որ անվերջ կրկնվում են հայագիտական ուսումնասիրություններում, ինչպես և այն օտար երկերում, որ վերաբերում են բյուզանդական կայսրության և արաբական խալիֆայության պատմություններին։

Արաբական թե այս և թե վերոհիշյալ արշավանքների թվականների ճշտմամբ ոչ միայն փոխվում է արշավանքների նախկին ժամանակագրական դասավորությունը, այլև խախտվում են այն ընդհանրացումները, որ հիմնված են ժամանակագրական հին սխալների վրա։

Laurent-ի «L'Arménie entre Byzance et l'Islam» նորագույն ուսումնասիրության մեջ սրբագրվելու են, օրինակ, հետևյալ սխալ ենթադրությունները.

1. 640 թվից մինչև 651 թիվը մատնանշված են Լոռանի մոտ վեց արշավանք՝ Բյուզանդահայաստան կամ Պարսկահայաստան (տես էջ 90 և 371), մինչդեռ այդ պնդումը հիմնապես ժխտվում է նոր այս ուսումնասիրությամբ.

2. Ըստ Լոռանի՝ Հայաստանն այդ արշավանքների ժամանակ շարունակ անցել է մերթ արաբների ձեռքը և մերթ բյուզանդացիների (տես էջ 199—200 և 371). այս ենթադրությունը ևս ճիշտ չէ։

Իրապես, ինչպես վերև տեսանք, մինչև 650 թիվը տեղի են ունեցել միայն երեք արշավանք հետևյալ հաջորդականությամբ՝

1. 640 թվին՝ արաբական առաջին մեծ արշավանքը Միջագետքի կողմից և Դվինի առումը (640 թվի հոկտեմբերի 6-ին, ուրբաթ).

2. 642/643 թվին՝ արաբական երկրորդ արշավանքը Ատրպատականի կողմից Պարսկա-Հայաստան և Մարդուցայքի կոտորածը.

3. 650 թվին՝ արաբական երրորդ մեծ արշավանքը դարձյալ Ատրպատականի կողմից և Արծափի առումը (650 թ., օգոստ. 8-ին, կիր.)։

Այս երեք արշավանքն էլ ունեցել են ասպատակության բնույթ. արաբական զորքերը վերցրել են ավար և գերիներ ու վերադարձել։ Արաբական տիրապետությունը Հայաստանում հաստատվել է ոչ թե այդ արշավանքների ժամանակ, այլ յոթերորդ դարի հիսունական թվականների սկզբներին։

## 5. ԹԵՈԴՈՐՈՍ ՌՇՏՈՒՆԻ ԵՎ ԹԵՈԴՈՐՈՍ «ԶԱՒՐԱՎԱՐ ՅՈՒՆԱՑ».

Պատմագիտական նորագույն ուսումնասիրություններում շփոթել են, ինչպես ներքև կտեսնենք, Թեոդորոս Ռշտունուն մի այլ Թեոդորոսի հետ, որը պատրիկ Վաղենտինի սպանությունից հետո (643 թ.) նշանակված է եղել «զաւրավար յունաց»։

Թյուրիմացությունն առաջ է եկել նրանից, որ պատմագետները սխալ են հասկացել Սեբեոսի վկայությունները նրա պատմության ԼԲ գլխում։

Սեբեոսը՝ Վաղենտինի դավադրությունը և նրա գլխատումը նկարագրելուց հետո՝ տալիս է «ոմն Թէոդորոսի» մասին հետևյալ տեղեկությունը.

1. «Պատմութիւն ի Հերակլն», Թիֆլիս 1912, էջ 184, գլ. ԼԲ՝

Եւ զԿոստանդին հաստատեցին յաթոռ թագաւորութեանն։ Եւ արարին զաւրավար զԹէոդորոս զոմն հաւատարիմ յիշխանացն Հայաստանեայց, յայնց՝ որ ի յունաց կողմանէ։ Սա իբրև առ զաւրավարութիւնն՝ աղաչեաց զթագաւորն և խնդրեաց պարգևս՝ առնել ողորմութիւն այնոցիկ, զորս էր աքսորեալ յԱփրիկէ։ Եւ մանաւանդ վասն ասպետի՝ որդւոյ Սմբատայ Խոսրով Շում կոչեցելոյ։ Եւ քաղցրացոյց Աստուած զսիրտ թագաւորին և հրամայեաց ածել զնոսա ի քաղաքն թագաւորական։ Եւ ընկալաւ զնոսա իբրև զսիրելիս թագաւորութեանն և զորդի նորա առաջին սպաթար զՍմբատ ի մէջ ամենայն սպաթարացն, և կանտիտատ։ Եւ անդէն կարգեաց ի կարգն առաջի յամին հինգերորդի թագաւորութեան իւրոյ։ Նոյնպէս և զՎահանն Խոռխոռունի, և զայլ ևս»։

Նույն այս ժամանակ, ինչպես հաղորդում է Սեբեոսը, Կոստանդինն ուղարկում է Հայաստան Թումա իշխանին, որը հանկար-

*ծակի հարձակվում է Կոստայքում Թեոդորոս Ռշտունու վրա, կալանավորում նրան և ուղարկում Կոստանդնուպոլիս։ Ինչպես տեսնում ենք, Սեբեոսի վկայություններից պարզ հետևում է, որ Թեոդորոս Ռշտունին և Հունաց զորավար Թեոդորոսը տարբեր անձնավորություններ են։*

*Սեբեոսի մոտ Հունաց զորավար Թեոդորոսը հիշվում է նաև մի ուրիշ հատվածում։*

*Վարազտիրոցը, որ փախել էր Կոստանդնուպոլսից ու ամրացել Տայքում, կյուրապաղատ է կարգվել Հայաստանում դարձյալ այս զորավարի ու Ներսես կաթողիկոսի միջնորդությամբ։*

> *«Յանժամ հրաման ետ զաւրավարն յունաց Թէոդորոս, վկայում է Սեբեոսը (էջ 187), հանդերձ իշխանաւքն զաւրուն և նախարարաւքն Հայոց՝ արձակել զՆերսէս կաթուղիկոս առ Ասպետ, և տանել նմա երդումն հաւատարմութեան ի խնդրել նմա զիշխանութիւն աշխարհին, և ածել նմա զկին իւր զորդիսն»։*

*Թեոդորոս «յունաց զաւրավար»-ը, ինչպես երևում է այս հատվածի բովանդակությունից, Վարազտիրոցի փախուստի ժամանակ գտնվել է Հայաստանում, մինչդեռ Թեոդորոս Ռշտունին՝ համաձայն նույն այս ԼԲ գլխի շարունակության՝ ստացել էր նորից զորավարության իր նախկին իշխանությունը և արձակվել Կոստանդնուպոլսից Հայաստան ոչ թե Վարազտիրոցի փախուստից առաջ, այլ նրա մահից հետո։*

*Ուրեմն՝ ավելի քան պարզ է, որ այս երկրորդ վկայությունը ևս վերաբերվում է Թեոդորոս Հունաց զորավարին և ոչ Թեոդորոս Ռշտունուն։*

*Սեբեոսի պարզ ու որոշ վկայությունները սխալ են հասկացված ոչ միայն գիտական հին երկերում, այլև պատմական ու բանասիրական նորագույն աշխատություններում, օրինակ՝*

1. Юл. Кулаковский, История Византии, т. III, Киев, 1915, стр. 191—

> «Вступив в сношения с императором при посредстве католикоса Феодор Рыштуни ходатайствовал о смягчении участи своих соплеменников, членов армянской знати, которые томились в ссылке по делу о заговоре на жизнь Ираклия в 638 г. То были Вараз-Тироц, сын Сумбата Багратуни и Ваган Хорхоруни. С первым из них он был связан воспоминаниями юности, проведенной при дворе Хозроя. Предоставляя Феодору Рышту-

ни высшие полномочия в Армении, император внял его просьбе, вернул из ссылки обоих и возвратил им их придворные саны».

2. Marquart, Osteuropäische und Ostasiatische Streifzüge, Leipzig *1903, էջ 440. տես նաև «Հայ Բագրատունեաց ճիւղագրութիւնը», թարգմ. Հ. Մ. Հապոզյանի, Վիեննա 1913, էջ 4։*

> *«Հերակղ մահուընէն յառաջ կերդուընցնէ իր որդին՝ որ ետ կանչէ Ասպետը եւ իւր նախկին աստիճանին մեջ հաստատէ, Սեբ. 108 (641-ին)։ Կոստանդին Հերակղի եղբորորդին՝ Թէոդորոս Ռշտունւոյ աղաչանաց վրայ կըկատարէ զայս, Սեբ. 114»։*

*Փաստական նույն այս սխալը հանդիպում է նաև ուրիշ աշխատություններում, որ անհրաժեշտ է իհարկե ուղղել։*

*Տուրնեբիզը (*Histoire, *էջ 355) և Մկր. Ղազարյանը (*armenien unter der arabischen Herrschaft *էջ 29) ենթադրում են, որ վերոհիշյալ հունաց զորավար Թեոդորոսը Թեոդորոս Վահևունին է և ոչ Թեոդորոս Ռշտունին։ Սակայն Համբարյանը Հուշարձանում լույս տեսած իր հոդվածում (էջ 245) իրավամբ առարկում է, որ «Սեբէոս երկիցս կըյիշէ զԹեոդորոս Վահևունի, զոր նոյն իսկ ապստամբ կներկայացնէ, մինչ հոս յիշուած Թէոդորոսը հաւատարիմ կը կոչէ կայսեր»։*

*Ուշագրավ է նաև այն, որ ինքը՝ Սեբեոսը տարբերում է այս երկու Թեոդորոսներին՝ մեկին նա անվանում է Թեոդորոս Վահևունի իսկ մյուսին՝ «Թէոդորոս ոմն հաւատարիմ յիշխանացն Հայաստանեայց, յայնց՝ որ ի յունաց կողմանէ»։*

*Կարող ենք ուրեմն վստահորեն եզրակացնել, որ Սեբեոսի հիշած Թեոդորոսները՝ Թեոդորոս Ռշտունին, հունաց զորավար Թեոդորոսը և Թեոդորոս Վահևունին՝ տարբեր անձնավորություններ են։*

## 6. ՍՄԲԱՏ ԲԱԳՐԱՏՈՒՆԻՆ՝ ԴՐՈՒՆԳԱՐ ԵՎ ՈՉ ԿՅՈՒՐԱՊԱՂԱՏ.

*Պատմական և բանասիրական գրեթե բոլոր աշխատություններում Վարազտիրոցի որդին Սմբատը հիշատակված է իբրև կյուրապաղատ և իշխան հայոց։ Ընդհանուր այս կարծիքը, որ հիմնված է Սեբեոսի, Ղևոնդի և Հովհաննես կաթողիկոսի ցուցմունքների վրա, ավելի քան վիճելի է։*

*Մեջ բերենք նախ Սմբատի իշխան կարգվելու մասին աղբյուրների վկայությունները։*

1. «Պատմութիւն Սեբէոսի ի Հերակլն», Թիֆլիս 1912, էջ 188, գլ. ԼԹ՝

«Արդ՝ մինչդեռ գայր հրովարտակն և պատիւն առնել զնա (զՎարազտիրոց) կիւրապաղատ, յանկարծակի եհաս նմա հիւանդութիւն և մեռաւ. եւ բարձին զմարմին նորա և տարան թաղեցին առ հայրն իւրում ի Դարիւնս։ Եւ զորդի նորա զանդրանիկ, որում անունն էր Սմբատ, կարգեաց արքայ ի պատիւ հաւր իւրոյ, տուեալ նման զիշխանութիւնն բնիկ տանուտէրութեանն ասպետութեան, և արար զնա դրունգար զաւրաց իւրոց։ Եւ նմա կին ի տանէն Արշակունեաց և իւրոց մերձաւորաց, և արձակեաց ի բանակն առ զաւրս իւր»։

2. «Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի Հայոց», Ս. Պետերբ. 1887, էջ 12, գլ. Դ՝

«Ի սորա (Մուաւիայի) յառաջնում ամի իշխանութեանն և ի ԻԵ ամի Կոստանդնի կայսեր, որ էր թոռն Հերակլի, սկսաւ զօրս գումարել ի վերայ աշխարհիս Հայոց իշխանն Տաճկաց։ Ազգ եղև առ թագաւորն Կոստանդին բանն. և հրամայէր զօրավարին որ ի կողմանս Կիլիկեցւոց՝ ելանել ընդդէմ նոցա։ Ընկենոյր և զիշխանն Թէոդորոս յիշխանութենէն վասն նենգութեանն, զոր արար առ Պոոկոպայ, և փոխանակ նորա կացուցանէր զՍմբատ ոմն ի տոհմէ Բագրատունեաց, և առաքէր ընդ զօրավարին իւրում»։

3. «Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ, Պատմութիւն Հայոց», Թիֆլիս 1912, էջ 85՝

«Իսկ նա (Վարազտիրոց) յառնուլ զիշխանութեան պատիւն՝ վաղվաղակի վախճանի. զոր և տարեալ եդին ի Դարօն առ հօր իւրում քաջին Սմբատայ։ Ապա Ներսէս զորդի նորա զՍմբատ ի պատիւ հօրն խնդրէ կացուցանել, և հայցէ ևս զԹէոդորոս Ռշտունեաց տէր ի զօրավարութիւն հաստատել։ Եւ այսպէս պայազատեալ՝ պահողվանայր առ ժամանակ մի չար հինից Հագարու աշխարհիս մեր»։

Աղբյուրների այս վկայությունները բավական անկապ են և հակասական։ Պատմաբանները և բանասերները, անուշադիր թողնելով ակներև այդ հակասությունները, օգտվել են անխտիր բոլոր աղբյուրներից առանց այդ վկայությունների համեմատական և քննական ստուգման։ Հենվելով մեջ բերված վկայությունների վրա՝ նրանք ընդունել են, որ Սմբատը կարգված է եղել կյուրապաղատ և Հայոց իշխան իր հոր մահից հետո (տե՛ս Չամչյան, Պատմութիւն

Հայոց, Բ, էջ 345, 347, 349 և 356. Saint-Martin, Mémoires 1, էջ 337, Tournebize, Histoire էջ 96—97. K. Arslan, Etudes historiques էջ 276. Chazarian, Armenien unter der arabischen Herrschaft, էջ 30. Morgan, Histoire, էջ 116. Laurent, L'Arménie entre Byzance et l'Islam, էջ 85, 333։

Չամչյանը, Սեն-Մարտենը և Տուրնեբիզը որոշել են անգամ նրա պաշտոնավարության տարեթիվը՝ 644—654 թ.։

Համապատասխանո՞ւմ են արդյոք այս եզրակացություններն աղբյուրների հաղորդած տեղեկություններին։

Ինձ թվում է, դժվար չէ համոզվել՝ որ այդ եզրակացությունները ոչ միայն հիմնավորված չեն, այլև բոլորովին հակառակ են ժամանակակից պատմագրի՝ Սեբեոսի վկայության։

Քննենք մի առ մի աղբյուրների վերոհիշյալ վկայությունները։

Ղևոնդի պատմելով՝ Կոստաս-Կոստանդինը Սմբատին իշխան էր կարգել փոխանակ Թեոդորոս Ռշտունու Մարդուցայքի դեպքից հետո։ Այդ դիտողությունը ճիշտ չէ։ Սեբեոսի պատմությունից մենք գիտենք, որ Թեոդորոս Ռշտունին Մարդուցայքի դեպքից մի քանի տարի հետո (646 թվին) դատի է տրվել Կոստանդնուպոլսում, արդար է ճանաչվել և վերահաստատվել զորավարության իր նախկին պաշտոնում և վերադարձել Հայաստան, հավանորեն 649 թվին։ Ժամանակակից նույն պատմիչի վկայություններից հայտնի է, որ Թեոդորոս Ռշտունուց հետո Կոստանդինը նշանակել էր «իշխան հայոց հեծելոցն» (էջ 228, գլ. ԼԵ) Մուշեղ Մամիկոնյանին և այնուհետև կյուրապաղատ էր կարգել Համազասպ Մամիկոնյանին (էջ 246, գլ. ԼԸ)։ Ղևոնդի վկայությունը, ինչպես տեսնում ենք, կարելի է անտես առնել իբրև անհավանական և անվավեր։

Հովհաննես կաթողիկոսի ամբողջ հատվածը համառոտություն է, անտարակույս, Սեբեոսի ընդարձակ վկայության։ Այդ հատվածի վրա ես հարկ չկա կանգ առնել։

Մնում է, ուրեմն, Սեբեոսի վկայությունը, որը ժամանակակից լինելով Սմբատին՝ միակ արժանահավատ աղբյուրն է և ամենից ավելի մանրամասն ու ճշմարտապատում տեղեկություններ է հաղորդում նրա մասին։ Եվ հենց Սեբեոսի վկայությունը, ինչպես և Հովհաննես կաթողիկոսի անհաջող համառոտությունը, որ ուշադրությամբ չեն կարդացվել և բաղդատվել իրար հետ, հիմք են ծառայել վերոհիշյալ թյուրիմացության, որ իբր Սմբատը հոր մահից հետո նշանակվել է կյուրապաղատ և հայոց իշխան։ Սխալ են հասկացվել Սեբեոսի հատվածում Սմբատի մասին հետևյալ տողերը.

«Եւ զորդի նորա զանդրանիկ՝ որում անունն էր Սմբատ, կարգեաց արքայ ի պատիւ հաւր իւրոյ, տուեալ նմա զիշխանութիւնն ընիկ տանուտէրութեանն ասպետութեան»։

Հատվածի երկրորդ մասից պարզ երևում է, որ «պատիւն» այստեղ ոչ թե Սմբատի հոր կյուրապաղատության «պատիւն» է, այլ «ընիկ տանուտէրութեանն ասպետութեան»։ Սեբեոսի վկայության իմաստն այն է, որ Սմբատը լինելով Վարազտիրոցի անդրանիկ որդին՝ ճանաչվել է կայսեր կողմից իբրև Բագրատունյաց տանուտեր։ Նա չէր կարող կարգված լինել կյուրապաղատ և հայոց իշխան, որովհետև Սեբեոսն իր վկայության շարունակության մեջ որոշ կերպով վկայում է, որ Սմբատը ստացել էր կայսրից դրունգարի պաշտոն և ուղարկվել բանակ։ Իսկ դրունգարությունը կամ զնդապետությունը, ինչպես հայտնի է, զորական հասարակ պաշտոն էր. ուստի միանգամայն հասկանալի է, որ Հայաստանի կյուրապաղատին չէր կարելի կարգել դրունգար և ուղարկել բանակ։

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, հերքվում է Սմբատի մասին վերոհիշյալ կարծիքը, որ մինչև այժմ կրկնվել է գրեթե բոլոր երկերում։

---

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԱՐԱԲԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԴԵՄ[1]

*Եվրոպական պատմագիտության մեջ այն կարծիքն է սովորաբար տիրում, որ իբր թե արևելյան ժողովուրդները հլու և հնազանդ են լինում միշտ ճնշող բռնակալների հանդեպ։ Հռչակավոր գերմանական պատմագետ Թ. Մոմզենը, օրինակ, իր Հռոմեական պատմության մեջ մատնանշում է, որ ասիացիներն անսահման հակում ունեն անգործության և ընդունակ չեն ինքնաբերաբար ոտքի ելնելու շահագործող իշխանությունների դեմ[2]։*

*Այդ կարծիքը, ինչպես կտեսնենք, բացարձակապես սխալ է։ Նորագույն ուսումնասիրությունները, գլխավորապես ռուս արևելագետների՝ ակադեմ. Բարտոլդի, պրոֆ. Յակուբովսկու և ուրիշների, ինչպես և իմ այսօրվա դասախոսությունը, պարզ ապացույց են, որ ժողովրդական շարժումները և ապստամբությունները տեղի են ունեցել պարբերաբար ոչ միայն Միջնադարյան Ռուսաստանում և Արևմտյան Եվրոպայում, այլև Հայաստանում ու Մերձավոր Արևելքում։ Հատկապես արաբական տիրապետության շրջանում գյուղացիների, արհեստավորների ու անգամ ստրուկների ըմբոստացումներն ու ապստամբությունները, ինչպես ցույց են տվել վերոհիշյալ ռուս գիտնականները, 9—10 դարերում դառել էին գրեթե անընդհատ։*

*Երբ խոսք է լինում այդ շարժումների մասին՝ պետք է նախ և առաջ ի նկատի ունենալ, որ մատնանշված ապստամբություններն ունեցել են կամ սոցիալական ու դասակարգային բնույթ և կամ*

---

*1 Տե՛ս առանձին գրքույկով, Հրատարակություն Երևանի Պետական համալսարանի, 1939 թ.։*

2 Моммзен, «Римская история», т. II, Москва, 1887, էջ 269։

ծղել են ժողովրդական-ազատագրական շարժումներ ընդդեմ ճնշող ու կեղեքող օտար տիրապետողների։

Սոցիալական-դասակարգային բնույթի շարժումները Մերձավոր Արևելքում, ինչպես այժմ պարզված է, գտնվել են, մեծ մասամբ, Մազդակյանների ուսմունքի ազդեցության տակ։ Սասանյան Պարսկաստանի Կավատ թագավորի ժամանակ (488—531 թ.), այս ուսմունքը, ինչպես հայտնի է, անարգել կերպով տարածվել էր Պարսկաստանում և ունեցել ժողովրդական սարրին խավերի մեջ հսկայական հաջողություն։ Իր կրոնական մասում այս աղանդը պարզապես խառնուրդ էր Զրադաշտական դուալիզմի և պարսկա-քրիստոնեական Մանիքեյական աղանդի։ Իսկ սոցիալական իր մասում նա քարոզում էր ֆեոդալական դասային արտոնությունների վերացում, ընդհանուր հավասարություն և գույքերի ու հարըստությունների, ինչպես և կանանց, հավասար բաշխում բոլոր մարդկանց մեջ։ Մազդակի ու նրա հետևորդների ասելով, անհավասարությունը չար ու դիվային մի երևույթ է, իսկ հավասարության հաստատումն արդար մի պահանջ է և համապատասխանում է բարի աստծու կամքին։

Կրոնական-սոցիալական այս աղանդի վրա ես հարկավոր համարեցի առանձնապես կանգ առնել, որովհետև Մազդակյանները, ենթարկվելով հետագայում, վերոհիշյալ Կավատի թագավորության վերջին տարիներում, սոսկալի հալածանքների, փախել էին մասամբ նաև Ատրպատական ու իրենց ուսմունքը տարածել էին Անդրկովկասում և, ըստ երևույթին, նաև Հայաստանում։ Հայտնի է արդեն, որ իններորդ դարի առաջին կիսում Ատրպատականում տարածված պարսիկ Բաբեկի և նրա հետևորդների «Խուրրամյան» անվանվող աղանդի մեջ ևս կային գույքային հավասարության պահանջներ, որ պետք է վերագրել, անշուշտ, Մազդակյանների ազդեցության։ Միանգամայն հնարավոր է նույնպես, որ հայ Պավլիկյան ու Թոնդրակյան աղանդների վրա ևս կարող էին որոշ ազդեցություն գործած լինել պարսկական այդ աղանդավորները։ Սակայն այս խնդիրը կարոտ է դեռ ուշադիր ու լուրջ քննության և փաստական հիմնավորման ու ապացուցման մատենագրական համոզիչ վկայությունների օգնությամբ։

Տարբեր բնույթի շարժումներ էին, ինչպես վերև ասացի, ժողովրդա-ազատագրական շարժումներն ընդդեմ օտար տիրապետության։ Եվ հենց այս կարգի՝ 8—9-րդ դարերի երկու հայկական մեծ ապստամբությունների ընդդեմ արաբական տիրապետության, գլխավոր նյութն են կազմելու իմ այսօրվա դասախոսության։ Իսկ

*հատկապես կրոնական-սոցիալական բնույթ ունեցող դասակարգային շարժումների մասին Հայաստանում ես խոսելու եմ հաջորդ իմ դասախոսության ընթացքում, որի թեման է լինելու «Քաղաքները Հայաստանում 10—11-րդ դարերում»։*



*Արաբական տիրապետությունը հաստատվել էր Հայաստանում, ինչպես գիտեք, յոթերորդ դարի հիսունական թվականների սկզբներին։ Նոր նվաճողների տիրապետության առաջին շրջանում, սկսած մոտ 650 թվից մինչև 750 թիվը, ուրեմն՝ գրեթե ճիշտ հարյուր տարի Հայաստանը գտնվում էր Օմայան խալիֆաների իշխանության տակ, իսկ 750 թվից սկսած մինչև 887 թիվը, այսինքն՝ մինչև Բագրատունյաց թագավորության հաստատումը՝ նա ենթարկվում էր Աբբասյան տոհմի խալիֆաներին։ Արաբական տիրապետության առաջին շրջանում խալիֆայության կենտրոնը գտնվում էր Դամասկոսում և գերիշխող դեր էին կատարում նոր աշխարհակալ պետության մեջ Ասորիքի արաբները, իսկ երկրորդ շրջանում կենտրոնը դառել էր 762 թվին հիմնված Բաղդադ քաղաքը և գերակշիռ դեր էին խաղում Իրաքի արաբները և մահմեդականություն ընդունած պարսիկ ազնվականությունը։*

*Արաբական նվաճումների և աշխարհակալ ծավալման մասին առանձնապես հետաքրքիր է արաբական մատենագիր Յակուբի վկայությունը նրա «Գիրք խարաջի մասին» երկում, որի մեջ նա Օմար խալիֆին վերագրում է հետևյալ ուշագրավ խոսքերը.*

*«Մահմեդականներն ուտում են նրանց (նվաճվածներին), քանի իրենք կենդանի են, իսկ երբ մենք ու նրանք մեռնենք՝ մեր որդիները կուտեն նրանց (նվաճվածների) որդիներին՝ իրենց կենդանության ժամանակ»։*

*Այս «ուտողներն» ու շահագործողները, իհարկե, առավելապես Օմայան և Աբբասյան խալիֆներն էին և իշխող դասերը, մինչդեռ արաբական ու մահմեդական ժողովրդի ստորին խավերը իրենք ևս գտնվում էին տնտեսական ծանր դրության մեջ։*

*Օմայանների ժամանակ արաբների տիրապետությունը Հայաստանում, ինչպես և բնակչության,— իհարկե գլխավորապես ստորին խավերի,— տնտեսական ու հարկային շահագործումն օտար այս աշխարհակալության կողմից եղել են, մանավանդ սկզբնական շրջանում, համեմատաբար մեղմ ու տանելի։ Նրանց մեղմ ու զգու-*

շավոր այդ քաղաքականությունը բացատրվում է պարզապես նրանով, որ Օմայաններն ի նկատի են ունեցել Հայաստանի ստրատեգիական ու ռազմական մեծ նշանակությունը և ուզեցել են, պահպանելով նրա ներքին ինքնուրույնությունը և նախարարական նախկին կարգերը՝ օգտագործել նրա զինվորական ուժերն իրենց նոր սահմանների պաշտպանության համար, ընդդեմ Բյուզանդիայի ու խազարների։ Օմայանների այս քաղաքականությանը կամովին ընդառաջել էին և իրենք՝ հայկական նախարարությունները։ Տեսնելով, որ Բյուզանդական կայսրության զորքերը դրեթե անընդհատ պարտություն են կրում, և հույս չունենալով օգնություն ստանալու հույներից՝ նրանք հպատակել էին խալիֆայությանը, կնքելով նրա հետ հատուկ պայմանագիր։

Այդ դաշինքը, որով տրվել էր նախարարություններին ներքին ինքնուրույնություն՝ կնքված էր 653 թվին Մուավիայի հետ։ Թե ինչպիսի մեծ արտոնություններ էին նրանք ստացել՝ այդ երևում է դաշինքի բովանդակությունից։

«Այս թող լինի,— պայման է կապում Մուավիան,— հաշտության ուխտ իմ և ձեր մեջ՝ որքան ժամանակ դուք կամենաք։ Երեք տարի ես ձեզանից հարկ չեմ առնելու. իսկ հետո կտաք, ձեր երդման համաձայն, որքան դուք կկամենաք։ Ձեր երկրի մեջ պետք է ունենաք 15.000 հեծյալզոր և նրանց պետք է պարենավորեք ինքներդ. արժեքը ես դուրս կգամ հարկից։ Հեծելազորը ես Ասորիք չեմ տանի, սակայն ուրիշ տեղ, ուր որ հրամայեմ՝ պետք է պատրաստ լինեն գնալու։ Ձեր բերդերը ոչ ամիրաներ կուղարկեմ, ոչ արաբ սպա և ոչ նույնիսկ մեկ հատ հեծվոր։ Թշնամի չպիտի մտնի Հայաստան. իսկ եթե հույները ձեզ վրա հարձակվեն՝ կուղարկեմ ձեզ օգնական զորք, որքան որ ուզենաք։ Երդվում եմ մեծ Աստծու անունով, որ սուտ չեմ խոսում» (Սեբեոս, գլ. ԼԵ)։ («Այս լիցի ուխտ հաշտութեան իմոյ ընդ իս և ընդ ձեզ որչափ ամաց և դուք կամիջիք. և ոչ առնում ի ձէնջ սակ զերբեամ մի. ապա յայնժամ տաջիք երդմամբ, որչափ և դուք կամիջիք. և հեծեալ կալէք յաշխարհիդ ժԵ հազար։ Եւ հաց յաշխարհէն տուք, և ես ի սակն արքունի անգարեմ, և զհեծեալսն յԱսորիս ոչ խնդրեմ, բայց այլուր և հրամայեմ, պատրաստ լիցին ի գործ. և ոչ արձակեմ ի բերդորայն ամիրայս, և ոչ տաճիկ սպայ՝ ի բազմաց մինչև ցմի հեծեալ։ Թշնամի մի մտցէ ի Հայս. և եթէ գայ Հոռոմ ի վերայ ձեր՝ արձակեմ ձեզ

զղաւրս յաւգնականութիւն որչափ և դուք կամիցիք։ Եւ երդնում ի մեծն Աստուած՝ եթէ ոչ ստեմ»)[1]։

Այս դաշնագրությամբ, ինչպես տեսնում ենք, հայկական նախարարություններին տրվել էին ինքնավար իրավունքներ ու բացառիկ արտոնություններ։ Սակայն չնայած դրան՝ արաբական տիրապետությունը, անգամ այս սկզբնական շրջանում, Հայաստանի համար եղավ աղետալի ու կործանարար։ Նա պարբերաբար կրկնվող պատերազմների ընթացքում շարունակ հարձակման ու ավերածությունների ենթարկվեց։ Եթե նա հավատարիմ էր մնում խալիֆայությանը՝ նրան անխնա պատժում էին հույները։ Իսկ եթե անցնում էր Բյուզանդիայի կողմը՝ վրեժ էին առնում արաբները։

Հայաստանի ամայացումը և տնտեսական քայքայումը Օմայանների տիրապետության շրջանում պարզ ու որոշ մատնանշված է ասորական մատենագիր Դիոնիսիոս Տելմահրացու ժամանակագրության մեջ։ Նկարագրելով արաբական Մասլամա հրամանատարի ռազմերթը (716/7 թ.) դեպի Բյուզանդիա և նրա գալը Արածանի գետի հովիտներն ու Ներքին Հայաստան՝ Տելմահրացին վկայում է, որ՝

> «Այս ամբողջ երկիրն աչքի էր ընկնում և ուներ առաջ բազմաթիվ բնակչություն, խաղողի շատ այգիներ, հացահատիկներ և ամեն տեսակ սքանչելի ծառներ։ Սակայն այնուհետև նա ավերվել էր և նրա շրջանները չունեին այլևս բնակչություն»[2]։

* *
*

Եթե խալիֆների տիրապետության առաջին շրջանում Հայաստանն ավերվում էր բյուզանդա-արաբական կռիվների պատճառով, որոնք հաճախ տեղի էին ունենում Հայաստանի տերիտորիայի վրա, նրանց տիրապետության երկրորդ շրջանում, գլխավորապես ութերորդ դարում, նա արյունաքամ էր լինում ոչ այնքան այդ կռիվների, որքան ծանր և տաժանելի հարկերի պատճառով։

Օմայանների իշխանության ժամանակ, մանավանդ սկզբնական ժամանակաշրջանում, Հայաստանի արքունի հարկերը համեմատաբար ծանր չէին։ Այդ երևում է ոչ միայն վերոհիշյալ դաշինքի

---

1 «Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն», Ս. Պետերբուրգ 1879, էջ 138։

² Տես Chronique de Denys de Tell-Mahré» publ. et trad. par Chabot, Paris, 1895, էջ 12։

*պայմաններից, այլև 12-րդ դարի հայ մատենագիր Սամուել Անեցու ուշագրավ մի վկայությունից։ Սրա ասելով, երբ արաբական իշխանությունը հաստատվեց Հայաստանում, խալիֆայությունը*

> *«Վերցնում էր յուրաքանչյուր տնից չորս դրամ, երեք մոդ խորբալ (այսինքն՝ մաղած ցորեն), մեկ ձիատոպրակ, մեկ մազե պարան և մեկ ձեռնոց. իսկ քահանաներից, ազատներից և հեծելազորից հրաման տրվեց հարկ չառնել»։*
>
> *(«Յամենայն տանէ առնել Դ դրամ և Գ մոդ խորբալ, և ձիատոպրակ մի, և պարան մի մազէ, և ձեռնարար մի. իսկ ի քահանայից և յազատաց, և ի հեծելոց՝ ոչ հրամայեաց առնուլ զհարկն»)[1]։*

*Մեջ բերված այս վկայության մեջ ի նկատի է առնված 7-րդ դարում Հայաստանում գործածվող մոդը կամ գրիվը, որի կշռորդը, ինչպես ցույց եմ տվել իմ «Կշիռները և չափերը» աշխատության մեջ (էջ 75—79), հավասար էր 9 կիլ. 792., իսկ դրամը նույն այդ դարում Մերձավոր Արևելքում տարածված Սասանյան արծաթ դրամն է, որը համապատասխան է ըստ դրամական իր արժեքի մոտավորապես այժմյան 50 ոսկի կոպեկի[2]։ Ուրեմն ըստ մեր այս հաշվի՝ 3 մոդ մաղած ցորենը, որ խալիֆայությունն առնում էր յուրաքանչյուր տնից համապատասխան կլինի 29 կիլ. 376 գր. կամ մոտ 2 փթի, իսկ վերոհիշյալ 4 դրամը հավասար կլինի մոտ 2 ոսկի ռուբլու։ Այս գումարի իրական արժեքը յոթերորդ դարում բավական բարձր էր։ Այդ ժամանակաշրջանում մեկ փութ ցորենն արժեր մոտավորապես 25—50 ոսկի կոպեկ։*

*Ավելորդ չի լինի նույնպես մատնանշել որ վերոհիշյալ վկայության մեջ «ազատ»-ներից հետո հիշատակված հեծելազորը, հավանորեն, ռամիկներից կազմված «այրուձին» է, որ գոյություն ուներ արդեն մարզպանության շրջանում։ Ուշագրավ է, որ այս հեծելազորը, որն ազատ էր հարկերից, ինչպես և «ազատ»-ներն ու քահանաները ստանում էր Օմայաններից հատուկ ռոճիկ՝ տարեկան հարյուր հազար դահեկան[3] (= մոտ 550.000 ոսկի ռուբլի)։*

---

*1 Տե՛ս «Սամուել քահանայի Անեցւոյ, Հաւաքմունք ի գրոց պատմագրաց», Վաղարշապատ 1893, էջ 82։*

*2 Տե՛ս Հ. Մանանդյան, «Նյութեր Հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության», 2-րդ, Երևան 1928, էջ 29, ծան. 6։*

*3 Հմմտ. «Հաւաքումն պատմութեան Վարդան Վարդապետի», Վենետիկ 1862, էջ 74 (գլ. ԼԹ)։ Վերոհիշյալ 100,000-ի գումարը ոմանք հայ բանասերներից ենթադրել են դրամ կամ դիրհեմ։ Այդ կարծիքը պարզապես սխալ է։*

Միանգամայն պարզ է, ուրեմն, որ Օմայանների ժամանակ ոչ միայն ծանր չեն եղել Հայաստանից ստացվող հարկերը, այլև զգալի մասը հարկերի տրվել է որպես ռոճիկ հայկական հեծելազորին։

* *
*

Արաբական հարկային քաղաքականությունը հիմնական փոփոխման ենթարկվեց Հայաստանում Օմայանների իշխանության վերջին շրջանում Հեշմ խալիֆի ժամանակ (724—743 թ.)։ Իր թագավորության առաջին կամ երկրորդ տարում այս խալիֆը կարգադրել էր իր Հերթ զորավարին աշխարհագիր անել Հայաստանում և ավելացնել նրա հարկերը։ Այդ մասին կարևոր տեղեկություններ են հաղորդում Ղևոնդ պատմագիրը և Մովսես Կաղանկատվացին, որ կարևոր եմ համարում մեջ բերել ամբողջությամբ։

1. «Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի Հայոց»։ Գլ. ժէ, էջ 100 (հրատ. 1887 թ.)՝

«Եվ սա (Հեշմը) իր իշխանության առաջին տարում հղացավ մի վատ խորհուրդ՝ ուղարկեց մի ոմն զորավար, որի անունը Հերթ էր, աշխարհագիր անել Հայոց աշխարհում և ծանրացնել նրա հարկատվության ծառայության լուծը տեսակ տեսակ չարիքներով։… Եվ բազում վտանգ հասցրեց մեր աշխարհին մինչ այն աստիճան, որ բոլորը հառաչում էին ծանր նեղության պատճառով և ոչ ոք չէր կարող ազատվել հանրային վտանգից»։

(«Եւ սա յառաջնում ամի իշխանութեանն իւրոյ խորհուրդ վատ ի մէջ առեալ՝ առաքէր զոմն զօրավար, որում անուն էր Հերթ՝ աշխարհագիր առնել ընդ աշխարհս Հայոց վասն ծանրացուցանելոյ զանուր լծոյ ծառայութեան հարկատրութեան ազգի ազգի չարեօք… Եւ բազում վտանգ հասուցանէր աշխարհիս, մինչ զի ամենեցուն հառաչել ի վերայ անհանգիստ նեղութեանցն, յորմէ ոչ գոյր ապրել ումեք յանհնարին վտանգիցն»)։

2. «Մովսեսի Կաղանկատուացւոյ, Պատմութիւն Աղուանից աշխարհի», 3-րդ, ժէ, Մոսկվա 1860, էջ 258։

«Իսկ հարյուր յոթանասուն և չորս թվին Հայոց (մեր թվ. 725 թ.) ամառը անասունների կոտորածը եղավ և ձմեռը՝ Հերթի աշխարհագիրը, որն անթիվ պարտավորություններ հարկի տակ առավ մարդկանց, անասուններին և հողերի տարածությունները»։

> («Իսկ ի հարիւր եօթանասուն և չորս թուականութեանն Հայոց (ամ տեառն 725), յամառն մահ անասնոց եղև, և ի ձմերան՝ աշխարհագիրն Հերթի, որ էարկ զմարդ և զանասուն և զսահմանս երկրի ընդ հարկաւ անթիւ ծառայութեանն»)։

Մեջ բերված այս վկայություններից տեսնում ենք, որ 725 թվին հաշվառման էին ենթարկվել Հայաստանում մարդիկ, անասունները և հողերը։ Այս աշխարհագրից հետո վերանում էին պարզապես ֆեոդալական Հայաստանի հարկային նախկին արտոնությունները։ Հարկերը գանձվելու էին այնուհետև ոչ թե առաջվա նման տներից կամ երդերից, այլ մարդկանց ու անասունների թվի համեմատ և ըստ հողերի տարածության ու, հավանորեն, նաև որակի։ Նախկին երդահարկի բնույթը հիմնովին այժմ փոխվում էր և սկիզբ էր դրվում գլխահարկի, անասնահարկի և հողահարկի նոր սիստեմի, որը շուտով կատարյալ աղետ դառավ ամբողջ երկրի և, մանավանդ, հարկատու ռամիկ ժողովրդի համար։

Արաբական հարկային այս ծանր լուծն էր, որ 8-րդ դարում ոտքի հանեց հարստահարված երկիրը և հիմնական պատճառը եղավ ժողովրդական կատաղի ապստամբությունների ընդդեմ խալիֆայության։



Ութերորդ դարի կեսերին արաբական խալիֆայության մեջ տեղի ունեցավ քաղաքական մեծ հեղաշրջում։ 748 թվին սկսվեցին նրա մեջ ներքին խռովություններ և 750 թվին, համառ ու արյունահեղ երկարատև կռիվներից հետո, սպանվեց Օմայան տոհմի վերջին խալիֆը, Մրվանը, և իշխանությունն անցավ Աբբասյանների և Իրաքի արաբների ձեռքը։

Այս խռովությունների ժամանակ հայկական նախարարություններն ուզեցին թոթափել արաբական լուծը և ապստամբեցին Գրիգոր Մամիկոնյանի առաջնորդությամբ՝ հույս ունենալով օգնություն ստանալ Բյուզանդիայից։ Սակայն ապստամբությունը գլուխ չեկավ։ Աշոտ Բագրատունին, Հայաստանի իշխանն ու պատրիկը, որին ստիպել էին մասնակից լինել ապստամբության, ինչպես և նախարարների մի մասը, բաժանվեցին շուտով Գրիգոր Մամիկոնյանից ու նրա կողմնակիցներից և հպատակվեցին հոժարակամ արաբներին։

Աբբասյանների իշխանության հաստատումից հետո դրությունը Հայաստանում դառավ անտանելի։ Աբբասյան հարստության հիմ-

նադիրը՝ Աբուլաբաս ալ-Սաֆֆահը (750—754 թ. թ.) Հայաստան ուղարկեց որպես կառավարիչ իր եղբորը՝ Աբու-Ջաֆար ալ-Մանսուրին։ Սրա կառավարման ժամանակ Հայաստանի հարկատու ժողովրդի մեծագույն մասը մատնվեց հետին ծայր չքավորության։ Ոչ միայն չափազանց ավելացրին հարկերը, այլ պահանջում էին այժմ նաև նախկին երեք տարվա հարկերը, որոնք խալիֆայությանը չէին վճարված նախարարական ապստամբության ամբողջ տևողության ընթացքում։

Ղևոնդ պատմագիրը վկայում է, որ ալ-Մանսուրը պահանջում էր հարկ մինչևիսկ մեռելներից, ուստի և հրամայել էր քահանաներին ներկայացնել վախճանվածների ու նրանց ընտանիքների ցուցակները։ Այս վկայությունը, որ լավ չէ հասկացվել, իմ կարծիքով, պարզ է ու հասկանալի։ Ալ-Մանսուրը կարգադրել էր, ըստ իս, գանձել ժառանգներից մեռածների գլխահարկը, որն ապստամբության պատճառով խալիֆայությունը չէր ստացել նրանց կենդանության ժամանակ։ Փախչել մի այլ շրջան և ազատվել հարկերից անկարելի էր, որովհետև Աբբասյանները հնարել էին ստուգման ու վերահսկողության հատուկ մի միջոց։ Որպեսզի կարողանան հայտնաբերել հարկ չվճարողներին՝ ալ-Մանսուրը հրամայել էր խարանել բոլորի վզերը, որոնք վճարել էին գլխահարկը՝ կապարե կնիքներով։ Ութերորդ դարի ասորական ժամանակագիր Դիոնիսիոս Տելմահրացու վկայությամբ՝ Միջագետքում կառավարչական հատուկ պաշտոնյաները խարանում էին երբեմն, ստրուկների նման, հարկահատույցների ոչ միայն վզերը, այլ նաև երկու ձեռքերը, կուրծքերը և կռնակները[1]։

Հարկային ծանր այդ լուծը, ինչպես և հարկահանների հալածանքներն ու բռնությունները, ցայտուն կերպով նկարագրված են Ղևոնդի պատմության հետևյալ վկայության մեջ.

«Եվ տիրեց նրա (Մրվանի) տեղ Աբդլան, որն ուղարկեց եղբորը, մյուս Աբդլային, իր տերության բոլոր երկրները։ Սա, գալով նախ հայոց աշխարհը՝ բազում վշտով ու նեղությամբ վտանգեց ամենքին և հասցրեց չքավորության և տնանկության. մինչևիսկ պահանջեց հարկեր նաև մեռելներից։ Նմանապես և որբերի ու այրիների ամբողջ բազմությունը նա չարաչար տառապեցրեց։ Տանջեց նույնպես աստվածային խորանի քահանաներին ու պաշտոնյաներին, ենթարկելով նրանց խոշտանգանքների, ծեծի ու խայտառակ ճիպո-

---

[1] Տե՛ս «Cronique de Denys de Tell-Mahre» 1895, էջ 104։

տահարությանն և պահանջելով, որ նրանք հայտնեն վախճանվածների ու նրանց ընտանիքների անունները։ Խոշտանգում էր նաև երկրի բնակիչներին ամենաբռնի ու դաժան հարկապահանջությամբ և, առնելով ամեն մի գլխից բազում դրամ արծաթի՝ դնում էր բոլորի պարանոցներին կապարե կնիք»։

(«Եւ տիրէ ընդ նորա Աբդլլայ, և առաքէ զեղբայր իւր զՄիւս Աբդլլայ շրջել ընդ ամենայն աշխարհս իշխանութեանն իւրոյ։ Որ նախ եկեալ յաշխարհս Հայոց՝ բազում վշտօք և նեղութեամբ վտանգէր զամենեսին և հասուցանէր ի չքաւորութիւն տնանկութեան, մինչև պահանջել հարկս և ի մեռելոցն։ Եւ զամենայն բազմութիւն որբոց և այրեաց չարալլուկ տառապեցուցանէր. վտանգէր զքահանայս և զպաշտօնեայս աստուածային խորանին խոշտանգանօք և քքօք այպանութեան և գանիւք՝ ի յայտ ածել զանուանս վախճանելոցն և զընտանիս նոցուն։ Խոշտանգէր և զբնակիչս աշխարհիս բռնագոյն և դառն հարկապահանջութեամբ, առնուլ ըստ գլխոյ բազում զուզէս արծաթոյ, և դնել կնիք կապարեայ յամենեցուն պարանոցս»[1]։

Միայն Հայաստանը չէր, որ հարկապահանջության տաժանելի օրեր ապրեց այս ժամանակաշրջանում։ Ալ-Մանսուրը, ինչպես հաղորդում է Ղևոնդը, Հայաստանից անցավ խալիֆայության մյուս երկրները և, ծանրացնելով ամենուրեք հարկային լուծը, այնտեղ ևս նույն դաժանությամբ հավաքեց հարկերը։ Նրա անսահման արծաթասիրության և ագահության պատճառով էր, որ անգամ յուր ազգը նրան անվանում էր «հայր» կամ «Աբդուլ դանգի», այսինքն՝ ծառա ու մեծարող միմիայն դրամի։

Ալ-Մանսուրի Հայաստանից հեռանալուց հետո, նրան հաջորդող Եզիտ, Բագար ու Հասան կառավարիչների ժամանակ՝ հարկային լուծը Հայաստանում ոչ միայն չթեթևացավ, այլ ավելի ևս ծանրացավ։ Աբբասյանները կարիք ունեին դրամական մեծ միջոցների պալատական իրենց շռայլ ու շվայտ ապրուստի համար։ Մեծ գումարներ էին հարկավոր նաև նոր հիմնված Բաղդադ քաղաքի շինության համար։ Հասկանալի է, ուրեմն, որ այս պայմաններում, ծանրանալու էր օրավուր ինչպես Հայաստանի, նույնպես և խալիֆայության մյուս երկրների, գլխավորապես, աշխատավոր բնակչության դրությունը։ Աբբասյանները վստահություն չունեին անգամ իրենց արաբական ու պարսկական հպատակների վրա։ Սրանք

[1] Տե՛ս «Պատմութիւն Ղևոնդեայ», Ս. Պետերբուրգ, 1887, գլ. ԻԸ, էջ 127։

պետության զանազան մասերում շարունակ ոտքի էին ելնում ու ապստամբում։ Խալիֆների իշխանության գլխավոր հենարանը ոչ թե իրենց սեփական ժողովուրդն էր, այլ Խորասանից բերված վարձկան թուրք զորքերը, որոնց նույնպես անհրաժեշտ էր տալ սնունդ և ռոճիկ։

* *
*

Ալ-Մանսուրի անմիջական հաջորդ՝ Եզիտ ոստիկանի իշխանության ժամանակ դրությունը Հայաստանում դառել էր ծայրահեղորեն աղետալի։ Դառն ու բռնի հարկապահանջության պատճառով երկիրը բոլորովին ուժասպառ էր եղել ու արյունաքամ։ Ինչպես վկայում է Ղևոնդը (գլ. ԼԲ), Հայաստանում նվազել էր և գրեթե վերացել դրամն ու արծաթը։

Հնչյուն փողի այս հատնումը, ինչպես մատնացույց է արված «Հայաստանի առևտուրը և քաղաքները» ռուսերեն իմ աշխատության մեջ[1], չպետք է վերագրել միայն չափազանց հարկատվության, այլ, գլխավորապես, պետք է բացատրել նաև նրանով, որ արաբական տիրապետության ժամանակ Հայաստանի տնտեսական կյանքը զգալի չափով հետադիմել էր և զարգանում էր բնական տնտեսության հետադարձ հիմքերի վրա։

Դրամի և թանկարժեք մետաղների պակասման ու հատնումի հետևանքով անսահման բարձրանալու էր, իհարկե, նրանց արժեքը։ Նույն այս ժամանակ, ինչպես վկայում է իր ժամանակագրության մեջ Միքայել Ասորին[2], Միջագետքում՝

> «Ջափրի (այսինքն՝ ալ-Մանսուրի) չարաչար ագահության պատճառով այն աստիճան պակասեց արծաթը, որ եզն ու էշը ծախում էին մեկ դրամի և տղաները տալիս էին պահանջողներին 5 դրամի»[3]։
>
> («Իսկ չարաչար ագահութէնէն Ջափրի այնչափ պակասեաց արծաթն, զի զեզն և զէշ դրամի միոյ վաճառէին, և զտղայն հինգ դրամի տային պահանջողացն»)։

---

[1] Տե՛ս «О Торговле и городах Армении», էջ 133—136։

[2] Տե՛ս «Ժամանակագրութիւն տեառն Միխայէլի Ասորւոց պատրիարքի», Երուսաղեմ 1871, էջ 352։

3. Ուշագրավ է, որ արաբական տիրապետության ժամանակ ստրուկների թիվը խիստ մեծ էր։ Խալիֆ Մուավիան ունեցել է, օրինակ, միմիայն Արաբիայի իր կալվածներում 4000 ստրուկ։ Ոմանք ունեցել են մինչևիսկ ավելի քան 10.000 ստրուկ։ Մեծ գին ունեին, մանավանդ ստրուկ արհեստավորները։

Շատերը, ասում է նա (էջ 352), փորում էին գերեզմանները և փնտրում ոսկի ու արծաթ, որպեսզի վճարեն իրենց հարկերը։

Նման դրություն, ինչպես երևում է նաև հայ մատենագիրների վկայություններից, ստեղծվել էր նաև Հայաստանում։

«Հատեցրեց (Եզիտը),— ասում է Ղևոնդը[1],— արծաթի գյուտը երկրից և հնարավոր չէր որևէ մեկին, տալով յուր գույքը և կարողությունը, ձեռք բերել իր անձի փրկության գինը։ Չարաչար չարչարանքով, գելոցով, կախաղանով և դառն տանջանքներով կեղում էին մարդկանց կյանքը։ Ուստի և շատերը, փախչելով այրերը և երկրի փապարները՝ թաղվում էին ու թաքնվում։ Ոմանք էլ ձյունախեղդ էին լինում և գետն էին իրենց ձգում անտանելի աղետի պատճառով»։

(«Զի վախճանեաց զգիւտ արծաթոյ ի յերկրէս, և ամենայն որ տալով զպաճարանս ընչից իւրեանց՝ ոչ գտանէին զգինս փրկանաց անձին իւրեանց. և չար կտտանօք, գելարանօք, և կախաղանօք և դառն տանջանօք կեղէին զկեանս մարդկան։ Յորմէ փախստեայ եղեալ բազումք յայրս և ի փապարս երկրի՝ ղօղեալ թագչէին. և ոմանք ձիւնահեղձ և գետավէժ լինէին վասն անտանելի աղետիցն»)։

Անհրաժեշտ է նույնպես մատնանշել, որ առաջին Աբբասյանների ժամանակ ոչ միայն անչափ ծանրացել էին Հայաստանի հարկերը, այլև սկիզբ էր դրվել նաև նախարարական ինքնավար կարգերի ու նախկին արտոնությունների ոչնչացման։ Ղևոնդի վկայությամբ (գլ. ԻԸ)՝ Աբբասյանները կարգադրել էին, որ հայկական հեծելազորի ռոճիկը պետք է վճարե ոչ թե խալիֆայությունը, ինչպես այդ սահմանել էին Օմայանները, այլ իրենք՝ հայ իշխանները։ Այսպիսով, ասում է Ղևոնդը, հեծելազորի պարտադիր ծառայությունը դառել էր «զրավաստակ աշխատութիւն»։

Պարզ է, որ հալածանքի նոր այս պայմաններում՝ խալիֆ ալ-Մանսուրը այլևս չէր կարող վստահություն ունենալ հայ նախարարների վրա։ 770 թվին նա Հասան ոստիկանի հետ թուրքական զորքեր ուղարկեց Հայաստան։

Այս վայրագ ու արյունարբու վարձկանները, որոնք ավերածությունների ու թալանի առիթ էին փնտրում՝ զազրելի բռնություններ գործեցին Հայաստանի բնակչության անխտիր բոլոր խավերի վերաբերմամբ։ Երկիրը մատնվեց այժմ սովի, սրի ու սարսափի։

---

[1] Տե՛ս Մալխասյանցի և Եզյանցի հրատարակությունը, Ս. Պետերբուրգ 1887, գլ. ԼԴ, էջ 135։

Եվ շուտով արաբական տիրապետության դեմ բռնկվեց ընդհանուր ապստամբություն, որին մեծ չափով մասնակցում էին նաև ռամիկները։

* *
*

Այս ապստամբությունը, որի մասին մանրամասն տեղեկություններ է հաղորդում Ղևոնդը, ուներ պարզապես ազատագրական բնույթ։ Նրա ճիշտ տարին, որը պատմագիտական երկերում, մեծ մասամբ, սխալ է տրվում, որոշվում է, ինչպես ցույց է տվել Ալիշանը[1], 774 թվին։

Հուսահատված նախարարները, վկայում է Ղևոնդը,

«Երբ տեսան որ մեծ վտանգ է իրենց վրա հասել՝ մահն աչքի առաջ ունեցան և ձեռնամուխ եղան մի գործի, որը չէր կարող հաջողություն ունենալ, որովհետև իրենք քիչ էին թվով։ Սակայն նրանք լավ համարեցին քաջությամբ մեռնել, քան ապրել տաժանալից»։

(«Իբրև տեսին նախարարք Հայոց զվտանգ տարակուսանացն հասեալ ի վերայ ինքեանց՝ եդին զոգի ի ձեռին իւրեանց և ձեռնամուխ եղեն յիրս, զոր ոչ կարէին վճարել վասն զի նուազունք էին։ Այլ սակայն լաւ համարեալ զմահ քաջութեամբ քան զկեանս վտանգաւոր՝ ձեռնամուխ եղեն յիրս ապստամբութեան»)[2]։

Ինչպես և գրեթե միշտ՝ շարժման դրդողը և ղեկավարը եղան Մամիկոնյանները։ Ազատագրական ապստամբությունների առաջնորդ լինելը նրանք կարծես թե համարում էին իրենց տոհմային պարտականությունը։

Առաջինը գլուխ բարձրացրեց արաբական բռնությունների դեմ Արտավազդ Մամիկոնյանը։ Նա եկավ Դվին, որը արաբական իշխանության վարչական կենտրոնն էր, արտաքուստ ցույց տվեց իրեն մտերիմ ու հավատարիմ և զինեց ու հանդերձեց այստեղ իր զորքը, պատրվակ բռնելով, որ նախապատրաստություններ է տեսնում կռվի համար խալիֆայության թշնամիների դեմ։ Դվինից Արտավազդը շտապեց գնալ Կումայրի (=Լենինական), սպանեց այնտեղ հարկերի հրամանատարին և, վերցնելով նրա հավաքած հար-

---

[1] «Այրարատ», Վենետիկ 1890, էջ 525։

[2] Տե՛ս Հրատարակություն Մալխասյանցի և Եզյանցի, Ս. Պետերբուրգ 1887, էջ 137—138։

կերը՝ գնաց իր ընտանիքի ու այլ նախարարների հետ Եգերացոց աշխարհը, որը գտնվում էր Բյուզանդիայի գերիշխանության տակ։

Չորս տարի հետո, 778 թվին, նույն այս Արտավազդը, որին Բյուզանդական կայսրը նշանակել էր ստրատեգ և կառավարիչ Անատոլիկոն թեմի՝ կարողացավ սոսկալի վրեժ առնել արաբներից և, գործակցությամբ բյուզանդական երեք նշանավոր հայ զորավարների՝ Տաճատ Անձևացու, Վարազտիրոցի և Գրիգորիոսի՝ մեծ ջարդ տվեց և սաստիկ հարված հասցրեց նրանց Գերմանիկե քաղաքի մոտ՝ Կոմմագենում։

Շուտով Արտավազդի օրինակին հետևեց Մուշեղ Մամիկոնյանը, որը կոտորեց արաբներին, որոնք գտնվում էին նրա գավառում, և, գաղթելով ամբողջ իր տնով Կաղզվանի շրջանը՝ ամրացավ Արտագերս բերդում։ Այստեղից նա ասպատակեց Բագրևանդ գավառը, կոտորեց հարկահավաքներին ու արաբական զորամասերը և դադարեցրեց հարկերի պահանջումը և բռնությունները։ Մուշեղի մոտ, ինչպես վկայում է Ղևոնդը (գլ. ԼԴ, էջ 139), հավաքվեցին բոլոր ճնշվածներն ու հարստահարվածները։ Արաբական զորքերը, որոնց ուղարկել էին նրա դեմ Կարինից և Դվինից, ոչ միայն հաջողություն չունեցան, այլև մեծ ջարդ կրեցին ու մատնվեցին փախուստի։

Այնուհետև գրեթե բոլոր մյուս նախարարները ևս, Մուշեղի հաջողություններից սիրտ առած միացան նրան իրենց զորքերով և ապստամբությունը դարավ համատարած ու ընդհանուր։ Ազատագրական այս շարժմանը մասնակցում էր նույնպես ռամիկ ժողովրդի բազմությունը։

Ահաբեկված արաբները, որոնց գլխավոր հենակետերը Հայաստանում քաղաքներն էին՝ Դվինը, Կարինը, Արճեշը և այլ քաղաքավայրերը, ստիպված եղան պատսպարվել այդ ամրություններում։ Եվ հայերը, արաբական ծանր լծից ազատվելու համար՝ պետք է աշխատեին, բնականաբար, գրավել թշնամու այդ կայանները։ Նրանք հարձակվեցին նախ գլխավոր ռազմակայաններից մեկի՝ Կարին քաղաքի վրա, որը սահմանամերձ էր Բյուզանդիային, և, շրջապատելով քաղաքը, սկսեցին պաշարողական կանոնավոր ու երկարատև գործողություններ՝ փորեցին խրամատներ ու աշխատեցին պարիսպների տակ ականներ անցկացնել։

775 թվի գարնան սկզբին ոտքի կանգնեցին արաբների դեմ Վասպուրականում Արծրունյաց ու Ամատունյաց նախարարները և ուզեցին հարձակվել արաբական նաև մի այլ մեծ կենտրոնավայրի՝ Արճեշ քաղաքի վրա։ Նրանք հավաքել էին իրենց հեծյալ ջոկատները, որոնց ուղեկցում էին նաև հետիոտն ռամիկները, Բերկրի

գյուղի մոտ։ Սակայն հարձակումը դեռ չսկսված՝ Հայաստան խուժեցին հարավից, Խլաթ քաղաքի վրայով, խալիֆայության 30.000 ընտիր խորասանյան զորքերը Ամր զորավարի առաջնորդությամբ։

Աշոտ Բագրատունին, որը չէր միացել ապստամբության, նախազգուշացրեց նախարարներին վերահաս վտանգի մասին։ Սակայն ապստամբները, համարելով այդ նախազգուշացումը նենգություն՝ վճռեցին հարձակվել Արճեշի վրա։ Բայց այստեղ Ամրի զորքերը, որոնք դարան էին մտել, գրոհեցին նրանց վրա և, մտնելով հեծելազորը փախուստի, կոտորեցին, գլխավորապես, անզեն ու կռվի անվարժ հետիոտն ռամիկներին։ Նախարարներից սպանվեցին, ինչպես վկայում է Ղևոնդը, միայն չորս հոգի, երեքը Տրունյաց տոհմից և մեկը Ուրծայ գյուղից։

Ղևոնդ պատմագրի մոտ մատնանշված է Արճեշի կռվի ամսաթիվը և օրը՝ «յամսեանն հրոտից, որ օր չորրորդ էր ամսոյն յաւուր շաբաթու» (գլ. ԼԴ, էջ 147)։ Համաձայն այս վկայության՝ կռվի թվականը, ամսաթիվը և օրը տոմարական հաշիվների օգնությամբ ճշտիվ որոշվում է 775 թվի ապրիլի 15-ին, շաբաթ։

Մինչդեռ այս անցքերը կատարվում էին Արճեշի մոտ, պաշարված Կարինը, որի մեջ սաստկացել էր սովը, արդեն մոտ էր անկման։ Սակայն Ամր զորավարի հաղթության լուրը վհատեցրեց ու լքում առաջ բերեց քաղաքը պաշարողների շարքերում։ Ապստամբության ձախողումը և հետահաս տխուր վախճանը ակներև էին։ Հայերն ունեին Կարինի մոտ ընդամենը մոտ 5000 կռվող, որոնց մեծ մասը կազմում էին հետևակ ու թեթև զինված ռամիկները, մինչդեռ Ամրը գալիս էր նրանց դեմ, ունենալով իր հետ 30.000 լավ զինված հեծելազոր։

Հայկական փոքրաթիվ զորքը, ինչպես վկայում է Ղևոնդը, կարող էր հեշտությամբ խույս տալ թշնամու հետ ընդհարվելուց, որը վեց անգամ ավելի զորավոր էր։ Բյուզանդիայի արևելյան սահմանները, ինչպես հայտնի է, հեռու չէին Կարին քաղաքից։ Սակայն ապստամբները, ասում է Ղևոնդը,—

> «Լավ համարեցին մեռնել, քան տեսնել իրենց երկրի կորուստը... և թեպետ իրենք թշնամիների թվից ավելի քիչ էին՝ ինքնակամ հոժարությամբ ենթարկեցին իրենց կյանքը վտանգի և, ժողովելով իրենց զորագնդերը, մոտ 5000 հոգի՝ գնացին Կարին քաղաքից և անցան Բասենի վրայով Բագրևանդ գավառը»։

(«Սակայն լաւ համարեցան զմահ անձանց քան տեսանել զկորուստ աշխարհիս... Թէպետև նուազունք էին քան զթիւ

*թշամեացն՝ ինքնակամ յօժարութեամբ դիմեցին ի վիշտն. և ժողովեալ զգունդս իւրեանց իբրև արս ԵՌ՝ գնացին ի քաղաքէն Կարնոյ, անցանէին ընդ սահմանս Բասենոյ ի գաւառն Բագրևանդ»)*[1]։

*Երկու բանակների ճակատամարտը տեղի ունեցավ Բագրևանդ գավառում, Արածանի գետից դեպի հարավ, Արձնի գյուղի մոտ։ Սկզբում հայկական զորքը կատաղի կերպով հարձակվեց թշնամու գերազանց ուժերի վրա և կարողացավ շփոթություն առաջ բերել նրա շարքերում։ Սակայն շուտով Ամրի զորքերը ընկան հայերի աննշան ուժերի վրա և, մտնելով նրանց փախուստի՝ կոտորեցին մեծ մասը, գլխավորապես ռամիկ ժողովրդին։ Անվանի նախարարներից ընկան պատերազմի դաշտում Սմբատ Բագրատունի սպարապետը, նրա բարձակիցը և նիզակակիցը՝ Սահակ Բագրատունին, Մամիկոնյաններից՝ Մուշեղ զորավարը և Սամուելը, նաև Վահան Գնունին և ուրիշները։ Ապստամբությունը ճնշելուց հետո՝ արաբական զորավարն ասպատակներ սփռեց Բագրևանդի ու նրա սահմանակից գավառների շրջաններում և ենթարկեց այդ երկրներն ավերածության ու կողոպուտի։*

*Ղևոնդի վկայությամբ՝ ճակատամարտը Բագրևանդում Արձնի գյուղի մոտ տեղի էր ունեցել, ինչպես և Արճեշի կռիվը՝ հայկական հրոտից ամսում՝ «ի նոյն ամսեանն ի՛ հրոտից ի ԺԴ յաւուր երկուշաբաթւոջ»*[2]*։ Համաձայն տոմարական պարզ հաշիվների՝ այս վկայության մեջ պետք է ուղղել ԺԴ (=14) թիվը և կարդալ «ի հրոտից ի ԺԳ (=13)»։ Այսպիսով ստացվում է ճշտիվ այս ճակատամարտի տարեթիվը, ամսաթիվը և օրը՝ 755 թվի ապրիլի 24-ին, երկուշաբթի*[3]։

*775 թվի ընդհանուր ազատագրական ապստամբությունը Հայաստանում պետք է համարել, անշուշտ, հայ ժողովրդի ամենամեծ հերոսամարտերից մեկը։ Մեռնել քաջությամբ և չթողնել իր հայրենի երկիրը՝ այդ եղել է միշտ նշանաբան հերոս ու քաջարի ժողովուրդների։*

---

[1] *Տե՛ս հրատ. Մալխասյանցի և Եզյանցի, Ս. Պետերբուրգ 1887, գլ. ԼԴ, էջ 148։*

[2] *Նույն տեղը, էջ 151։*

[3] *Արճեշի և Արձնիի կռիվների թվականը պատմագիտական երկերում, մեծ մասամբ, սխալ է որոշված։ Տարեթիվը ճիշտ է ցույց տրված Ալիշանի «Այրարատ»-ում (էջ 525)։ Սակայն նրա մոտ ամսաթիվը որոշված է սխալմամբ ապրիլի 25-ին։*

* *
*

775 թվի ապստամբության ճնշումից հետո՝ Հայաստանի պատմությունը ութերորդ դարի վերջին քառորդում անընդհատ մի ժամանակագրություն է պարբերական կոտորածների ու գաղթի, ծանր հարկապահանջության ու ավազակային կողոպուտների և ամեն տեսակ բռնությունների ու հալածանքների։

Արճեշի ու Արծնիի ճակատամարտերից հետո՝ ապստամբած հայ նախարարների ընտանիքները, գլխավորապես Բագրատունիները և Մամիկոնյանները, ստիպված եղան լքել ու թողնել իրենց կալվածները Բագրևանդում ու հարավ-արևմտյան Հայաստանում և փախչել կամ Բյուզանդիա և կամ Հայաստանի լեռնային ամուր ու անմատչելի արևմտյան շրջանները, որոնք մոտ էին կամ սահմանակից Բյուզանդական կայսրության։

Լքված վայրերում նախարարական կալվածներն անցան հետզհետե, գլխավորապես, մահմեդական ու արաբ էմիրների և կալվածատերերի ձեռքը, որոնք իրենց նոր կալվածներում բնակեցնում էին, մեծ մասամբ, Հայաստան ներգաղթած արաբական ցեղեր։ Ութերորդ դարի վերջում և իններորդ դարի սկզբներում Հայաստանի այս մասերում կազմվեցին մահմեդական երկու մեծ ու հզոր իշխանություններ՝ Մանազկերտի ու Արզնի ամիրայությունները։ Այժմ արդեն սկսել էին աստիճանաբար քայքայվել նախարարական նաև այլ շրջանները, և Հայաստանի մեծագույն մասի մեջ հետզհետե տեր ու տնօրեն էին դառել մահմեդական ու արաբ իշխանավորները։

Նկարագրելով այս ժամանակաշրջանի պատմական անցքերը՝ Հովհաննես Դրասխանակերտցին տալիս է հայ նախարարությունների քայքայման մասին հետևյալ կարևոր վկայությունը.

> «Եվ որովհետև,— ասում է Դրասխանակերտցին,— հագարացիները վերցրին ու բոլորովին տեր դառան Հայաստանին, իսկ երկրի մեծամեծները պակասեցին և մնացածները թաքնվել էին, ծառայելով նրանց լծի տակ՝ դրա համար էլ մեր պատմության այս մասում քիչ են զրույցները մեր իշխանների մասին։ Եվ եթե թերևս որևէ մի բան գտնվի՝ թող քեզ բավական լինի այն, ինչ որ ինձնից առաջ պատմել է Շապուհ պատմագիրը»։
>
> («Եւ վասն զի սպառսպուռ Հագարացիքն տիրեցին կալան զՀայաստանեայսս և մեծամեծք աշխարհիս նուազեցան, և մնացեալք ղօղեալ դադարեալ կային ընդ լծով ծառայութեան նոցա. սակս այսորիկ իսկ յայսմ վայրի պակասեաց ի Պատ-

մութենէ սատի գրոյցք իշխանաց մերոց, բայց եթէ գուցէ գտցի ինչ՝ բաւական քեզ բերցի նախ քան զմեզ պատմեալն ի Շապհոյ պատմագրէ»)[1]։

Ուշագրավ տեղեկություն է հաղորդում նմանապես Ղևոնդ պատմագիրը հայ ռամիկ ժողովրդի ողորմելի վիճակի մասին ութերորդ դարի վերջերում։ Նշելով մոտ 12.000 հայերի, գլխավորապես ազնվականների ու հեծյալների, գաղթը Հայաստանից Բյուզանդիա Շապուհ Ամատունու առաջնորդությամբ (հավանորեն 791 թ.)՝ Ղևոնդը պատմում է, որ

«ժողովրդի կեսը, որ մնացել էին երկրում՝ սաստիկ կարոտության պատճառով անձնատուր եղան ստրկական ծառայության և դարան նման գաբավոնացիներին փայտ կտրողներ և ջուր բերողներ»։

(«Իսկ կէսք ժողովրդեանն որք մնացին՝ առ սաստիկ կարօտութեանն անձնատուրք եղեն ի ծառայութիւն ստրկի, փայտակոտորք և ջրաբերք ըստ նմանութեան Գաբաւոնացւոց»)[2]։

Ինչպես տեսնում ենք վերոհիշյալ և նման վկայություններից, 775 թվի անհաջող ապստամբությունից հետո հայկական նախարարությունները ոչ միայն մեծ չափերով զրկվել էին իրենց ինքնավարական իրավունքներից ու արտոնություններից, այլև, կորցնելով ռազմական ու դիմադրական նախկին իրենց ուժը, սկսել էին արդեն նվաղել ու քայքայվել։

Գտնվելով ծանր կացության մեջ՝ հայկական բարձր ազնվականությունը, պահպանելու համար իր կալվածներն ու արտոնված դրությունը, հարկադրված էր այժմ հարմարվել ու համակերպվել տիրողներին։ Ոմանք նրանցից, ինչպես, օրինակ, Մեհրուժան Արծրունին, ընդունել էին մահմեդական կրոնը։ Ութերորդ դարի վերջին հինգ քառորդից սկսած հայկական բարձր ազնվականությունն աշխատում էր բարեկամանալ ու խնամիանալ արաբական էմիրների ու իշխանավորների հետ խառն ամուսնությունների միջոցով։ Համակերպման որոշակի նշաններ կարելի է համարել նաև այն, որ այս ժամանակներից սկսած հետզհետե սովորական էին դառնում հայ ազնվականների շրջանում նրանց արաբականացրած անունները, ինչպես՝ Աբուլ-Աբաս, Աբու-Մրվան, Աբու-Սահակ, Աբու-Մուսե և այլն։

---

[1] Տե՛ս «Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ, Պատմութիւն Հայոց», Թիֆլիս 1912, էջ 111։

[2] Տե՛ս վերոհիշյալ 1887 թվի հրատարակությունը, գլ. ԽԲ, էջ 169։

Հայկական ֆեոդալիզմն ապրում էր, ըստ իս, ութերորդ դարի վերջերում, ավերումների, փախուստի, մեծ գաղթերի ու երկրի ամայացման վերոհիշյալ խռովահույզ շրջանում, իր ծանր հոգեվարքը։ Թվում էր, որ նրա վերջնական քայքայումն անխուսափելի է։ Սակայն շուտով, իններորդ դարի առաջին հենց կիսում, նրա վերակենդանացման համար ստեղծվեցին հանկարծ քաղաքական միանգամայն նպաստավոր ու նոր պայմաններ։ Իններորդ դարում նա հետզհետե ոչ միայն նորից ուժեղացավ, այլև ապրեց Բագրատունյաց թագավորության շրջանում տնտեսական ու քաղաքական բուռն ու աննախընթաց վերելքի շրջան։

* *
*

Նախարարական Հայաստանի վերստին զորեղացմանը մեծապես նպաստեցին խալիֆայության մեջ ծայր առած խռովություններն ու ներքին պատերազմները, որոնք գրեթե անընդհատ էին դառել իններորդ դարից սկսած։

Բագրատունիները, որոնք 775 թվի ապստամբությունից հետո ապավինել էին Հայաստանի լեռնային արևմտյան շրջանները և գտնվում էին այստեղ Բյուզանդիայի հովանավորության տակ, ուշիուշով հետևում էին քաղաքական անցքերին խալիֆայության սահմաններում։

793—794 թվականներին Պարթավում և Փայտակարանում բռնկվեց պարսիկ աղանդավորների մեծ ապստամբությունն Ատա ալ-Մոկաննայի առաջնորդությամբ։ Ապստամբները ոչ միայն կարողացան մի քանի անգամ պարտության մատնել իրենց դեմ ուղարկված արաբական ոստիկաններին, այլև իրենք հարձակման դիմեցին ու մոտ չորս ամիս պաշարեցին Հայաստանում Դվին քաղաքը։ Նկարագրելով այս անցքերը՝ արաբական մատենագիր Յակուբին իր «Պատմության» մեջ առանձնապես մատնանշում է, որ այնուհետև «Հայաստանի ուժը զորացավ»[1]։

Ներքին մեծ խռովություններին զուգընթաց վերսկսվեցին այն ժամանակ կատաղի ու անվերջ պատերազմները խալիֆայության ու Բյուզանդիայի և խալիֆայության ու խազարների միջև։ Այս պայմաններում հայկական նախարարությունների մինչևիսկ հյուծված ու թուլացած մնացորդները ստանում էին, բնականաբար, քաղաքական որոշ կշիռ ու նշանակություն։ Բագրատունիները, մանա-

[1] Տե՛ս Մարկվարտ, Բագրատունիների ծագումը, Վիեննա 1915, էջ 38։

վանդ նրանք, որոնք ապաստան էին գտել Բյուզանդիայի սահմանամերձ լեռնային շրջաններում—Սպերում, Տայքում ու Կղարջքում—և բարեկամություն էին հաստատել կայսրության հետ, կարող էին այժմ առանձնապես վտանգավոր լինել խալիֆայության համար։ Ուստի և խալիֆ Հարուն ալ-Ռաշիդը (785—809 թթ.) հարկադրված եղավ վարել նրանց հանդեպ մեղմ ու զիջող քաղաքականություն։

Հենց այս Հարուն ալ-Ռաշիդի ժամանակ Բագրատունի Աշոտ Մսակերը, Արձնիի կռվում սպանված Սմբատ սպարապետի որդին, կարողացավ մասամբ դրամով և մասամբ զենքով հաստատել իր իշխանությունը Տայքում, Արշարունիքում, Շիրակում և Աշոցքում։ Նոր գրավված այս շրջաններում Բագրատունի այս ճյուղի կենտրոնը դառավ նախ Բագարանը՝ Ախուրյան գետի վրա, իսկ հետո՝ «Երազգավորք-Շիրակավանը»։ 806 թվին Հարուն ալ-Ռաշիդը կարգեց Աշոտ Մսակերին իշխան Հայաստանի, և այնուհետև Աշոտն իր նվաճումները շարունակեց ավելի մեծ հաջողությամբ։

Հայաստանում խիստ ուժեղացել էր այդ ժամանակ Մանազկերտի ամիրայությունը, որը գրավել էր Հայաստանի զգալի մասը և նպատակ էր դրել իրեն՝ հիմնել առանձին, խալիֆայությունից անկախ, մի մեծ պետություն և միացնել իր իշխանության տակ նախարարական հայ երկրները Վանա լճից մինչև Արաքս գետը։ Մանազկերտի ամիրաները, որոնք ծագում էին Ասորիքի կայսիկների արաբական ցեղից և հայ մատենագրության մեջ անվանված են «Կայսիկք», ըստ երևույթին, անհաշտելի հակառակորդներ էին Իրաքի իշխող արաբական ցեղերին և Աբբասյաններին։ Իններորդ դարի առաջին քառորդում սրանք մի քանի անգամ ապստամբեցին Դվինի ու Պարթավի ոստիկանների դեմ, և Աշոտ Մսակերն ու նրա եղբայրը, Շապուհը, օգտվելով նաև այս խռովություններից, կարողացան ետ գրավել նրանցից ամբողջ Տարոնը։

Բագրատունիների և հայկական նախարարությունների ուժեղացման համար նպաստավոր եղան նմանապես և գահակալական համառ կռիվները խալիֆայության մեջ Հարուն ալ-Ռաշիդի որդիների՝ Մամունի և Էմինի միջև 809—813 թվերին։ Հայ նախարարները ժամանակին կարողացան անցնել Մամունի կողմը ու օգուտ քաղեցին և այս երկպառակություններից։

Ներքին այս խռովություններից մի քանի տարի հետո, 817 թվին, բռնկվեց արևելյան Անդրկովկասում պարսիկ աղանդավորների մեծ ապստամբությունը Բաբեկի առաջնորդությամբ, որն իրեն հռչակեց «Մահդի», այսինքն՝ աստվածային էության մարմնացում։ Այդ ահավոր շարժումն ուներ միաժամանակ թե սոցիալա-

կան և թե ազատագրական բնույթ։ Ապստամբները պահանջում էին, նման Մազդակյաններին, գույքերի, հարստությունների և կանանց հավասար բաշխում և միևնույն ժամանակ նպատակ էին դրել իրենց տապալել արաբական իշխանությունը և վերահաստատել պարսկական նախկին աշխարհակալությունը։ Բաբեկը, որին հայ պատմագիրները անվանում են Բաբան, մոտ քսան տարի ահ ու սարսափի մեջ պահեց արաբներին և, ջարդ տալով անընդհատ նրանց զորքերին, տիրեց արևմտյան Մարաստանին, Համադանին, Աղվանքին և արևելյան Հայաստանին։ Ապստամբությունը վերջնականապես ճնշվեց միմիայն 837 թվին, և Բաբեկը, որին կենդանի բռնել էր Աղվանքի և Շաքեի իշխան Սահլը, գլխատվեց Բաղդադում 838 թվին։

Բաբեկի ապստամբության ճնշման ժամանակ խալիֆայության զորքերի հետ միասին կռիվներին մասնակցել էին նաև հայ նախարարներն ու նրանց զորքերը։ Եվ այսպիսով՝ նրանք օգտվեցին մեծ չափով նաև այս երկպառակություններից՝ ամրացրին իրենց քաղաքական դիրքերը և հնարավորություն ունեցան գրավելու նոր ու նոր շրջաններ և կալվածներ։

Ութերորդ դարի վերջերում Բագրատունիները և հայկական այլ նախարարությունները, 775 թվի մեծ ապստամբությունից հետո, ինչպես տեսանք, սկսել էին արդեն քայքայվել և գրեթե մահամերձ էին։ Սակայն իններորդ դարի քառասնական թվականներին հատկապես Բագրատունիները ոչ միայն կարողացել էին վերականգնել իրենց նախկին հզորությունը, այլև ավելի էին զորեղ, քան ութերորդ դարում՝ նախքան ապստամբությունը։

Աշոտ Մսակերի մահից հետո (826 թ.) Բագրատունյաց տոհմի տարբեր ճյուղերը տեր էին դարձել և իշխում էին թե իրենց հին կալվածների մեծագույն մասում և թե համարյա ամբողջ արևմտյան Անդրկովկասում։

Հիշատակության արժանի են մասնավորապես, բացի Բագրատունիների Շիրակի ճյուղից, նաև Կղարջքի ու Արտանուջի Բագրատունիները։ Աշոտ Մսակերի հորեղբայրը՝ Վասակը, որը 775 թվի ապստամբությունից հետո ստիպված էր փախչել Կղարջք՝ հիմնել էր այստեղ Արտանուջի իշխանությունը։ Սրա հաջորդները կարողացել էին նույնպես ընդարձակել իրենց իշխանության սահմանները և գրավել էին Քոլավերը և Արդահանը։ Հետագայում նրանք, տարածվելով Կուր գետի հովիտներով դեպի հյուսիս-արևելք և տիրելով հետզհետե ամբողջ Վրաստանին՝ հիմնադիր եղան նոր հարստության Վրաստանում։

Իններորդ դարի առաջին կեսի վերջերին հայկական նախարարությունները, գլխավորապես Բագրատունիները և Արծրունիները, այնքան էին ուժեղացել, որ ձգտում էին արդեն վերականգնել ամբողջությամբ իրենց արտոնությունները և ընդլայնել ըստ հնավորության քաղաքական իրենց իրավունքները և ներքին անկախությունը։

Աշոտ Մսակերի մահից հետո (826 թ.) Հայաստանի սպարապետ կարգվեց նրա որդին՝ Սմբատ Աբլաբասը, իսկ «հրամանատար» և «իշխանաց իշխան» նշանակվեց Բագարատ Բագրատունին՝ Տարոնի իշխանը։ Հայկական նախարարությունները, օգտվելով այժմ արաբական իշխանության թուլությունից, այլևս չէին հանդուրժում Հայաստան ուղարկված կառավարիչների խստություններն ու բռնությունները։ Նրանք դիմում էին հաճախ խալիֆներին և պահանջում, որ Հայաստան ուղարկվեն իրենց ցանկացած մարդիկ։ 840 թվին, օրինակ, հայ նախարարները Սմբատ սպարապետի գլխավորությամբ ստիպեցին խալիֆ ալ-Մուտասիմին ետ կանչել նոր նշանակված Խալիդ ոստիկանին և թողնել այդ պաշտոնի մեջ Ալիին։ Այս վերջինը, որին նրանք անվանում էին «եթիմ», այսինքն՝ որբ, ցանկալի էր նրանց իր թուլության և մեղմության պատճառով։

842—847 թվականներին, ալ-Վաթիկի խալիֆայության ժամանակ, ամբողջ Հայաստանը, ինչպես վկայում են արաբական աղբյուրները, գտնվել է շարունակ խառնակ ու ապստամբական վիճակում։ Այդ աղբյուրների վկայություններից դժվար չէ նաև կռահել, որ Բագրատունիները, ինչպես և Արծրունիները, տեսնելով խալիֆայության ռազմական ու քաղաքական տկարությունը՝ ուզեցել են, ըստ երևույթին, հետևել հարևան մահմեդական ամիրայությունների օրինակին և աշխատել են ազատագրվել արաբական տիրապետությունից։ Սակայն շուտով երևաց, որ նրանց այս հույսերը վաղաժամ էին։

847 թվին խալիֆայության գահը բարձրացավ Մութավաքիլը (847—861 թթ.), որը վարում էր վճռական ու հաստատակամ քաղաքականություն։ Իր իշխանության հենց առաջին տարիներում նա նպատակ էր դրել իրեն, ինչպես վկայում է Թովմա Արծրունին (2, գլ. b), ճնշել և պատժել ըմբոստ հայ նախարարներին։

849 թվին նա ուղարկեց Հայաստան Աբուսեթին իբրև վերակացու և հարկահավաքման գլխավոր։ Երբ սա մոտեցավ Տարոնի սահմաններին՝ իշխանաց իշխան Բագարատը, տեսնելով որ Աբուսեթն ունի իր հետ հզոր զորաբանակ՝ շտապեց վճարել նրան ամբողջ

*հարկագումարը և խնդրեց, որ նա ներս չմտնի իր զորքերով Հայաստան։ Թովմա Արծրունին վկայում է, որ Մութավաքիլը և Աբուսեթն ուզեցել են զրկել իշխանությունից հատկապես Բագարատին և Աշոտ Արծրունուն։ Սակայն երբ Աբուսեթը տեղեկություն ստացավ, որ Բագարատն ու Աշոտը դաշինք են կնքել և գործում են միասին՝ նա խուսափեց կռվից և վերադարձավ Բաղդադ։ Նախքան հեռանալը՝ նա թողեց որպես փոխանորդ և Հայաստանի կառավարիչ ու հարկահավաք Մուսեին, որը սորրին Աղձնիքի և Արզն քաղաքի ամիրան էր և Բագարատի քրոջ ամուսինն էր։*

*850 թվին Մուսե ամիրան, որը կռված էր իր աներձագի հետ՝ մտավ իր զորքով Տարոն իբր հարկահավաքման համար։ Բայց Բագարատին օգնության հասավ անմիջապես Աշոտ Արծրունին, և Բագարատը Վասպուրականի զորքերի օգնությամբ այնպիսի ջարդ տվեց արաբներին, որ Մուսեն հազիվ կարողացավ իր գլուխն ազատել։ Տարոնի այս կռվից դեռ առաջ Աբուսեթն ուղարկել էր նաև Վասպուրական հարկահավաքման հազարապետ Ալա Սովաիիին, որը Մանազկերտի «Կայսիկ» կոչվող ամիրաների տոհմից էր։ Սա, հաստատվելով Աղբակում, ասպատակել էր Վասպուրականի զանազան շրջանները, մատնելով երկիրն ավերածության և կողոպուտի։ Բայց Աշոտ Արծրունին մեծ ջարդ տալով նրան՝ դուրս էր քշել Վասպուրականից։*

*Զայրացավ Մութավաքիլն այս անցքերը լսելով և նորից ուղարկեց Հայաստան Աբուսեթին, հանձնարարելով նրան ձերբակալել Բագարատին և Աշոտին։ Արաբական զորքերը, ներխուժելով Տարոն և Վասպուրական՝ պետք է վերացնեին առաջին հերթին հայկական այս իշխանությունները։ Արշավանքի ժամանակ, դեռ Հայաստան չհասած՝ ճանապարհին մեռել էր Աբուսեթը։ Ուստի և ոստիկանության սրա պաշտոնը և վերոհիշյալ հանձնարարությունները տրվեցին որդուն՝ Յուսուֆին։*

*851 թվին Յուսուֆը մեծ ու ընտիր զորքով եկավ նախ Վասպուրական և բանակեց Արծրունիների Ադամակերտ ոստանում։ Այստեղից նա ուղարկեց երկրի զանազան կողմերն ասպատակներ և միաժամանակ հրավիրեց իր մոտ Աշոտին ու ուզեց նրան խաբեությամբ ձերբակալել։ Բայց Արծրունյաց իշխանը, որին հայտնել էին այդ մասին, վերցրեց իր ազատազորքը և հեռացավ Մարդաստան։*

*Շուտով Յուսուֆը հաշտություն և խաղաղություն հաստատեց Աշոտի հետ և, վերցնելով նրանից պատանդներ ու ապահովելով իր թիկունքը՝ եկավ Խլաթ։ Բագարատն այժմ ինքն իրեն էր թողնված։ Ինչպես վկայում է Թովմա Արծրունին (Դպր. 2, գլ. Զ), Յուսուֆը*

հայտնեց Բագարատին, որ ձմեռվա ցրտերի պատճառով ինքը շտապում է վերադառնալ արքունիք և ուզում է Հայաստանի իշխանությունը նրան հանձնել։ Տարոնի իշխանը, որ խաբվել ու եկել էր նրա մոտ, շղթայվեց և ուղարկվեց Սամարա, ուր գտնվում էր Մութավաքիլը։

Այնուհետև Հայաստանի զանազան կողմերն ուղարկվեցին կուսակալներ, որոնք ամեն տեղ մեծ անգթություններ գործեցին։ Իսկ Տարոնում արաբական զորքերը մեծ թվով գերիներ վերցրին և նրանց մի մասը չնչին գներով ծախեցին Ասորիքում ու այլ երկրներում, իսկ մյուս մասը պահեցին Մուշ քաղաքում, ոստիկանի ու իրենց ձմեռանոցում՝ որպես ծառաներ։ Գարնանը նրանք մտադիր էին սրի ու ավերածության մատնել ամբողջ Հայաստանը, և վճռել էին, վերցնելով հայկական իշխանությունները՝ հաստատել երկրում իրենց անմիջական տիրապետությունը։

Հայաստանի դրությունը դառնում էր այժմ նույնքան աղետալի, ինչպես և ութերորդ դարի վերջերին։ Վտանգը սպառնում էր դարձյալ ոչ միայն նախարարական իշխանական դասին, այլ ամբողջ հայ ժողովրդին։ Ուստի և այժմ էս տարերային կերպով բռնկվեց ընդհանուր ապստամբություն, որն ուներ, ինչպես և 775 թվին, ազատագրական բնույթ։ Այս մեծ ապստամբությունը, հատկապես Տարոնում տեղի ունեցած անցքերը 852 թվին՝ մանրամասն նկարագրված են Թովմա Արծրունու մոտ և հիշատակված են նաև արաբական աղբյուրներում։

«Այն ժամանակ,— պատմում է Թովման,— լեռան բնակիչները, տեսնելով որ իշխանին գերի տարան և որ իրենց էս պիտի վիճակվի, ինչ որ դաշտեցիներին, եկան միասին խույթի մեկնակազեններրի բազմությունն արվեստագիտության իրենց ռազմամիջոցներով, որ ձեռք էին բերել ձմեռային ինքնապաշտպանության կարիքների համար։ Նրանք վերցրել էին իրենց նիզակները, որ միշտ կրում էին, զգուշանալով անտառների որջերում գտնվող գազաններից կամ իրենց վրա հարձակվող թշնամիներից։ Գրոհ տալով քաղաքի (Մուշի) վրա ու պաշարելով նրան՝ նրանք սրի մատնեցին և կոտորեցին զորքերը, ազատեցին բանտից Վասպուրականի պատանդներին, արձակեցին գերիներին և բաժանեցին իրենց մեջ թշնամու թալանը»։

(«Յայնժամ բնակիչք լերինն իբրև տեսին, թէ վարեցաւ իշխանն ի գերութիւն, ինքեանք պատրաստեալ են զնոյն փարշմանն կրել զոր դաշտայինքն կրեցին՝ հասին միաբան

*բազմութիւնն մեկնակազէնքն խուժայ ի հնարս արուեստագիտութեանն իւրեանց, զոր ի պէտս օժանդակութեան ձմեռայնոյ հնարաւորեալ էին։ Եւ բարձեալ աշտեայս հանապազակիրս ի պատրաստութիւն զազանացն որ ի մայրիսն որջանան, կամ թշնամեաց ի վերայ հասելոց, և եկեալ ի վերայ քաղաքին պաշարեն զնա, և զզօրսն մատնեն ի սատակումն սրոյ, և զպատանդսն Վասպուրականի հանեն յարգելանէն. և գերեացն ընդարձակեն, զկապուտ նոցա բաժանեն յինքեանս»)*[1]։

*Իր այս վկայության շարունակության մեջ Թովմա Արծրունին նմանապես հաղորդում է, որ Սասունի լեռնականները, որոնք հարձակվել էին արաբական զորքի վրա Խութեցի Հովնանի առաջնորդությամբ, այս կռվում սպանել էին նաև իրեն՝ Յուսուֆ ոստիկանին։*

*Առանձնապես ուշագրավ է, որ ապստամբած սասունցիները, ինչպես երևում է Թովմայի վկայություններից, ոչ թե «ազատ»-ներ կամ ազնվականներ էին, այլ պարզապես ռամիկ գյուղացիներ։*

*Նրա հաղորդած տեղեկությունները խութեցիների մասին այնքան կարևոր են ու հետաքրքիր, որ կարևոր եմ համարում մեջ բերել ամբողջությամբ։*

*«Այստեղ համառոտ կերպով կտամ,— ասում է Թովմա Արծրունին,— լեռան բնակիչների նկարագիրը՝ թե ինչպիսիք են և կամ ովքեր են, կամ ինչ կերպ նրանք ծանր աշխատանքով և սաստիկ տառապանքներով հայթայթում են իրենց ապրուստը և բավարարում իրենց կարևոր պետքերը։ Նրանց բնակությունները գտնվում են խոր ձորերում, լեռների փապարներում, անտառների թավուտներում և լեռների գագաթներում։ Ապրում են ազգատոհմերով և այնքան միմյանցից հեռու են, որ եթե զորավոր տղամարդկանցից մեկը բարձր տեղից ուժգին բղավե, նրա ձայնի թոմբյունը հազիվ կարող է որևէ տեղ լսվել, և տպավորություն է գործում, իբր թե արձագանք է ժայռերի միջից։ Նրանց կես մասը խոտորել է հայրենի բնական լեզվից, որովհետև հեռու տեղեր են բնակվում և միմյանց հետ շփում չունեն. խոսում են իրար հետ կցկտուր ու օտարոտի լեզվով։ Եվ այնքան խրթնախոս են և իրար անծանոթ, որ մինչևիսկ պետք ունեն թարգմանների։ Իբրև սնունդ գործածում են զանազան ընդեղեններ, գլխավորապես կորեկ կոչվող բույսը, որը սովի տարիները ոմանք ան-*

[1] *«Թովմայի վարդապետի Արծրունւոյ, Պատմութիւն տանն Արծրունեաց»։ Հրատ. Պատկանյանի, Ս. Պետերբուրգ, 1887, դպր. 2-րդ, գլ. Է, էջ 119—120։*

վանում են հաց։ Կորեկը նրանք ոռոգում են ոտքերով (՞) անտառների բաց տեղերում կամ ցանում են երկմատանի փայտատներով։ Իրենց մերկությունը ծածկելու համար հագնում են բրդեղեն շորեր. ոտնամաններ պատրաստում են կոշիկների ձևով այծերի մորթերից։ Թե ամառը և թե ձմեռը բավարարվում են միևնույն սնունդով և միևնույն հագուստով»։

(«Ասատնոր սակաւք բացայայտեցից զորպիսութիւն բնակչաց լերինն. թէ զի՞րդ կամ ո՞րպիսիք ոք են, և ո՞րպէս հնարաւորեալ յապրուստ անձանց վճարեն զկարևոր պէտս իւրեանց լի աշխատութեամբ և սաստիկ տառապանօք. և բնակութիւն նոցա ի խորաձորս և ի փապարս լերանց և ի պրակս մայրեաց, ի գագաթունս լերանց։ Եւ բնակեն առանձին ըստ տունս ազգաց, և այնչափ ի բացեալ են ի միմիեանց՝ մինչ թէ ոք յարանց զօրաւորաց ի բարձրաբերձ տեղեաց ուժգին խանչիցէ՝ հազիւ թէ ուրեք կարիցէ առնուլ զբոմբիւն ձայնին, ֆբրև ի վիմաց ինչ արձագան լինելոյ կարծիս բերելով. և կէսքն վրիպեալք ի բնական հայրենի լեզուէն, յաղագս հեռաբնակ լինելոյ և անհամբոյրք միմեանց հանդիպեալք, և խօսս միմեանց եղեալ կարկատուն մուրացածի բանիւք։ Եւ այնքան խրթնի անծանօթք պատահեն առ միմեանս, մինչև թարգմանաց անգամ կարօտանան. և զպէտս կերակրոցն վճարեն ի սերմանց ինչ, առաւել ի կորեակ կոչեցեալ սերմանէն, զոր ոմանք ի սով ժամանակի հաց անուանեն. և զնոյն տոգեալ ոտիւք ի միջոցս պրակացն, կամ երկմատնի փայտատովք սերմանեալ. և է զգեստ նոցա ասուիս ի ծածկոյթ մերկութեանն, և օդ ոտիցն հնարաւորեն զձև կաւշկաց, ի մորթոց այծից կազմեալ, և միով կերակրով և միով հանդերձիւ բաւականան զամառն և զձմեռն»)[1]։

Թովմա Արծրունու այս վկայության մեջ, ինչպես տեսնում ենք. խիստ հետաքրքիր տեղեկություններ են հաղորդված Սասունի բնակչության մասին։ Այդ տեղեկություններից երևում է, որ մինչևիսկ իններորդ դարում խութեցիները գտնվում էին դեռ տնտեսական ու սոցիալական նախնական վիճակում՝ ապրում էին ազգատոհմերով և ունեին երկրագործական հետամնաց տնտեսություն։

Ուշագրավ է մանավորապես, որ խութեցիների մի մասը խոսել է, ըստ երևույթին, ոչ թե հայերեն, այլ ինչ որ խրթին ու ան-

---

[1] Տե՛ս «Թովմայի վարդապետի Արծրունւոյ, Պատմութիւն տանն Արծրունեաց», հրատարակություն 1887, դպր. II, գլ. է, էջ 120—121։

հասկանալի լեզվով։ Թովմա Արծրունին մեջ բերված վկայության շարունակության մեջ այդ լեզուն համարում է «խրթնի և անհեթեթ» և այդ լեզվով խոսող ապստամբներին անվանում է «գռեհիկ Սասրոց»։ Հենվելով սակայն նորագույն ուսումնասիրությունների վրա՝ կարելի է ըստ իս ամենայն հավանությամբ հետևցնել, որ դրանք ոչ թե ասորի գռեհիկներ էին, այլ, հավանորեն խալդեր կամ ուրարտացիներ, որոնք, ինչպես հայտնի է, ձուլվել էին հետզհետե եկվոր արմենների հետ և համարվում են, ինչպես և արմենները, հայերի նախնիքները։ Թովմա Արծրունու վկայությունը խիստ արժեքավոր է, որովհետև ցույց է տալիս, որ հին խալդերի մնացորդները պահպանվել էին մինչև իններորդ դարը լեռնային Սասունում։

852 թվի ընդհանուր մեծ ապստամբությունը, որը պարզապես ժողովրդական-ազատագրական բնույթ ուներ, ճնշվեց դաժան ու անողոք խստությամբ։ Մութավաքիլն ուղարկեց Հայաստան մոտ երկու հարյուր հազար թրքական և արաբական զորք Բուղայի առաջնորդությամբ, որը սրի, գերության ու ավերածության մատնեց ամբողջ երկիրը և, ամենից առաջ, չարաչար պատժեց Տարոնի և Սասունի բնակիչներին։ Հայ նախարարները և գլխավորները կալանավորվեցին և ուղարկվեցին Սամարա, ուր նրանք, փրկելու համար իրենց կյանքը և գույքը՝ գրեթե բոլորն ընդունեցին մահմեդականություն։

Բուղայի արշավանքից հետո՝ նախարարական Հայաստանը, որը սոսկալի հարված էր ստացել, թվում էր, որ անկարող կլինի ուշքի գալ և վերակենդանանալ։ Սակայն շուտով, ինչպես և 775 թվի ապստամբությունից հետո, նա ոչ միայն կարողացավ վերականգնել իր նախկին հզորությունը, այլև ունեցավ տնտեսական, քաղաքական և կուլտուրական բուռն և անօրինակ վերելքի շրջան։

Իններորդ դարի երկրորդ կեսին սկսվեցին Բյուզանդական կայսրության հաղթական արշավանքները Հայաստանի սահմանամերձ հարավ-արևմտյան շրջաններում, և խալիֆայությունը, որը շարունակ պարտություն էր կրում, հետզհետե թուլացավ և դիմեց դեպի անկում։

867 թվին գահ բարձրացավ Բյուզանդիայում Մակեդոնիայից Պոլիս եկած Բարսեղ անունով մի հայ։ Սա մինչ այդ բյուզանդական արքունիքում սպասավոր էր և իր գեղեցկության պատճառով պալատական կանանց առաջին սիրելին էր։ Գերմանական գիտնական Հ. Գելցերը իր «Բյուզանդական կայսրների պատմության» մեջ ասում է, որ Բարսեղ Ա. կայսրը (867—886 թ.)՝ Մակեդոնական

դինաստիայի հիմնադիրը՝ «այն հանճարեղ ու անսահման ուժեղ բնավորություններից էր, ինչպես Սուլլան, Թեոդորիխը, Խլոդովիխը և Նապոլեոն Ա-ը»[1]։

Հենց այս Բարսեղն էր, որ քայլ առ քայլ ջախջախիչ հարվածներով ոչնչացրեց արաբների պաշտպանողական ամրացված դիրքերն արևելյան սահմաններում և կարողացավ ներխուժել Միջագետք։ Հաղթական այս առաջխաղացման ժամանակ նախարարական Հայաստանի կողմնորոշումը ստանում էր, բնականաբար, խիստ կարևոր նշանակություն։ Ֆրանսիական գիտնական Լորանի կարծիքով՝[2] Բարսեղ Ա-ի հաղթությունը կլիներ լիակատար, եթե հայերը ևս հարձակվեին արաբների աջ թևի վրա և օգնեին նրան մտնելու խալիֆայության կենտրոնական երկրները։ Հայաստանի ստրատեգիական սպառնական այդ դիրքային դրությամբ է բացատրվում, Լորանի կարծիքով, խալիֆայության քաղաքականության կտրուկ փոփոխությունը հայ նախարարների և հատկապես Բագրատունիների հանդեպ։ 885/6 թվին Աշոտ Բագրատունին ստացավ խալիֆ Մուտամիդից (870—892 թթ.) թագ և թագավորական տիտղոս։ Սկսվեց ֆեոդալական Հայաստանի արագ վերածնության ու զորեղացման մի նոր շրջան, որ տևեց մինչև սելջուկյան արշավանքները։

---

[1] Տե՛ս Մեսրոպ Տեր-Մովսիսյանի հայերեն թարգմանությունը, Էջմիածին 1897, էջ 194։

[2] Տե՛ս «Հայաստանը Բյուզանդիայի և Իսլամի միջև» (ֆրանսերեն), Փարիզ 1919, էջ 260 և այլն։

# ՆՅՈՒԹԵՐ ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ[1]

## 1. ՇԻՐԱԿԱՑՈՒ ԿՇԻՌՆԵՐԸ ԵՎ «ՊԱՅՈՒԱՍԻԿ»-Ը

*Անանիա Շիրակացին «Յաղագս կշռոց և չափուց» գրվածքի մեջ ունի «պայուասիկ» բառը հետևյալ հատվածում.*

*«Դրամ ըստ պարսկական լեզուին անուանեցաւ և յարծաթ ոչ (յարծաթոյ՞) տպաւորեցաւ, որ Զ մասն լտեր. և սատեր Դ դրամաց կշիռ. և պայուասիկն Ծ լիտր է, որ է Ռ սատեր, որ լինի Տ դրամի կշիռ և թիւ» (տե՛ս Անանիայի Շիրակունւոյ, Մնացորդք բանից, ի լոյս ած Ք. Պ., Ս. Պետերբ. 1877, էջ 28—29։ Ծանոթության մեջ Ք. Պատկանյանը ենթադրում է ամբողջ այս հատվածն աղճատված և հարկ է համարում ուղղել։ «Հատուածս այս,— ասում է նա,— լի է վրիպակօք և ըստ կարծեաց Հ. Աւգերեանի միջանկեալ թուի լինել և ոչ Շիրակացւոյն. տես կշռոց են յեր. 26։ Մեք զայս ձև օրինակի տամք բնագրին.— Դրամն է ԼՁԴ մասն լտեր (այն է ԺԲ գարեհատ), և սատեր է Դ դրամաց կշիռ, և պայուասիկն Ժ լիտր է, այն է (960. կամ մերձաւորապէս) Ռ սատեր, որ լինի (3840, կամ մերձաւորապէս) Տ դրամակշիռ։ Յաղագս պայուասիկի տես ի Պատմ. Սեբէոսի, գլ. Լէ. զի անդէն ի նոցանէ միոյ միոյ ամի առնուին ՅԿԵ պայուասիկ (ի ձեռագիր օրինակին մեր՝ պայուասիկ) դրամ»։*

*Ք. Պատկանյանի այս ուղղումը միանգամայն սխալ է։ Անանիա Շիրակացու բնագիրը ոչ միայն ուղիղ է, այլև խիստ ուշագրավ ու հետաքրքիր մի վկայություն է, որ հնարավորություն է տալիս որոշելու թե «պայուասիկ»-ը և թե Շիրակացու մյուս կշիռներն այժմյան կիլոգրամներով։*

[1] *Տե՛ս, «Գիտության և Արվեստի ինստիտուտի տեղեկագիր» № 2, Երևան 1927 թ.։*

*Շիրակացու ժամանակ բազմազան ու տարբեր սիստեմի կշիռներ կային, ուստի և խիստ դժվար էր որոշել, թե որ լիտրը և տաղանդը հիմք է ընդունվել Շիրակացու գրվածքում։ Վերոհիշյալ հատվածը, որ համարվել է աղճատված՝ ոչ միայն աղճատված չէ, այլ խիստ կարևոր մի վկայություն է, որով լուսաբանվում են Շիրակացու բոլոր կշիռները։*

*Շիրակացու վկայության մեջ՝ «դրամ ըստ պարսկական լեզուին անուանեցաւ և յարծաթոչ*[1] *տպաւորեցաւ, որ է Ձ մասն լտեր»՝ ի նկատի է առնված, անտարակույս, Սասանյան արծաթ դրամը, որի կշիռը, ինչպես հայտնի է, մոտավորապես, չորս գրամ էր*[2]*։*

*Եթե Սասանյան արծաթ դրամը կազմում էր լիտրի 1/80-րդ մասը՝ միանգամայն պարզ է, որ Շիրակացու լիտրը հռոմեական սիստեմի լիտրն է, որը, ինչպես հայտնի է, բաբելոնական տաղանդի 1/100 մասն էր և հավասար էր այժմյան կշռով 326,4 գրամի*[3]*։*

*Այդ լիտրը հենց սովորական էր Բյուզանդական կայսրության մեջ և նրա ճիշտ կշիռը պետք է ուրեմն ընդունել ոչ թե մոտ 324 գրամ, ինչպես ունեն* Ch. Diehl-*ը*[4] *և Հ. Օրբելին*[5]*, այլ 326,4 գրամ։*

*Սասանյան արծաթ դրամը, լինելով 1/80 լիտր, հավասար է եղել, ուրեմն, ատտիկյան* drachmê-*ին և ատտիկյան թույլ* drachmê-*ին*[6] *և նրա իսկական ու ճիշտ կշիռը եղել է 4.08 գրամ։*

*Շիրակացու լիտրի և դրամի ճշտմամբ որոշվում են այնուհետև այժմյան գրամներով՝ ինչպես նրա հիմնական բոլոր կշիռները, նույնպես և պարսկական «պայուասիկ»-ը։ Ստացվում է կշիռների ոչ թե մոտավոր, այլ միանգամայն ճիշտ հաշիվը, որ հետևյալն է.*

*1 լիտր=12 ունկի=72 դահեկան=80 պարս. դրամ՝ 326,4 գրամ.*

*1 ունկի=1/12 լիտր=6 դահեկան=6 2/3 պ. դրամ՝ 27,2 գրամ.*

---

[1] *Բնագրի «յարծաթ ոչ» պետք է ուղղել «յարծաթոչ»։*

[2] *Տե՛ս* Е. А. Пахомов, Монетные клады Азербайджана. Труды Общ. обсл. и изучения Азербайджана, Вып *3, 1926։ Նաև իմ «Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում», Տեղեկագիր Հ. Ս. Խ. Հ. Գիտ. և Արվ. Ինստիտուտի Երևան 1926, № 1, էջ 11, ծանոթ.։*

[3] *Տես* I. A. Decourdemanche, Traité pratique des poids et mesures des peuples anciens et des Arabes, 1909, *էջ* 22։

[4] Ch. Diehl, Justinien et la civilisation byzantine au VI siècle, Paris 1901, *էջ* 537։

[5] *Տե՛ս* И. А. Орбели, Вопросы и решения вардапета Анании Ширакца, Петрогр., *1918, էջ 65։*

[6] Decourdemanch, *էջ 24։*

*1 միկղ=1/48 լիտր=1/4 ունկի=1 1/2 դահ.=1 5/9 պ. դրամ՝ 6,8 գրամ.*

*1 դահեկան=1/72 լիտր=1/6 ունկի=1 1/9 պ. դրամ՝ 4,53 1/3 գրամ.*

*1 պ. դրամը=1/80 լիտր=3/20 ունկի=9/10 դահեկան՝ 4,08 գրամ.*

*1 սատեր=4 դրամ՝ 16,32 գրամ*[1].

*1 կենդինար=100 լիտր՝ 32 կիլ. 640 գրամ.*

*1 տաղանդ=125 լիտր=9000 դահեկան=40 կիլ. 800 գրամ.*

*1 «պայուասիկ»=50 լիտր=1000 սատեր=4000 պարս. դրամ («կշիռ և թիւ»)՝ 16 կիլ. 320 գրամ։*

*Պարսկական «պայուասիկը»-ը, ինչպես տեսնում ենք, համասար է եղել 1/2 կենդինարի։*

*Սեբեոսը, խոսելով մարաց ապստամբության մասին արաբական ծանր հարկապահանջության պատճառով, հիշում է նույն այս «պայուասիկ»-ը հետևյալ հատվածում. «Քանզի ոչ կարացին համբերել դառն և դժնդակ ծառայութեանն և հարկին ծանրութեանն՝ որ ի վերայ նոցա, զի անդրէն ի նոցանե միոյ միոյ ամի առնուին 3ԿԵ պայուասիկ դրամ. և որ ոչն կարէր տալ, առնուին ընդ միոյ միոյ դրամի մարդ մի, և ի բաց բարձին զհեծելութիւն և զիշխանութիւն աշխարհին» (Պետերբ. 1879, գլ. ԼԷ, էջ 147)։*

*«Պայուասիկ»-ը վերև տրված հաշվով հավասար էր 4000 Սասանյան արծաթ դրամի=16 կիլ. 320 գրամ, ուրեմն՝ Մարաստանի հարկը, լինելով 3ԿԵ «պայուասիկ», անում է 365. 4000=1.460.000 Սասանյան արծաթ դրամ, իսկ նրա կշիռը=365.16,320=5956 կիլոգր. 800 գրամ։*

*«Պայուասիկ»-ի կշիռը, նաև նրա դրամական քանակը, ինչպես տեսնում ենք, շատ պարզ որոշվում է։*

*«Պայուասիկ»-ի ու Սասանյան արծաթ դրամի կշիռների ճշտումը կարևոր ու ուշագրավ է այն տեսակետից, որ հնարավորություն է տալիս լուսաբանելու արաբական աղբյուրների այն վկայությունները, որ վերաբերվում են Սասանյան Պարսկաստանի եկամուտներին ու հարկերին։*

---

[1] *Ի նկատի է առնված ատտիկական* stater-ը, *որի կշիռը եղել է իրոք 16,32 գրամ։ Անանիա Շիրակացու մոտ (էջ 27) հիշատակված է նաև մի ուրիշ սատեր «ըստ Եբրայեցւոց», որը կազմում է ունկիի 1/8 մասը, ուրեմն՝ 3,4 գրամ։ Սատերների այս տարբերությունն է, որ շփոթեցրել է Ք. Պատկանյանին և հիմք ծառայել նրա վերոհիշյալ սխալ ենթադրության։*

*Օրինակ՝ Տաբարիի մոտ հանդիպում են մի քանի անգամ դրամական խոշոր գումարների հաշիվներ, որոնց մեջ հիշատակված է, իմ կարծիքով, հենց նույն այս «պայուսակ»-ը որ* Noeldeke-*ն թարգմանել է* Beutel[1]*։ Տաբարիի այդ վկայություններից երևում է, որ «պայուսակ»-ն իբրև դրամական մեծ կշիռ նույնքան տարածված ու սովորական է եղել Սասանյան Պարսկաստանում, ինչպես «կենդինար»-ը Բյուզանդական կայսրության մեջ։*

*Տաբարիի պատմելով, Խոսրով Պարվեզն իր թագավորության 18-րդ տարում (607/8 թվին) կարգադրել էր հաշվել պետական ամբողջ մուտքը, որ ստացվել էր իր երկրների հարկերից և եկամուտների ուրիշ բոլոր աղբյուրներից։ «Նրան զեկուցանում են,—վկայում է Տաբարին,— որ այդ տարում նրա եկամուտները հողային հարկից ու մյուս աղբյուրներից կշռում են կտրված փողով 420 միլիոն* «mithqâl» *և այդ գումարը, հաշվելով 10* «dirham»-*ը 7* «mithqâl», *անում է 600 միլիոն* «dirham»*։ Նա հրամայում է այդ փողը տանել գանձատուն, որ ինքը կառուցել էր Տիզբոնում և անվանել Բահար... Խոսրով։ Նույն տեղը բերում են հին դրամներով, որ կտրել էին Հազկերտի որդի Պերոզը և Պերոզի որդի Կավատը, 12.000* Beutel՝ *յուրաքանչյուր* Beutel-*ը կտրված փողով 4000*[2] «mithqâl», *ուրեմն՝ ընդամենը 48 միլիոն* «mithqâl», *որ 7 առ 10 հարաբերությամբ անում է* $68,571,428 + 1/2 + \frac{\frac{1}{8}}{3}$ «dirham»[3]*։*

Th. Noeldeke-*ն ենթադրում է, որ* mitqâl-*ն այստեղ, հավանորեն, պետք է հասկանալ իբրև Սասանյան արծաթ դրամի կշիռ։ Այս ենթադրությունը հաստատվում է, իմ կարծիքով, «պայուսակ» կշռի վերոհիշյալ որոշմամբ։ Տաբարիի վկայությունների մեջ* Beutel-*ի կշիռը «կտրված դրամով» 4000* «mithqâl» *է*[4]*, իսկ Շիրակացու մոտ, ինչպես տեսանք, «պայուսակ»-ը «լինի 4000 դրամի կշիռ*

---

[1] *Տես* Th. Noeldeke, Tabari, Geschichte der Perser und Araber zur Zeit der Sasaniden, 1879, *էջ* 355—376 *և* 377*։*

[2] *Տաբարիի գերմաներեն թարգմանության մեջ տպված է 40.000, որ պարզապես վրիպակ է։*

[3] *Տես* Th. Noeldeke, Tabari, *էջ* 355—356

[4] *Տես* Th. Noeldeke, Tabari, *էջ* 355՝ «ebendahin wurden auch an äleren Münzen von Pêrôz, Sohn des Jazdegerd, und von Kawâdh, Sohe des Pêrôz, gerägt, 12000 Beutel gebracht, jeder Beutel zu 4000 Mithqal in gemünztem Gelde, also im ganzen 48 Millionen Mithqal» *էջ* 376 «an gemünztem Geld 200000 Beetel, enthaltend 800 Millionen Mithqâl» *էջ* 377 «an gemünztem Geld 400 000 Beutel enthaltend 1600 Millionen Mithqal».

և թիւ»։ Այս համեմատութիւնից կարելի է հետևցնել, որ Beutel-ը համապատասխան լինելով «պայուասիկ»-ին, «mithqâl»-ը ևս գործ է ածված նույն վկայութիւններում Սասանյան արծաթ դրամի կշռի իմաստով։

«Պայուասիկ»-ի ու Սասանյան արծաթ դրամի կշիռները, ինչպես տեսանք, այժմյան գրամներով հավասար էին, առաջինը՝ 16 կիլոգր. 320 գր., իսկ երկրորդը՝ 4,08 գր.։ Ուրեմն՝ այս կշիռների համաձայն Սասանյան Պարսկաստանի ընդհանուր եկամուտը 606/7 թվին պետք է ընդունել 420.000.000╳4,08=1.713.600 կիլոգրամ Սասանյան արծաթ դրամ կամ 105.000 «պայուասիկ»։

Հիմնվելով դրամագետ Pertsch-ի հաղորդած տվյալների վրա և ընդունելով Սասանյան դրամի արծաթի արժեքը մոտ 70 պֆեննինգ կամ 86 սանտիմ, իսկ արաբականինը (հնագույն շրջանի)՝ մոտ 40 պֆեննինգ կամ 50 սանտիմ՝ Th. Noeldeke-ն Սասանյան Պարսկաստանի ընդհանուր եկամուտը 607/8 թվին հաշվում է՝ Սասանյան «դրամ»-ով՝ մոտ 294 միլիոն մարկ կամ 360 միլիոն ֆրանկ, իսկ արաբական «դրամ»-ով՝ միայն 240 միլիոն մարկ կամ 300 միլիոն ֆրանկ[1]։ Այս երկու հակասական թվերից Noeldeke-ն հավանական է համարում առաջինը։

Arthur Christensen-ը իր «L'empire des Sassanides» (Kobenhavn 1907, էջ 58) աշխատության մեջ հիմնվել է Նյոլդեկեի նույն այս հաշիվների վրա, սակայն առանց որևէ բացատրության գերադասություն է տվել երկրորդ թվին, ընդունելով արաբական դրամի արծաթի արժեքը 50 սանտիմ[2]։

Ադոլֆ Կրեմերը, որ օգտվել է Իբն Խորդադբեյի և Կոդամայի աղճատված վկայություններից, Սասանյան Պարսկաստանի ընդհանուր եկամուտը 606/7 թվին ենթադրում է 420—600 միլիոն «dirham», անուշադիր թողնելով «mithqâl»-ի և «dirham»-ի 7-ը առ 10-ը հարաբերությունը՝ 420 միլիոն «mithqâl»=600 միլիոն «dirham» (Culturgeschichte des Orients unter den Chalifen, Wien. 1875, էջ 275)։

Վերոհիշյալ ենթադրությունները, իմ կարծիքով, վիճելի են,

---

[1] Տե՛ս Th. Noeldeke, Tabari, էջ 355, ծան. 1։

[2] Հաշվելով գանձատան ամբողջ գումարը 468 միլիոն մսխալ Arth. Christensen-ն այդ ամբողջ գումարի արժեքը հավասար է համարում մոտավորապես 336 միլիոն ֆրանկի։ Ուրեմն՝ 606/7 թվի պետական ընդհանուր եկամուտը նա ընդունում է մոտ 300 միլիոն ֆրանկ, իսկ Պերոզի ու Կավատի ժամանակներից մնացած հին դրամների արժեքը մոտ 36 միլիոն ֆրանկ։

*որովհետև չեն համապատասխանում վերև ճշտված կշիռների հաշիվներին։*

*Տաբարիի վկայությունների մեջ* «mithqâl»*-ը ինչպես տեսանք, գործ է ածված որպես կշիռ Սասանյան արծաթ* «dirham»*-ի։ Պարսկական այդ* «mithqâl»*-ը, ըստ երևույթին, անսովոր էր արաբական ժամանակներում, ուստի անհրաժեշտ է համարվել վերոհիշյալ գումարները հաշվել նաև արաբական* «dirham»*-ով, որի կշիռը եղել է 7/10* «mithqâl»*։ Հիմնվելով Բելազորիի վկայության վրա Թ. Նյոլդեկեն մատնացույց է անում, որ կային տարբեր* «dirham»*-ներ, որոնց կշիռը հավասար է եղել 1 կամ 4/5, կամ 1/2* «mithqâl»*-ի*[1]*։ Եվ իրոք, արաբական օրինական* «mithqâl»*-ը, ինչպես հայտնի է, հավասար էր այժմյան 5 2/3 գրամի, օրինական* «dirham»*-ը՝ 3,96 2/3 գրամի (—4/5* «mithqâl»*) և Աբդլ-Մելիքի* «dirham»*-ը՝ 2,83 1/3 գրամի (=1/2* « mithqâl»*)*[2]*։*

*Տաբարիի վկայություններում, իմ կարծիքով, ի նկատի է առնված հենց այս վերջին հնագույն-ժամանակի Աբդլ-Մելիքի* «dirham»*-ը, որի հարաբերությունը Սասանյան* «mithqâl»*-ի կամ արծաթ դրամի հանդեպ գրեթե 7-ը առ 10-ն է՝ 2,83 1/3(3):4,08։*

*Նոր այս ենթադրությամբ ոչ միայն վերանում է մարկերով ու ֆրանկներով հաշված գումարների անհասկանալի տարբերությունը, այլև ստացվում է Սասանյան Պարսկաստանի 606/7 թվի ընդհանուր մուտքի համար տարբեր գումար։ Ընդունելով* «mithqâl»*-ը որպես Սասանյան դրամ մաքուր արծաթից և նրա կշիռը՝ 4,08 գրամ, այդ դրամն արծաթի իր պարունակությամբ համապատասխան պետք է համարենք այժմյան արծաթ ռուբլու 22 2/3 կոպեկին։ Սասանյան Պարսկաստանի եկամուտը 606/7 թվին կլինի այս հաշվով 420.000.000. 22 2/3=95.200.000 արծաթ ռուբլի։*

*Իրապես, եկամուտը կարող էր այդ գումարից մի փոքր պակաս լինել, եթե Սասանյան արծաթ դրամն ունեցած լիներ մաքուր արծաթի հետ որոշ տոկոս խառնուրդ*[3]*։*

---

[1] Tabari, *էջ 355, ծանոթ. 1։*

[2] *Տե՛ս* J. A. Decourdemanch, Traité pratique des poids et mesures des peuples anciens et des Arabes, Paris, 1909, *էջ* 25, 26, 27, 28 *և* 47*։*

[3] *«Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում» նախորդ իմ աշխատության մեջ Սասանյան արծաթ դրամի դրամական արժեքը ես հավասար էի համարել մոտավորապես այժմյան 25 կոպեկին (էջ 11)։ Ինչպես տեսնում ենք, նրա արժեքն արծաթ 25 կոպեկից պակաս է և առ առավելն հավասար է 22 2/3 կոպեկի, եթե Սասանյան այդ դրամը ենթադրենք մաքուր արծաթից։*

## 2. «ԱՊՈՒՌԻՇԻ»

«Ապուռիշի» բառը հանդիպում է Շիրակավանի 1228 թվի արձանագրության հետևյալ հատվածում. «Ես աթաբակ Իվանէ և խոշակս վրաց և հայւոց թագոհի վասն երկար կենդանութեան հաբազատաց մերոց մանդատորթա խուցէս Շահնշահի և ամիր սպասալար Աւագին թողաք զգեղիս Շիրակա զապուռիշի և զջրաահին բաժն յորդեցէ յորդիք ազատ ի բաժէն» (տես Կ. Կոստանեանց, Վիմական տարեգիր, Ս.—Պետերբուրգ 1913, էջ 71)։

Այս բառը, ինչպես հայտնի է, դեռևս բավարար կերպով մեկնըված չէ[1]։

Մ. Էմինն «ապուռիշի» համարել է իր թարգմանության մեջ գյուղի անուն՝ Апурегш[2]։ Հ. Ղևոնդ Ալիշանը «Շիրակի» մեջ նույն բառի մասին ունի հետևյալ ենթադրությունը՝ «քանզի ընդ ջրաահի յիշի՝ թուի նույնպէս ջրոյ հարկ նշանակել ըստ ապ (ջուր) արաբացի բառին»[3]։ Յ. Կարստը «Դատաստանագիրք Սմբատի» իր աշխատության մեջ «ապուռիշի և ջրաահին բաժն» թարգմանել է «Kanal und Schleusenzoll»[4]։

Պրոֆ. Հր. Աճառյանի «Հայերէն արմատական բառարանում» (Երևան 1926 թ.) «ապուռիշի» բառին տրված է հետևյալ բացատրությունը՝ «ջրի առո՞ւ» նորագյուտ բառ… բառս գտաւ առաջին անգամ Մառ, Сборн. мат. Кавк. 17, 194, որ և կցում է պրս. âbriz «դոյլ, ջրաման, արտաքնոց» բառին, սակայն ոչ ձևով է նման և ոչ նշանակությամբ»։

«Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում» վերոհիշյալ իմ ուսումնասիրության մեջ (էջ 21) ես լավագույնն էի համարել եղած լուսաբանություններից Յ. Կարստի ենթադրությունը, վերապահությամբ, իհարկե, որ նրա բացատրությունը ևս չի կարելի ընդունել իբրև հաստատուն և վերջնական։

Ինձ թվում է այժմ, որ «ապուռիշի» բառը որևէ կապ չունի «առուի» ոչ էլ «ջրի ու դոյլի» հետ։ Առաջարկում եմ այդ բառի հետևյալ նոր մեկնությունը։

«Ապուռիշի» պետք է կարդալ, իմ կարծիքով «ապուռ իշի», իսկ «ապուռ» միջնադարյան «յապուր» հարկն է, որ պահանջվել է

[1] Տե՛ս իմ աշխատությունը՝ «Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում», ՀՍԽՀ. Գիտության և Արվեստի Ինստիտուտի Տեղեկագիր, № 1, Երևան, 1926 թ., էջ 21—22։

[2] Армянския надписи, 1881, էջ 51։

[3] Շիրակ, Վենետիկ, 1881, էջ 91։

[4] I. Karst, Sempadischer Kodex, 1905, B. II, էջ 234։

անասունների ու ապրանքների անցուդարձի համար հատուկ տեղերում։ «Յապուր» բառն այդ իմաստով գործ է ածված Լևոն Գ-ի 1288 թվի հրովարտակում. «Եւ յապուր որ տան ընդ յԱյաս ու ընդ Կոռիկոս, նայ այսպէս լինինայ, որ տան ի պրիսիմն ի յըղտայբեռն նոր դրամ քսան ու հինգ, և ի պրիսմէ կտան ի յըղտայբեռն նոր դրամ քսանուհինգ, ի լեղակն ու յախայխիրն զարդ ի պըղպըղէն ու զընջպլէն ու ի պաղղամէն, ի յայլն ի յամեննն տան ի յըղտայբեռն նոր դրամ քսան ու հինգ, տան ի ջորէբեռն նոր դրամ տասն և հինգ, և ի յեշբեռն նոր դրամ տասն ու վեց» (*Տես* Langlois V., Le trésor des chartes d'Arménie ou cartulaire de la chancellerie royale des Roupéniens, Venise, *1863, էջ 157)*։ Պրոֆ. Հր. Աճառյանն իր «Հայերէն արմատական բառարանում» «ապուր» բառը մեկնել է, իբրև փոխառություն արաբերենից՝ «արաբ. abûr «անցնիլ» բառից, ճիշտ ինչպես որ նույն հարկի լտ. ձևը passagium բառն նշանակում է «անցք»» (էջ 461)[1]։

«Թողաք զգեղիս Շիրակա զապուռ իշի»—այսինքն՝ զապուր իշո պետք է, հավանորեն հասկանալ այն իմաստով, որ 1228 թվին Իվանե աթաբեկը և նրա կինը Խոշակը Շիրակ գյուղն ազատել են իշաբեռների «յապուր» հարկից։ Որ միջնադարյան pedaticum և passagium հարկը գոյություն է ունեցել ոչ միայն Կիլիկիայում, այլև՝ բուն Հայաստանում 1228 թվին, այդ հաստատվում է, ուրեմն, հետաքրքիր այս վկայությամբ, եթե մեր նոր լուսաբանությունը համարվի ընդունելի։

### 3. «ՉՐՓԱՔԱՐ», «ՉՐՓԱՅՔԱՐ»

Այս անծանոթ բառը գործ է ածված Սեբեոսի և Ստեփանոս Ասողիկի համապատասխան հատվածներում, որ վերաբերվում են այսպես կոչված «Պարսից ժողովին».

1. «Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն», հրատ. Ք. Պատկանյանի, Ս. Պետերբուրգ 1879, էջ 122, «Իսկ որք զՔաղկեդոնին և զՎրաց և զԱղուանից կաթողիկոսն, և այլ բազում եպիսկոպոսունք ի Յունաց կողմանէ և իշխանք՝ որք եկեալ էին ի ծառայութիւն պարսից թագաւորին, որով և չրփայքարն իսկ հրամայեաց տալ»։

[1] Հայերեն արմատական բառարան, Հատ. Ա., Երևան 1926։

[2] Արձանագրության ընթերցվածն աղճատված չէ՞ արդյոք արտագրության ժամանակ, լավագույնն է, անշուշտ, «իշոյ», որ կարող է թերևս լինել ճիշտ ընթերցվածը։

2. «Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան, Պատմութիւն տիեզերական». Հրատ. Ստ. Մալխասյանցի, Ս. Պետերբուրգ 1885, էջ 96, «Իսկ որք զՔաղկեդոնի Իվերիոյ և Աղուանից կաթողիկոսն, որ էր ի Փայտակարան, ի դրան արքունի, և այլք ոմանք եպիսկոպոսունք և երիցունք քաղաքաց, որ ի Յունաց կողմանէ, և իշխանք, որք եկեալ էին ի ծառայութիւն թագաւորին Պարսից, որոց զչփաքարն իսկ Հրամայեաց տալ»։

Ստեփան Մալխասյանի հրատարակած Ասողիկի ծանոթություններում (էջ 96 և 351—352) առաջ են բերված այդ անծանոթ բառի ձեռագրական տարբեր ընթերցվածները.

1. Ասողիկի առաջին տպագրության մեջ (Փարիզ 1859, էջ 97) «զչփաքարն», 2) Կ. Եզյանցի ձեռագրում՝ «զչփաքարն», 3) Բրոսսեի ձեռագրում՝ «զչրփաքածառ»։

Կարապետ վրդպ. Շահնազարյանցը, Ասողիկի առաջին տպագրության հրատարակիչը, ենթադրել է առանց որևէ հիմքի, որ «փաքար» բառը նշանակում է գուցե՝ «ռոճիկ, թոշակ» (Փարիզ 1859, էջ 211 ծան. 59)։

Ասողիկի ֆրանսերեն թարգմանության մեջ Ե. Դյուլորյեն, հետևելով, ըստ երևույթին, Կ. Շահնազարյանցին, նույն բառը թարգմանել է provisions («il leur fit fournir des provisions», Ed. Dulaurier, Histoire universelle per Etienne Asoghig de Daron, premiére partie, Paris 1883, էջ 126 և ծան. էջ 192)։

Սեբեոսի պատմության առաջին և երկրորդ տպագրությունները, ինչպես և Պետերբուրգի Գիտության Ակադեմիայի գրչագիր օրինակը, ունեն «չրփայքարն» ընթերցվածը (Կոստանդնուպոլիս 1851 և Ս. Պետերբուրգ 1879, էջ 122), որի հավանական նշանակությունը լուսաբանված է Ք. Պատկանյանի հետևյալ ծանոթության մեջ՝ «թուի լինել պարսիկ բառ՝ pâkâr կամ pâikâr, որ նշանակէ զհարկապահանջն և զուրս հարկաց ի պէտս կալուածատեարց» (Սեբէոս 1879, էջ 122 ծան.)։

Ք. Պատկանյանի ստուգաբանական այս բացատրությունը կարևոր է և, անտարակույս, ավելի հիմնավոր է քան մյուս քմահաճ ենթադրությունները։

Ընդունելով «փայքար» բառի ծագումը պարսկերեն pâikâr-ից, անհավանական չի լինի, իմ կարծիքով, այդ բառը համապատասխան համարել «պեկար, բեկար»-ին, որ քննության է առնված «Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում» իմ նախորդ աշխատության մեջ (էջ 32—37)։

Լեզվական տեսակետից պարս. pâikâr բառի տարբեր տառա-

դարձությունը հայերենում՝ «փայքար» և «պեկար»՝ այնքան էլ դըժվար բացատրելի չէ։ Հայտնի է արդեն, որ պարսկական p և k-ն հայերենում տառադարձվել են պ և կ կամ փ և ք. օրինակ՝ կուստ և քուստ, պարտակ և փարտալ, կեշտ և քէշ, կերտել և քերթող, վնասակար, բայց պայքար, պաշտպան, բայց փուշտիպան։

«Փայքար»-ի նույնացումը «պեկար» հարկի հետ հարմար է նաև այն տեսակետից, որ Սեբեոսի և Ասողիկի վերոհիշյալ հատվածները ստանում են նոր այս լուսաբանությամբ հավանական ու հասկանալի իմաստ։

Սեբեոսի և Ասողիկի պատմելով, «Պարսից ժողովում», որ տեղի էր ունեցել Պարսից Խոսրով Բ. Փարվեզի ժամանակ (590—628 թ.), ուղիղ էր ճանաչվել Հայոց հավատը։ Ժողովից հետո, ասում են նույն պատմիչները, Խոսրով Բ-ը հրաման է տվել քանդել նեստորական եկեղեցիները և սպանել նեստորական եպիսկոպոսներին։ Իսկ քաղկեդոնականներին՝ Վրաց և Աղվանից կաթողիկոսներին և Յունաց կողմից[1] եկած եպիսկոպոսներին ու իշխաններին՝ նա հրամայել է տալ մինչև անգամ «չըփայքարն»։

Այս տեղեկության պատմական ճշտությունը կարող է գունավորված ու վիճելի համարվել։ Մեզ հետաքրքրում է այստեղ ոչ թե խնդրի պատմական կողմը, այլ միայն «չըփայքար» բառի նշանակությունը։

Եդ. Դյուլորյեն Ասողիկի ֆրանսերեն թարգմանության մեջ կարծում է, որ Ասողիկը քաղկեդոնականներին վերաբերյալ այդ հատվածում ուզեցել է ցույց տալ Խոսրով Բ-ի անաչառությունը դեպի բոլոր Պարսկաստանին հպատակ քրիստոնյա համայնքները. իբր թե Խոսրով Փարվեզը, ճանաչելով Հայոց միաբնակ դավանության գերազանցությունը իր երկրներում, ըստ երևույթին, բարեմիտ վերաբերմունք է ունեցել նաև քաղկեդոնական հոգևորականության հանդեպ և հրամայել է հայթայթել նրանց պաշարը (էջ 192, ծան.)։

Ինձ թվում է, որ կարիք չկա կանգ առնել Եդ. Դյուլորյեի այս բռնազբոսիկ բացատրության վրա։

Սեբեոսի և Ասողիկի համապատասխան հատվածներում, ինչպես տեսանք տրված են նախ որոշ տեղեկություններ հալածանքների մասին նեստորականների դեմ և ապա ակնարկված է, հավանորեն, ոչ թե Խոսրով Բ-ի բարյացակամությունը քաղկեդոնականների հանդեպ, այլ նրանց նվաստ ու ստորադաս վիճակը հայ միաբնակ

---

[1] Յոթերորդ դարի առաջին տասնամյակում պարսիկները նվաճել էին Բյուզանդական Հայաստանը և կայսրության արևելյան շրջանները։

եկեղեցու համեմատությամբ։ «Որով և շըփայքարն իսկ հրամայեաց տալ» Սեբեոսի խոսքերը, մեր կարծիքով, պետք է հասկանալ հենց այդ իմաստով՝ իբրև նվաստացուցիչ մի փաստ քաղկեդոնական եկեղեցու նկատմամբ։ Արդ՝ վերագրելով՝ «փայքար» անծանոթ բառին «պեկար»-ի նշանակություն, մենք իրոք որ ստանում ենք Սեբեոսի վկայության իմաստալից ու բավարար մի նոր լուսաբանություն։

Մարզպանական Հայաստանի արքունի հարկերն ուսումնասիրելիս՝ ես ենթադրել էի, որ հայ հոգևորականությունը ձեռք է բերած եղել Հազկերտ Բ-ի հալածանքներից հետո հարկային ինչ որ արտոնություն։ Նա ազատ է եղել, ըստ երևույթին, գլխահարկից, բայց պարտավոր է եղել «տալ յարքունիս» «հաս» կամ «պեկար» հարկը, որ ես ենթադրել էի հողային հարկ[1]։

Արդ՝ Սեբեոսի վկայության մեջ՝ «որով և գշըփայքարն[2] իսկ հրամայեաց տալ»՝ անհավանական չի լինի, իմ կարծիքով, մեկնել այն իմաստով, որ քաղկեդոնական եկեղեցուց պահանջվել է նույն իսկ «շըփայքար»-ը, այսինքն՝ բացի «փայքար-պեկար» հողային հարկից նաև այն հարկերը, որ «պեկար» չէին։

Եթե ընդունելի համարվի նոր այս ենթադրությունը, այդ դեպքում՝ «փայքար»-ը կամ «պեկար, բեկար»-ը, որ մատենագրական հին վկայություններում ունեցել է, հավանորեն, հողային հարկի նշանակություն, համապատասխան պիտի լինի ոչ թե պարսկերեն bekâr-ին, այլ pâikâr-ին, որն ըստ Ք. Պատկանյանի նշանակել է թե «հարկապահանջ» և թե «զտուրս հարկաց ի պէտս կալուածատեարց», այսինքն՝ հողային հարկ։

Անհնարին չէ, իմ կարծիքով, որ «փայքար, բեկար»-ը հողային հարկի նշանակությամբ (=pâikâr) և «բեկար»-ը պարտադիր ձրի աշխատանքների իմաստով (bekâr) տարբեր փոխառություններ լինեն պարսկերենից՝ շփոթված իրար հետ հետագայում հնչյունական նմանության պատճառով։

---

[1] «Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում», էջ 31, 34 և 35։

[2] Սեբեոսի առաջին և երկրորդ տպագրություններն ունեն, ինչպես տեսանք, «շըփայքարն» ընթերցվածը, իսկ Աստղիկի երկրորդ տպագրությունը և՝ «զշփաքարն»։ Ի նկատի առնելով նույն բառի վերև առաջ բերված ձեռագրական տարբերակները՝ ես լավագույն եմ համարում «զշըփայքարն» ընթերցվածը։

## 4. «ԴԱՀԵԿԱՆ»-Ը ՇԻՐԱԿԱՑՈՒ ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԵՋ

*Անանիա Շիրակացու «Յաղագս հարցման և լուծման» գրվածքում չորս անգամ հանդիպում է «դահեկան»-ը, իբրև այն ժամանակվա դրամ (հարցումն Գ, ԺԱ, ԺԵ, ԺԹ)*[1]*։*

*Հ. Օրբելին իր հրատարակության մեջ այդ «դահեկան»-ը համարել է արծաթ դրամ՝* «серебряная монета денарий» *(էջ 64)։*

*Հ. Օրբելու այս ենթադրությունը, իմ կարծիքով, հավանական չէ։*

*Շիրակացու թվաբանական խնդիրներում «դահեկան»-ը ոչ թե արծաթ դրամ է, այլ գործ է ածված բյուզանդական ոսկի դրամի համար, որի կշիռը Շիրակացու ժամանակ պետք է լիներ, իրոք, մեկ «դահեկան», այսինքն՝ 4 գրամ 53 1/3 սանտիգրամ։ Այդ ոսկի դրամը, ինչպես հայտնի է, անվանվում էր* solidus, nomisma, aureus *և զանազան դարաշրջաններում ունեցել է նաև այլևայլ տարբեր անուններ ու երբեմն նաև տարբեր կշիռ։*

*Անանիա Շիրակացին հենց ինքը «Յաղագս կշռոց և չափուց» իր գրվածքում ասում է, «նոմիսմայ ըստ Հռովմայեցւոց դահեկանն անուանի» (Ս. Պետ. 1877, էջ 28)։ Վենետիկի ձեռագիրներից Թ օրինակը դահեկանի մասին ունի հետևյալ հավելվածը.*

*«Դահեկանն մի ոսկի է, որոյ կշիռն յամենայն ազինս մի և նոյն է, և թե ուրեք գտանիցի պակաս, արտաքոյ քանակին ոսկւոյն է. զոր գաղտ անուղղայք արարեալ են» (տե՛ս Հար. վարդ. Ավգերյան, «Բացատրութիւն չափուց և կշռոց նախնեաց», Վենետիկ, 1821, էջ 27, ծանոթ. 2)։*

*Եվ իրոք, մեր հին մատենագրության մեջ «դահեկան»-ը մեծ մասամբ գործ է ածված ոսկի դրամի իմաստով։*

*Հին Կտակարանի հայերեն թարգմանության մեջ «դահեկան» են թարգմանված բնագրի* chrysus-*ը և* nomisma-*ն, որ ոսկի դրամ են*[2]*։ «Դահեկան»-ը արծաթ* denarion-*ի իմաստով հանդիպում է,*

---

[1] *Տե՛ս* И. А. Орбели, Вопросы и решения вардапета Анания Ширакца, *1918, էջ 18, 22, 23, 25։*

[2] *Դահեկան*=chrysus, *տե՛ս Ծնն, ԼԷ 28, ԽԵ 22, Թիւք Է. 14, 20, 26, 86 Գ. Թագ. Ժ. 16, Դ. Թագ. Ե. 5, Ա. Մնաց. ԻԹ. 7, Բ. Մնաց. Թ. 15, 16։ Նեեմի Է. 71,— դահեկան*=nomisma, *տե՛ս Ա. Մակ. ԺԵ, 6։*

*Հին կտակարանի մեջ «դահեկան» է թարգմանված նաև հունարեն* drachmê-*ն հետևյալ հատվածում. «և եղե իբրև դադարեցին ամենայն ուղտքն յըմպելոյ, և էառ այրն գինդս ոսկիս մի մի ըստ դահեկանի ձուլոյ» (Ծնն, ԻԴ, 22)։ Այստեղ*

*գլխավորապես, Ավետարանի թարգմանության մեջ*[1]*։ Ըստ երևույթին, Ավետարանի այդ «դահեկան»-ին (*denarion*) է վերաբերվում Շիրակացուն վերագրված Վենետիկի Գ և Ե օրինակների վկայությունը՝ «ըստ ժամանակին դահեկանն Կ ասարիոն էր. և դահեկանն էր արծաթի»*[2]*։ Սակայն «դահեկան»-ի այս վերջին նշանակությունը՝ իբրև արծաթ* denarion, *որ հանդիպում է առավելապես թարգմանական գրականության մեջ, բացառիկ է ու արտասովոր։*

*«Դահեկան»-ը, ինչպես տեսանք, հիշատակված է նաև Անանիա Շիրակացու թվաբանական հարցումներում։ Հետաքրքիր է, առանձնապես, նրա ԺԵ-րդ հարցումը.*

*«Ձի մի կայր ինձ ազնիւ, վաճառեցի և գնոցն չորրորդ մասինն կովեան գնեցի, եւթներորդ մասինն այծեան, և մետասաներորդ մասինն եզնի, և երեք հարեւր և ութեւտասն դահեկանի ոչխարս առի։ Արդ գիտեա թէ ընդ ամենայն քանի՞ դահեկան լինի» (տե՛ս* Вопросы и решения *էջ 23)։ Հարցման լուծումից իմանում ենք, որ ազնիվ ձին վաճառվել է 616 «դահեկան»-ի։ Այդ գնի չորրորդ մասով (=154 դահեկան) գնված են եղել կովեր, 1/7-ով (=88 դահեկ.)՝ այծեր, 1/11-ով (=56 դահեկ.)՝ եզներ և 318 «դահեկան»-ի՝ ոչխարներ։*

*Եթե ընդունենք «դահեկան»-ն իբրև արծաթ դրամ և նրա կշիռը մեկ «դահեկան», այն է՝ 4.53 1/3 գրամ*[3]*, եզների գնման համար կստացվի ընդամենը՝ 56 «դահեկան», որ այժմյան դրամով պետք է լինի մոտ 14 արծաթ ռուբլի*[4]*։*

*Արդ՝ ենթադրելով եզների այս գինը, մոտավորապես, իրականին համապատասխան՝ հարկադրված ենք լինելու եզրակացնել, որ եզի գինը Շիրակացու ժամանակ եղել է մի քանի ռուբլի։*

*Բոլորովին այլ հետևություն կստացվի, եթե «դահեկան»-ն ընդունենք այստեղ իբրև ոսկի դրամ։*

*Այս վերջին ենթադրությունը թվում է ինձ ավելի քան հավանական, որովհետև Շիրակացու «Յաղագս կշռոց և չափուց» գրված-*

---

*«դահեկան»-ը կշռի իմաստով է, բայց թարգմանությունը ճիշտ չէ, որովհետև* drachmê-*ն իր կշռով տարբեր էր «դահեկան»-ից։*

[1] *Դահեկան=*denarion, *տե՛ս Մատթ. ԺԸ, 28, Ի. 2, 9, 10, 13, ԻԲ, 19, Մարկ. Զ. 37,, ԺԲ. 15, ԺԴ. 5, Ղուկ. Է, 41, Ժ 35, Ի. 24, Յովհ. Զ. 7։*

[2] *Տե՛ս Հար. Ավգերյան «Բացատրութիւն չափուց եւն». էջ 38. նաև Անանիայի Շիրակունւոյ, Մնացորդք բանից Ս. Պետերբ. 1877, էջ 33։*

[3] *Տե՛ս վերև, էջ 30։*

[4] *4.08 գրամ Սասանյան արծաթ «դրամը» հավասար էր, ինչպես տեսանք, 22 2/3 արծաթ կոպեկի, ուրեմն՝ 4,53 1/3 գրամ արծաթ «դահեկան»-ը հավասար կլինի մոտ 25 կոպեկի, իսկ 56 «դահեկան»-ը՝ մոտ 14 արծաթ ռուբլու*

քի վերոհիշյալ վկայություններից կարելի էր եզրակացնել, որ «դահեկան»-ը, ինչպես հնագույն հայ պատմագիրների, օրինակ, Եղիշեի, Սեբեոսի, Ղովհան Մամիկոնյանի մոտ, նույնպես և Շիրակացու երկերում, ոչ թե արծաթ, այլ ոսկի դրամ է, ամենայն հավանականությամբ, բյուզանդական solidus-ը, որի իսկական կշիռը պետք է լիներ մեկ «դահեկան», այն է՝ 4,53 1/3 գրամ։

Ի նկատի առնելով, «դահեկան»-ի և այժմյան ոսկի ռուբլու կշիռները, կարելի է որոշել նրանց կշիռների հարաբերությունը, ընդունելով, իհարկե, որ «դահեկան»-ը ևս լիակշիռ էր և պարունակում էր, իրոք, իր մեջ 4.53 1/3 գրամ մաքուր ոսկի։

Լիակշիռ և լիագին «դահեկան»-ն համապատասխան կլինի այս հաշվով 5 ռուբ. 85 ոսկի կոպեկի, որովհետև ռուսական 15 ռուբլիանոցը պարունակում է իր մեջ 11,612 գրամ մաքուր ոսկի։ Բյուզանդական լիտրը, ինչպես հայտնի է, 72 «դահեկան» էր և նրա կշիռը՝ 326,4 գրամ[1], ուրեմն կշռի տեսակետից նրա համարժեքը այժմյան ոսկի դրամով կլինի 421 ռուբլի 64 կոպ.։

Այսպես էլ հենց հաշվել են բյուզանդական solidus-ի և բյուզանդական ոսկու լիտրի դրամական արժեքը եվրոպական նորագույն երկերում։ Օրինակ, Շարլ Դիլը, մատնանիշ անելով, որ Յուստինիան կայսեր գահակալության ժամանակ պետական գանձարանում եղել է 320.000 ֆունտ ոսկի՝ այդ գումարը համապատասխան է համարում մոտ 360.000.000 ոսկի ֆրանկի[2]։ Ուրեմն՝ նա ևս բյուզանդական 1 լիտր կամ ֆունտ ոսկին հավասար է համարում մոտ 1125 ֆրանկի, այսինքն՝ 421 ռուբլու կոպեկներով։ Շարլ Դիլի այս աշխատության ռուսերեն հրատարակության մեջ 350 միլիոն ֆրանկը վերածված է ռուսական դրամի. вступив на престол Юстиниан нашел в государственном казначействе огромную пасную сумму в 320.000 фунтов золота, т. е. около 120 миллионов рублей на наши деньги»[3].

---

[1] Տե՛ս վերև, էջ 30։

[2] Charle Diehl Iustinien et la civilisation byzantine *24 VI* siecle, *1901*, էջ 310։ Նման հաշիվ անում է նաև P. M. Sikes-ը։ 533 թվի դաշնագրությամբ Բյուզանդիան վճարելու էր Սասանյան Պարսկաստանին Կովկասյան անցքերը և ամրությունները պահպանելու համար 11,000 Բյուզանդական ֆունտ ոսկի։ Sikes-ը այդ գումարը հավասար է համարում մոտ 1/2 միլիոն ֆունտ ստերլինգի, որ մոտավորապես համապատասխան է վերոհիշյալ հաշիվներին։

[4] Տե՛ս Ш. Диль, Юстиниан и византийская цивилизация в VI веке 1908. էջ 318։ Նույն այս հաշիվն ունի նաև ռուս բյուզանդագետ Յ. Կուլակովսկին. տե՛ս Кулаковский, История Византии т. I, Киев, 1913, էջ 521. „[Анастасий доказал блестящее состояние финансов империи тем, что оставил в насле-

Հասկանալի չէ, թե ինչու թարգմանիչը հարկ է համարել փոխել բնագիրը։ Հայտնի է, որ ֆրանսիական 40 ֆրանկը պարունակում է իր մեջ նույնքան մաքուր ոսկի, որքան և ռուսական 15 ռուբլին (=11,612 գրամ)։ «Ֆրանսիական ոսկի ֆրանկը հավասար լինելով 3/8-րդ ոսկի ռուբլու, 360 միլիոն ֆրանկը համապատասխան կլինի ոչ թե «մոտ 120 միլիոն ռուբլու» այլ 360.000.000×3/8=135 միլիոն ոսկի ռուբլու, որ իբրև կլոր թիվ միանգամայն համապատասխանում է վերև ճշտված «դահեկան»-ի և բյուզանդական լիտրի դրամական արժեքներին[1]։

Ընդունելով լիակշիռ «դահեկան»-ը, որ պարունակում էր իր մեջ 4.53 1/3 գրամ մաքուր ոսկի, հավասար 5.85 ոսկի ռուբլու կամ 15.60 ոսկի ֆրանկի, անհրաժեշտ է ի նկատի ունենալ, որ նրա մեջ մաքուր ոսկին կարող էր երբեմն որոշ տոկոս պակաս լինել 4.53 1/3 գրամից խառնուրդի (лигатура) պատճառով։

Այդ դեպքերում, բնականաբար, համապատասխան տոկոսով պակաս կլինի նաև «դահեկան»-ի ու այժմյան ոսկի դրամների կշռական մատնանշված հարաբերությունը։ Մեր եզրակացությունը, որ «դահեկան»-ը հավասար է 5 ռուբլի 85 կոպեկի, վերաբերվում է, ուրեմն, լիակշիռ այն «դահեկան»-ին, որի մեջ մաքուր ոսկու քանակը 4.53 1/3 գրամ էր։

## 5. «ԱՍԱՐԻՈՆ» ԵՎ «ԱՍՊԱՐԻՈՆ»

Կշիռների վերաբերյալ Վենետիկի ձեռագրերի Գ և Ե օրինակները, որոնց թվահամարները նշանակված չեն Հ. Ավգերյանի աշխատության մեջ, ունեն հետևյալ ուշագրավ հատվածները։

---

дие своему преемнику огромный фонд в количестве 320 тысяч фунтов золота, т. е. около 120 миллионов рублей на наши деньги.

[1] Ֆ. Ուսպենսկին, խոսելով Յուստինյան կայսեր CLII նովելլայի մասին, որով կարգադրված է եղել ուղարկել տեղերը հարկերի մանրամասն ցուցակները՝ առաջ է բերում տուգանքների գումարները, որ վճարելու էին զանցառու պաշտոնյանները. «если в установленный нами срок означенныя подробныя росписи податей по местам не будут разосланы, то стоящие во главе префектур чины подвергаются пене в 30 золотых литр, начальники провинций в 20 литр. ևն. [տե՛ս Ист. Визант. Империи, т. I, էջ 593]։

Ծանոթության մեջ 30 ոսկի լիտրը նա համապատասխան է համարում մոտ 10 000 ռուբլու։ Այս հաշվով բյուզանդական լիտրը հավասար կլինի 333 1/3 ռուբլի, իսկ nomisma-ն կամ solidus-ը՝ 4 ռուբ. 63 կոպ.։ Ի՞նչ փաստերի ու դիտողությունների վրա է հիմնված այս հաշիվը՝ ծանոթության մեջ բնավ բացատրված չէ։ Նույն աշխատության մի ուրիշ հատվածում X-րդ դարի nomisma-ն կամ «պերպերը»-ը հավասար է համարված մոտ 4—5 ռուբլու. տե՛ս Ист. Виз. Имп. էջ 809։

*1. «Տաղանդն կշռոյ անուն է որ է ՆԻԾ լիտր. և ՆԻԾ լիտրն ինն Ռ ասարիոն ըստ համարոյ»*[1].

*2. «Մոնաթն*[2] *ինն Ռ ասարիոն է. ըստ հելլենական ղեփտոն կոչի, որ է անօսր, որ է դանգ. զոր Քրիստոս հինգ ձագի վաճառ ասաց. և ըստ Եբրայեցւոց ասարիոն՝ նուազութիւն կոչի։ Ըստ ժամանակին դահեկանն Կ ասարիոն էր. և դահեկանն էր արծաթի»*[3]։

*Այս հատվածներում հիշված «ասարիոն»-ի առթիվ Հ. Ավգերյանն ունի հետևյալ ծանոթությունը. «Դ (օրինակ) ասպարիոն, որ է վրիպակ գրչի. զի պարտ է լինել ասսարիոն կամ ասարիոն» (էջ 38)։ Հ. Ավգերյանի այս ուղղումը, իմ կարծիքով, վիճելի է։ Հ. Ավգերյանն ուշադրություն չի առել այն, որ «տաղանդ»-ը 9000 ասարիոն չէր, այլ 430,000։ Բնագրի վերոհիշյալ ուղղումով ստացվել է մի հաշիվ, որ խիստ դժվար է բացատրել։*

*Ճիշտ է՝ «ասարիոն»-ը մատենագրական մեր աղբյուրներում հանդիպում է տարբեր իմաստով՝ կամ իբրև երկու գարեհատի կշիռ կամ իբրև դրամ, բայց այս վերջին իմաստով, որքան ինձ հայտնի է, նա շատ փոքր դրամ է, մինչդեռ վերոհիշյալ հատվածներում տաղանդի 1/9000 մասն է, ուրեմն՝ հավասար է մեկ «դահեկան»-ի (=4.53 1/3 գրամ)։*

*Հայերեն Ավետարանի մեջ, օրինակ, հունարեն* assarion*-ը փոքր գրամ է և թարգմանված է «դանգ» (տես Մատթ. Ժ. 28 և Ղուկ. ԺԲ, 6)։*

*Եթե «տաղանդ»-ը ինն Ռ «ասարիոն» կամ «ասպարիոն» էր «ըստ համարոյ», հավանական կլինի ենթադրել, որ այս վերջինը դրամի անուն է։ «Ըստ թռոյ» և «ըստ համարոյ» խոսքերով կշիռների վերաբերյալ գրվածքներում ակնարկված են, իմ կարծիքով, դրամները։*

*Արդ՝ հնարավոր չէ՞ արդյոք իբրև լավագույն ընդունել Դ օրինակի «ասպարիոն» ընթերցուածը։ Այս վերջին ենթադրությամբ հասկանալի է դառնում «տաղանդ»-ի և «ասպարիոն»-ի կշռական հարաբերությունը, որ այլապես մութ է ու դժվար բացատրելի։*

*[1] Տե՛ս Հար. Ավգերյան, Բացատրություն, էջ 37, 38 նաև «Անանիայի Շիրակունւոյ. Մնացորդք բանից», էջ 33։*

*[2] Մոնաթ կամ մոնադ, ինչպես հայտնի է, գործ է ածվել տաղանդի իմաստով, տե՛ս Անանիայի Շիրակ., Մնացորդք բանից, 29. նաև Հ. Ավգերյան, «Բացատրութիւն չափուց և կշռոց նախնեաց», էջ 26՝ «Տաղանդն ՆԻԾ լիտր է, զսա թուղք մոնադ կոչեն»։*

*[3] Հմմտ Շիրակացու հետևյալ հատվածը «Եւ պայուասիկն Ծ լիտր է, որ է Ռ ստեր, որ լինի Տ դրամի կշիռ և թիւ» (տե՛ս Անան. Շիրակ, էջ 29 Բացատրութիւն, էջ 26)։*

Դրամական այդ նոր միավորի գոյությունը անընդունելի չպիտի թվա, որովհետև «ասպարիոն»-ն անհայտ մի բառ չէ բյուզանդական հունարենում։

Հայտնի է, որ Թուրքիայում գոյություն է ունեցել «ասպր» դրամը։ Այս «ասպր» բառի ծագումը ենթադրում են նոր հունարեն «aspros»-ից, որը նշանակել է «սպիտակ»։ Իբրև ապացույց այս լուսաբանության՝ մատնացույց են անում, որ նույն «ասպր» դրամը թուրքերենում անվանվել է նաև âqtcha, որի արմատն է aq, այսինքն՝ «սպիտակ»[1]։

Արդ՝ եթե թուրքերեն «ասպր»-ը փոխառություն է հունարենից և գործ է ածվել արծաթ դրամի իմաստով, հավանական կլինի, իմ կարծիքով, ենթադրել, որ նույն այդ բառը Բյուզանդիայում ևս տարածված է եղել իբրև արծաթ դրամ։

«Ասպարիոն» ընթերցվածը վերոհիշյալ ձեռագրերում կարող է հենց ուշագրավ մի վկայություն համարվել, որ այդ բառն իբրև արծաթ դրամի անուն գոյություն է ունեցել նաև Հայաստանում, հավանորեն, այն դարաշրջանում, երբ գրված են եղել «Գ և Ե օրինակ» Վենետիկի ձեռագրերը։

Այս ձեռագրերի մասին Հայր. վարդ. Ավգերյանը «Յառաջաբանութեան» մէջ հաղորդում է հետևյալ տեղեկությունը.

«Գ և Ե օրինակք ընտիր են գրչութեամբ, և միաբան ունին զկշիռս և զչափս. միայն երրակի տարբերին յառաջնոյ անտի. նախ՝ զի համառօտագոյն են քան զնա. երկրորդ՝ չունին ի ճակատու զանուն Անանիայի, և ոչ վերնագիր ի վերայ իւրաքանչիւր կշռոց և չափուց. և երրորդ՝ յաւելուն ի սկզբան անդ զասպարիսական չափս։ Վասն որոյ և մեք զսոցա ևս զուղղագիր օրինակ արժան համարեցաք առանձին դնել ի նախադրունս գործոյս զկնի Ասպարիսական չափուց Խորենացւոյն» («Բացատրութիւն չափուց և կշռոց», Յառաջաբանութիւն, էջ 5)։

Ինչպես երևում է այս տեղեկությունից՝ Գ և Ե օրինակներն «ընտիր են գրչութեամբ», ուստի և այս ձեռագրերը կարող են բավական հին լինել։ Արդ՝ ի նկատի ունենալով նոր հունարեն aspros-ի նշանակությունն իբրև «սպիտակ», նաև «ասպարիոն»-ի վերոհիշյալ կշիռը՝ հավասար «դահեկան»-ի (=1/9000 տաղանդի)՝ կարելի է, իմ կարծիքով, ենթադրել, որ «ասպարիոն»-ն իբրև բյուզանդական հատուկ դրամ եղել է, հավանորեն, արծաթ դրամ, որի հնագույն կշիռը համաձայն վերոհիշյալ վկայությունների պետք է ընդունել՝ 4.53 1/3 գրամ։

[1] Տե՛ս «Grande Encyclopédie» հանրագիտական բառարանում «aspre» բառը։

## ՆՅՈՒԹԵՐ ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ[1] (II)

### 1. «խոստակ»=feod, Lehn և «խոստակդար»= feudataire, Lehnsträger

*Հայաստանի նախարարական կազմակերպության առանձնահատկություններն ուսումնասիրելիս՝ առանձնապես ինձ հետաքրքրում էր հողատիրության խնդիրը և, մանավանդ, պայմանական հողատիրության՝* feodum-*ի կամ* Lehn-*ի՝ գոյությունը հին Հայաստանում։ Ինչպես հայտնի է,* feodum-*ը կամ* Lehn-*ը կազմում էր Արևմտյան Եվրոպայում միջնադարյան ֆեոդալիզմի հիմնական հատկանիշներից մեկը։ Հարկավոր էր ինձ պարզել, թե արդյոք գոյություն չեն ունեցել նախարարական Հայաստանում ևս արևմտյան* feodum-*ը կամ նման հողատիրական կարգեր։*

*Այդ կարևոր խնդրի ուսումնասիրության ընթացքում իմ ուշադրությունը գրավեց Ստեփանոս Օրբելյանի պատմության մեջ «խոստակդար» բառը, որի նշանակությունը, իմ կարծիքով, վերջնական կերպով դեռ լուսաբանված չէ։ Այն նշանակությունը, որ ես վերագրելու եմ «խոստակդար» բառին, այնքան կարևոր է հայկական ֆեոդալիզմի պարզաբանման համար, որ ես անհրաժեշտ եմ համարում մանրամասն առաջ բերել մատենագրական, ինձ հայտնի, բոլոր հատվածները, որոնց մեջ հիշատակված են «խոստակդար» և «խոստակ» բառերը։*

*Այդ երկու բառը հանդիպում են Մովսես Կաղանկատվացու և Ստեփանոս Օրբելյանի մոտ հետևյալ վկայություններում.*

*1. Աղվանից Վաչագան արքայի 6-րդ կանոնում.*

---

[1] *Տե՛ս Երևանի Պետական համալսարանի գիտական տեղեկագիր № 4, 1928 թ.։*

«Վանաց երէց կամ վանական որ՝ եթէ ի վանացն գայթանք առնէ և ի վերայ յայտ լինի, անարգեսցեն զնա և ի տեղւոյն ի բաց արասցեն, ի գլխոստակն յեկեղեցին կալցեն» («Մովսեսի Կաղանկատուացւոյ, Պատմութիւն Աղուանից աշխարհի» հրատ. Մ. Էմինի, Մոսկվա, 1860, Ա. գլ. ԻԶ, էջ 66—67)։

2. «Ստեփանոսի Օրբելյան արքեպիսկոպոսի, Պատմութիւն նահանգի Սիսական», Թիֆլիս 1911, Գլ. ԼԹ. էջ 206.

«Ետու ես տէր Փիլիպպէ զԲերդկանցերէշոյ զկէսդ Սառնաքարի փոխան, և զկէսդ սուրբ եկեղեցւոյդ. և չիշխէ ոք հեռացնել՝ ո՛չ եղբայր և ո՛չ որդի և ո՛չ յիմ խոստակդարաց»:

3. Նոյնը, Գլ. ԼԹ., էջ 207.

«Երկերիւր և յիսնսումն երեք թուականութեանս Հայոց. որպէս կամ եղև ինձ Փիլիպպէի՝ որդւոյ Վասակայ, Սիւնեաց տեառն, ետու զՏաթև վասն իմ հոգեացս ի ձեզ ի Տէր Դաւիթ՝ Սիւնեաց եպիսկոպոս. յիմ հօրէն յիս հրիտակ հասեալ էր. անխուէշքարէ (*) ամենայն սահմանօք, լերամբ և դաշտիւ, այգօք և ընկոյզեօք, մարգագետնովք և ջաղացանով և որ ինչ համօրէն սահմանք են. և մի ոք իշխեսցէ յետ իմ անցման, իմ որդիք կամ եղբարք կամ այլ խոստակդարք հեռացուցանել զայդ գիւղդ յայդ եկեղեցւոյդ և ի սուրբ խաչէդ»։

4. Նոյնը, գլ. Խ. էջ 219.

«Եւ շէն մի Մաճ անուն ի Բաղաց գաւառի, որ նախ տեառն Ատրներսէհի՝ Սիւնեաց տեառն և իմ եղբօր, ինձ էր տուեալ, և յետ այնորիկ Հրատահայ, իմ տեառնն, գնեալ էր յիմ եղբօրէն, և ինձ վաճառեալ և հոգեցատուր արարեալ՝ ետու ես Քուպղիդուխտ զայդ շէնդ լերամբք և դաշտով, մարգով և արտով, գետով, ջրով և ցամաքով, ծառովք և տնկովք ի սուրբ խաչդ ի Տեր Սաղօմոն՝ Սիւնեաց եպիսկոպոս... Եւ մի ես և մի իմ եղբօրորդիք եւ այլ խոստակդարք պայքարել և համիմաղ կալ մի իշխեսցեն»։

5. Նոյնը, գլ. ԽԳ., էջ 233.

«Եւ յայսմհետէ մինչև հաւիտեան այս լիցի սահման Տաթևոյ սուրբ ուխտիս. և մի ոք իշխեսցէ այսմ հակառակել՝ մի Բաղացիք և մի Որոտնեցիք և մի Վաղանդացիք, մի Շնհէրացիք և մի Նորեցիք։ Եթէ ոք ընդ հակառակս ելանէ ի մերոց կամ յօտարաց, յաւազաց կամ ի ձեռնաւորաց եւ ի խոստակդարաց կամ ի տանուտէրաց, ի սուրբ Երրորդութենէն որոշեալ լիցի և յերից ժողովոցն նզովեալ եղիցի»։

Հայկազյան բառագրքի աշխատակիցները «խոստակ»-ը հասկացել են այս հատվածներում իբրև «խոշտակ, զավակ, մանուկ, ժառանգ», իսկ «խոստակդար»՝ իբրև «խոշտակ յետագայ, այսինքն՝ զավակ զավակի, յետնորդք, թոռունք»։ Նույն բառգրքում «խոշտար» բառին տրվում է հետևյալ լուսաբանությունը. «խոշտար կամ խոստար, որ և խոստակ՝ մանուկ, տղայ, զավակ, սան, համբակ, ժառանգ որբացեալ»։ «Խոստակ» և «խոստակդար» բառերի այս նշանակությունը, ինչպես տեսնում ենք, հիմնված է այդ բառերի ստուգաբանական ծագման վրա՝ «խոստակ-խոշտակ-խոստար-խոշտար»։ Այդ ստուգաբանությունը սակայն ճիշտ չէ, ուրեմն՝ անընդունելի պիտի համարել նաև վերոհիշյալ ամբողջ բացատրությունը։

Նույն բառերի ստուգաբանական ուղիղ մեկնությունը տվել է արդեն պրոֆ. Հ. Հյուբշմանն իր Armenische Grammatik աշխատության մեջ (էջ 161)։ Ըստ Հյուբշմանի «խոստակ» նշանակում է «Güter, Besitz», այսինքն՝ «կալված, ստացվածք» (=nr. xvâsta, Güter, Besitz), իսկ «խոստակդար» նշանակում է «der Erbe» այսինքն, «ժառանգ» (=phl. xvastakdar «der Erbe» Pand-nâma 80, eigentlich «Besitzhalter»)։

Հյուբշմանի այս մեկնությունից հետո միանգամայն հասկանալի է դառնում վերև առաջ բերված Աղվանից Վաչագան արքայի վեցերորդ կանոնը։ «Խոստակն յեկեղեցին կալցեն» պետք է հասկանալ այն իմաստով, որ հանցավոր «վանաց երէց»-ից կամ «վանական»-ից եկեղեցին առնում էր ոչ թե նրանց որդիներին, ինչպես մինչև այժմ ենթադրել են[1], այլ նրանց կալվածները կամ հողաբաժինները։

Այս կանոնն իր բովանդակությամբ համապատասխանում է Շահապիվանի ժողովի երկրորդ և «Ներսեսի կաթողիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի» հինգերորդ կանոններին, որոնք նույնպես վերաբերվում են իրանց կոչմանն անհամապատասխան՝ տգետ կամ հանցավոր եկեղեցականներին։

«Եթէ կրօնաւոր երէց,— ասված է Շահապիվանի Բ. կանոնում,— գտցի ի պղծութեան և ի պոռնկութեան կամ յայլ

---

[1] Տե՛ս История Агван Моисея Каганкатваци, пер. К. Патканяна, 1861, էջ 67։ «Խոստակն ի յեկեղեցին կալցեն» Ք. Պատկանյանը թարգմանել է «сына взять в церковь», սակայն ծանոթության մեջ նա հայտնում է, որ այդ թարգմանությունը կասկածելի է։ Միևնույն սխալ ենթադրությունը արված է նաև Վաչագանի կանոնների իմ գերմաներեն թարգմանության մեջ և «խոստակն ի յեկեղեցին կալցեն» թարգմանված է «das Kind aber soll man in die Kirche nehmen» տես Beiträge zur albanischen Geschichte, 1897, էջ 46։

> գործս չարեաց և ստուգեալ վկայիւք. քահանայութիւնն լուծցի և յեկեղեցւոյ բաժնէն հեռացեալ լիցի. Յ դրամ տուգանս տացէ և ի կարօտեալս բաշխեսցեն. եթէ երէց, եթէ սարկաւագ՝ կանոնս այդ կացցէ, և նոքա ի կարգ զինուորութեան կացցեն և ի հարկս արքունի, և ընդ պաշտօնեայս մի խառնեսցին» (տես Կանոնագիրք Հայոց, հրատ. Արսեն Ղլտճյանցի, Թիֆլիս 1914, էջ 61)։
>
> Իսկ «Ներսիսի կաթողիկոսի և Ներշապհոյ Մամիկոնէից եպիսկոպոսի» հինգերորդ կանոնը սահմանում է, որ «տգետք մի իշխեսցեն մտից սրբոյ եկեղեցւոյ, զի անիրաւ է, վասն անուսումնութեանն ընդ զինուորս կացցեն և զհայրենի հող և ջուր կալցեն, և արքունիս հարկ, և զորդիս ի դպրոց տացեն, զի ուսցին» (Կանոնագիրք Հայոց, հրատ. Ա. Ղլտճյանցի, էջ 109)։

Վերոհիշյալ կանոններում՝ «խոստակն յեկեղեցին կալցեն», «յեկեղեցւոյ բաժնէն հեռացեալ լիցի» և «զհայրենի հող և ջուր կալցեն»՝ միևնույն իմաստն ունեն։ Հանցավոր կամ տգետ կրոնավորներից և քահանաներից եկեղեցին, ինչպես տեսնում ենք, ետ էր առնում նրանց անշարժ գույքը, հողն ու ջուրը, որովհետև այդ գույքը եկեղեցու «բաժին»-ն էր։

Նախորդ աշխատություններիցս մեկում ես արդեն մատնանիշ էի արել, որ դեռևս Արշակունյաց թագավորության ժամանակ, քրիստոնեության տարածման սկզբնական իսկ շրջանում, հոգևորականությանը տրված են եղել հատուկ հողաբաժիններ[1]։ Այդ հողաբաժինների վերաբերմամբ, ինչպես պարզ երևում է վերևի առաջ բերված կանոններից, նաև Դվինի ժողովի ութերորդ կանոնից, հոգևորականներն ունեցել են միայն տիրության և օգտագործման իրավունք, իսկ գերագույն սեփականության իրավունքը պատկանել է եկեղեցուն։ Օգտատիրության (dominium utile) այդ իրավունքը եղել է ժառանգական, այսինքն՝ այդ հողաբաժինները հոգևորականներն իրավունք են ունեցել թողնել իբրև ժառանգություն իրանց որդիներին կամ մերձավորներին[2]։ Հասկանալի է, ուրեմն, թե ինչու Ներսեսի ու Ներշապուհի հինգերորդ կանոնում այդ «հողն ու ջուրը» անվանվում է «հայրենի»։

---

[1] Տե՛ս «Դիտողություններ հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում»։ ՀՍԽՀ Պետ. Համալսարանի Գիտ. Տեղեկագիր № 1, Երևան, 1925, էջ 13—17։

[2] Տե՛ս «Կանոնք Դունայ ժողովոյն», Ը, Կանոնագիրք Հայոց, հրատ. Ա. Ղլտճյանցի, էջ 124—126։

Հողատիրության այս ձևը, անշուշտ, պայմանական էր։ Հոգևորականները վերոհիշյալ գույքը, հողն ու ջուրը, ստացել էին իրանց հոգևոր «ծառայութեան» համար։ Եթե այդ «ծառայութիւն»-ն անհնարին էր դառնում նրանց տգիտության կամ ծանր հանցավորության պատճառով՝ եկեղեցին իրավունք ուներ այդ գույքը ետ գրավել և տալ «արժանաւոր»-ներին։

Վաչագան արքայի վեցերորդ կանոնը խիստ կարևոր է ու ուշագրավ այն տեսակետից, որ այդ կանոնում «եկեղեցւոյ բաժին» նույն այդ անշարժ գույքն անվանվում է «խոստակ»։ «Խոստակ»-ը, ուրեմն, ինչպես կարելի է ենթադրել, հիմնվելով վերոհիշյալ բացատրությունների վրա, այն հողաբաժիններն են կամ անշարժ գույքը, որ հատկացվել են հոգևորականներին նրանց հոգևոր «ծառայութեան» համար իբրև dominium utile, այսինքն՝ ոչ իբրև լիակատար սեփականություն, այլ ժառանգական օգտատիրության իրավունքով։ Դժվար չէ կռահել, որ հողատիրության այդ ձևը քրիստոնեական եկեղեցին ընդօրինակած պիտի լինի նախարարական Հայաստանի աշխարհիկ կենցաղից։ Պրոֆ. Ն. Ադոնցը շատ ուղիղ դիտել էր, որ հայ եկեղեցին, գտնվելով նախարարական միջավայրի ազդեցության տակ, յուրացրել էր նախարարական կազմակերպության պատրաստի ձևերը և մեծ չափերով ենթարկվել էր ֆեոդալականացման, կամ ավելի ճիշտը՝ նախարարականացման[1]։

Ի նկատի ունենալով այդ ազդեցությունը, ինձ թվում է, կարելի է ենթադրել, որ նախարարական Հայաստանում «խոստակ» են անվանվել բացի վերոհիշյալ հողաբաժիններից նաև այն հողերը կամ անշարժ գույքը, որոնք կալվածատեր սյուզերենների կողմից տրվել են «ազատ»-ներին իբրև dominium utile, այն պայմանով, որ «ազատ»-ները հողատու այս «տէր»-երի հանդեպ կատարելու էին զինվորական և այլ պատվավոր «ծառայութեան» պարտականություններ։ Այս վերջին իմաստով «խոստակ»-ը կատարելապես համապատասխան կլինի feodum-ին (=ֆրնս. fief գերմ. Lehn)։

Որ այս ենթադրությունն անհիմն չէ, այդ ցույց են տալիս «խոստակդար» բառի վերաբերյալ վերև առաջ բերված վկայությունները։ Իմ կարծիքով, «խոստակդար»-ն այդ վկայություններում նշանակում է «խոստակ»-ատու, այսինքն՝ feudatarius, feudataire կամ Lehnshalter։

Պրոֆ. Հ. Հյուբշմանը, ինչպես տեսանք, «խոստակդար»-ը թարգմանում է «Erbe» «ժառանգ», բայց, ի նկատի ունենալով

[1] Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, 1908, էջ 322, 361 ևն։

«խոստակ» բառի իր ստուգաբանությունը, ավելացնում է՝ «eigentlich Besitzhalter»՝ «իսկապես կալվածատու»։

Ակադեմիկոս Մ. Բրոսսեն իր «Histoire de la Géorgie» աշխատության մեջ[1] մերժում է Հայկազյան բառգրքի վերոհիշյալ մեկնությունը, որը, ինչպես տեսանք, արդյունք էր սխալ ստուգաբանության, և հենվելով Մ. Դորնի ցուցմունքների վրա՝ ենթադրում է, որ «խոստակ»-ը նշանակում է richesse՝ «հարստություն», իսկ «խոստակդար»՝ «un intendant, un surveillant des biens», այսինքն՝ «վերակացու կամ հարստությունների վրա հսկող»։ Հիմնվելով այս մեկնության վրա՝ «խոստակդար»-ը նա համարում է հոմանիշ «ձեռնատուրի» և թարգմանում է «employé» «պաշտոնյա»։

Մինչև այժմ ոչ ոք ուշադրության չէ առել, որ «խոստակ»-ն իրավական իր բովանդակությամբ համապատասխանում է միջնադարյան ֆեոդին և, հետևաբար, «խոստակդար»-ը պարսկական dâr վերջավորությամբ, նշանակել է, հավանաբար, «խոստակ» առու (=գերմ. Lehns-halter)։

Այս եզրակացությունը ստացվում է, իմ կարծիքով, ոչ միայն «խոստակդար» բառի ստուգաբանական վերլուծումով, այլև Ստեփանոս Օրբելյանի վերոհիշյալ վկայությունների ուշադիր քննությամբ։

Ինչպես հայտնի է, Ստեփանոս Օրբելյանն իր պատմության մեջ քաղվածորեն զետեղել է այն վավերագրերի պատճենները, որոնք վերաբերվում են «Սիսական Նահանգ»-ի եկեղեցական կալվածներին։ Վերև առաջ բերված բոլոր վկայությունները գտնվում են հենց այդ կարևոր քաղվածքներում։

Այդ վկայություններից երկրորդը (Ստեփ Օրբ. էջ 206) վերաբերվում է «Բերդկաներէշ» գյուղին, որ 839 թվին Սյունյաց «Փիլիպպէ» իշխանը տվել էր Սյունյաց Տեր Դավիթ եպիսկոպոսին՝ կեսը «Սատանաքարին փոխան» և կեսը եկեղեցուն։ Երրորդ վկայության մեջ ասված է, որ նույն «Փիլիպպէ» իշխանը 844 թվին նվիրել է Տաթևի նույն Ս. խաչ եկեղեցուն Տաթև գյուղը (Ստեփ. Օրբել. էջ 206—208)։ Չորրորդ վկայությունից իմանում ենք, որ 867 թվին Քուպղիդուխտը՝ «Փիլիպպէ»-ի քույրը և Սյունյաց Հրահատ իշխանի կինը, «անորդի զոլով» «Մաճ շէնը»՝ «զիւր հոգեմասն բաժինն ընծայէ ի սուրբ խաչն և ի Տէր Սողոմոն» (Ստ. Օրբ. էջ 218—220)։ Վերջապես՝ հինգերորդ վկայությունը վերաբերվում է «Տաթևոյ սուրբ ուխտ»-ի սահմաններ-

[1] Introduction et tables des matieres, St. Petersburg, 1858, էջ LXXXVII

րին, որ հատուկ վճռով և առանձին գրությամբ որոշված են եղել 906 թվին (Ստ. Օրբ. էջ 230—234)։

Ուրեմն՝ ինչպես տեսնում ենք, «խոստակդար» բառը հիշատակված է 839, 844, 867 և 906 թվականների Տաթևի վանքի փաստաթղթերում։ Որ «խոստակդար»-ի նշանակությունն այս վկայություններում ոչ թե «ժառանգ» է կամ «պաշտոնյա», ինչպես ենթադրել են Հյուբշմանը և Բրոսսեն, այլ «ավատառու», այդ հաստատվում է, ինչպես ասացի, հենց նույն վկայությունների ուշադիր քննությամբ։ Վերոգրյալ վկայություններից երկրորդում ասված է՝ «և չիշխէ ոք հեռացնել՝ ոչ եղբայր և ոչ որդի և ոչ յիմ խոստակդարաց», իսկ երրորդում՝ «մի ոք իշխեսցէ ետ իմ անցման, իմ որդիք կամ եղբայրք կամ այլ խոստակդարք հեռացուցանել զայդ գիւղդ»։

Եթե «խոստակդար»-ը հասկանանք առաջին հատվածում իբրև «ժառանգ»՝ կըստացվի, իմ կարծիքով, ավելորդ կրկնություն, որովհետև «Փիլիպպէ»-ի անմիջական ժառանգները, նրա որդիները, հիշատակված են արդեն նույն հատվածի սկզբում։ Նոր Հայկազյան բառգրքի մեկնությունը՝ «թոռունք կամ յետնորդք»՝ թեև համարվում է թե առաջին և թե երկրորդ հատվածներին, սակայն այդ մեկնությունը, ինչպես վերև տեսանք, կարելի է անտես առնել, որովհետև «խոստակդար»-ի այդ նշանակությունը հիմնված է ստուգաբանական բռնազբոսիկ և սխալ բացատրության վրա։

«Խոստակդար»-ի իմաստը որոշելու համար ավելի կարևոր են չորրորդ և հինգերորդ վկայությունները։

Չորրորդ վկայության մեջ, որ գտնվում է Քուպղիդուխտի 867 թվի պայմանավճռում, ասված է՝ «Եւ մի ես և մի իմ եղբօրորդիք եւ այլ խոստակդարք պայքարել և համիմաղ կալ մի իշխեսցեն»։ Քուպղիդուխտը, ինչպես տեսանք, զավակ չուներ, ուստի «խոստակդար»-ն այստեղ ոչ «թոռունք» կարող է նշանակել, ոչ էլ անմիջական ժառանգ։ «Խոստակդա՛ր»-ի իսկական իմաստը որոշվում է այս հատվածում փաստական ու կարևոր մի նոր ցուցման օգնությամբ, որ ուշադրության չէ առնվել։ Վավերագրերի տակ, որ քաղվածորեն առաջ են բերված Ստեփանոս Օրբելյանի մոտ, սովորաբար, ստորագրել են կամ հիշվում են իբրև վկաներ հենց վերոհիշյալ այն անձինք, որոնցից պահանջվում էր չառարկել կամ չընդդիմանալ նվիրատուի կամքին։ Քուպղիդուխտի փաստաթղթի վերջում ասված է.

«Եւ գրեցի յ 316 թուականութեանս Հայոց վկայությամբ իմ եղբօրորդեացս՝ տեառն Վասակայ և տեառն Աշոտի և տեառն Գրի-

գորոյ և տեառն Սահակայ և իւրեանց ազատաց և ամենայն Շնհէ-
րեցեաց» (Ստ. Օրբ., էջ 220)։

Վերև հիշված «եղբօրորդիք և այլ խոստակդարf», ինչպես տեսնում ենք, այստեղ մատնացույց են արված իբրև վկաներ, սակայն «խոստակդարf»-ի փոխարեն ասված է՝ «վկայութեամբ իմ եղբօրորդեացս և իւրեանց ազատաց և ամենայն Շնհէրեցեաց»։ Այս զուգադիպումը, իմ կարծիքով պատահական չէ, այլ պարզ մի ապացույց է, որ չորրորդ վկայության մեջ «այլ խոստակդարf» են անվանված Քաղըիդոլախի «եղբօրորդի»-ների ազատները, որոնք «խոստակ»-առու էին, այսինքն՝ ավատառու։

Որ մատնանշված զուգադիպումը եզակի ու բացառիկ չէ, այդ երևում է և մյուս փաստաթղթերից, որոնք Օրբելյանի մոտ առաջ են բերված առանց կրճատման։ Օրինակ, «Փիլիպպէ»-ի 844 թվի վճռագրի սկզբում ասված էր՝ «և մի ոք իշխեսցէ յետ իմ անցման, իմ որդիf կամ եղբարf կամ այլ խոստակդարf հեռացուցանել զայդ գիւղդ», իսկ նույն վճռագրի վերջում կարդում ենք.

> «Եւ վկայք լիցին աստուածապահ տէր Գրիգոր՝ Սիւնեաց տէր, տէր Ատրներսէհ՝ Վասակայ որդի, Սիւնեաց տեառն, տէր Գրիգոր՝ Սահակայ որդի, տէր Հրահատ և տէր Արումամ՝ Սահակայ որդիք. տէր Հրահատ և տէր Գագիկ՝ Գրիգորոյ՝ Սիւնեաց տեառն որդիք, տէր Վահան՝ Վարդանայ որդի. նոյնպէս և յիմ ազատաց՝ Հուռ, Քուրդոյ, Խոսրով՝ Շապուհոյ որդիք, Ջհանշէր՝ Թէոդորոսի որդի, Աշնակ՝ Վահանայ որդի, Զագիկ՝ Վահանայ որդի, Վարդան՝ Ջանատայ որդի, Սահակ՝ Վասակայ որդի, Միհրան՝ Թուրքայ որդի, Յովհան՝ Ներսէհի որդի, Մուշեղ՝ տէր Տիրոցի որդի, Հասան՝ Շապուհոյ որդի, Վահան՝ Մըխիթարայ որդի, տէր Մուշեղ՝ Ըմբատայ որդի, տէր Վահան՝ Բարգենի որդի, տէր Բարգէն և տէր Վասակ և տէր Աշոտ իմ Փիլիպպէի որդիք. և ի կրօնաւորաց Ահարոն... Եւ վասն առաւել հաստատութեան զիմ սովորական մատանիս ի վերայ եդի և զիմ որդեաց և զայլ ազատաց» (Ստ. Օրբ., էջ 207—208)։

Ինչպես Քաղըիդոլախի փաստաթղթում, նույնպես և այս վճռագրում, վերև հիշված «խոստակդար»-ներին ներքևում համապատասխանում են դարձյալ ազատները, որոնք «Փիլիպպէ»-ի ավատառուներն էին։

«Խոստակդար»-ի նշանակությունը իբրև feodataire կամ ավատառու այնքան որոշ է ու ակնբախ այս երկու վճռագրում, որ ես

ավելորդ եմ համարում կանգ առնել ուրիշ նման վկայությունների վրա, որ կան նաև մյուս փաստաթղթերում։

Որ «խոստակղար»-ը չունի «ձեռնաւոր»-ի իմաստ, ինչպես ենթադրել է ակադեմիկոս Մ. Բրոսսեն, այդ և պարզ երևում է վերև մատնանշված հինգերորդ վկայությունից 906 թվի վճռագրում, որով որոշված են եղել Տաթևի շրջակա սահմանները։ Այդ վճռագրի մեջ «խոստակղար»-ը, ինչպես տեսանք, հիշատակված է հետևյալ համատեքստում.

> «Եթէ ոք ընդ հակառակս ելանէ ի մերոց կամ յօտարաց, յաւագաց կամ ի ձեռնաւորաց և ի խոստակղարաց կամ ի տանուտէրաց, ի սուրբ Երրորդութենէն որոշեալ լիցի, և յերից սուրբ ժողովոցն նզովեալ եղիցի» (Ստեփ. Օրբ. էջ 233)։

Այստեղ, ինչպես տեսնում ենք, «ձեռնաւոր»-ները հիշվում են առանձին «խոստակղար»-ներից առաջ։ Ուրեմն՝ միանգամայն անվիճելի է, որ «ձեռնաւոր» և «խոստակղար» բառերն ունեցել են տարբեր իմաստ։ Նույն այս համատեքստը հետաքրքիր է ու ուշագրավ նաև այն տեսակետից, որ նրա մեջ ըստ ավագության կարգի նախ հիշատակված են «աւագ»-ները և նրանց «ձեռնաւոր»-ները, հետո՝ «խոստակղար»-ները՝ «աւագ»-ների և «տէր»-երի ավատառուները և վերջում՝ «տանուտէր»-ները։ «Տանուտէր»-ները վերջումն են դրրված, որովհետև այս դարաշրջաններում այդ բառը, մեծ մասամբ, գործ է ածվել գյուղապետի իմաստով։ Այս մասին ավելի մանրամասն խոսելու եմ ուրիշ աշխատության մեջ։

«Խոստակղար»-ի նշանակության այս նոր լուսաբանությամբ որոշվում է Հայաստանի նախարարական կազմակերպության հիմնական առանձնահատկություններից մեկը և վերջնականապես պարզվում է, որ «ֆեոդ»-ը և պայմանական հողատիրությունը նախարարական Հայաստանում գոյություն են ունեցել արդեն իններորդ դարում։

Նրա ծագումը սակայն, անշուշտ ավելի հին է։

«Խոստակ»-ը, ինչպես տեսանք, հանդիպում է նաև Աղվանից Վաչագան արքայի կանոններում։ Մինչև այժմ ենթադրել են, որ այդ կանոններն ընդունված են եղել «Աղուէն»-ի ժողովում 488 թվին[1]։ Իմ կարծիքով, այդ ժողովը, հավանորեն, տեղի էր ունեցել յոթերորդ դարի սկզբներում Վաչագան Բարեպաշտի ժամանակ,

---

[1] Տես Մ. Չամչյան, Պատմութիւն հայոց Բ. էջ 219. Brosset Histoire de la Georgie, 1851, էջ 473. Fr. Tournebize, Histoire politique et religieuse de l'Arménie 1900, էջ 357, նաև իմ աշխատության մեջ՝ Beiträge zur albanischen Geschichte, Leipzig 1897, էջ 28։

*որի իշխանության տարիները ևս, հետևաբար, ետ պետք է տարվեն վեցերորդ դարի վերջերը և յոթերորդի սկզբները*[1]. *Մովսես Կաղանկատվացու պատմության մեջ հիշատակված է, որ այդ ժողովին նախագահել է Միհրանական տոհմից Վարդան քաջ Գարդմանատերը, որը ստորագրել է, իբրև, կանոնների տակ (տես Ա գլ. ԻԶ. էջ 103 և Գ, գլ. Ժ, էջ 348)։ Իսկ այս Վարդանի ժամանակը գրվելու է, անշուշտ, Միհրանական տոհմի հաստատման սկզբնական շրջանում՝ յոթերորդ դարի սկզբներում։*

*«Խոստակ»-ի և «խոստակդար»-ների գոյությունը կարելի է ըստ իս ենթադրել նաև VII—VI դարերից առաջ՝ թե Մարզպանության և թե Արշակունյաց թագավորության ժամանակ։*

*Վերև մենք արդեն տեսանք, որ եկեղեցականների պայմանական հողատիրությունը, որ առաջ եկած պիտի լիներ նախարարական աշխարհիկ կարգերի ազդեցությամբ, կարող է սկիզբ առած լինել չորրորդ դարում։ Այդ արդեն ուշագրավ մի ակնարկ է, որ պայմանական հողատիրությունը գոյություն ունեցած պիտի լիներ՝ իբրև մանր ազնվականության ավատական հողատիրություն՝ նաև այդ հնագույն դարաշրջանում։ Նույն այս ենթադրության հիմք կարող է ծառայել «խոստակ»-ի և «խոստակդար»-ի ստուգաբանական ծագումը պարթևերեն* xvâstak *և* xvâstakdâr *բառերից։ Այս տերմինները լինելով Արշակունյաց շրջանի փոխառություն, նրանց հնությունը կարող է դարձյալ հավանական մի ցուցանիշ համարվել, որ նախարարական Հայաստանում* feod *«խոստակ»-ը և* feudataire *«խոստակդար»-ը գոյություն են ունեցել ոչ միայն 9-րդ և 7-րդ դարերում, այլ հավանորեն, նաև Մարզպանական և Արշակունյաց ժամանակներում։*

*Հենվելով վերոհիշյալ մեր դիտողությունների վրա և ամփոփելով մեր ասածները, կարող ենք անել հետևյալ հետևությունները.*

---

[1] *Վաչագան Բարեպաշտի ժամանակը որոշելու համար կարևոր են Կաղանկատվացու պատմության հետևյալ ցուցումները. 1. Նրա Ա գրքի ԻԱ գլխում («Թուղթ արքային Վաչագանայ են», էջ 76) կարդում ենք. «գտանէր և զամենասուրբ Նշխարս Գրիգորի... զոր էր բերեալ երիցուն՝ Մատթէ անուն, ի Յովհաննէ Հայոց կաթուղիկոսէ, զոր ունէր նորին մատանեաւն կնքեալ, և առաքեալ անդ երիցունս առնոյր առ իւր»։ Արդ՝ այս «Մատթէոս քահանայ»-ին, ինչպես հայտնի է «Գիրք թղթոց»-ից (Թիֆլիս 1901, էջ 79 և 83), ուղարկել էր Աղվանք Հայոց Հովհաննես Գաբեղինացին (556/7—571, +573). 2. Կաղանկատվացու Ա գրքի ԻԵ գլխում առաջ է բերված «Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոս»-ի թուղթը «առ Վաչագան Աղուանից արքայ» (էջ 96)։ Այս թուղթը, հավանորեն, պետք է վերագրել «Մամիկոնէից Աբրահամ եպիսկոպոս»-ին, որ հետո 606/7 թվին դառավ կաթողիկոս։*

1. «Խոստակ»-ը, լինելով կարևորագույն տերմին նախարարական կազմակերպության, իր իմաստով և իրավական բովանդակությամբ համապատասխանում է միջնադարյան feud-ին կամ Lehn-ին, իսկ «խոստակդար» նշանակում է «խոստակ»-առու, այսինքն՝ feodataire կամ Lehnshalter։

2. Նախարարական Հայաստանի հիմնական առանձնահատկություններից մեկն այն է եղել, որ հայ եկեղեցին, գտնվելով նախարարական միջավայրի ազդեցության տակ, յուրացրել էր նախարարական կազմակերպության պատրաստի ձևերը և մեծ չափերով ենթարկվել էր ֆեոդալականացման։ Հետաքրքիր է այդ տեսակետից եկեղեցական «խոստակ»-ների գոյությունը, որոնք հատկացվել էին հոգևորականներին նրանց հոգևոր «ծառայության» համար օգտատիրության իրավունքով (dominium utile), մինչդեռ նույն հողաբաժինների նկատմամբ գերագույն սեփականության իրավունքը (dominium directum) պատկանել է եկեղեցուն.

3. Օգտատիրության այդ իրավունքը եղել է ժառանգական, ուստի և հասկանալի է, թե ինչու Ներսեսի և Ներշապուհի հինգերորդ կանոնում այդ հողաբաժիններն անվանվում են «հայրենի».

4. Հողատիրության այս ձևը, ինչպես երևում է համապատասխան կանոնների քննությունից, եղել է պայմանական, ուստի, եթե հոգևորականների «ծառայություն»-ն անհնարին էր դառնում նրանց տգիտության կամ ծանր հանցավորության պատճառով՝ եկեղեցին իրավունք ուներ «խոստակ»-ները ետ գրավել և տալ «արժանավոր»-ներին.

5. Ինչպես երևում է Ագաթանգեղոսի և Փավստոսի վկայություններից (տես «Դիտողություններ հին Հայաստանի շինականների դրության մասին», Պետհամալսարանի Տեղեկագիր № 1, էջ 13—17), 4-րդ դարում հոգևորականներին հատկացված են եղել որոշ հողաբաժիններ։ Ավելի քան հավանական համարելով, որ այդ հողաբաժինները «խոստակ» էին և ոչ սեփականություն, կարելի է ըստ իս եզրակացնել, որ եկեղեցական «խոստակ»-ների ծագման սկիզբը պետք է դնել 4-րդ դարի առաջին կիսում.

6. 9—10-րդ դարերի վավերագրերում, որ մեջ են բերված Ստեփանոս Օրբելյանի մոտ, «խոստակդար», այսինքն՝ «խոստակ»-առու՝ անվանված են իմ կարծիքով, այն «ազատ»-ները, որոնք կալվածատեր «ազգ»-երից ստացել էին «խոստակ»-ներ և ստանձնել էին իրանց «տէր»-երի հանդեպ զինվորական և այլ պատվավոր «ծառայութեան» պարտականություններ.

7. Ի նկատի ունենալով եկեղեցական կազմակերպության նա-

խարարականացումը և ընդունելով, որ եկեղեցական «խոստակ»-ները համապատասխան պիտի լինեին, հավանորեն, աշխարհիկ «խոստակ»-ներին, կարելի է, իմ կարծիքով, ենթադրել, որ «ազատ»-ների «խոստակ»-ները ևս համարվել են ժառանգական և «հայրենի».

8. Թեև «խոստակդար» տերմինն առաջին անգամ հիշատակվում է Ստեփանոս Օրբելյանի մոտ 9—10-րդ դարերի վճռագրերում, սակայն, ի նկատի առնելով «խոստակ» և «խոստակդար» բառերի պարթևական ծագումը, նաև եկեղեցական «խոստակ»-ների գոյությունը 4-րդ դարում, հավանական կլինի ենթադրել, որ ավատառությունը, իբրև հողային ֆեոդալական հարաբերությունների հատուկ կարգ, եղել է նախարարական կազմակերպության հիմնական տարրերից մեկը ոչ միայն 9—10-րդ դարերում, այլ նաև ավելի հին շրջաններում Մարզպանության և Արշակունյաց թագավորության ժամանակ.

9. «Խոստակ» և «խոստակդար» տերմինների վերոհիշյալ լուսաբանությունը կարող է թերևս կռվան ծառայել ճշտելու համար պարթ. xvâstakdâr բառի իմաստը։ Հ. Հյուբշմանը մատնանիշ է արել, որ xvâstakdâr-ը Pand-nama ĩ Adarbad Maraspand երկում նշանակում է «ժառանգ» (der Erbe, Arm. Gram., էջ 161)։ Ճի՞շտ է արդյոք որոշված այդ բառի իմաստը։ Ինձ թվում է, որ պարթևական այդ բառն իր նշանակությամբ կարող է համապատասխան լինել հայերեն «խոստակդար»-ին (Lehnsträger)։

## 2. «ՊՏՈՒՂ», «ՇԱՐԻԱՏ» ԵՎ «ՊԱԽՏ ՏԱՆՑ»

«Պտուղ»-ը, պրոֆ. Ն. Ադոնցի կարծիքով, նույն հարկն է, ինչ որ եվրոպական champart-ը արաբական mukasame-ը և պարսկական bahrak-ը, այսինքն՝ բերքի որոշ մասն է, որ տրվում էր իբրև հարկ կալվածատիրոջ [Армения в эпоху Юстиниана, էջ 482—483]։

Թադ. Ավդալբեգյանը, համաձայն լինելով այս խնդրում Ադոնցի հետ, իր կողմից ավելացնում է, որ «պտուղ» կամ «պտղի» հարկային տերմինը հոգևորական դասին անցել է աշխարհիկ տընտեսությունից[1]։

«Պտուղ»-ի նշանակությունը՝ իբրև բնական տուրք՝ պարզ երեվում է Աղվանից Վաչագան արքայի չորրորդ կանոնից.

---

[1] Տե՛ս Թ. Ավդալբեգյան, «Հաս, սակ, բաժ» Տեղեկագիր Հ.Խ.Ս.Հ. Գիտության և Արվեստի Ինստիտուտի, Երևան, 1926, էջ 89։

«Պտուղք ի ժողովրդենէ երիցուն՝ կարգն այս լիցի. Թուանիկն չորս գրիւ ցորեան, վեց գրիւ գարի և վեշտասան փաս քաղցու. և որ տառապեալն է՝ զհացիդ կէսն տացէ, և գինի՝ որչափ և կարողն իցէ. իսկ որոյ վար և այգի ոչ է, մի առցեն։ Իսկ այնք՝ որ աւելի քան զայս տացեն սակս հոգւոյ, բարի առնեն, որպէս Պօղոս ասէ, «Որ առատութեամբ սերմանէ՝ առատութեամբ հնձեսցէ»։ Եւ ոյր ոչխար է ի տան՝ ոչխար մի և երեք գղաթ բուրդ և մեկ պանիր»». և ոյր ձիք ի տան իցեն՝ մին յովանակ, և ոյր պախրէք իցեն՝ որթ մի» տե՛ս Մովսես Կաղանկատուացւոյ, «Պատմութիւն Աղուանից աշխարհի» (Թիֆլիս 1913, Ա, գլ. ԻԶ, էջ 99)։

«Պտուղ»-ի նշանակությունը թե այս և թե ուրիշ վկայություններում միանգամայն որոշ է ու անվիճելի։ Սակայն ուշադրության արժանի է, որ «պտուղ»-ը մատենագրական բոլոր վկայություններում գործ է ածվել միշտ եկեղեցական տուրքի իմաստով։ Իբրև աշխարհական հարկ այս տերմինը, որքան ինձ հայտնի է, չէ հիշատակված ոչ մատենագրական աղբյուրներում, ոչ էլ արձանագրություններում։ Հնարավոր է, իհարկե, որ կալվածատիրոջ տրվող բնական հարկերը ևս կարող էին «պտուղ» անվանվել. բայց այդ հարկավոր է, իմ կարծիքով, հաստատել որոշ ու դրական որևէ վկայությամբ։ Վերոհիշյալ պնդումը կարոտ է, ուրեմն, փաստական հիմնավորման։

Թե բնական և թե մյուս հարկերի խնդիրը քննելիս՝ պետք է ի նկատի ունենալ, որ միևնույն հարկերը զանազան դարաշրջաններում ունեցել են հաճախ տարբեր անուններ։ Հարկային տերմինների ուսումնասիրությունը, այդ տեսակետից, բավական բարդ աշխատանք է։ Բացի տերմինների նշանակության լուսաբանումից անհրաժեշտ է, ուրեմն, որոշել նաև նրանց կիրառման ժամանակաշրջանները։

Այս դիտողությունը վերաբերվում է, բնականաբար, և բնահարկերին, որոնք Բագրատունյաց, ինչպես և սելջուկյան ու թաթարական տիրապետության շրջաններում, անվանվել են, ինչպես կտեսնենք, ոչ թե «պտուղ» կամ «հաս»[1], այլ «շարիատ»։

«Շարիատ»-ի մասին կարևոր տեղեկություններ գտնվում են վիմական արձանագրություններում և, բարեբախտաբար, այնքան

---

[1] Տե՛ս իմ աշխատությունը՝ «Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում», Տեղեկագիր Գիտության և Արվեստի Ինստիտ. № 1, Երևան, 1926. էջ 9, 29, 32 և 34—35։

շատ, որ հնարավորություն են տալիս բավարար կերպով որոշելու նրա նշանակությունը, իբրև բնահարկ։

Ի նկատի ունենալով խնդրի կարևորությունը, հարկ եմ համարում մեջ բերել արձանագրություններից «շարիատ»-ի վերաբերյալ բոլոր վկայությունները. որ առայժմ ինձ հայտնի են.

1. Վիմական տարեգիր, կազմ. Կ. Կոստանյանցի, Ս. Պետերբուրգ 1913, էջ 8, Տեկոր, 971 թ.

«Ես Խաւսրեւանուշ Հայոց թագուհի հաստատեալ եմ զՏեկորոյ շարյեատն յեղն կայք մի».

2. Վիմական տարեգիր, էջ 13, Տեկոր, 1008 թ.

«Ի ՆԾԷ թ. Հայոց... կամ եղեւ ինձ Կատրանիդէ, Հայոց թագուհի դուստր Վասակայ եւ ամուսին Գագկայ. թողեալ եմ զՏեկորոյ շարյատն վասն Գագկայ Շահնշահի արեւշատութեան եւ իմ որդեացն»։

3. Վիմական տարեգիր, էջ 14՝ Մաստարայ 1015 թ.

«Ի ՆԿԴ թուականութեանս թորգոմյան ես Վահրամ իշխանաց իշխան, որդի Համզէի, թողի զՄաստարայի շարիատն վասն Գագկայ Շահնշահի կենդ»...

4. Վիմական տարեգիր, էջ 26՝ Ալամն, 1001 թ.

«Այս իմ գիր է Սոփէ... Շահանշահի հայոց եւ վրաց թագուհւոյ, թողել եմ զԱլաման շարյատս վասն իմ հոգոս եւ արեւոս» եւն.

5. Վիմական տարեգիր, էջ 107՝ Փարպի, 1264 թ.

«Ես Աղբուղայ, որդի Իւանէի, որդւոյն մեծին Շահանշահի, ես Աղբուղայ թողի զՓարպոյ այգեաց շարիատն... չժգ»։

6. Վիմական տարեգիր, էջ 126՝ Մրեն, 1284 թ.

«Թուակ, ՆԼԳ. այս մեր արձանագիր է պարոն Սէնոպ Սահմատինս Աւետեց որդւոյս եւ կենակից իմ Ուրտուրիտայ որ յառաջ գնեցի զՄրեն յիմ հալալ արդեանց և հաստատեցաք արձանագրով և թողաք զՄրենոյ տասնակն հացին, որ ի շարիատն... Կիկլիշանայ ամիրութեամբս գրեցաւ».

7. Վիմական տարեգիր, էջ 126 և 162՝ Արուճ, 1285 թ. (նաև 1325 թ.)[1]։

---

[1] Միևնույն այս արձանագրությունը տպված է երկու անգամ 1285 և 1325 թվականների տակ (էջ 126 և 162)։ Սխալը բացատրվում է նրանով, որ հայոց թվականը Շահխաթունյանի մոտ («Ստորագրութիւն կաթողիկէ Էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ», Էջմիածին 1842, Բ, էջ 61) կարդացված է ՉԼԴ (=1285), իսկ

«Ի Թուիս Հ. ՉԼԴ. ի փաթշահութեան Արղուն խանին, ի թագաւորութեան Դեմետրէի, պարոնութեան սպասալար Մխարկրձե (ա) լին, եղբաւրն Իւանէի, որդւոյն մեծին Շահընշահի, ես Մակլի խուսան աղայիս որդիս եկի յԱրուճ իմ հաւրս գանձագին գեղս, եւ թողի նացին շարիատն հատից»...

8. Վիմական տարեգիր, էջ 127 Ավան 1285 թ.

«Ես Դաւիթ, որդի Դեմէտրէ թագաւորին, թողի զԱւանայ զայգեաց շարէտն, վասն միաբանութեան սոցա... Արդ որք ի մերոց կամ յաւտարաց տէր լինի Աւանայ եւ զհաստատեալ գիրս մեր խափանել ջանայ և զշարէտ առնու կամ»...

9. Վիմական տարեգիր, էջ 130՝ Օշական. 1288 թ.

«Ի Թուին ՉԼԷ... յամի թագաւորութեան... Արղուն ղանին ես պարոն Սահմատինս, որդի պարոն Աւետեացն, թողի զՑաւշականու զհացի եւ զդարմանի զշարիատն զվերի եւ զներֆի զամէն հանդի»...

10. Վիմական տարեգիր, էջ 130՝ Մրեն, 1288 թ.

«Թւ. Հ. ՉԼԷ... ես պարոն Սէնոպ Սահմադինս եւ ամուսին իմ Ռուսուդա... Մրենոյ նացին շարիատն թողել էաք և հայմալ թողաք զէգեց գինոյ և խաղողի խալէնս»...

11. Վիմական տարեգիր, էջ 138 Հռիփսիմէի վանք։ 1296 թ.

«Ի Թվից ՉԽԵ, ի պատրոնութեան իշխանաց իշխանին մեծին Շահնշահի եւ Աղբուղին ես Շիրին խաթունս ու Պայալուն խաթունս ու Թաւղթէս ու Թալէս ու Խոճէս ու Ղայիրս թողաք զՀռիփսիմուցս զբաբակին շարիատն եւ զշահնային բաբակի հակն»...

12. Վիմական տարեգիր, էջ 142՝ Յովհաննավանք, 1201 թ.

«Ես Ամասջան, որդի Գրիգորին, եւ ամուսին իմ Բեուճ. հէնց էլաւ պարոնաց ձեռնէ զերկիրս առին ես չբաժնեցայ ի ծառայութենէ. աստուած պարոնաց աջողումն երետ. երկիրս երեկ. Օհանավանք ինձ տվին հէրէնիք. համարակաց տունս խլած էր էզոց հողի շարատ էր գրած. մեք էլ համարակ ի սուրբ Կարապետս ապապարեցաք, վանաց էզոյ շարիատ վեր կալաք»...

---

Ալիշանի մոտ («Այրարատ», Վենետիկ 1890, էջ 144)՝ ՉՀԴ (=1325)։ Ուղիղ է, անշուշտ, Շահխաթունյանի թվականը, որովհետև Արղունն «էլղան» էր 1284—1291 թվերին։ Մեր բնագրում Շահխաթունյանի սխալ ընթերցվածներն ուղղված են Ալիշանի բնագրի համաձայն։

13. Վիմական տարեգիր, էջ 247՝ Շիրակաւան, անթվական.

«Որ ով եկեղեցւոյս դրանս կա և ապաաաւորէ սմա թէ աբեղա եթէ միակեց, թէ շատ տաւար ունենան եթէ քիչ, թէ շատ վաստակ ցանեն եւ թէ քիչ, ոչ շարիատ, ոչ համարելէ, ոչ սուսունի, ոչ եզին թաղար, ոչ մեծ չար, ոչ փոքր հետ եկեղեցւոյս ապաաաւորացս ոչ ում խաւսք չինի»[1]...

Այս վկայություններում, ինչպես տեսնում ենք, հիշատակված են.

ա. «զՏեկորոյ շարյեատն յերն կայթ[2] մի» (վկ. 1).

բ. «զՓարպոյ այգեաց շարիատն» (վկ. 5).

գ. «զՄրենոյ տասնակն հացին, որ ի շարիատն» (վկ. 6).

դ. «Արուճի հացին շարիատն» (վկ. 7).

ե. «զԱւանայ զայգեաց շարէտն» (վկ. 8).

զ. «զՅաւշականու զհացի եւ զդարմանի զշարիատն զվերի եւ զներքի զամէն հանդի» (վկ. 9).

է. «Մրենոյ հացին շարիատն» (վկ. 10).

ը. «զՀոփփսիմուցս զբա(մ)բակին շարիատն» (վկ. 11) և

թ. «Ոհանավանքի էգոց հողի շարատ» (վկ. 12)։

«Շարիատ» առնում էին, ուրեմն՝ յուղից, այգիներից, հացից, դարմանից, բամբակից։ Վեցերորդ վկայության մեջ «շարիատ» է անվանված հացի «տասնակ»-ը, առաջին վկայության մեջ՝ Տեկորից ստացվող մի կայթ յուղը, իսկ մյուս դեպքերում՝ թեև չի նշանակված «շարիատ»-ի քանակը, սակայն կարելի է վստահորեն ենթադրել, որ «շարիատ»-ը դարձյալ բերքի որոշ մասն է, որ վճարվում էր որպես հարկ։ Այդ բնահարկը, ինչպես պարզ երևում է վկայությունների բովանդակությունից, վճարվել է կալվածատերերին։

«Շարիատ» բառի ստուգաբանությունը և նրա նշանակությունը փորձել են լուսաբանել պրոֆ. Նիկ. Մառը և պրոֆ. Ս. Եղիազարյանը։

---

[1] Բացի վերոհիշյալ արձանագրություններից տե՛ս նաև 1323 թվի Սիթի խաթունի արձանագրությունը (Վիմ. տար. էջ 161), որ չափազանց աղճատված է։

[2] «Կայթ»-ը՝ իբրև հացահատիկների չափ՝ հավասար է եղել Շիրակացու ժամանակ, ինչպես ցույց է տվել Գալուստ Տեր-Մկրտչյանը, 60 լիտրի ուրեմն՝ նրա կշիռը կլիներ 326,4×60=19,584 կիլոգրամ։ Տե՛ս Գալուստ Տեր-Մկրտչյան, «Անանիա Շիրակացի», Վաղարշապատ, 1896, էջ 19, համեմատ նաև И. А. Орбели, Вопросы и решения вардапета Анании Ширакца, Петроград, 1918, էջ 64։ Լիտրի կշիռը տե՛ս իմ աշխատության մեջ՝ «Նյութեր հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության» (1) Տեղեկագիր Գիտության և Արվեստի Ինստիտուտի, Երևան, 1927, № 2։

*Նիկ. Մառի ասելով՝ մինչև թաթարական տիրապետությունը Հայաստանում հարկատվության նկատմամբ տեղական սովորույթների հետ միասին իշխել է մահմեդական իրավունքը, ուստի և «շարիատ» է անվանվել այն հարկը, որ պահանջվել է համաձայն այդ իրավունքի։*

*Ս. Եղիազարյանը, որը նույնպես «շարիատ»-ը մեկնել է իբրև* «налог по шариату»[2] *փորձել է նաև որոշել հարկի բովանդակությունը։ Հենվելով 1284 թվի Մրենի արձանագրության վրա (տե՛ս վերև վկայութ. 6), նա ենթադրել է, որ «շարիատ»-ը մահմեդական օրենքով սահմանված «տասանորդ»-ն է[3]։ «Շարիատ»-ին, որ մահմեդական հիմնական հարկ էր, ենթակա էին,— ասում է Եղիազարյանը,— տնտեսության բոլոր ճյուղերն իրանց արդյունքներով, ամեն տեսակ գույք, արհեստներ և առևտուր. վավերագրերի մեջ առաջ են բերված, իրոք, դեպքեր, երբ «շարիատ»-ի տակ են դրվել՝ մարդը, հացը, կաթը, եզը, անասունները և այլն[4]։*

*Հարգելի ուսուցչապետի այս վերջին եզրակացությունը, անտարակույս, սխալ է։ Արձանագրական վկայություններում, ինչպես տեսանք, ոչ մի խոսք, անգամ ակնարկ չկա այն մասին, որ իբր «շարիատ»-ի տակ էին՝ «ամեն տեսակ գույք, արհեստներ, առևտուր մարդ կամ անասուններ»։*

*Ուշադրության արժանի են սակայն «շարիատ»-ի մասին վերոհիշյալ ստուգաբանական մեկնությունը[5], նաև նրա քանակական որոշումը իբրև «տասանորդ»։*

*Ստուգաբանական մեկնությունը, թեև առաջին հայացքից թվում է հնարավոր, սակայն միանգամայն անընդունելի պիտի համարվի՝ ոչ միայն «շարիատ»-ի և իմաստների տարբերության, այլ, գլխավորապես, նաև այն պարզ պատճառով, որ «շարիատ»-ը գործ է ածված Հին կտակարանի գրաբար թարգմանության մեջ, երբ դե-*

---

[1] Н. Марр, Новые материалы по армянской эпиграфике, С. Пет., 1893, էջ 80. Зап. Вост. отд. т. VIII.

[2] Проф. С. А. Егиазаров, Исследования по истории армянского права, Киев, 1919, էջ 4.

[3] *Նույնը, էջ 40։*

[4] *Նույնը, էջ 40։*

[5] *Հ. Ղևոնդ Ալիշանը «շարիատ»-ը համարել է՝ «հասարակ կոչումն տրից», և նրա ստուգաբանական ծագման մասին մատնացույց է արել որ, «շիյրատ ըստ պարսից նշանակէ խորշ պարկի», տե՛ս «Շիրակ», Վենետիկ, 1881, էջ 92։ Այս թռուցիկ համեմատությունը, իհարկե, ճիշտ չէ՝ թե այդ բառերի տարբեր նշանակության և թե ձայնական օրենքների անհամաձայնության պատճառով։*

ռևս գոյություն չունեին ոչ Մահմեդը, ոչ էլ մահմեդական օրենքները։

Նոր Հայկազյան բառգիրքը, որ նկատի է ունեցել հենց այս վկայությունները, «շարիատ»-ը մեկնել է իբրև — πλεονασμός, abundantia, բառերը, իբր «յավելված», այսինքն՝ «վաշխ յաւելեալ ի վերայ փոխոյ քան զգլուխ դրամոյն և այլոց ընչից»։

Ավելորդ չեմ համարում մեջ բերել Հին Կտակարանի կարևոր այդ վկայությունները.

1. Ղևտ. ԻԵ. 37.

«Զարծաթ քո մի տացես նմա ընդ տոկոսեօք, և զկերակուր քո մի տացես նմա ընդ շարիատիւ».

2. Բ. օրենք. ԻԳ., 19.

«Մի տացես եղբօր քում արծաթ վաշխիւ, և մի զկերակուր շարի՛ատիւ»...

«Շարիատ»-ի հանդեպ հունարեն թարգմանությունն ունի առաջին հատվածում՝ πλεονασμος, իսկ երկրորդում՝ τοχος, այսինքն՝ «յաւելուած» և «տոկոս»։ «Շարիատ», ինչպես տեսնում ենք, անվանվել է հինգերորդ դարում այն տոկոսը, որ վճարվում էր իբրև ավելում փոխ առած ուտելեղենի կամ կենսամթերքների համար։ Իբրև բնահարկ նա նույնպես նշանակում էր, ինչպես տեսանք, որոշ տոկոս, որ ստացվում էր բերքից։ Շատ պարզ է, ուրեմն, որ «շարիատ»—բնահարկը նույն բառն է, ինչ որ հինգերորդ դարի «շարիատ»—տոկոսը, և, հետևաբար, նա չի կարող լինել մահմեդական շրջանի փոխառություն։

Մնում է պարզել մի խնդիր ևս, թե արդյոք ճի՞շտ է, որ «շարիատ»-ը որպես բնահարկ ունեցել է բացառապես «տասանորդ»-ի իմաստ։

Պրոֆ. Ս. Եղիազարյանը, ընդունելով որ այդ հարկը մահմեդական «տասանորդ»-ն է կամ «աշար»-ը, ինչպես, տեսանք, մատնացույց է արել վերոհիշյալ վեցերորդ վկայությունը՝ «զՄրենոյ տասնակն հացին, որ ի շարիատն»։ Իմ կարծիքով, այս ենթադրությունը ևս հավանական չէ։

Եթե Մրենում «շարիատ»-ը տասանորդ էր, այդ չի կարող, բնականաբար, ապացույց լինել, որ նույն նշանակությունն ունեցել է նաև մյուս վկայություններում։ «Շարիատ»-ը որի բուն իմաստը տոկոս էր, բերքի որոշ մասն էր, որի քանակը տարբեր վկայություններում, որ վերաբերվում են զանազան դարաշրջանների, կարող էր նույնը չլինել։ Նրա քանակական որոշումն առանձին դեպքերում խիստ կարևոր մի խնդիր է, սակայն այդ խնդրի լուսաբանու-

*թյան համար հարկավոր են անշուշտ, փաստական նոր տըվյալներ։*

*Բացի 1284 թվի Մրենի արձանագրությունից (վկայութ. 6), «Շարիատ»-ի չափը տրված է նաև Տեկորի 971 թվի արձանագրության մեջ (տե՛ս վերև վկայութ. 1)։ «Ես Խասրեւանիշ Հայոց Թագուհի,— ասված է այդ վկայության մեջ,— հաստատեալ եմ զՏեկորոյ շարյեատն յեղն կայթ մի»։ Նույն այս հարկը հիշատակված է նաև Մխիթար Գոշի Դատաստանագրքում՝ «կովու լիտր եղն միայն լիցի» (Վաղարշապատ, 1880, Բ. ա, էջ 315)։*

*Հնագույն հարկերի քանակը որոշող թե այս և թե նման վկայությունները այնքան կարևոր են տնտեսագիտական հետազոտությունների համար, որ ես ավելորդ չեմ համարում մի փոքր կանգ առնել չափերի վրա, որ մատնանշված են այս հատվածներում։ «Շարիատ»-ի չափը, ինչպես տեսնում ենք, ցույց է տրված Տեկոր գյուղից ընդամենը՝ «կայթ մի», իսկ Գոշի վկայության մեջ՝ յուրաքանչյուր կովից մեկ լիտր։*

*Եթե Վիմական տարեգրի «կայթ մի» ընթերցվածը ճիշտ համարենք*[1] *և տասներորդ դարի այս «կայթ»-ը հավասար ընդունենք Շիրակացու ժամանակվա «կայթ»-ին, որ 60 բյուզանդական լիտր էր։ Տեկորի յուղի բնահարկը այժմյան կշռով, ինչպես ասացի, կլինի 19,584 կիլոգրամ։*

*Այս հաշիվն անում ենք սակայն վերապահությամբ, որովհետև կշիռները և չափերը կարող էին նույնը չլինել զանազան դարաշրջաններում և տարբեր տեղերում։*

*Մխիթար Գոշի մոտ վերոհիշյալ լիտրը, օրինակ, այլևս Շիրակացու հիշած բյուզանդական «լիտր»-ը չէ (=326,4 գրամ), այլ, ըստ երևույթին, արաբական ժամանակվա Իրաքի լիտրն է, որի կշիռը հավասար էր 408 գրամի կամ 1 ռուսական ֆունտի։ Այս հետևությունը ստացվում է Դատաստանագրքի Վենետիկի օրինակի լուսանցքի նկատողությունից և ձեռագրական այն ընթերցվածներից, որ մանրամասն առաջ են բերված Բաստամյանցի ծանոթության մեջ։ «Մեր օրինակի մեջ,— ասում է Բաստամյանցը,— լուսանցքի վերա գրած է օտարի ձեռքով իբրև բացատրություն լիտր բառի՝ «Ճ (100)* դրամ կշիռ եղ», *որով կամենում է իբր ասել թէ մի լիտրը հաւասար է հարյուր դրամ կշռին։— Վենետիկի օրինակի մէջ գրած է* «լըտրեղն» *(անշուշտ՝* «լըտր եղն»). *իսկ այդ բառի տակ*

*[1] Արձանագրությունների տպագիր հրատարակությունները այնքան անփույթ են ու սխալաշատ, որ «կայթ մի» ընթերցվածը կարող է լինել աղճատված։ Արձանագրության մեջ ուղիղ ընթերցվածը թերևս լինի «կայթսի»։*

*կցած է լուսանցքի վրա այսպիսի ծանոթություն՝ Այսպես ի հնագույն. ի մի օրին.* «Լիտր իւղն». *յերիս խանգարեալ օրինակսն* «կովու ճարիւր դրամ կշիռ իւղ տացեն»: *Սոյնպես գրած է և № 488, 749 Սին. Կարապ. օրինկ. մեջ՝ «եւ կովու Ճ (100) դրամ կշիռ եղ տացեն»*[1]։

*Այս կարևոր ընթերցվածները գտնվում են Դատաստանագրքի ձեռագիր հին օրինակներում, ուստի հավանական պիտի համարել, որ Մխիթար Գոշի մոտ հիշատակված «լիտր»-ի կշիռը եղել է, իրոք, «Ճ դրամ»։ Բյուզանդական «լիտր»-ի կշիռը (=326,4 դրամ), ինչպես գիտենք, հավասար էր 80 «դրամ»-ի («դրամ»-ը=4,08 գրամ), սակայն Իրաքի «լիտր»-ը, որ գործ է ածվել արաբական աշխարհակալության ժամանակ գրեթե ամեն տեղ՝ անգամ Սպանիայում, Ֆրանսիայում և Ռուսաստանում՝ այժմյան կշռով 408 գրամ էր, և հենց այս «լիտր»-ը, իմ կարծիքով, համապատասխանում է Դատաստանագրքում մատնանշված «լիտր»-ին, որի կշիռը, ինչպես տեսանք, հավանորեն, 100 «դրամ» էր*[2]։

*Եթե ընդունելի համարվի իմ այս ենթադրությունը, յուղից վճարվող բնահարկը կամ «շարիատ»-ը, որ Գոշի Դատաստանագրքում սահմանված էր յուրաքանչյուր կովից մեկ լիտր, այժմյան կշռով պետք է հաշվել 408 գրամ կամ ռուսական 1 ֆունտ։*

*Բացի «շարիատ»-ից, որի բնահարկ լինելը հաստատում են վերոհիշյալ վկայությունները, բնական հարկի նշանակություն ունեցել է, ըստ երևույթին, նաև «պախտ» հարկը, որը հանդիպում է մի անգամ միայն Վիմական տարեգրում՝ Անիի 1046—1050 թվի հետևյալ արձանագրության մեջ.*

*Վիմական տարեգիր, էջ 27՝ Անի, 1045—1054 թ*[3].

---

[1] *Տե՛ս Մխիթարայ Գոշի, Դատաստանագիրք Հայոց Բ, ա, էջ 315, ծանոթ. 673։*

[2] *Կշիռների և չափերի ուսումնասիրությունը, պետք է ասել, որ խիստ բարդ ու դժվար խնդիր է, որին պետք է մոտենալ առանձին զգուշությամբ։ Ոչ միայն հին, այլ նաև գիտական նորագույն աշխատություններում կշիռների, չափերի և դրամների վերաբերմամբ հանդիպում են հաճախ միանգամայն սխալ ցուցումներ, որ կարող են հիմք ծառայել սխալ ու խառնաշփոթ հաշիվների։ Օրինակ, Ն. Ռոժկովի* «История России» *աշխատության մեջ (1919, 1, էջ 156) բյուզանդական «լիտր»-ը կամ ֆունտը հավասար է ընդունվում ռուսական այժմյան 3/4 ֆունտի։ Բյուզանդական «լիտր»-ի կշիռը, ինչպես ցույց է տրված իմ մի այլ աշխատության մեջ («Նյութեր հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության», 1, Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի № 2) 326,4 գրամ էր, իսկ ռուսական ֆունտը՝ 408 գրամ, ուստի նա հավասար է ոչ թե 3/4 ռուս. ֆունտի, այլ 4/5։*

[3] *Բյուզանդական իշխանությունը հաստատվել էր Անիում 1046 թվին։ Զոյե կայսրուհին, որ հիշվում է սույն արձանագրության մեջ, վախճանվել է 1050 թվին։*

*«Ես Առաւնս մագիստրոս, մեծարեալ ի մեծափառ թագաւորութեանց ի գեղ զարդու եւ ի տես մանգութեան իմո, եկի յարեւելս, ի գեղեցկաշէն բերդս, յԱնի, բարձրացուցի բաւանդակ զպարիսպ սորին կառկառակոյտ արձանաւք եւ հաստահեղոյս ամրութեամբ, եւ ի յիմոց մեծածախ գանձուց ածի ջանիւ ջուր յորդաբուխ ի մէջ ամրոցիս յուրախութիւն եւ ի զովացումն ծարաւեաց։ Բերի ոսկի մատանեաւ գիր ազատութեան զինքնակալ ծիրանեծին թագուհոյն* վասն պախտից տանց fաղաfիս և թաստակին, զոր տային ամյամէ չափ *ութից լտերց, այլ և ի խնդրո իշխանաւորացս խափանեցի եւ զգիտ երկուց լտերց, զոր տայր մութսիրն այս ամէն»։*

*Թեև այս վկայության մեջ չէ հիշված, թե ի՞նչն էր տրվում «չափ ութից լտերց» և «երկուց լտերց», սակայն միանգամայն պարզ և որոշ է, որ «պախտ տանց»-ը բնական հարկ էր, ինչպես և «թաստակ»-ը, որի մասին խոսելու ենք առանձին։*

*«Պախտ»-ը, իմ կարծիքով, հոմանիշ է այստեղ «շարիատ»-ի և, հավանորեն, նույն հարկի պարսկական անունն է[1]։ Ինչպես հայտնի է, հայերեն «բախտ» բառը, որը փոխառություն է պարթևերենից, հնդկա-իրանական լեզուներում նշանակում էր ոչ միայն «բախտ, վիճակ, ճակատագիր», այլև «մաս, բաժին»[2]։ Ճիշտ այնպես, ինչպես և ռուսական* ДОЛЯ *բառը, որի սկզբնական իմաստը «մաս, բաժին» է, փոխաբերաբար նշանակում է նաև «բախտ, ճակատագիր»։*

*Ինձ թվում է, որ այս «պախտ»-բնահարկը պարթևերեն կամ պարսկերեն վերոհիշյալ նույն* baxt*-ն է, որը կարող էր բացի իր սովորական նշանակություններից ունեցած լինել նաև բերքից վճարվող մասի կամ բնահարկի նշանակություն։*

*Արձանագրությունը գրված է, հավանորեն, ոչ թե 1045—1054 թվականների ժամանակամիջոցում, այլ 1046—1050 թթ.։*

[1] *Պրոֆ. Ս. Եղիազարյանն այս հարկը նույնն է համարում, ինչ որ «դռնագիր»-ը, և «պախտ տանց»-ը թարգմանում է* подомный налог*։ Այս հարկը,— ասում է նա,— գոյություն է ունեցել Անդրկովկասի մահմեդական շրջաններում* ovphuli [подомные деньги] *կամ* thuspiphuli [подомные деньги] *անունով (տե՛ս* Исследование, *էջ 39)։ Իմ կարծիքով, «դռնագիր» և «պախտ տանց»-ը տարբեր հարկեր են։ Բացի այդ՝ արձանագրության բովանդակությունից պարզ երևում է, որ «պախտ»-ը տարբեր է նաև հիշյալ մահմեդական հարկերից, որովհետև այս հարկը տրվել է ոչ թե դրամով, այլ լիտրերով։*

[2] *Տե՛ս Հ. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, Երևան, 1926, էջ 906։*

# 3. «ԹԱՍՏԱԿ»=ԹԱՍՈՒ-ՏԱԿ.

1046—1050 թվի Անիի արձանագրությունը, որի մեջ հիշատակված է «պախտ տանց» հարկը, ուշագրավ մի նեցուկ է ու կռվան, որը, իմ կարծիքով, հիմք կարող է ծառայել «թաստակ» հարկի լուսաբանության համար։

Այս վերջին հարկը հիշված է հինգ անգամ IX դարի հետևյալ արձանագրություններում.

1. Վիմական տարեգիր, էջ 13, Տեկոր 1014 թ.

«Եւ ես Աշոտ թագաւոր հաստատեցի եւ թողեալ եմ զհարկն (այսինքն՝ «գշարիատն») բնովիմբ յաւիտենից եւ զթաստակն վասն իմ արեւշատութեան եւ իմ ծնողաց եւ եղբարց եւ զաւակաց, որ աւր թ. կ. Հաոց նկգ էր»...

2. Վիմական տարեգիր—էջ 14՝ Հոռոմոս, 1013 թ.

«Ես Անանիա, առաջնորդ գոլով. ս. ուխտիս... շատեցի մեծաւ ջանիւ զհարկ եւ զթաստակ, առի և զՔեղարագոմն իւր ամենայն գոյիւ ի. ս. ուխտս վասն ապաւինի տեղի լինելոյ ի փախստեան ժամանակի եւ այլ բազում ինչ ազատի փայտի եւ խոտի... տուող այդմ պարգեւի Գագիկ էր... եւ որդեակք իւր՝ Սմպատ եւ Աբաս եւ Աշոտ։

3. Վիմական տարեգիր, էջ 21՝ Երերուք, 1038 թ.

«Յանուն Աստուծոյ ի թուականին ՆՁԷ. (բ)արեպաշտ թագուհի դուստր Աբասա, Սմբատ Շահնշահի կինս, եւ Աշոտո մա(յ)րս, որ ազատեցի զԵրէրվաց թաստակս յորդէց յորդիս Սմբատ Շահնշահանի հզուրի եւ արքայի արեւշատութեան»...

4. Վիմական տարեգիր, էջ 27՝ Անի, 1046—1050 թ.

«Ես Առաւնս... բերի ոսկի մատանեաւ գիր ազատութեան ղինքնակալ ծիրանեծին թագուհոյն վասն պախտից տանց քաղաքիս եւ թաստակին, զոր տային ամ յամէ չափ ութից լտերց. այլ և ի խնդրո իշխանաւորացս խափանեցի եւ զգիտ երկուց լտերց, զոր տայր մութսիբն այս ամէն»[1]։

Պրոֆ. Ս. Եղիազարյանը, կարծում է, որ «թաստակն» իրանական ծագում ունի և համեմատում է այս բառը dästak-ի հետ[2]։

---

[1] Կա մի վկայություն ևս թաստակի մասին Ալամնի 1041 թվի արձանագրության մեջ. տե՛ս Н. Марр, Новые материалы по армянской эпиграфике, էջ 76։

[2] Ս. Եղիազարյանից առաջ հայերեն «թաստակ»-ի ծագումը պարսկերեն dästäk-ից որոշ վերապահությամբ մատնանշել է Նիկ. Մառը։ «Если название повинности, թաստակ,— ասում է նա,— обязано своим происхождением той статье закона или специальной грамоте, в силу которой требовалась ея

«Քրդերի մոտ,— ասում է նա,— մի սովորություն կա, որի համաձայն նախրչին իրավունք ունի տնտեսական տարվա վերջին, երբ լրանում է տարեկան իր վարձույթի ժամանակը, վերցնելու իբրև պարգև մեկ ոչխար կամ մեկ գառ իր ընտրությամբ։ Այդ ոչխարը կամ գառը, որ նրա աշխատավարձի մեջ չէ մտնում, այլ տրվում է նրան իբրև պարգև, անվանում է dästak։ «Թաստակ»-ը, որ հիշվում է վավերագրերում, կարող է թերևս հատուկ տուրք լինել հարկահավաքի օգտին»[1]։

«Թաստակ»-ի այս ստուգաբանությունը թե հնչյունական տեսակետից և թե իմաստի տարբերության պատճառով միանգամայն անընդունելի է, սակայն պրոֆ. Եղիազարյանի ենթադրությունը, ավելի ճիշտ գուշակությունը, որ «թաստակ»-ը կարող է լինել լրացուցիչ տուրք հօգուտ հարկահան պաշտոնյաների, իմ կարծիքով, անհավանական չէ։

Նույն եզրակացության հանգել եմ և ես, բայց ոչ վերոհիշյալ բացատրության հիման վրա, որ համարում եմ սխալ, այլ փաստական ուրիշ ցուցումների օգնությամբ, որ բխում են արձանագրական վկայություններից։ Վկայություններում, նախ և առաջ, աչքի է ընկնում, որ «թաստակ»-ը հիշվում է «շարիատ» կամ «պախտ տանց» բնահարկի հետ միասին։

1008 թվին Կատրանիդե թագուհին, ինչպես տեսանք, ազատել էր Տեկորը «շարիատ» հարկից, իսկ 1014 թվին Աշոտ թագավորը հաստատում է այդ և իր կողմից ազատում նույն Տեկորը նաև «թաստակ»-ից (վկայութ. 1)։ Հոռոմոսի առաջնորդ Անանիան 1013 թվին ազատել է «մեծաւ ջանիւ զհարկ և զթաստակ» (վկայութ. 2)։ 1046—1050 թվականների ժամանակամիջոցում «Առաւն» մագիստրոսը բերել է «գիր ազատութեան... վասն պախտից տանց քաղաքիս եւ թաստակին» (վկայութ. 4)։

Այս վկայություններից ստացվում է այն տպավորությունը, որ «շարիատ»-ը, որը Հոռոմոսի արձանագրության մեջ անվանված է «հարկ», իսկ Անիի արձանագրության մեջ՝ «պախտ տանց», ինչ որ կապ է ունեցել «թաստակի» հետ։ Ինքնըստինքյան այս դիտողությունը կարող է անհիմն կամ քմահաճ թվալ, սակայն նույն ենթադրության կռվան է հանդիսանում մի նոր հանգամանք, որ արժանի է առանձին ուշադրության։

---

уплата, то его можно сблизить с персидским словом liierae sigillo munitae iu‹su praefecii scriptae [Vullers, Lex. Pers. Lat], տես Новые материалы по арм. эпиграфике, С. Пет., 1893, էջ 80։

[1] Исследования по ист. армянск. права էջ 4 և 42:

Անիի 1046—1050 թվի արձանագրության մեջ ոչ միայն միասին են հիշված «պախտ տանց» բնահարկը և «թաստակ»-ը, այլ մասնանշված է նաև հարկերի քանակը։ Առաջին քանակը՝ «չափ ստից լտերց» վերաբերվում է, անշուշտ, քաղաքի ամեն մի տնից տրվող հիմնական հարկին, իսկ երկրորդը՝ «գիտ երկուց լտերց», ամենայն հավանականությամբ, լրացուցիչ «թաստակ» հարկն է, որը, ինչպես տեսնում ենք, կազմում է առաջին հարկի $^{1}/_{4}$ մասը։

Անուշադիր չպետք է թողնել, որ այս վերջին քանակը՝ հիմնական հարկի $^{1}/_{4}$-ը՝ արձանագրության մեջ անվանված է «գիտ երկուց լտերց», այսինքն՝ «շահ» կամ «վաստակ»։ Վերջապես՝ ուշագրավ է ու հետաքրքիր, որ «Առաւն» մագիստրոսը «խափանել» է այդ «գիտ»-ը կամ «վաստակ»-ը «ի խնդրո իշխանաւորաց»։ Ըստ երևույթին, «ծիրանեծին թագուհոյ» «ազատութեան գր»-ից դուրս այդ «գիտ»-ը խափանելու համար հարկավոր է եղել նաև քաղաքի իշխանավորների համաձայնությունը։

Արդ՝ այս բոլոր դիտողություններից, կարծում եմ, կարելի է հետևցնել, որ «թաստակ»-ը լրացուցիչ տուրք էր՝ $^{1}/_{4}$-ը հիմնական բնահարկի, որ ստանում էին, հավանորեն, «մութսիբ»-ը կամ թերևս նաև ավելի բարձր կանգնած իշխանավորները։

Այս «մութսիբ»-ը, որ Անիի անթվական մի արձանագրության մեջ անվանված է «մուսայիպ»[1], իսկ Սմբատի Դատաստանագրքում՝ «մուխթասիպ»[2], արաբական muhthasib-ն՝ է, որը, ինչպես հայտնի է, արաբական տիրապետության ժամանակ քաղաքներում վարում էր ոստիկանապետի պաշտոն և հսկում էր շուկայի, կշիռների ու չափերի վրա։ Ինչպես տեսնում ենք Անիում նրան հանձնված է եղել նաև բնական հարկերի հավաքումը։

Գյուղական շրջաններում վարչական ու հարկահավաքման գործը վարել են, ինչպես երևում է արձանագրական վկայություններից, «ձեռնաւոր»-ները[3]։ Եթե վերոհիշյալ կռահումը ճիշտ լինի, որ «թաստակ»-ը 1046—1050 թվի Անիի արձանագրության մեջ

---

[1] Տե՛ս Վիմական տարեգիր, էջ 221։

[2] Տե՛ս J. Karst, Sempadscher kodex, Strassburg 1905, Bd I ԾԺԲ—էջ 162 և BD II, էջ 233։

[3] Տե՛ս Վիմական տարեգրում հետևյալ արձանագրությունները՝ Հաղպատի 1210 թվի (էջ 51), Տիրակավանի 1228 թվի (էջ 71), Նորավանքի 1275 թվի (էջ 150), Օշականի 1286 թվի (էջ 129) և Օշականի 1288 թվի (էջ 130)։ «Ձեռնաւոր»-ների հիշատակումը 906 և 1086 թվականներին տե՛ս Ստեփանոս Օրբելյանի մոտ՝ «Պատմութիւն նահանգին Սիսական», Թիֆլիս, 1911, գլ. ԽԳ. և Կ, էջ 233 և 327։ Հմմտե նաև նույն երկում՝ էջ 367, 417 (գլուխ ԿԵ և ԿՁ)։

*լրացուցիչ տուրք է, որ ստանում էր «մուխթասիպ»-ը, այդ դեպքում՝ Տեկորի 1014 թվի Հոռոմոսի 1013 թվի և Երերուքի 1038 թվի արձանագրություններում նույն «թաստակ»-ը պետք է ընդունենք դարձյալ լրացուցիչ տուրք, որ տրվել է գյուղական շրջաններում «ձեռնաւոր»-ներին։*

*Որ «ձեռնաւոր»-ների հատուկ հարկ, իրոք, գոյություն ունեցել է՝ այդ, իմ կարծիքով, կարելի է եզրակացնել XIII դարի հետևյալ վկայություններից.*

*1. Վիմական տարեգիր, էջ 51՝ Հաղբատ, 1210 թ.*

*«Եւ է այս գեղ ազատ յամենայն հարկէ ի պարոնաց,* ի ձեռնաւորաց, *ի գյուղականաց»։*

*2. Վիմական տարեգիր, էջ 150՝ Նորավանք, 1275 թ.*

*«Ու զՀալէձորոյ հարկն սահմանեցաք ի տարում վաթսուն սպիտակ տալ, այլ ազատ է յամէն հարկաց. այլ ոչ ամիրայ, ոչ պարոն, ոչ* ձեռնաւորի *ոչինչ հաշիւ չկայ հետ Հալէձորոյ. ոչ շոր տայ*[1] *ոչ այլ ոչ ումն»։*

*3. Վիմական տարեգիր, էջ 130՝ Օշական, 1288 թ.*

*«Ի թուականին ՉԼԷ յառաջնորդութեան տէր Համազասպայ եւ ի պարոնութեանն Սահմադինին և իւր որդւոցն Ամիրբէկին և Հազարբէկին ես Գէշմարտս էի ամիրայ և Հաւիկս* **ձեռնաւոր**, *թողաք զսբ Կարապետին այգեացն զՅաւշականու, զՄիրինու զձեռնաւորին զհարկն զինչ որ կայր»...*

*Վերջին վկայության մեջ հիշված «ձեռնաւորի հարկ»-ը հանդիպում է նաև 1296 թվի Հռիփսիմեի վանքի հետևյալ արձանագրության մեջ.*

*4. Վիմական տարեգիր, էջ 138՝ Հռիփսիմէի վանք, 1296 թ.։*

*«Թողաք զՀռիփսիմուցս զբաքակին շարիատն եւ զշահնային բաքակի հակն»...*

*«Շահնա» էին անվանվում, ինչպես հայտնի է, թաթարական տիրապետության շրջանում վարչական ու հարկահան պաշտոնյաները, ուստի «շահնայի հարկ»-ն այս վկայության մեջ, իմ կարծիքով, նույնն է, ինչ որ «ձեռնաւորի հարկ»-ը։*

*Արդ՝ ի նկատի առնելով վերոհիշյալ բոլոր վկայությունները, նաև նրանց բովանդակության վերլուծումը, ես ենթադրում եմ, որ XI դարի «թաստակ»-ը և XIII դարի «ձեռնաւոր»-ի կամ «շահնա»-ի հարկը, հավանորեն, լրացուցիչ տուրքեր են, որ ստանում էր վարչա-*

---

[1] *Ուղղելի թերևս «շարիատայ»։*

կան պաշտոնեությունը, քաղաքներում՝ «մուխթասիպ»-ը, իսկ գյուղական վայրերում՝ «ձեռնաւոր»-ները կամ «շահնա»-ները։

Հիմնվելով Անիի 1046—1050 թվի արձանագրության վրա՝ մենք ենթադրեցինք, որ «թասստակ»-ի քանակը հավասար է եղել հիմնական բնահարկի $^1/_4$-ին։ Այդ տոկոսը կարող էր սովորական ու ընդունված լինել XI դարում։ Ինչ վերաբերվում է XIII դարի «ձեռնաւոր»-ի կամ «շահնայ»-ի հարկին, նրա տոկոսը հայտնի չէ, և դըժվար է, իհարկե, անվերապահորեն պնդել, որ նույն $^1/_4$ տոկոսը պահպանված կլիներ և հետագա այդ դարում։

Որ XI դարի «թասստակ»-ը, իրոք «շարիստ»-ի կամ «պախտ»-ի $^1/_4$ մասն է եղել, այդ, իմ կարծիքով, հաստատվում է ոչ միայն Անիի 1046—1050 թվի արձանագրական վկայության քննությամբ, այլև «թասստակ» բառի ստուգաբանությամբ։

Որքան ինձ հայտնի է, «թասստակ»-ը մինչև այժմ դեռ մեկնված չէ։ Ես առաջարկում եմ, այդ բառի հետևյալ մեկնությունը։ «Թասստակ»-ը, իմ կարծիքով, բարդ բառ է, որ կազմված է «թասու» (=քառորդ) և «տակ» (=«դաթ»,— պատիկ) բառերից։ «Թասուտակ»-ը համառոտվելով ստացվել է «թասստակ»։

«Թասու»-ն, որ փոխ առած բառ է պարսկերենից (=նոր պարսկ. tasu)[1], հայերենում, ինչպես հայտնի է, երեք գարեհատի կշիռ էր և «դանգ»-ի $^1/_4$ մասը։ Մխիթար Գոշի Դատաստանագրքից գիտենք, որ «դանգ»-ը և «թասու»-ն գործածական են եղել նրա ժամանակ կոտորակային թվերի համար[2]։ Նույնը հաստատում են նաև վիմական արձանագրությունների վկայությունները[3]։

«Թասու»-ի կոտորակային մեծությունը կախված էր հաշիվների հիմնական միավորից։ Եթե հիմնական միավոր ընդունվում էր մեծ «դահեկան»-ը, որը հավասար էր 6 «դանգ»-ի, «թասու»-ն՝ որպես «դանգ»-ի $^1/_4$ մասը, ստանում էր 1/24-ի իմաստ[4], իսկ եթե հիմնական միավոր համարվում էր մեծ «դահեկան»-ի կեսը կամ «պօտատ դեկան»-ը, որը հավասար էր երեք «դանգ»-ի[5], «թասու»-ն համապատասխան էր դառնում 1/12-ի։

---

[1] H. Hübschmann, Armenische Grammatik, 1895, էջ 266։

[2] Դատաստանագիրք, մասն առաջին, ԾԻ, էջ 287, մասն երկրորդ, ԿԲ, էջ 372, ԿԴ, էջ 378, ԿԵ, էջ 379—381։

[3] Վիմական տարեգիր, էջ 58, 59, 74 ևն։

[4] Տե՛ս Դատաստանագիրք, մասն Բ, ԿԴ, էջ 380։

[5] Տե՛ս Դատաստանագիրք, մասն Բ, ԿԲ, էջ 372, նաև ծանոթ. 794, որի մեջ Բաստամյանցը միանգամայն ուղիղ որոշել է, որ «պօտատ դեկանը հաւասար է ոսկի դեկանի կամ դահեկանի կիսին»։

Լինելով «դանգ»-ի 1/4-ը, իմ կարծիքով, «թասու»-ն ունեցած կլիներ նաև 1/4-ի նշանակություն այն դեպքերում, երբ հաշվի հիմնական միավոր կընդունվեր ոչ թե մեծ «դահեկան»-ը կամ նրա կեսը՝ «պօտաստ դահեկան»-ը, այլ «դանգ»-ը։

Կարևոր է ու ուշադրավ այդ տեսակետից, որ պահլավերենում tasum-ը ունեցել է, պարզապես, 1/4-ի նշանակություն[1]։

Ինձ թվում է, որ կոտորակային հենց այս վերջին նշանակությունն ունեցած պիտի լինի «թասու»-ն «թաս-տակ» կամ «թասու-տակ» բառի մեջ։ Նույն բառի երկրորդ մասը «տակ», իբրև թվական անունների վերջավորություն, նշանակում է, ինչպես հայտնի է, ղաթ, կամ «—պատիկ», օրինակ՝ «երկուտակ», «երեք-տակ» ևն։ Այս բարդումը հին է և հանդիպում է արդեն Խորենացու մոտ. տես Խոր. Բ., գլ. Է՝ «և առանց ոսկւոյ և ականց, զկրսեր մարգարիտն երեքտակեան վարսակալ ածել» (Տփղիս 1913, էջ 110)։

«Թասու-տակ»-ը կամ «թաս-տակ»-ը կազմված է, ուրեմն, նույն ձևով, ինչպես և «երկու-տակ»-ը կամ «երեք-տակ»-ը և նշանակում է «մեկ չորրորդ ղաթ կամ մաս»։

Անիի 1046—1050 թվի արձանագրական վկայության վերև առաջ բերված լուսաբանությունը հաստատվում է, ինչպես տեսնում ենք, նաև «թասատակ» բառի այս նոր մեկնությամբ։ Այսպիսով՝ արձանագրական վկայությունների քննությունը հիմք ու նեցուկ է ծառայում ստուգաբանական մեկնության հիմնավոր լինելուն, իսկ ինքը ստուգաբանությունն ապացույց է դառնում, որ վերոհիշյալ վկայությունների լուսաբանությունը պետք է համարել հավանական ու ընդունելի։

Ամփոփելով մեր ասածները «թասատակ» հարկի մասին՝ կարող ենք անել հետևյալ հավանական եզրակացությունները։

1. «Թասատակ»-ը՝ որ հանդիպում է XI դարի արձանագրություններում, լրացուցիչ տուրք է, որ տրվել է «մուխթասիբ»-ին կամ «ձեռնասուր»-ին.

2. Նույն այս տուրքը XIII դարում անվանվել է «ձեռնասուր»-ի կամ «շահնայի հարկ».

3. XI դարում «թասատակ»-ի քանակը հավասար է եղել, ըստ երևույթին, «շարիատ» կամ «պախտ» բնահարկի 1/4-ին.

4. «Թասատակ»-ը համառոտություն է «թասու-տակ» բառի և նշանակում է «1/4-րդ ղաթ կամ մասն»։

[1] H. Hübschmann, Armenische Grammatik, էջ 266։

## 4. «ՊՕՏԱՏ» = Bataniates, ՎՐՑ. potonat, patinat.

«*Պօտատ դահեկան*»-*ը, ինչպես վերև տեսանք, «ոսկի դահեկան»-ի կեսն էր։ Ոսկի այս փողի դրամական արժեքը, ինչպես և «պօտատ» բառի ստուգաբանական ծագումը փորձել է բացատրել Թ. Ավդալբեգյանը «Մի գաղտնիք հայ վիմական արձանագրությունների մեջ» հետաքրքիր իր նոր աշխատանքում, որ լույս էր տեսել Գիտության և Արվեստի Ինստիտուտի Տեղեկագրում*[1]։

*«Պօտատ»-ի վերաբերյալ մատենագրական վկայությունները, որ հիշատակված են այս աշխատության մեջ, տեղ տեղ աղճատված են, ուստի նույն վկայությունները կարևոր եմ համարում մեջ բերել առանց այդ անախորժ աղճատումների, որոնք հնչյունական տեսակետից հիմք են ծառայել ստուգաբանական սխալ մեկնաբանությունների։*

*1. Մխիթար Գօշ, Դատաստանագիրք, մասն Բ, ԿԲ— էջ 372.*

*«Ոսկի դեկանն վեց դանգ է,* պօպատ *դեկանն երեք դանգ, թասուն ի դանգին չորիցն մին».*

*2. Հր. Աճառյան, «Ցուցակ հայերէն ձեռագրաց Սանասարեան վարժարանին ի Կարին», Հանդ. Ամս. 1896, թիվ 1, հունվար, էջ 24*[2]*.*

*«Այս իմ գիր է հաւկոյ որ տվի զիմ արտ դարբնոցին արթն սատուածասիրին հայրենիք որ այլ սնել ու լսեր է պռխտիմոն*[3] *տամ ճ* պոտ»...

*3. Նույնը, էջ 24.*

«Ճ պոտատ *լուծմ եզ տայ որ սնել ու լսեալ էր»...*

*4. Նույնը, էջ 25.*

*«գ մատ հաց տվաք, բ կապիճ,* ի պատատնէր *ու մարգերս առաք»...*

---

[1] *Երևան, 1927, № 2, էջ 48—49։*

[2] *Վկայությունները գտնվում են 980 թվի Ավետարանի հիշատակագրություններում։*

[3] *Աճառյանի բնագրում՝ «եպռխտիմու» փխ. է պռխտիմոն, որն ուղղածն է։ «Պռխտիմոն»-ը (=հուն.* Πρόστιμον*), ինչպես հայտնի է, այն «գրաւ»-ն էր գաշինքի ապահովումը՝ որ իբրև տուգանք տալու էր պայմանագիրը խախտողը։ Նույն այս ձեռագրում հիշատակագրությունների մեջ «պռխտիմոն»-ը հիշված է մի քանի անգամ՝ էջ 3, 388 և 435։ «Պռխտիմոն»-ի նշանակությունը և իրավական բովանդակությունը լուսաբանել է Կարստը, տե՛ս* Sempadscher Kodex, Band II, *էջ 208։ Համեմատե նաև «Աստրական դատաստանագիրք», հրատ. Արս. Ղլտճյանցի, Էջմիածին, 1917, ճԻԶ, էջ 48։*

5. Նույնը, էջ 25.

«դ պատատ[1] փողոցին արտին ենք տվել»...

6. Նույնը, էջ 25.

«զ պաւտատի[1] դեղինկն[2] ենք տվել ու ճոկն խաղղին մարդ առաք»...

7. Նույնը, էջ 25.

«Ե պաւտատ ի վասիլ ենք տվել վարդանինց ճոկն խաղցղին մարգին»...

8. Նույնը, էջ 25.

«ու առաք ու առաք թ պաւտատ[2] արտին ու մարգին»...

9. Նույնը, էջ 25.

«Ծախէցի զարտս ծանիս ու առի ծա պատատ»...

10. «Գրութիւն, գերութիւն և վերադնութիւն մեծ Տօնական գրոց», Ալիշան, Հայապատում, էջ 448.

«Ապա դատաւոր քաղաքին ձեռն յառաջ տարեալ՝ զուր պատճառանօք բանս ի վերայ եղեալ թէ հինգեհարիւր պաւտար մնաց ինձ առ Աստուածատուրն»։

Այս «պօտատ դահեկան»-ի առթիվ Գոշի «Դատաստանագրքի» հրատարակիչ Վ. Բաստամյանցն ունի հետևյալ ծանոթությունը.

«Պօտատ կամ պաւտատ[3]՝ անհասկանալի բառ. թերևս պէտք է լինի պողպատ, թէպէտ պողպատից դրամ երբէք չեն շինում, այլ պղնձից. այսքանս պարզ է որ պօտատ դեկանը, յօդուածիս խօսքով, հաւասար է ոսկի դեկանի կամ դահեկանի կիսին։— Ի դէպ աւելացնեմ որ էջմիածնի մատենադարանի ձեռագրներից ես հավաքած ունիմ բաւական տեղեկութիւններ Հայոց չափերի, կշիռների և դրամների մասին, որ լոյս ունիմ հրատարակել մի ժամանակ, բայց դոցա մեջ ևս չէ պատահած պօտատ կամ պաւտատ եւ կամ պողպատ դրամ» (էջ 372, ծանոթ. 794).

---

[1] Ավդալբեգյանի աշխատության մեջ «պատատ»-ի փոխարեն (հինգերորդ վկայության) տպված է սխալմամբ «պոտատ», իսկ «պաւտատ»-ը 6-րդ, 7-րդ և 8-րդ վկայությունների մեջ դարձել է նրա մոտ «պաւպատ» (Գ. և Ար. Ինս. Տեղեկագիր, № 2, էջ 48)։

[2] Ավդալբեգյանի ուղղումը «ի Դեղինն ենք տվել» հնարավոր է, բայց ոչ անվիճելի (էջ 48)։

[3] Բաստամյանցի այս ծանոթության բնագրում, որ առաջ է բերված Թ. Ավդալբեգյանի մոտ (էջ 48), թե սկզբում և թե վերջում՝ «պաւտատ» բառի փոխարեն գրված է դարձյալ «պաւպատ»։

Բաստամյանցի այս ծանոթությունից դժվար չէ կռահել, որ Գոշի դատաստանագրքի ձեռագրերն ունեցել են «պօտատ» կամ «պատատ» և ոչ «պապատ»։ Դատաստանագրքի բնագրում «պապատ» ընթերցվածը, պարզապես, Բաստամյանցի ուղղումն է, որը «պատատ»-ը ենթադրել է «պողպատ» բառի աղճատումը։

Թ. Ավդալբեգյանի աշխատության մեջ ևս, ինչպես տեսանք, հինգ անգամ կրկնվող «պապատ» ընթերցվածը գրչի սխալ է, իսկ բուն վկայություններում գրված է միշտ «պատատ» և ոչ «պապատ»։

«Պօտատ»-ի ձեռագրական փոփոխակներն են, ուրեմն, համաձայն վերոհիշյալ վկայությունների՝ «պատատ», «պօտատ», «պատատ» և «պատար»։ Այս վերջին ընթերցումն առաջ է եկել, հավանորեն, Տ և Ր գրերի շփոթումից, ուստի մնում են ձեռագրական չորս ընթերցվածներ՝ «պատատ», «պօտատ», «պոտատ», և «պատատ», որոնք հնչյունական տեսակետից միանգամայն հասկանալի են և դյուրավ մեկնելի։

Թ. Ավդալբեգյանը, հիմք ընդունելով ենթադրական ու նորածին «պապատ» ընթերցվածը, որը գոյություն չէ ունեցել ձեռագրական վկայություններում, «պօտատ»-ի ծագումը մեկնում է բյուզանդական «պեռպեռատ»-ից։ «Այս yperperum-uperperus-besant ոսկին է հենց,— ասում է նա,— որ դարձել է պերպերատ (=(ի)պերպերատ), ապա հավանորեն պեպատ (=պե(ր)պ(եր)ատ), հետո հավասարի պոպատ-պօպատ, պապատ ու ամենից վերջն էլ պոտատ-պօտատ-պատատ՝ ամենևին կապ չունենալով պողպատ մետաղի անվան հետ»։ Ավելի քան բռնազբոսիկ այս մեկնությունը, որ հիմնված չէ լեզվահնչյունական կայուն օրենքների վրա, անընդունելի պիտի համարվի հենց այն պատճառով, որ հայերենում այս փողի անունը եղել է, իրոք, ոչ թե «պօպատ», այլ «պօտատ» կամ «պատատ»։

«Պօտատ»-ի և բյուզանդական «պեռպեռատ»-ի միևնույն դրամ լինելը Թ. Ավդալբեգյանը եզրակացնում է նաև Գոշի ու Սմբատ Գունդստաբլի մոտ մատնանշված արյան գների բաղդատությամբ։

«Մեր կարծիքով,— ասում է նա,—«պօպատ» ղեկանի՝ կես դար անլույծ մնացած հարցը հիմնովին լուսաբանվում է Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքով»։ Երբ Գոշը քրիստոնեի արնագինը որոշելու նպատակով գրում է.

«Գին արեան մարդոյն... ի դէպ կարծեմ երեք հարիւր վաթսուն եւ հինգ լինել գին դահեկանի, ոսկի դահեկան»[1],—

[1] Գոշ, «Դատաստանագիրք», Բ. ա, էջ 308, 309։

Գունդստաբլը սրա դիմաց գրում է՝ արնագնի գումարը փոփոխելով. «Ընդհանուր գին արեան քրիստոնէին 300 դեկան պերպերատ է»[1]։ Այս բաղդատությունից Ավդալբեգյանը եզրակացնում է, որ «պօտատ»-ին համապատասխանում է Սմբատի հատվածում «պերպերատ»-ը։

Այս եզրակացությունը ևս, իմ կարծիքով, հիմնավոր չէ։

Եթե Գոշի «ոսկի դահեկան»-ի դիմաց Գունդստաբլը դնում է «պերպեռատ դեկան»-ը, դրանից կարելի է թերևս հետևցնել, որ «պեռպեռատ դեկան»-ը համապատասխան է եղել «ոսկի դահեկան»-ին, որը, ինչպես վկայում է Գոշը, «լինի երեքասան դրամ արծաթ ըստ ժամանակին վարման»[2]։ Մի այլ հատվածում Գոշը, ինչպես տեսանք, մատնանշում էր, որ «ոսկի դեկանն վեց դանգ է. պօպատ դեկանն երեք դանգ»[3]։

Միանգամայն պարզ է, որ վերոհիշյալ բաղդատությունից «պօտատ»-ի մասին չի ստացվում և ոչ մի հետևություն, և «կես դար անլույծ մնացած այդ հարցը» ոչ միայն «հիմնովին չի լուսաբանվում Սմբատ Գունդստաբլի Դատաստանագրքով», այլ, ընդհակառակը, լուսաբանվում է, հավանորեն, Գոշի «ոսկի դահեկան»-ի հարցը, որը, ըստ երևույթին, համապատասխան է եղել բյուզանդական «պեռպեռատ»-ին։

«Պօտատ»-ի թե ստուգաբանությունը, թե կշիռը և թե դրամական արժեքը, ինչպես կտեսնենք, հիմնովին լուծվում են վրացական աղբյուրների օգնությամբ, որ հիշատակված են ակադեմիկոս Մ. Բրոսսեի «Histoire de la Géorgie» աշխատության մեջ։

Բրոսսեի ասելով՝ 11-րդ դարից սկսած մինչև 15-րդ դարը Վրաստանում տարածված է եղել botinat դրամը, որ Դավիթ Վերաշինողին վերագրված կտակի մեջ անվանվում է potonat, Սամադավլե-Դադիանի 15-րդ դարի վճռագրում՝ patinat[4]։ Այդ փողը, ինչպես ուղիղ դիտել է Բրոսսեն, Նիկեփոր 3-րդ Բոտանիատի (1078—1081 թ.) դրամն է, որ նրա անունով կոչվել է botinat[5]։

Հայերեն «պօտատ» կամ «պատատ»-ը իմ կարծիքով, հենց այս potonat կամ patinat փողն է։

---

1 Սմբատ Գունդստաբլ, «Դատաստանագիրք», հրատ. Արս. Ղլտճյանցի, էջմիածին, 1918, հոդվ. Ա. էջ 17։

2 Տե՛ս Մատն Բ, ա, էջ 309։

3 Տես Մատն Բ, ԿԲ, էջ 372։

4 Տե՛ս Histoire de la Géorgie, Introduction, 1858 էջ LXXXVIII, CLXXVII—IX, CCXII նաև Additions et éclaircissements, 1851, էջ 233

5 Introduction էջ CLXXVIII նաև Additions էջ 233

Ինչպես բյուզանդական «դուկատ»-ը ծագել է բյուզանդական կայսրների Dukas ազգանունից (Կոնստանդին X Դուկաս՝ 1059—1067 թ. և Միքայել VII Դուկաս՝ 1071—1078 թ.), նույնպես և «պոտատ» կամ «պատատ» դրամի անունը (վրց. potonat և patinat) առաջ է եկել ինչպես տեսնում ենք, Նիկեփոր III-ի Botaniates մականունից։

«Պոտատ»-botinat-ի կշիռը և դրամական արժեքը պարզ որոշվում է, իմ կարծիքով, վրացական աղբյուրների ուշագրավ ու կարևոր մի վկայությամբ, որ մինչև այժմ մնացել է անհասկանալի, 1284 թվի վրացական մի վավերագրում ասված է, որ ոմն Songhoul նվիրել է վանքին 110 ոսկի «դրագմ» (dragmes), 400 «դուկատ», նաև արծաթեղեն 50 «դրամ», (dragmes) արժողությամբ՝ ընդամենը 300 «բոտինատ» (botinats)[1]։

«Այս վկայությունից,—ասում է Բրոսսեն,—ակներև հետևում է, որ potonat-ը կամ botinat-ը պետք է լիներ ոսկի փող» (Introduction, էջ LXXXVIII)։ Մի ուրիշ տեղ Բրոսսեն մատնանշում է, որ նույն վկայությունից կարելի է միայն հավաստիորեն եզրակացություն անել ոսկի «դրագմ»-ի, «դուկատ»-ի և «բոտինատ»-ի պրոպորցիոնալ արժեքի մասին, սակայն այս տարբեր փողերի իսկական արժողությունը մնում է անհայտ, որովհետև պետք է դեռ գտնել թե որքան ոսկի «դրագմ» կար մեկ «դուկատ»-ում, նաև պարզել «բոտինատ»-ի արժեքի հարաբերությունն այս վերջինի ու ոսկի «դրագմ»-ի համեմատությամբ (Introduction, էջ CLXXVIII)։

Ենթադրելով, որ վերոհիշյալ վկայության մեջ 110 ոսկի «դրագմ»-ը+400 «դուկատ»-ը+50 «դրագմ»-ը հավասար են եղել 300 «բոտինատ»-ի՝ Բրոսսեն, բնականաբար, «բոտինատ»-ը համարել է ոսկի փող, որ ունեցել է խիստ մեծ արժեք (Introduction, CLXXVII)։

Սակայն, ըստ երևույթին, նրան էլ հայտնի է եղել, որ 11—15-րդ դարում այդպիսի մեծ արժողությամբ բյուզանդական ոսկի փող գոյություն չէ ունեցել, ուստի ծանոթության մեջ նա կասկածելի է համարում այդ հատվածի ռուսական թարգմանությունը, որից ինքն օգտվել է[2]։ «Այսահով չեմ,—ասում է նա,—որ այս տեղեկությունները ճիշտ են թարգմանվել, որովհետև «բոտինատ»-ի

---

[1] Տես Introducrion էջ LXX XVIII և CLXXVII. Cette donation était de 110 dragmes d'or, de 400 doucats et de pièces d'argenterie, d'une valeur de 50 dragmes en tout 300 botinats [էջ LXX—XVIII]։

[2] Закавказск. Вестн., 1845, ч. неофиц, էջ 130։

համար ստացվում է անհագին արժեք, որ անկարելի է ենթադրել» (Introduction, էջ CLXXVIII ծանոթութ.)։

Մ. Բրոսսեի այս կասկածները, ինչպես կտեսնենք, հիմնավոր չեն։

Անհասկանալի թվացող վերոհիշյալ հաշիվը ոչ միայն լուծվում է, այլ նրա օգնությամբ լուսաբանվում են նաև «բոտինատ»-ի կշիռը և դրամական համարժեքն այժմյան ոսկի փողով։

Մատնանշված հաշվի մեջ «300 բոտինատ»-ը համապատասխանում է, իմ կարծիքով, ոչ թե «դուկատ»-ների և «դրագմ»-ների, այլ միայն «դրագմ»-ների ընդհանուր գումարին։ Songhoul-ի նվիրատվության հաշիվը պետք է, ուրեմն, հասկանալ այսպես՝ 110 ոսկի «դրագմ» 400 «դուկատ», նաև արծաթեղեն 50 «դրագմ» արժողությամբ՝ ընդամենը 160 «դրագմ», որ հավասար են 300 «բոտինատ»-ի։ Այս լուծման միջոցով ստացվող եզրակացությունը կատարելապես համաձայնում է Գոշի վկայության հետ «Պոտատ»-ի և «ոսկի դահեկան»-ի մասին։

Ոսկի «դրագմ»-ը հիշյալ հաշվում արաբական «դենար»-ն է, այսինքն՝ 7-րդ դարի վերջում Աբդլ-Մելիքի ժամանակ հաստատված ոսկի փողը, որն անվանվում էր թերևս նաև darachmi և որի կշիռը 4,25 գրամ էր[1]։

Եթե մեկ «դրագմ»-ը հավասար ընդունենք 4,25 գրամի՝ 160 «դրագմ»-ը հավասար կլինի 4.25 . 160=680 գրամի։ 300 «բոտինատ»-ը համարժեք լինելով 160 «դրագմ»-ի՝ «բոտինատ»-ի կշիռը կստացվի 680:300=2.26 2/3 գրամ։ Արդ՝ Մխիթար Գոշի վկայությունից գիտենք, որ «պոտատ դահեկան»-ը «ոսկի դահեկան»-ի 1/2-ն էր. ուրեմն՝ Մխիթար Գոշի մոտ հիշատակված «ոսկի դահեկան»-ի կշիռը պետք է ենթադրենք 2.26 2/3 . 2=4.53 1/3 գրամ։ Եվ իրապես, այս վերջին կշիռը Շիրակացու հիշած բյուզանդական հենց այն «դահեկան»-ի կշիռն է, որ մատնացույց էի արել իմ նախորդ աշխատության մեջ[2]։

Այսպիսով ստացվում է, ինչպես տեսնում ենք, խիստ կարևոր մի հետևություն և՝ պարզ որոշվում է, որ բյուզանդական հին «դահեկան»-ը (Solidus, aureus կամ nomisma) իր կշիռն անփոփոխ

[1] Տե՛ս Decourdemanch, Traité pratique des poids et mesures des peuples anciens et des Arabes, Paris 1909, էջ 25— «Darachmi [dinar d'Abdul-Mélik] 4,25 gr.]»։

[2] Տե՛ս «Նյութեր Հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության» (1), Գիտ. և Արվ. Ինստիտուտի Տեղեկագիր, № 2, Երևան, 1927, էջ 30, էջ 37—40։

պահպանված է եղել մինչև Մխիթար Գոշի ժամանակաշրջանը՝ 12-րդ դարի վերջերը։

Հայտնի է արդեն, որ Բյուզանդական կայսրության մեջ կտրվել են ոսկի փողեր նաև փոքր կշռով՝ հավասար solidus-ի կամ nomisma-յի $^{1}/_{2}$-ին կամ $^{1}/_{3}$-ին։

Արդ՝ ինչպես տեսնում ենք, Նիկեփոր III Բոտանիատի անունը կրող «պոտատ դահեկան»-ը, իրոք այդ մեծ «դահեկան»-ի կեսն էր՝ հավասար 2.26 2/3 գրամի։

Գոշի Դատաստանագրքում հիշված «ոսկի դահեկան»-ի և «պոտատ»-ի կշիռները և կշռական հարաբերությունը պարզելուց հետո՝ դժվար չէ այնուհետև որոշել նրանց համարժեքն այժմյան ոսկի փողով։

Ինչպես ցույց է տրված իմ նախորդ ուսումնասիրության մեջ[1], բյուզանդական լիակշիռ ու լիագին՝ առանց խառնուրդի՝ հին «դահեկան»-ը համապատասխանում էր այժմյան 5,85 ոսկի ռուբլու կամ 15,6 ոսկի ֆրանկի, ուրեմն, նույն արժեքը պետք է վերագրել նաև Գոշի հիշատակած «ոսկի դահեկան»-ին։ Լիակշիռ ու մաքուր ոսկուց «պոտատ դահեկան»-ը լինելով «ոսկի դահեկան»-ի $^{1}/_{2}$-ը, համապատասխան կլինի 7,8 ոսկի ֆրանկի, կամ 2.92 $^{1}/_{2}$ ոսկի ռուբլու։

Եթե այդ «դահեկան»-ները լիակշիռ չլինեին կամ մաքուր ոսկու հետ ունեցած լինեին իրանց մեջ խառնուրդ (лигатура)՝ նրանց արժեքը, բնականաբար, համապատասխան տոկոսով պակաս կլիներ։

Թ. Ավդալբեգյանը վերոգրյալ իր աշխատության մեջ ենթադրում է, որ Գոշի «ոսկի դահեկան»-ը կարող է համապատասխան լինել «հռոմէական դահեկան»-ին, որի արժեքն Ալիշանի «Սիսուան»-ում գնահատված է 25 ոսկի ֆրանկ[2], իսկ «պոտատ»-ը, որը, նրա կարծիքով, բյուզանդական «պերպերատ»-ն է, նա համաձայն Ալիշանի վկայության «պերպերատ»-ի արժեքի մասին[3] հավասար է կարծում 12 ոսկի ֆրանկի[4]։

Այս ենթադրությունը, ինչպես երևաց փաստական տվյալների վրա հիմնված հաշիվներից, ճիշտ չէ։

---

[1] «Նյութեր հին Հայաստանի տնտեսական կյանքի պատմության» (1) Գիտ. և Արվ. Ինստիտուտի Տեղեկագիր, № 2, էջ 39։

[2] Ալիշան, Սիսուան, Վենետիկ, 1885, էջ 378։

[3] Նույնը։

[4] Տե՛ս Գիտ. և Արվ. Ինստիտուտի Տեղեկագիր, № 2, էջ 49, ծանոթութ. 6։

Եվ իրոք, «Հոռմէական դահեկան»-ը, որ հարևանցի հիշված է «Սիսուան»-ում, հնագույն ժամանակաշրջանի փող էր և, որքան հայտնի է, Բյուզանդական կայսրությունն այդ կշռով մեծ «դահեկան» այլևս չէ ունեցել։ Բյուզանդական ամենամեծ ոսկի փողը համապատասխան է եղել ոչ թե 25 ֆրանկի, այլ առ առավելն այժմյան 15,6 ոսկի ֆրանկի, իսկ «պոտատ դահեկան»-ը, որ սրա կեսն էր, համապատասխանում է ոչ թե 12 ֆրանկի, այլ միայն 7,8 ոսկի ֆրանկի։

«Ոսկի դահեկան»-ի ու «պոտատ»-ի կշիռների ու դրամական արժեքի ճշտումը կարող է կռվան ու նեցուկ հանդիսանալ կարևոր ու նոր լուսաբանությունների համար, որոնք հնարավորություն կտան ուղղումներ մտցնելու Ավդալբեգյանի մատնանշած ժամպատարագների գների մեջ, նաև հիմք կծառայեն տնտեսագիտական այլ եզրակացությունների։

Վերոհիշյալ նոր տվյալների օգնությամբ հնարավոր է դառնում. օրինակ, որոշել Գոշի մոտ հիշված «դրամ»-ի փողային արժեքը։

Մխիթար Գոշի ասելով՝ «ոսկի դահեկան»-ը «լինի երեքտասան դրամ արծաթ ըստ ժամանակին վարման» (Դատաստանագիրք, մասն Բ, ա, էջ 309)։

Արդ՝ որովհետև «ոսկի դահեկան»-ը համապատասխան համարեցինք ռուսական արդի 5,85 ոսկի ռուբլու և ֆրանսական 15,6 ոսկի ֆրանկի՝ հետևաբար, հիշյալ «դրամ»-ը, որն «ըստ ժամանակին վարման» կազմում էր «ոսկի դահեկան»-ի 1/13-ը, համապատասխան կլինի 45 ոսկի կոպեկի կամ 1,2 ոսկի ֆրանկի[1]։

---

[1] «Դրամ»-ի այս զուգադրումն այժմյան ոսկի փողով, որ համապատասխանում է ոսկու և արծաթի այդ ժամանակվա հարաբերությանը, ավելի բարձր է, քան այն, որ հաշվում են սովորաբար այժմյան արծաթ փողերով։ Սասանյան «դրամ»-ը, ինչպես մատնացույց էի արել նախորդ աշխատության մեջ, համապատասխանում է 0,226 $^2/_3$ արծ. ռուբ. (տե՛ս Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի № 2, էջ 33)։ Մաքուր արծաթի և մաքուր ոսկու կշռական հարաբերությունը հավասար է ռուսական արծաթ և ոսկի ռուբլիներում մոտ 23:1։ Եթե արծաթի և ոսկու սովորական հարաբերությունը ենթադրենք Սասանյան Պարսկաստանում 10:1, նույն Սասանյան «դրամ»-ը համապատասխան կլինի 0,226$^2/_3$. 2,3=մոտավորապես 52 ոսկի կոպեկի։

Պետք է ասել, որ հին արծաթ «դրամ»-ների կշռական բաղդատությունն այժմյան արծաթ փողերի հետ, որ գիտական նորագույն երկերի հետևությամբ առաջ է բերված նախորդ իմ աշխատություններում, կարող է առիթ ծառայել որոշ թյուրիմացությունների։ Ինչպես հայտնի է, այժմյան բարձր պրոբի արծաթ ռուբլիները, ֆրանկները կամ մարկերը փաստորեն մանր դրամ են (разменная монета) և սրանց հարաբերությունը ոսկի փողի հանդեպ Ռուսաստանում 23:1 է, իսկ Ֆրանսիայում՝ 15,5:1։ Հենց այս պատճառով էլ նոր արծաթ փողերի կշռական հարաբե-

Վրացական աղբյուրներում բացի ոսկի potonat կամ patinat «դահեկան»-ից հիշված է նաև արծաթ botinaour դրամը։ Մ. Բրոսսեն ենթադրում է, որ այս botinaour դրամը և Նիկեփոր III Բոտանիատի ժամանակվա արծաթ փողն է, որ դարձյալ նրա անունով կոչվել է botinaour[1]։ Վերև առաջ բերված հայկական վկայություններին մեջ, ինչպես երևում է համապատասխան հատվածների լրիվ բովանդակությունից, «պոտատ»-ը բացառապես ոսկի փող է։ Botinaour-ի հիշատակությունը վրացական աղբյուրներում ուշադրության արժանի է, որովհետև հետագայում մատենագրական մեր երկերի մեջ ևս կարող է երևան գալ նաև այդ botinaour-ը արծաթ դրամի նշանակությամբ։

«Պատատ»-ի վերաբերյալ մանրախույզ այս քննությամբ ստացվում են, ինչպես տեսնում ենք, հետևյալ ուշագրավ հետևությունները.

1. «Պերպերատ-պետատ-պապատ-պատատ» ստուգաբանական մեկնությունը ճիշտ չէ.

2. «Պատատ դահեկան»-ը Նիկեփոր III Բոտանիատի դրամն է, որ նրա անունով կոչվել է botinat-հայեր.՝ «պատատ» կամ «պոտատ» և վրացեր.՝ potonat կամ patinat.

3. «Պատատ»-ը ոսկի փող է և նրա կշիռը հավասար է 2,26 2/3 գրամի։

4. «Ոսկի դահեկան»-ը Մխիթար Գոշի Դատաստանագրքում բյուզանդական հին solidus կամ nomisma «դահեկան»-ն է և նրա կշիռը հավասար է 4,53 1/3 գրամի.

---

րությունը չի համապատասխանում հաճախ նրանց իրական փողային հարաբերությանը։ Պարզենք այդ օրինակով։ Որովհետև մեր արծաթ ռուբլին պարունակում է իր մեջ 18 գրամ մաքուր արծաթ, իսկ ֆրանսիական բարձր պրոբի 5 ֆրանկը՝ 22 1/2 գրամ, Սասանյան արծաթ «դրամ»-ը (=4,08 գրամ) համապատասխան կլինի 0,226 2/3 արծ. ռուբ. (4,08:18) կամ 0,906 2/3 արծ. ֆր. (4.08:4.5)։ Սակայն, իրապես, 0,226 2/3 արծ. ռուբ. որպես փող համարժեք է ոչ թե 0,906 2/3 ֆր., այլ 0,6044/9 ֆր.։ Այս հանգամանքը կարող է, անշուշտ, պատճառ դառնալ խառնաշփոթ ու սխալ հաշիվների։

Մխիթար Գոշի վկայությունը կարևոր է հենց այն տեսակետից, որ հնարավորություն է տալիս հաշվելու այն ժամանակվա «դրամ»-ն այժմյան ոսկի փողով, և այդ հաշիվը շատ ավելի հարմար է ու ընդունելի, քան վերոհիշյալ հաշիվը, որ հիմնված է հին և ժամանակակից դրամների մաքուր արծաթի կշռական բաղդատության վրա։

[1] Տես M. Brosset, Histoire de la Georgie, introduction էջ LXXXVIII XCIII, CLXXVII—VIII.

5. *Լիակշիռ և մաքուր ոսկուց՝ «պատառ դահեկան»-ը համապատասխանում է այժմյան 7,8 ոսկի ֆրանկի կամ 2,92 1/2 ոսկի ռուբլու, իսկ «ոսկի դահեկան»-ը՝ 15,6 ոսկի ֆրանկի կամ 5,85 ոսկի ռուբլու։*

6. *Մխիթար Գոշի մոտ հիշատակված արծաթ «դրամ»-ը, որ հավասար էր 1/13 «ոսկի դահեկան»-ի, գնահատվել է արդի փողով՝ 45 ոսկի կոպեկ կամ 1,2 ոսկի ֆրանկ։*

---

# ՀԱՏՎԱԾՆԵՐ

## ԱԿԱԴԵՄԻԿՈՍ Հ. ՄԱՆԱՆԴՅԱՆԻ «О ТОРГОВЛЕ И ГОРОДАХ» 1954 ԹՎԻՆ ԲԱՐԵՓՈԽՎԱԾ ԵՎ ՎԵՐԱՀՐԱՏԱՐԱԿՎԱԾ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆԻՑ, ՀԱՅԵՐԵՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅԱՄԲ.

### ԳԼՈՒԽ 5-ՐԴ

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՌԵՎՏՐԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ ԱՐԱԲԱԿԱՆ ԽԱԼԻՖԱՅՈՒԹՅԱՆ ԵՎ ԲԱԳՐԱՏՈՒՆԻՆԵՐԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ

### Առևտրի լճացումը և Հայաստանի քաղաքների անկումը արաբական տիրապետության առաջին դարերում:

*Արաբական տիրապետության դարաշրջանը և, հատկապես, 7-րդ դարի վերջը ու ամբողջ 8-րդ դարը Հայաստանի համար եղել են ծանր փորձությունների և աղետների շրջան, որոնք քայքայել են նրա ներքին բարեկեցությունը և չափազանց բացասական ազդեցություն են ունեցել նրա տնտեսական զարգացման վրա։*

*Հայաստանը դեռևս չէր կազդուրվել նախորդ դարաշրջանի Բյուզանդական-Սասանյան համառ և հյուծող կռիվների ազդեցությունից, երբ մեր թվարկության 640 թվից սկսած, կրեց արաբական արշավանքների բոլոր աղետները և սարսափները։ Արաբների տապատակությունները, որոնք զուգակցվում էին ավերածություններով և գերեվարությամբ, պարբերաբար կրկնվում էին՝ հարավից Միջագետքի կողմից (640 թ.) և հարավ-արևելքից — Ադրբեջանի կողմից (642—643 և 650 թվերին), որի հետևանքով Հայաստանը, ներքին ինքնավարության և ֆեոդալական-նախարարական կարգերի պահպանման որոշակի պայմաններով, ընդունել էր արաբական խալիֆայության իշխանությունը։*

Արաբական տիրապետությունը Հայաստանում հաստատվեց 7-րդ դարի հիսունական թվերի սկզբներին և շարունակվեց մինչև Բագրատունիների թագավորության հաստատումը (652—887/88 թթ.)։ Նոր տիրապետության առաջին շրջանում, սկսած 652 թվից մինչև 750 թիվը, համարյա մի ամբողջ հարյուրամյակի ընթացքում, Հայաստանը գտնվում էր Օմայան խալիֆների իշխանության տակ. իսկ 750 թվից մինչև 887/8 թիվը, այսինքն՝ մինչև Բագրատունյաց թագավորության առաջացումը, Հայաստանը ենթարկվել է Աբբասյան խալիֆներին։ Արաբական տիրապետության առաջին շրջանում խալիֆայության կենտրոնը եղել է Դամասկոսը և տիրող նոր պետության մեջ գլխավոր դերը խաղում էին Սիրիայի արաբները. իսկ հետագա շրջանում՝ կենտրոն էր դառել Բաղդադը, որը հիմնված է եղել 762 թվին, և խալիֆաթում գլխավոր դերը պատկանում էր Իրաքի արաբներին և մահմեդականություն ընդունած պարսիկ ազնվականությանը։

Օմայանների ժամանակ, հատկապես, նրանց իշխանության առաջին շրջանում, արաբական տիրապետությունը Հայաստանում, ինչպես և ազգաբնակչության շահագործումը նրանց կողմից, ինչպես երևում է, գլխավորապես ստորին խավերի շահագործումը, եղել է համեմատաբար մեղմ և հանդուրժելի։ Աշխարհակալների այդ մեղմ ու զգուշավոր քաղաքականությունը բացատրվում է նրանով, որ Օմայանները հաշվի էին առնում Հայաստանի ռազմական և զինվորական նշանակությունը, և պահելով նրա ներքին ինքնուրույնությունը ու նախկին նախարարական կարգերը, ուզում էին օգտագործել նրա զինվորական ուժերը իրենց նոր սահմանների պաշտպանության համար ընդդեմ Բյուզանդիայի և խազարների։ Սակայն, արաբական տիրապետությունը, նույնիսկ այդ դարաշրջանում, եղել է Հայաստանի համար աղետալի։ Բյուզանդիայի և խալիֆայության միջև պարբերաբար կրկնվող կռիվների ժամանակ, Հայաստանը շատ անգամ փոխում էր իր կողմնորոշումը և ենթարկվում էր անողոք ավերածությունների՝ թե մեկի և թե մյուսի կողմից։ Եթե նա հավատարիմ էր մնում խալիֆայությանը, նրան դաժան կերպով պատժում էին հույները, իսկ եթե անցնում էր հույների կողմը, վրեժ էին առնում արաբները։

Հայաստանի ավերումը և քայքայումը Օմայանների տիրապետության ժամանակաշրջանում պարզորոշ կերպով նշված է սիրիական պատմիչ Դիոնիսիոս Տելմահարացու ժամանակագրության մեջ։

Նկարագրելով արաբական Մասլամա զորավարի արշավանքը

Բյուզանդիա և նրա երևալը Արածանի գետի հովտում ու Հայաստանի ներսում, Դիոնիսիոսը գրում է՝

> «Առաջ այդ երկիրը աչքի էր ընկնում և ուներ շատ մեծ բնակչություն, բազմաքանակ խաղողի այգիներ, հացաբույսերի ցանքեր և ամեն տեսակի հիանալի ծառեր։ Այնուհետև նա ավերվեց և նրա բնագավառներում այլևս բնակչություն չմնաց»[1]։

Եթե խալիֆայության տիրապետության առաջին շրջանում Հայաստանը ավերվում էր արաբների և բյուզանդացիների կռիվների պատճառով, որոնք տեղի էին ունենում նրա տերիտորիայում, ապա խալիֆաթի տիրապետության երկրորդ շրջանում, գլխավորապես 8-րդ դարում, Հայաստանը արյունաքամ էր լինում ոչ այնքան պատերազմների հետևանքով, որքան ծանր ու անտանելի հարկերի ճնշման տակ, որոնք եղել են պատճառ համաժողովրդական ապստամբությունների, և որոնք իրենց հերթին խեղդվել են «հրով ու սրով»։

Օմայանների իշխանության ժամանակ, հատկապես այդ իշխանության առաջին շրջանում, պետական հարկերը Հայաստանում եղել են համեմատաբար ոչ ծանր։ Համաձայն Սամուել Անեցու վկայության, խալիֆայությունը Հայաստանում հաստատվելիս՝ «յուրաքանչյուր երդից»։

> «Յամենայն տանէ առնել Դ դրամ և Գ մոթ խորբալ և ձիատոպրակ մի, և պարան մի մազէ և ձեռնարար մի։ Իսկ ի քահանայից և յազատաց և ի հեծելոց ոչ հրամայեաց առնուլ զհարկն»[2]։

Այդ վկայության մեջ հիշված՝ մոդը կամ գրիվը իր քաշով կազմում է 9 կիլոգրամ 792 գրամ, դրամը՝ Սասանյան արծաթ դրամն է, որը հավասար է մոտավորապես 50 կոպեկ ոսկով։ Հետևաբար 3 մոդ ցորենը կազմում է 29 կիլոգրամ 376 գրամ, իսկ 4 դրամը—2 ռուբլի ոսկով։

Այդ գումարի իրական արժեքը 7-րդ դարում եղել է բավական բարձր։ 1 փութ ցորենի արժեքը յոթերորդ դարում եղել է 35—50 կոպ. ոսկով։ Խալիֆայության հարկային քաղաքականությունը Հայաստանում ենթարկվել է հիմնական փոփոխության Հիշամ խալիֆի ժամանակ (724—743)։

---

[1] Տես «Chronique de Denys de Teil-Mahré», publ. et trad. par J. B Chabot, Paris, 1895, p. 12.

[2] Սամուել Անեցի, Վաղարշապատ, 1893, էջ 82։

*724—725 թվերին Հիշամի հրամանով Հայաստանում կատարվել է ընդհանուր աշխարհագիր և հաշվի են առնվել՝ մարդկանց թիվը, անասունները և հողերի տարածությունը։ Այդ փոփոխությունից հետո ինքնավար Հայաստանի հարկային արտոնությունները վերացել էին և այնուհետև հարկերը ենթակա են եղել գանձման ոչ թե ըստ երդի կամ ըստ ծխի, ինչպես առաջ, այլ ըստ գլխաքանակի և ըստ հողամասերի տարածության ու, հավանորեն, նաև ըստ օգտագործվող հողերի որակի։ Այսպիսով, մտցվում էր հարկատվության նոր ձև՝ գլխահարկ, հողային հարկ և անասնահարկ։ Հարկապահանջության այդ ձևը կարճ ժամանակում դառավ երկրի համար իսկական աղետ, մանավանդ, գյուղացիության և քաղաքների բնակչության ստորին խավերի համար։*

*Դեռևս մինչև այդ ընդհանուր աշխարհագիրը, Եզիդ 2-րդ խալիֆի (720—724 թ.) ժամանակ Հայաստանի կառավարիչ է նշանակված եղել ալ-Ջարրահ իբն-Աբդուլլա ալ-Խակամին, որը առաջին անգամը Հայաստանում մտցրել էր արաբական կշիռները և չափերը։*

> *«Նրանից հետո (Հերթից) — վկայում է Բելազորին,— Հայաստանի կառավարիչ է նշանակված եղել ալ-Ջարրախ իբն Աբդուլլա ալ-Խակամին՝ մասխիջների ցեղից։ Երբ նա ժամանեց Բերդաա, նրան տեղեկացրին կշիռների և չափերի մեջ տեղի ունեցող չարարկությունների մասին, և նա այդ վերացրեց՝ մտցնելով ճշգրիտ նոր չափ, որը հայտնի է Ջարրախյան անունով, և որը մինչև օրս գործադրություն ունի բնակչության մեջ»[1]։*

*8-րդ դարում Հայաստանի կրած ծանր ցնցումների հետևանքը եղել է մշակույթի երկարատև անկումը[2], նաև Հայաստանի տնտեսական կյանքի լճացումը, և նույնիսկ հետադիմությունը. միաժամանակ տեղի է ունեցել դրամատնտեսական հարաբերությունների խիստ թուլացում։ Այդ տեսակետից ուշագրավ են աղբյուրների այն հաղորդագրությունները, որոնք տալիս են Հայաստանի և Հյուսիսային Միջագետքի դրության նկարագրությունը 8-րդ դարի երրորդ քառորդում։ Ըստ Ղևոնդ պատմագրի վկայության, ալ-Մանսուր խալիֆի ժամանակ (754—775) Հայաստանը անկարող եղավ վճարել Աբբասյաններին դրամական հարկերը՝ երկրում զգացվող*

---

[1] *Տես* Баладзори, Книга завоевания стран, *թարգմանություն* П. К Жузе-*ի*, Баку, 1927, *էջ* 16.

[2] Н. Я. Марр, Кавказский культурный мир и Армения, *էջ* 36—37.

արծաթի և թանկագին մետաղների պակասության պատճառով[1]: Պարզ է, թե ինչպիսի կորստաբեր հետևանքներ պիտի ունենար այդ իրողությունը: Ղևոնդի հաղորդությունից երևում է, որ բնակչությունը չնչին գներով ծախում էր իր ունեցվածքը և ոչ մի կերպ չէր կարող հավաքել պահանջվող գումարը, հարկերը վճարելու համար: Միքայել Ասորու վկայությամբ՝ Հյուսիսային Միջագետքում բնակչությունը իր երեխաներին տալիս էր հարկահավաքներին 5 դրամով, և վաճառում էր եզները և էշերը, յուրաքանչյուրը 1 դրամի[2]:

Պատմագիրը անուղղակի կերպով ցույց է տալիս նաև դրամի պակասելու ու դրամական հարաբերությունների թուլացման և ուրիշ դրդապատճառ:

«Եւ յետ այսորիկ [այլ Մանսուր-խալիֆից],— վկայում է Ղևոնդը,— յաջորդէ զիշխանութիւն նորա Մահմետ Մահադի որդի նորա: Եւ սա էր ազնուական քան զհայր իւր և լաւագոյն բարուք: Եբաց զամենայն տունս գանձուց զորս աղխեալ պահէր ամբարիշտն Աբդլա, և բաշխեաց պարգևս զօրաց իւրոյ: Համարձակեաց և զդրունս մարզից՝ հանել զվաճառականս ի վաճառս իւրեանց և լնուլ զպէտս կարօտելոց. և եղև առատութիւն երկրի, և գիւտ արծաթոյ ընդարձակեցաւ. և բնակչաց երկրի անդորրութիւն եղև ի հարկապահանջ բռնութենէն. զի թէպէտև զանուր լծոյ հարկին ծանրացույց՝ սակայն վասն գիւտի արծաթույն հանգեաւ երկիրս առ փոքր մի ի չար տառապանաց վտանգին. քանզի և լերինք արծաթոյ յայտնեցան յաշխարհիս Հայոց առ ի հանել ի նոցունց խանութս արծաթոյ զտոյ ի պէտս մարդկան յաւուր իշխանութեան նորա»:

Հայաստանի տնտեսական անկումը 8-րդ դարում և դրամական շրջանառության տնտեսությունից բնական տնտեսության վերադարձը, բացատրվում է, ինչպես տեսնում ենք, ոչ միայն հիշված քաղաքական ցնցումներով, այլև սևծովյան նավահանգիստների հետ միջազգային ցամաքային առևտրի ընդհատմամբ: Այդ կուլտուր-տնտեսական լճացումը և Հայաստանի միջով կատարվող տարանցիկ առևտրի երկարատև անկումը միանգամայն անտեսվում է Հայաստանի պատմությանը վերաբերող նորագույն աշխատություններում: Բացի այդ, Հայաստանի քաղաքների և առևտրի

[1] Ղևոնդ, Պատմություն Հայոց, Ս. Պբ. 1887 թ., գլ. 33 և 34, էջ 135 և 139:

[2] Միքայել Ասորի—Ժամանակագրություն, Երուսաղեմ, 1871, էջ 352:

[3] Ղևոնդ, Պատմություն Հայոց, գլ. 37, էջ 154:

ծաղկման նոր սկզբնավորումը այդ աշխատություններում կապում են երբեմն Օմայանների ժամանակ առաջացած միջազգային առևտրի զարգացման հետ։ Այդ ենթադրությունը, ինչպես տեսնում ենք, հակասության մեջ է գտնվում վերև հիշված տվյալների հետ և բնավ չի արդարացվում այն փաստական տեղեկություններով, որոնք մեզ հայտնի են խալիֆայության և Բյուզանդիայի առևտրական հարաբերությունների մասին։ Չնայելով այն ծայր աստիճան նպաստավոր պայմաններին, որոնք ստեղծվել էին արաբական նվաճումների շնորհիվ համաշխարհային ընդարձակ հարաբերությունների համար, ոչ մի կասկած լինել չի կարող, որ Հայաստանը արաբական տիրապետության առաջին դարերում կորցրած է եղել իր տեղը միջազգային առևտրում։ Խալիֆայության առևտուրը համաշխարհային մասշտաբով զարգանում էր, ինչպես հայտնի է, ոչ թե Բյուզանդիայի սահմանամերձ շրջաններում, այլ գլխավորապես՝ Չինաստանի, Հնդկաստանի, Իսպանիայի և ամբողջ Հարավային Եվրոպայի հետ։ Արաբական խալիֆայության բարգավաճման դարաշրջանը, ինչպես ճիշտ ցույց է տվել Գուրկո-Կրյաժինը[1], նշանավորված էր նրա և Բյուզանդիայի միջև տեղի ունեցող անընդհատ կռիվներով։ Անմիջական առևտրական հարաբերությունները վերջինի հետ եղել են համարյա անհնարին։ Պոնտական Տավրոսից մինչև Միջերկրական ծովը ձգվում էր լայն սահմանային գոտի, որտեղ երկուստեք ցրված էին ամրոցները և զինվորական բնակավայրերը, որոնք դարերի ընթացքում վարել են սահմանային կռիվներ։

Միջազգային առևտրական հարաբերությունները Հայաստանի վրայով Տրապիզոնի հետ հնարավոր եղան, ինչպես կտեսնենք, խալիֆայության անկման և Բյուզանդիայի ու հայ Բագրատունիների քաղաքական զորեղացման շրջանում։ Իսկ 7-րդ և 8-րդ դարերում, խալիֆայության զինվորական և քաղաքական հզորության ու Բյուզանդիայի հետ ունեցած կատաղի կռիվների դարաշրջանում, Հայաստանը ոչ թե եղել է տնտեսական, այլ եղել է բացառապես խալիֆայության զինվորական և ռազմագիտական առաջապահը, և միջազգային առևտուրը նրանում, որ կրճատված է եղել նախընթաց դարաշրջանում, այդ ժամանակ ընդհատված է եղել և բոլորովին դադարել է։

Բյուզանդիայի հետ առևտրական հարաբերությունների ընդհատումը չէր կարող չանդրադառնալ Հայաստանի քաղաքների դրու-

---

[1] В. Гурко-Кряжин, Прошлое и настоящее Советской Армении, „Новый Восток", 1927, кн. 16—17, стр. 206,

թյան վրա, որոնք դեր էին խաղում միջազգային առևտրում։ Այդ քաղաքները, որոնք խիստ տուժել էին արաբական արշավանքների ու պարբերաբար կրկնվող ապստամբությունների և կռիվների ժամանակ, ստացել էին այլ նշանակություն։ Նրանք դարձել էին արաբական իշխանության զինվորական և վարչական կենտրոնները և բնակեցված են եղել արաբներով ու դարձել էին, գերազանցորեն, արաբական վետերանների գաղութներ։ Հայկական և արաբական աղբյուրները հիշատակում են արաբական կայազորներ և զինվորական բնակավայրեր՝ Դվինում, Նախիջևանում, Արճեշում և Թեոդոսուպոլսում։ Հայկական քաղաքների նշանակությունը, իբրև արաբական տիրապետության ամրացված կայաններ և հենակետեր, պարզ երևում է նրանից, որ իրենք՝ արաբները այդ կայանները անվանում էին «Հայաստանի սահմանային ամրոցներ»[1]։

Հայաստանում, իբրև գլխավոր քաղաք, մնում էր Դվինը, որը եղել է արաբ կառավարիչների նստավայրը։ Քանդված լինելով 7-րդ դարի վերջերի և 8-րդ դարի սկզբի ապստամբությունների և կռիվների ժամանակ, Դվինը, ինչպես հաղորդում է Ղևոնդը[2], վերականգնված է եղել Աբդուլ-Ազիզի կողմից, որը եղել է Հայաստանի կառավարիչ խալիֆ Վալիդի ժամանակ (705—715)։

> «Իսկ Աբդլ-Ազիզն,— վկայում է Ղևոնդը,— տիրեալ աշխարհիս Հայոց՝ խաղաղացուցց զամենայն յարձակմանս անիրաւութեան յաշխարհէս. և զխրոխտացեալ անզգամութիւն որդւոյն Խոմայելի սաստիկ կշտամբութեամբ ցածուցանէր։ Շինէր վերստին զքաղաքն Դուին հզօրագոյն և ընդարձականիստ մեծութեամբ քան զառաջինն, և ամրացուցանէր դրամբք և դռնափակօք, անցուցանէր շուրջ զպարսպովն պարկէնս փոսից լցեալ ջուր յապաստան ամրոցին»։

Նույն պատմագրի հաղորդագրություններից երևում է, որ արաբները առանձին ուշադրություն էին դարձրել Թեոդոսուպոլիս քաղաքին, որը արաբական աղբյուրներում կոչվում է Կալիկալա։ Եվ այդ միանգամայն հասկանալի է, որովհետև Թեոդոսուպոլիսը պաշտպանում էր գլխավոր ճանապարհները, որոնք գնում էին Տրապիզոնից և Փոքր Ասիայից Արաքսի հովիտներով դեպի Ադրբե-

---

[1] Տե՛ս J. Laurent, L'Arménie entre Bysance et l'Islam depuis la conquête arabe jusqu'en 886, Paris, 1919, p. 178; Thopdschian H., Die inneren Zustände Armeniens unter Asch I, Diss., Berlin, 1904, S. 118.

[2] Ղևոնդ, Պատմություն Հայոց, գլ. 10-րդ, էջ 36։

ջան և Մեդիա։ Արաբները այդ քաղաքը անվանում էին «Հզոր ամրոց Ադրբեջանի, Ջաբալի և Ռեյի ժողովուրդների համար»[1]։

Գտնվելով արաբական տիրապետությունների ծայրագույն արևմուտքում, Թեոդոսուպոլիսը հաճախ ենթարկվում էր հարձակման ու ավերման, և նրա պատերը ու ամրությունները բազմիցս քանդվել են բյուզանդացիների կողմից։ 756 թվին նա վերականգնըված է եղել Հայաստանի արաբական կառավարիչ Եզիդի կողմից, իսկ 833 թվին Մուտասիմ[2] խալիֆի (833—842) կողմից։ Այդ առաջնակարգ ամրոցի պաշտպանությունը Եզիդը հանձնել էր արաբների զինվորական գաղութին, որոնք միաժամանակ պահում էին շրջակա քրիստոնյա բնակչությունը հնազանդության մեջ։ Հայաստանը, ինչպես ասում է Ղևոնդը, պետք է նրանց պահեր և հայթայթեր նրանց սննդամթերք[3]։

Արաբական զինվորական կայաններ եղել են նաև Հյուսիսային Անդրկովկասում. և շատ ուշագրավ է, որ նոր քաղաքներ նրանց կողմից հիմնադրված են եղել ոչ թե Հայաստանում, այլ ներկա Ադրբեջանի սահմաններում։ Բյուզանդացիների դեմ գլխավոր զինվորական առաջապահը հյուսիսում եղել է, անշուշտ, Թիֆլիսը։ Համաձայն Բելազորիի հաղորդագրությանը՝ Թիֆլիսից քան ֆարսախ և Բերդաաից (Պարթավից) 40 ֆարսախ հեռավորության վրա Մրվան իբն-Մուհամեդը շինել էր Կիսալ[4] քաղաքը։

Մինորսկու կարծիքով, այդ քաղաքի անունը պետք է ենթադրել ոչ թե Kisál կամ Kusál, ինչպես սխալ է ցույց տված մի քանի արաբական ձեռագրերում, այլ Kasál (Կասալ)։ Հիմնվելով Բելազորիի մոտ մեջ բերված հեռավորությունների վրա, Մինորսկին Կասալը նույնացնում է ներկա Ղազախի հետ, Աղստև գետի ափին, որը հանդիսանում է իբրև հանգուցային կետ, որտեղից ճանապարհները բաժանվում են տարբեր ուղղությամբ՝ մեկը դեպի արևմուտք—Կուր գետի աջ ափով—դեպի Թիֆլիս, մյուսը—դեպի արևելք, Գյանջայի վրայով, դեպի Բերդաա, և երրորդը—դեպի հարավ,

---

[1] J. Laurent, l'Arménie entre Byzance et l'Islam, p. 176; Ibn Haukal B. G. A., II, 1873, p. 295

[2] Ibidem, p. 176—177.

[3] Ղևոնդ, Պատմություն Հայոց, 29-րդ, էջ 180։

[4] Տես՝ Ghazarian M., Armenien unter der arabischen Herrschaft, Marburg, 1903, S. 58. Beladhort, éd. de Goeje, Leiden, 1870, p. 207.

Պրոֆ. Պ. Կ. Ժուզեն, իր՝ Բելազորիի ռուսերեն թարգմանության մեջ Կիսալը համարում է ոչ թե քաղաքի անուն, այլ մարզի անուն, որտեղ շինված է եղել քաղաքը։

Դիլիջանի ու Երևանի վրայով, դեպի Դվին[1]։ Նա միանգամայն ճիշտ նշում է, որ Աղստև գետի հովիտը ուներ հաղորդակցության ճանապարհի կարևոր նշանակություն՝ կապվելու հարավային մարզերի հետ, որոնք գտնվում էին Արաքս գետի ավազանում։

Արաբների ղեկավարները, որոնք շինել էին Կասալի ամրությունները, ուզում էին, ակներևորեն, ենթադրում է նա, ունենալով անմիջական կապ Դվինի և Նախիջևանի հետ, վերահսկողություն ունենալ Բերդաաից Թիֆլիս տանող ճանապարհի վրա։

Նույն հեղինակը վկայում է, որ Օսման խալիֆի ժամանակ (644—656) Սալման իբն-Ռաբիայի կարգադրությամբ՝ Շամքորում բնակեցված են եղել արաբական զորքեր։ Այդ քաղաքը, որ քանդված է եղել սավարդիտների (հայ. սևորդիների) կողմից, վերակառուցվել է Հայաստանի կառավարիչ Բուղայի միջոցով 854 թվին։

«Բերդաաի բնակիչներից ոմանք ինձ հաղորդեցին,— ասում է Բելաձորին,— որ Սալման-իբն-Ռաբիա ալ Բախհլին ուղարկել է Շամքոր քաղաքը, որը համարվում էր հին քաղաք, մի զորաբանակ, որը և տիրեց նրան։ Այդ ժամանակից սկսած քաղաքը չի դադարել լինել բնակելի ու ծաղկած վիճակում, մինչև որ այն քանդեցին սավարդիտները։ Այդ մի ժողովուրդ էր, որը թափվում էր տարբեր կողմերից, ուժեղանում էր և անկարգություններ էր անում, երբ Եզիդ իբն Ուսայդը թողեց Հայաստանը։ Բայց 240 թվին (854) Մուտասիմ-բիլլախի կողմից հովանավորված Բուղան, թող նրան Աստված ներում շնորհե. Հայաստանի, Ադերբայջանի և Շիմշատի կառավարիչ լինելով վերանորոգեց այդ քաղաքը, նա բնակեցրեց այնտեղ խազարների մի մասը, որոնք եկել էին նրա մոտ և խնդրել էին նրա հովանավորությունը, որովհետև իրենք ուզում էին ընդունել իսլամը։ Նա տեղափոխեց այնտեղ նաև Բերդաայից վաճառականներին և անվանեց քաղաքը Մութավաքիլիա»[2]։

844 թվին Մուհամմեդ իբն խալիդը հիմնադրեց Գանձակ քաղաքը (Գյանջա-Կիրովաբադ) և բնակեցրեց Դիարբեքիրից բերած արաբներով[3]։

Գանձակից դեպի արևելք, Թարթառ և Կուր գետերի միախառնման տեղից ոչ հեռու գտնվում էր Առանի Պարթավ քաղաքը, որը

---

[1] Տե՛ս Minorsky, Transcaukasia, Jurnal Asiatique, Iuli, 1930, p. 73—90.

[2] (Բելաձորի) Баладзори, перевод Жузе, Баку, 1927 г., էջ 13—14.

[3] Laurent, p. 177, Մովսես Կաղանկատվացի, Պատմութիւն Աղուանից աշխարհի. թարգմ. Պատկանյանի, Ս. Պ. Բ., 1861, էջ 270. համեմատե՝ J. Markwart, Osteuropäische und Ostasiatische Streifzüge, Leipzig, 1903, S. 462.

արաբների մոտ կոչվում էր Բերդաա, և որը եղել է ամբողջ արաբական Էրմենիայի կառավարչի աթոռանիստը, այսինքն՝ Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի։

Հիշված քաղաքները, որոնք ծառայում էին իբրև արաբների քաղաքական ու զինվորական հենակետեր, եղել են միաժամանակ կարևոր առևտրական կենտրոններ, և մինչև 9-րդ դարի երկրորդ կեսը, ինչպես ես կարծում եմ, նրանք միջազգային առևտրի մեջ խաղացել են ավելի մեծ դեր, քան Հայաստանի քաղաքները։ Այդ չափազանց կարևոր փաստը, որը թերագնահատվել է պատմագիտական աշխատություններում, բացատրվում է, ըստ երևույթին Բյուզանդիայի հետ առևտրական հարաբերությունների ընդհատումով և միջազգային առևտուրը դեպի Կուր գետի ավազանը փոխանցելու հետևանքով։ Առևտրի աշխուժացումը արևելյան Վրաստանում և ներկա Ադրբեջանի երկրամասում կապված է, անշուշտ, խազարների և սլավոնների արևելյան առևտրի ծաղկման հետ։ 7-րդ դարից սկսած, ինչպես հայտնի է, Պոնտոսի հյուսիսային ափերում և Դոն ու Դնեպր գետերի միջև ընկած տափաստաններում սկսեցին հաստատվել խազարները։

«8-րդ դարում,— ասում է Կլյուչևսկին,— նրանց մեջ տեղավորվեցին Անդրկովկասից հրեաները և արաբները։ Հրեաների ազդեցությունը այդտեղ եղել է այնքան ուժեղ, որ խազարական խագանների դինաստիան իր արքունիքով, այսինքն, խազարական հասարակայնության բարձր դասի հետ ընդունել էր եբրայեցոց հավատքը։ Փռված լինելով Վոլգա և Դոն գետերի առափնյա լայնարձակ տափաստաններում, խազարները հիմնել էին իրենց պետության կենտրոնատեղին Վոլգայի ստորին հոսանքի շրջանում։ Այստեղ նրանց Իտիլ մայրաքաղաքը շուտով դառավ հսկայական բազմալեզու վաճառատեղի, որտեղ կողք կողքի ապրում էին՝ մահմեդականներ, հրեաներ, քրիստոնյաներ և հեթանոսներ։ Խազարները Վոլգայի բուլղարների հետ միասին դառան միջնորդ՝ աշխույժ ապրանքափոխանակության, որը առաջացել էր Բալթիական հյուսիսի և արաբական արևելքի միջև մոտավորապես 8-րդ դարի կեսերից, մոտավորապես այն ժամանակը, երբ Աբբասյանների օրով խալիֆայության կենտրոնը տեղափոխվեց Դամասկոսից—Բաղդադ»[1]։

---

[1] Проф. Ключевский, Курс русской истории, Москва, 1914, ч. I, стр. 146.

Այդ առևտրում, բացի խազարներից և Վոլգայի բուլղարներից, մասնակցում էր, ինչպես հայտնի է, նաև Կիևյան Ռուսիան։ Ըստ արաբական աշխարհագիր Խորդադբեյի հաղորդագրության, որը ժամանակակից է եղել Ռյուրիկին և Ասկոլդին, ռուսները իրենց երկրի առանձին մասերից ապրանքներ էին տանում դեպի Սև ծովը, որտեղ Ռումի (Բյուզանդիա) թագավորը նրանցից գանձում էր տասանորդ՝ իբրև մաքս։ Նրանք այնուհետև գնում էին սլավոնական Տանաիս (Դոն) գետով և հասնում էին խազարական Խամլիխ քաղաքին (Իտիլի արևելյան կեսը), որտեղ խազարիայի տիրակալը նույնպես վերցնում էր նրանցից տասանորդ։ Այնտեղից նրանք գնում էին դեպի Կասպից ծովը ու այնուհետև Գուրգան, որտեղից երբեմն ուղարկում էին իրենց ապրանքները ուղտերով Բաղդադ[1]։

Արաբական աղբյուրների մի շարք վկայություններից պարզ երևում է, որ Հյուսիսային Անդրկովկասի առևտուրը, որը սկսվել էր 8-րդ դարում, հասավ իր ամենամեծ զարգացմանը 9-րդ և 10-րդ դարերում։ Պատահական չէ, իհարկե, որ Թիֆլիսի և Արդբեջանի քաղաքների տնտեսական զարգացումը վերագրվում է հենց այդ ժամանակին։ Եվ կարելի է վստահ կերպով ենթադրել, որ նոր քաղաքների երևան գալը այստեղ և մայրաքաղաք Պարթավի փարթամ ծաղկումը բացատրվում են, գլխավորապես, Հարավային Ռուսաստանի հետ միջազգային առևտրի զարգացմամբ։

Վերև հիշված բոլոր տվյալներից երևում է, որ սկսած 8-րդ դարից մինչև Բագրատունիների թագավորության ժամանակ առևտրի նոր վերելքը, մինչդեռ Հայաստանի վրայով տարանցիկ ճանապարհները փակված են եղել, և Հայաստանի քաղաքները գտնըվում էին անկման դրության մեջ, միջազգային առևտրական հարաբերությունները տեղափոխվել էին դեպի հյուսիս, և այդ առևտրում գերակշռող դեր խաղում էին Հյուսիսային Անդրկովկասի քաղաքները։

## ԱՌԵՎՏՐԻ ՎԵՐԱԾՆՈՒՆԴԸ ԵՎ ԾԱՂԿՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔՆԵՐՈՒՄ 9—10-ՐԴ ԵՎ 11-ՐԴ ԴԱՐԻ ԱՌԱՋԻՆ ԿԻՍՈՒՄ

Հայաստանի քաղաքական և մասամբ ներքին կյանքի պատմությունը Բագրատունիների թագավորության ժամանակաշրջանում վերջին ժամանակները արժանացել է առանձին ուշադրության։

---

[1] Նույնը, էջ 147—148. Markwart, Osteurop. une Ostas. Streifzüge, S. 203, 350—352. De Goeje, Bibl. Geogr. Arab., VI, p. 115.

Բացի գերմաներեն լեզվով հրատարակված մի շարք դիսերտացիաներից[1], Բագրատունիների ժամանակաշրջանի Հայոց պատմության համար մենք ունենք գերմանական գիտնական Մարկվարտի[2] հանգամանորեն կազմված աշխատությունը։ Պետք է, սակայն, նշել, որ տարանցիկ առևտրի մասին մեր կողմից քննարկվող խնդիրը այդ աշխատություններում տրված է չափազանց սեղմ։ Բարեբախտաբար այդ պակասը շատ դեպքերում լրացնում է W. Heyd-ի կլասիկ աշխատությունը՝ «Histoire du commerce du Levant», որը, անշուշտ, ծառայում է իբրև կապիտալ ձեռնարկ միջին դարերի պատմության համար։

Հայաստանի տնտեսական վերածնունդը և քաղաքային կենտրոնների ծաղկումը հնարավոր դառան, ինչպես ինձ թվում է, 9-րդ դարի երկրորդ կեսից սկսած, շնորհիվ արտաքին քաղաքական իրադրության հիմնովին փոփոխման, որը նպաստավոր է եղել Հայաստանի քաղաքական և տնտեսական զարգացման համար։

9-րդ դարի երկրորդ կեսից սկսած տեղի է ունեցել, ինչպես հայտնի է խալիֆայության անկումը և քայքայումը և Բյուզանդական կայսրության աստիճանական զորեղացումը։ Իշխանությունը Մակեդոնական դինաստիային անցնելուց հետո, դեռևս Բարսեղ 1-ի (867—886) ժամանակ, Բյուզանդիան օգտվեց խալիֆայության թուլացումից և կործանիչ հարվածներով ոչնչացրեց արաբների պաշտպանողական դիրքերը, որտեղից նրանք անընդհատ, համարյա ամեն տարի ասպատակում էին Փոքր Ասիայի սահմանամերձ շրջանները։ 872 թվին Բարսեղ 1-ը վերցրեց և քանդեց Տեվրիկը։

Այնուհետև բյուզանդացիք կարող էին ազատ գործել ընդդեմ պաշտպանողական գոտիների, և քայլ առ քայլ գրավելով արաբների անմատչելի ամրությունները, նրանք ներս էին մտնում Մալաթիայի և արևելյան Կիլիկիայի միջև գտնվող մարզերը։ Ռոմանոս Լեկապենի (920—944) կայսրության օրով բյուզանդացիք շարունակեցին սկսված ճնշումը ավելի մեծ հաջողությամբ։

«Մուկտադիր խալիֆի (908—932) ժամանակ, նոր անկման հետևանքով,— ասում է Ա. Մյուլլերը,— խալիֆայու-

---

[1] Daghbaschian A., Gründung des Bagratidenreiches durch Aschot Bagratuni, Diss., Berlin, 1893; Thopdschian H., Die inneren zustände Armeniens unter Aschot I, Diess., Berlin 1904; Akulian A., Einverleibung armenischer Territorien durch Byzans im XI Jahrhundert, diss., Grüningen, 1912 և ուրիշ.։

[2] J. Markwart, Osteuropäische und Ostasiatische Streifzüge.

*թյան զինվորական հաջողությունները բնականաբար հետըզ-հետե ավելի էին թուլանում և ահա կատարվեց հարյուր տարուց ավելի շլված իրողությունը — ամրոցների երկաթե օղակը պատռեց հայ-բյուզանդական զորավար Հովհաննես Կուրկուասը։ 926 թվին հույները գրավեցին Մալաթիան և 927 թվին հեղեղեցին Հայաստանը ընդհուպ մինչև նրա մայրաքաղաք Դվինը, 928 թվին գրավեցին երկրի արևմտյան մասը մինչև Էրզերում, իսկ 929 թվին նաև Հյուսիսային Միջագետքը՝ Մայաֆարկինի, Ամիդի (ներկա Դիարբեքիր) և Մալաթիայի միջև։ Թեև արաբական կուսակալները, գործելով Մոսուլի և Տարոնի կողմից՝ շատ անգամ փորձում էին ետ քշել Կուրկուասի զորքերը, սակայն այդ հաջողվում էր նրանց անել միայն ժամանակավորապես։ 934 թվից իսլամի համար երկար ժամանակով կորցված էին Սամոսատը, Մալաթիան և ամբողջ Արևմտյան Հայաստանը»*[1]։

Արաբների պաշտպանողական ամրությունների վրա Բյուզանդիայի կատարած հաղթական գրոհի ժամանակ, ֆեոդալական Հայաստանի կողմնորոշումը, նրա վերաբերմունքը դեպի կռվող պետությունները, անշուշտ, ստանում էր առանձնահատուկ կարևոր նշանակություն։ Լոռանի[2] կարծիքով Բարսեղ 1-ի հաղթությունը կարող էր լինել ավելի լիակատար, եթե հայերը հարձակվեին արաբների աջ թևի վրա, կամ եթե նրանք օգնեին կայսերը տանել պատերազմական գործողությունները ավելի խորը՝ դեպի արևելք։ Հենց այդ, Հայաստանի համար չափազանց նպաստավոր իրադրությամբ է բացատրվում, ինչպես ճիշտ ենթադրում է Լոռանը[3], խալիֆայության քաղաքականության շատ խիստ փոփոխությունը ֆեոդալական Հայաստանի վերաբերմամբ։

Դեռևս 862 թվին Աշոտ Բագրատունին, որը հետագայում կոչվեց Մեծ, ստացավ Հայաստանի կառավարման իրավունքը՝ «իշխանաց իշխան» տիտղոսով։ Հավատարիմ մնալով խալիֆայությանը և չեզոք Բարսեղ 1-ի հաղթական կռիվների ժամանակ, Աշոտը 25 տարի մնաց «իշխանաց իշխան», և նրա ժամանակը Հայաստանը ուժեղացավ՝ թե քաղաքականապես և թե տնտեսապես։ Քառորդ դար կառավարելուց հետո, 887/88 թվին նա Մուտամիդ խալիֆից

---

[1] А. Миллер, История ислама, 1895, т. II, էջ 236 – 237.

[2] J. Laurent, L'Arménie entre Byzance et l'Islam, p. 260.

[3] *Նույնը, էջ 263—273։*

(870—892) ստացավ թագ և թագավորի տիտղոս։ Այդ տիտղոսը ճանաչել էր նաև Բարսեղ 1-ը։

Պետք է, սակայն, նշել, որ Բագրատունիների թագավորական դինաստիային բնավ չհաջողվեց ենթարկել իր իշխանությանը անհնազանդ ֆեոդալներին։ Խոշոր ֆեոդալները տրամադիր չէին լսելու իրենց սյուզերեն թագավորին, որը մնացել էր խալիֆի վասալ և հարկատու։ Ըմբոստ ֆեոդալները ձգտում էին օգնություն ստանալ կամ խալիֆայությունից, կամ հարևան ամիրաներից, ոչ պակաս հզոր, քան Բագրատունիները։ Չնայելով Բագրատունիների հանդեպ ունեցած արտաքուստ հաճոյաքարո և բարյացակամ քաղաքականությանը, անհնազանդ ֆեոդալների անջատականությունը և ապստամբությունները դրսից խրախուսվում և նույնիսկ հրահրվում էին, որովհետև Հայաստանի միացումը, իբրև հզոր թագավորություն, ցանկալի չէր ոչ խալիֆայությանը, ոչ Բյուզանդիային և ոչ հարևան ուժեղ ամիրայություններին։ Ուստի և հասկանալի է, որ Բագրատունիների թագավորական տիտղոսը մնաց իբրև լոկ տիտղոս, առանց իրական բովանդակության։ 10-րդ դարում, ինչպես հայտնի է, Հայաստանի և Անդրկովկասի բոլոր մեծ ֆեոդալները դառան նույնպես «թագավորներ» և ունեին նույնպիսի թագավորական հանդերձանք և թագ, ինչպես և Աշոտ 1-ի հաջորդները։

Սաճյան Յուսուֆ ամիրայի՝ Սմբատ 1-ի (890/1—913/4) վերաբերմամբ ունեցած դաժան դատաստանից և այնուհետև տեղի ունեցած խառնակություններից և ապստամբություններից հետո, որոնց ընթացքում տեղի էր ունենում երկրի անխնա ավերում, սկսած 10-րդ դարի երկրորդ քառորդից, ավելի քան հարյուր տարի Հայաստանում տիրում էր համեմատաբար խաղաղություն։ Զանենալով ակտիվ մասնակցություն Բյուզանդիայի և արաբների կռիվներին, և մնալով արտաքուստ խալիֆայության վասալներ, Բագրատունի թագավորները պահում էին բարեկամական հարաբերություններ և՛ Բյուզանդիայի, և՛ խալիֆայության հետ։ Խաղաղությունը և հանգստությունը նրանց տիրություններում չէր խանգարվում ոչ մեկի, ոչ մյուսի կողմից։

Շնորհիվ միջազգային առևտրի գլխավոր ճանապարհներից մեկի վրա իր ունեցած դիրքին, Բագրատունյաց Հայաստանը, որը կապված էր բարեկամական պայմանագրով Բյուզանդիայի հետ և առաջի ժամանակը վասալական կապերով խալիֆայության հետ, դարձել էր իդեալական չեզոք երկիր՝ տարանցիկ առևտրի և միջազգային հարաբերությունների համար։ Ապահովությունը և կյանքի խաղաղ պայմանները, անշուշտ, հանդիսանում էին իբրև չափա-

զանց նպաստավոր գործոն երկրի բարգավաճման և տնտեսական վերածնության համար։

Սակայն դրանով չի բացատրվում նրա աննախընթաց վերելքը և տնտեսական զարգացումը։ Քաղաքային կենտրոնների այդ զարգացումը և բարգավաճումը բացատրվում է, ինչպես ճիշտ ցույց է տվել Գուրկո-Կրյաժինը, նրանով, որ «Հայաստանը, տվյալ իրադրության մեջ, դառել էր բուֆեր՝ ոչ միայն քաղաքական, այլև առավել տնտեսական, որովհետև այդ երկրամասը հանդիսանում էր իբրև միակ տարանցիկ ճանապարհ երկու կռվող կողմերի առևտրական հարաբերությունների համար»[1]։

Հայաստանի տնտեսական արագ վերածնության սկիզբը պետք է տանել 9-րդ դարի երկրորդ կեսը։ Սկսված վերածնությունը, ինչպես հիշված է վերևում, ընդհատվել էր խռովությունների, ապստամբությունների և Սաճյան Յուսուֆ ամիրայի պատժիչ արշավանքների ժամանակ։ Իսկ այնուհետև 10-րդ և 11-րդ դարի առաջին կիսում, երկրի տնտեսական զարգացումը և քաղաքների աճը հասավ աստիճանաբար իր ծաղկման գագաթնակետին։

Բագրատունյաց շրջանի Հայաստանի բարգավաճ դրությունը երևում է նախ և առաջ նրանից, որ այդ ժամանակաշրջանի արաբական հեղինակները Հայաստանը համարում էին խալիֆայության ամենահարուստ երկրներից մեկը։ Այդ տեղեկությունները հաստատվում են նաև հայկական աղբյուրների հաղորդագրություններով։ Առաջին Բագրատունի թագավորների ժամանակ Հայաստանի բարեկեցության մասին ուշագրավ վկայություն է տալիս Ասողիկը․

«Յաւուրս Սմբատայ և յիշխանութեան հօր իւրոյ էր շինութիւն և խաղաղութիւն յաշխարհիս Հայոց ըստ մարգարէութեանն հանգչել իւրաքանչիւր ուրուք ընդ որթով իւրով և ընդ թզենեաւ։ Եւ այսպէս ագարակաց ասանացեալ և աւանաց քաղաքացեալ բազմամարդութեամբ և ընչեղութեամբ, մինչև հովուաց և անդէորդեաց մեթաքսեայս զգենուլ պատմուճանս»[2]։

Ասողիկի տեղեկությունը հովիվների մետաքսե շորերի մասին, իհարկե, պարզ չափազանցություն է, որովհետև տվյալ ժամանակաշրջանում ստորին դասերի դրությունը զգալիորեն վատացել էր, բայց, ընդհանուր առմամբ, վկայությունը ճիշտ է և համապատաս-

---

[1] В. Гурко-Кряжин, Прошлое и настоящее Советской Армении, Новый Восток, 1927 г., кн. 16—17, էջ 206

[2] Ասողիկ, Ընդհանուր պատմություն, թարգմ. Էմինի, Մոսկվա, 1864, 3-րդ, 8, էջ 109։

խանում է արաբական աղբյուրների համանման տեղեկություններին։

Սմբատ 1-ի (890/1—913/4) ժամանակը Հայաստանի բարեկեցության մասին նման տեղեկություն տալիս է նաև Հովհաննես Կաթողիկոսը՝

> «Իսկ աշխարհիս Հայաստանեայց յաւուրս յայնոսիկ այց արարեալ Տեառն և պատսպարեալ և յաջողեալ ի բոլոր բարութիւնս՝ բնակեցան իւրաքանչիւր ոք ի ժառանգութիւնս իւրեանց. և սեպհականեալ զերկիր՝ տնկեցին այգիս և արմատացուցին բուրաստանս ձիթենեաց և պարտիզաց. հերկեցին հերկս արտաքոյ փշոց և կթեցին պտուղս հարիւրաւորս. զեղան շտեմարանք ցորենոյ ի ժամանակի լրութեան հնձոց. լցան գուբք գինւոյ ի կութս այգեստանեայց և լերինք ցնծութիւն զգեցան, զի բազմացան ի նմա արօտականք անդեացք արջառոց և հօտք ոչխարաց։ Եւ գլխաւոր նախարարք մեր յապահովացեալք և հանգուցեալք ի հինից ասպատակաց՝ շինէին եկեղեցիս վիմարդ հաստահեղույս ձուլեալ կրով ի մենաստանս և յաւանս և յագարակս»[1]։

Նոր քաղաքների հարստության մասին, որոնք շինված են եղել այդ դարաշրջանում և դառել էին խոշոր առևտրական կենտրոններ, հետաքրքիր տեղեկություններ հաղորդում է 11-րդ դարի պատմագիր Արիստակես Լաստիվերտցին։ Անի քաղաքը, որը 10-րդ դարի երկրորդ կեսից դառել էր Բագրատունիների մայրաքաղաքը, նա անվանում է «ամբողջ աշխարհում հայտնի» քաղաք[2]։ «Հոյակապ և նշանավոր ամենուրեք» Արծն քաղաքի մասին, որը գտնվում էր Թեոդոսուպոլսից ոչ հեռու, Արիստակեսը հաղորդում է, որ նրա հարստությունները բերում էին «ծովով և ցամաքով»[3]։ Նմանապես նկարագրելով Կարս քաղաքը, Արիստակեսը նշում է այդ քաղաքի բնակիչների ունևորությունը և նորից ընդգծում է, որ նրանց հարստությունները կուտակված էին «ծովից ու ցամաքից»[4]։

Մեջ բերված վկայությունները, թեև անուղղակի, բայց միանգամայն որոշակի հաստատում են, որ Հայաստանի քաղաքների հարստացման գլխավոր աղբյուրը եղել է վերատին զարգացող միջազգային առևտուրը։ Որ Հայաստանը եղել է տարանցիկ երկիր մի-

---

[1] Հովհաննես Կաթողիկոս, Պատմութիւն Հայոց, Տփխիս, 1912, էջ 198—199։

[2] Արիստակես Լաստիվերտցի, Պատմութիւն, Տփխիս, 1912, գլ. 24, էջ 162։

[3] Նույնը, գլ. 12, էջ 78։

[4] Նույնը, գլ. 15, էջ 91։

ջազգային առևտրական հարաբերությունների համար, դրա մասին կա անմիջական ցուցում Հովհաննես Կաթողիկոսի մոտ[1]։ Երբ 9-րդ դարի վերջում Սաճայի որդին՝ Աֆշին ամիրան զայրացած լինելով Բյուզանդիայի հետ ունեցած Բագրատունիների բարեկամությունից, առաջ շարժվեց ընդդեմ Սմբատ 1-ի, վերջինս, ըստ Հովհաննես Կաթողիկոսի, իր դեսպանների միջոցով համոզում էր Աֆշինին, որ այդ բարեկամությունը խալիֆայությանը միայն օգուտ կբերե։ Շնորհիվ կայսրության հետ ունեցած մոտիկության, նա կարող է մատուցել նրան և խալիֆին ճոխ շորեր, զարդարանքներ և կահույք. բացի այդ խալիֆայության վաճառականների համար կբացվի Բյուզանդիայի ճանապարհը և, այդպիսով, առևտրական հարաբերությունները կհարստացնեն խալիֆայության գանձարանը։

Համաձայն վերև բերված վկայությունների և աղբյուրների այլ ցուցմունքների կարելի է վստահորեն եզրակացնել, որ իբրև ղեկավար ուժ Հայաստանի տնտեսական կյանքի, որը նպաստել է նրա քաղաքների արագ աճին, եղել է Արևելքի հետ Բյուզանդիայի ունեցած արտաքին առևտուրը, որը վերստին հաստատվել էր Բագրատունիների թագավորության բուֆերային երկրամասի վրայով։

Երկրում նյութական հարստությունների աճը և ֆեոդալական ազնվականության ու եկեղեցու ձեռքին դրամական միջոցների կուտակումը ստեղծել էին արտակարգ բարենպաստ պայմաններ շինարարության զարգացման համար։

Հայաստանի քաղաքները, գլխավորապես նրանք, որոնք գտնվում էին տարանցիկ գլխավոր ճանապարհների մոտ, հարստանում, շինվում և ընդարձակվում էին։ Թագավորները և Հայաստանի խոշոր ֆեոդալները մրցում էին իրար հետ իրենց կառուցած տաճարների, պալատների և այլ շենքերի փարթամությամբ։ Անշուշտ, անհրաժեշտ էր ունենալ հսկայական միջոցներ, որպեսզի շինեին այնպիսի հոյակապ եկեղեցիներ և վանքեր, որոնց քանդակները պահպանվել են մինչև մեր օրերը Անիում և Կարսում։ Աչքի է ընկնում այդ կողմից նաև Գագիկ Արծրունու (908—936) թագավորության վիթխարի շինարարությունը, որի վրա ծախսված են հսկայական նյութական միջոցներ, գլխավորապես, Ախթամարում, որը մանրամասն նկարագրված է Թովմա Արծրունու պատմության մեջ[2]։

[1] Հովհաննես Կաթողիկոս, Պատմութիւն Հայոց, Տփխիս, 1912, էջ 159—160։

[2] Թովմայ Արծրունի, Պատմութիւն տանն Արծրունեաց, 1887, 4-րդ, 6—8։ էջ 290—299։

*Երկրում խոշոր ֆեոդալների և իշխող դասերի տրամադրության տակ եղած ազատ դրամական միջոցների առկայությունը բացատրվում է ոչ միայն միջազգային առևտրի զարգացման, երկրի ընդհանուր բարեկեցության և ազգաբնակչության թվական շատացման հետևանքով, այլև հարկային գումարի փոքր չափով, որը հաբըստացած Հայաստանը պետք է վճարեր արաբներին։ Արաբական պատմագիր Իբն-Հալդունը Հայաստանի տարեկան հարկը 8-րդ դարի վերջերում հաշվում է 13 միլիոն դիրհեմ։ Արաբական աշխարհագիր Իբն Խորդադբեյի տվյալներով Հայաստանի հարկերը, ներառյալ նաև Անդրկովկասի մյուս երկրները, 9-րդ դարի քառասնական թվականներին կազմել են 4 միլիոն դիրհեմ։ 10-րդ դարի կեսում, Հայաստանի ծաղկման շրջանում, հարկերի չափը, համաձայն Իբն Հաուկալի տեղեկությունների չէր ավելացել, և կազմում էր մոտավորապես նույնը՝ 4 միլիոն դիրհեմ, որից մեկ միլիոն դիրհեմ, իբրև բաժին, ընկնում էր Բագրատունյաց Հայաստանի[1] վրա։ Հայկական աղբյուրների անուղղակի ցուցմունքներից երևում է, որ Բագրատունիները նույնիսկ այդ փոքր տուրքը վճարում էին շատ անկանոն և Ատրպեճանի ամիրաները, որոնք միաժամանակ համարվում էին խալիֆայության Հայաստանի կուսակալները, հաճախ մտնում էին իրենց ամբողջ զորաբանակներով Հայաստանի սահմանները և գանձում էին խալիֆայությանը հասնող հարկերը, սպառնալով հարձակվել և ավերել երկիրը[2]։*

*Այսպիսով, ինչպես վերոհիշյալից երևում է, նորագույն հայկական ուսումնասիրություններում արտահայտվող այն կարծիքը, որ Բագրատունիները վճարել են ծանր հարկ կրկնակի չափով, և որ երկրի արտադրական ուժերի զարգացումը այդ դարաշրջանում եղել է ավելի վատ պայմաններում, քան նախընթաց ժամանակաշրջանում, միանգամայն անհիմն է և անհավանական[3]։ Կասկածից դուրս է, որ քննարկվող դարաշրջանը եղել է ոչ միայն առևտրի և*

---

[1] *Տես՝* Ghazarian M. Armenien unter der arabischen Herrschaft, S. 66—67; Alf. von Kremer, Culturgeschichte des Orients unter den Chalifen, 1875 Bd. I, S. 358, 377; J. Laurent, l'Arménie entre Byzance et l'Islam, p. 161,

[2] *Համա. Թովմա Արծրունի, 4-րդ, 3, էջ 283, 284. Հովհաննես Կաթողիկոս, էջ 167, 205 և Ասողիկ, 3-րդ, 18, էջ 199։*

[3] *Այն պնդումը, որ Բագրատունիները հարկ էին վճարում միաժամանակ և խալիֆին և ամիրային, չունի ոչ մի հիմնավորում։ Արաբական և հայկական աղբյուրների հաղորդագրություններից պարզ երևում է, որ Բագրատունիների վճարած հարկը ստանում էր ոչ թե ինքը խալիֆը, այլ Ատրպեճանի ամիրան, որը տալիս էր խալիֆին որոշ գումար ամբողջ հարկատու շրջանից, ներառյալ նաև Հայաստանը։*

քաղաքների ծաղկման շրջան, այլև երկրի արտադրական ուժերի զարգացման, գերազանցորեն, արհեստավորական աշխատանքի և արդյունաբերության։ Ես իմ նախընթաց աշխատություններից մեկում ցույց եմ տվել, որ այդ ժամանակաշրջանում դրամական շրջանառությունը ունեցել է լայն տարածում, որը նպաստել է դրամային-տնտեսական հարաբերությունների զարգացմանը[1]։

10—11-րդ դարերում, ինչպես որոշակի վկայում են հայկական արձանագրությունները, տեղի էր ունենում գյուղացիների բնապարհակների փոխանակումը դրամական վճարումներով[2]։ Արիստակես Լաստիվերտցու հաղորդագրություններից ևս դժվար չէ տեսնել, որ ամենուրեք դրամական տնտեսության խորացման հետ միաժամանակ տեղի էին ունենում հիվանդագին երևույթներ, որոնք առաջանում էին վաշխառուական կապիտալի գործարկման ուժեղացումով և բնակչության ստորին խավերի դաժան շահագործման հետևանքով։

Նկարագրելով Արծն քաղաքի ավերումը 1049 թվին սելջուկների կողմից, Արիստակես Լաստիվերտցին վկայում է, որ այդտեղ

> «Վաշխից և տոկոսեաց օրէնք եղան, ցորենոյ բազմապատկութիւն, որով երկիր պղծի և արգելու զարգանդ առ ի տալոյ զպտուղ ի ժամու իւրում առ ի կերակուր մարդկան։ Որ խաբէր զընկերն՝ պարծէր իմաստուն գոլ, և որ յափշտակէր՝ ասէր, ես հզօր եմ։ Զտանս տնակից աղքատացն, և զսահմանս անդաստանաց նոցա հափշտակէին մեծատունքն»[3]։

Նույն հեղինակը, պատմելով 1064 թվին Անի քաղաքը Ալփ-Ասլանի կողմից գրավելու և ավերելու մասին, հատկապես հիշատակում է վաշխառությունը և այնտեղ տիրող սոցիալական անբարեկարգ վիճակը։

> «Այլ և ի ճարպոյ անիրաւութեան ի նմա գործելոցն,—գրում է Լաստիվերտցին,— տոչորեցաւ բարձրաշէն և գեղեցկայարմար ապարանքն, և եղև ամենայն բնակութիւնն իբրև հողաբլուր. և վաշխն և նենգութիւնն որ ի նմա խափանեցաւ։
>
> Այս է բաժին անիրաւ քաղաքաց, որ շինեն զինքեանս արեամբ օտարաց, և ի քրտանց տընանկաց փարթամանան, և ի վաշխից և յանիրաւութեանց տունս իւրեանց ամրացուցանեն. և ինքեանք զմիտս իւրեանց անողորմ ունելով առ աղ-

---

[1] Հայաստանի պատմությունը թուրք-թաթարական արշավանքների ժամանակ, 1922, էջ 93։

[2] Կ. Կոստանյան, Վիմական տարեգիր, Ս. ՊԲ., 1913, էջ 5, 6, 13։

[3] Արիստակես Լաստիվերտցի, 12-րդ, էջ 79—80։

քաղս և տնանկս՝ միայն հեշտութեան և փափկութեան սպասէն և ի գործոց աղտեղութեան ոչ խորշին, այլ միայն արբեալ լինին ի ցանկութեանցն որ զնոսա ըմբռնեալ ունի»[1]։

Անիի հայկական թագավորության վերջին օրերին թուրքական ցեղերի ներխուժումից առաջ, ֆեոդալական Հայաստանի կյանքը, ինչպես ճիշտ է ցույց տալիս Ն. Մառը, ներկայացնում էր հակադրույթ հայ աշխատավոր բնակչության տնտեսական ճնշվածության և հարստության կուտակմանը փոքրաքանակ տիրող դասերի անդամների ձեռքերում։ Հսկայական հարստությունների մասին, որոնք եղել են թեկուզ միայն հոգևորականության ձեռքին, հետաքրքիր տեղեկություններ է տալիս մեզ Մատթեոս Ուռհայեցի պատմագիրը։ Երբ սելջուկյան Իբրահիմ և Գթըլմուշ զորավարները վերցրին Արծն քաղաքը, գրում է նա, «եպիսկոպոս Դավիթակի գանձատունը գրավեց Իբրահիմը. նրա գանձերը բեռնեցին 40 ուղտերի վրա. նրա տանից վար անելու համար դուրս էին գալիս 800 գութան, ամեն մեկում վեց զույգ եզներ»[2]։

Հակառակ ազնվականության, վաճառականության և հոգևորականության հարստության և ունևորության, Անիի աշխատավոր բնակչությունը, ինչպես ցույց են տալիս այդ մայրաքաղաքի պեղումները, պատսպարվում էր քարքարոտ գետնում փորված խղճուկ խուղերում և որջերում։

Աշխատավոր բնակչության ծանր դրությունը երևում է, ի միջի այլոց, նրանից, որ կան տեղեկություններ այդ ժամանակաշրջանում տեղի ունեցած գյուղացիական ապստամբությունների մասին (10-րդ դարի առաջին քառորդում)։

Համաձայն Հովհաննես Կաթողիկոսի վկայության, որը թշնամաբար է վերաբերվում ապստամբներին

«Նուազունքն քան զմեծամեծոն ձեռներէց լինել ջանային, և ծառայքն ըստ Սողոմոնի հնարէին, զի զտեարս տրեխաւորեալ՝ ի գետնի գնացուսցեն և ինքեանք ելցեն յերիվարս ահիպարանոցս և առաթուր հարողս՝ խրոխտացեալք և սոնքացեալք և մեծաւ ապստամբութեամբ»[3]։

Բացի ապստամբություններից, 10—11-րդ դարերում ուժեղացավ նաև թոնդրակեցի աղանդավորների կրոնական-սոցիալական շարժումը, որոնք խիստ քննադատության էին ենթարկում տիրող

---

1 Արիստակես Լաստիվերտցի, 24-րդ էջ 167. հմմտ. Н. Я. Марр, Ани, էջ 30։

2 Մատթեոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 103։

3 Հովհաննես Կաթողիկոս, «Պատմութիւն Հայոց», Տփխիս, 1912, էջ 258—259։

դավանանքը և ֆեոդալական եկեղեցու կազմակերպությունը։ Այդ աղանդի ուսմունքը, որի հետևողներն էին չքավոր ժողովրդի լայն աշխատավորական մասսաները, պաշտպանում էր դեմոկրատական քրիստոնեությունը և այն ժամանակվա պայմաններում հանդիսանում էր իբրև բողոք ոչ միայն պաշտոնական եկեղեցու այլև տիրող դասերի ճնշման դեմ։

Պավլիկյանների և թոնդրակեցիների հայկական աղանդները, որոնք Բյուզանդական կայսրության մեջ և Հայաստանում ենթարկվում էին դաժան հալածանքների, պարբերաբար վտարվում էին դեպի Բուլղարիա և այլ երկրներ։ Նրանց գաղափարախոսությունը, ինչպես այժմ ենթադրում են, ընդունել էին Բուլղարիայում բոգոմիլները, իսկ ավելի ուշ նաև ալբիգենցիները։ Եվ հենց այդ աղանդավորներն էին, ինչպես ցույց է տալիս Ն. Մառը, որ «իրենց արյան հեղեղատներով պարարտացրին հողը՝ եվրոպական ավելի բախտավոր վերանորոգչական շարժումների համար»[1]։

Հետաքրքիր են այդ ժամանակաշրջանում նաև այլ հակասությունները, որոնք երևան էին գալիս իդեոլոգիական ասպարեզում։ Մի կողմից ուժեղ կերպով սկսեց զարգանալ եկեղեցական սխոլաստիկական գրականությունը, որտեղ նկատվում են միստիկ բնույթ ունեցող խոյանքներ, իբրև նախազգուշացում ֆեոդալական կազմակերպության մոտալուտ անկման, մյուս կողմից ծնունդ էր առնում ժողովրդական աշխարհիկ գրականությունը, որտեղ մարմնացում էին ստանում աշխատավոր մասսաների իղձերն ու ձգտումները։ Այն ժամանակ, երբ հին Երևան քաղաքում, ինչպես ասված է Կոզեռնի[2] մասին հայկական ավանդության մեջ, միայնակյաց գիտուն և ոգևոր Հովհաննես Կոզեռնը, շրջապատված դողդոջուն ու հառաչող իշխաններով և ազնվականներով, բացատրում էր նրանց 11-րդ դարի սկզբներում սարսափելի և ցնցող երկնային նշանները և ասում էր նրանց լացով ու խոր կսկիծով, որ կապված սատանան ազատվել է կապանքներից ի մահ կենդանի արածների, և որ երկիրը այսուհետև խորասուզվելու է խավարի մեջ, մինչդեռ նույն այդ ժամանակ Սասունի լեռներում աշխատավոր հայ ժողովուրդը աշխուժությամբ երգում էր իր «Սասունցի Դավիթ» մեծ վիպերգությունը և իմաստնաբար նախազգում էր արդարության ու ուրախության նոր աշխարհի ստեղծումը։

---

[1] Տե՛ս Н. Я. Марр, Ани, էջ 30։

[2] Տես՝ Н. Я. Марр, Сказание о католикосе Петре и ученом Иоанне Козерне, СПБ., 1895, էջ 19—34.

10—11-րդ դարերում սոցիալական պայքարի ակնառու սրումը բացատրվում է, ինչպես ասեցինք, դրամա-տնտեսական հարաբերությունների խորացմամբ, վաշխառուական կապիտալի դերի ուժեղացմամբ և, ըստ երևույթին, գյուղացիներից պահանջվող դրամական տուրքերի ծանրությամբ։

Հայաստանի տնտեսական կյանքում տեղի ունեցող տեղաշարժերին վերաբերող կողմնակի ցուցում կարող են ծառայել Արիստակես Լաստիվերտցու կրոնական-բարոյական խոհերը՝ բարի հին ժամանակի մասին և նրա գանգատները տիրող դասերի ագահության և շահամոլության ու վաշխառության աճի վերաբերմամբ, և դրա հետ միաժամանակ տեղի ունեցող երևույթների՝ չքավորների գույքի և հողերի կենտրոնացմանը հարուստների ձեռքերում[1]։

Ուստի կարելի է ենթադրել, որ քննարկվող դարաշրջանում Հայաստանի տնտեսական կյանքը վերակառուցվում էր նոր հիմքերի վրա։

Արհեստների և առևտրի զարգացումը, առևտրական-վաշխառուական տարրի տեսակարար կշռի բարձրացումը, քաղաքային կենտրոնների ծաղկումը և աճը նպաստեցին, անշուշտ, նոր տնտեսական և սոցիալական հարաբերությունների առաջացմանը, և կարելի է որ այդ նոր ուժերը ժամանակի ընթացքում առաջ բերեին ֆեոդալական կազմակերպության տապալումը, եթե այդ զարգացումը չընդհատվեր 11-րդ դարի կեսերին տեղի ունեցած իրադարձություններով և սելջուկների արշավանքներով։

## ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔՆԵՐԸ

Բագրատունյաց ժամանակի Հայաստանի քաղաքների մասին մենք ավելի մանրամասն տեղեկություններ ունենք, քան Սասանյան դարաշրջանի քաղաքների մասին։

Հայաստանի ամենախոշոր առևտրական կենտրոնը՝ Դվինը, 9-րդ դարի երկրորդ կիսում կործանվեց, ինչպես հայտնի է, երկրաշարժից։ Նա նորից վերակառուցվել է և շնորհիվ իր նպաստավոր տեղադրության, տարանցիկ առևտրում շարունակում էր խաղալ հանգուցային կայանի դեր. միաժամանակ Դվինը եղել է տեղական արդյունաբերության աչքի ընկնող կենտրոն։ Նրա մասին մանրամասն տեղեկություններ են հաղորդում 10-րդ դարի արաբական հեղինակները՝ Իստախրին, Իբն-Հաուկալը և Մուկադդասին։

---

[1] Արիստակես, 12-րդ, էջ 80 և 24-րդ, էջ 167։

«Դաբիլը,— գրում է Իստախրին իր «Գիրք Թագավորությունների և ճանապարհների» աշխատության մեջ,— Արդաբիլից մեծ է. այդ քաղաքը ծառայում է իբրև մայրաքաղաք Հայաստանի և նրանում կառավարչի պալատը նման է Առանի կառավարչի պալատին Բերդաաում և Ազերբայջանի կառավարչի պալատին Արդաբիլում։ Դաբիլը շրջապատված է պարսպով. այստեղ կան շատ քրիստոնյաներ, և քաղաքի մայր մզկիթը եկեղեցու կողքին է։ Այդ քաղաքում պատրաստվում են բրդե հագուստեղեն և գորգեր, բարձեր, մինդարներ, ժապավեններ և հայկական արտադրության այլ իրեր։ Նրանց մոտ արտադրվում է նաև ներկ, որ կոչվում է «կիրմիզ» (որդան կարմիր) և նրանով ներկում են մահուդը։ Ես իմացել եմ, որ այդ որդ է, որը մանում է իր շուրջը մետաքսի որդի նմանությամբ. բացի այդ ես իմացել եմ, որ այնտեղ պատրաստում են մետաքսե շատ կտորներ։ Դաբիլը Հայաստանի մայրաքաղաքն է և այնտեղ է Սանբատը (Սմբատ 1), Աշոտի որդին (Աշոտ 1)։ Քաղաքը միշտ գտնվել է անվանի քրիստոնյաների ձեռքին, իսկ քրիստոնյաները կազմում են Հայաստանի բնակիչների մեծ մասը, նա է և «Արման թագավորությունը»)[1]։

Մյուս արաբական աշխարհագիր Իբն-Հաուկալը, որ ապրել է Իստախրիից շատ ավելի ուշ, յուր աշխարհագրական աշխատության մեջ «Գիրք ճանապարհների և թագավորությունների» վերնագրով, համարյա բառացի կերպով բերում է Իստախրիի հիշված տեղեկությունը և իրենից ավելացնում է միայն հետևյալը՝

«Դաբիլում պատրաստվում են շատ մետաքսե հագուստներ։ Իսկ ինչ վերաբերում է այդ վերջիններին, ապա նրանք մեծ մասամբ նման են Ռումի երկրում արտադրվողներին, թեև դրանք և ավելի արժեքավոր են։ Իսկ ինչ վերաբերում է այն արտադրանքներին, որոնք կոչվում են «Հայկական գործվածքներ», այդ «բուստ» է[2], գորգեր, ծածկոցներ, փոքրիկ գորգեր, բարձեր և նստելիքներ. դրանց նմանը չկա երկրի առարկաների մեջ ծայրից ծայր և ամեն ուղղություններով»[3]։

Մանրամասն տեղեկություններ Դվինի մասին հաղորդում է նաև

[1] Տե՛ս Bibl. Geogr. Arab., հրատ. de Gecje, I, p. 188, ռուսերեն թարգմ. Կարաուլովի, «Сборник материалов, вып. XXIX, 1901, էջ 19։

[2] «Բուստ», ըստ Կարաուլովի, գործվածքի մեծ կտոր է, որ գցում են գլուխներին և ցած է ընկնում ուսերից։

[3] Տե՛ս Bibl. Geogr. Arab., հրատ. de Geoje, II. p. 245, ռուսերեն թարգմ. Կարաուլովի, «Сборник материалов,», вып. XXXVIII, 1908, էջ 92։

10-րդ դարի 2-րդ կեսի արաբական գրող ալ-Մուկադդասին, որը շատ տեղ է հատկացնում քաղաքի նկարագրությանը։

«Դաբիլը,— գրում է նա,— նշանակալի քաղաք է, այնտեղ կա անմատչելի բերդ և մեծ հարստություններ. նրա անունը հին է. նրա մահուդները հռչակավոր են, նրա գետը ջրառատ է. նրան շրջապատում են այգիները. քաղաքը ունի արվարձաններ. նրա բերդը վստահելի է. հրապարակները խաչաձև են. նրա արոտները հիասքանչ. մայր մզկիթը մեծ բլուրի վրա, իսկ նրա կողքին եկեղեցի. քաղաքին հսկում են քրդերը. քաղաքին կից կա միջնաբերդ. բնակիչների շենքերը՝ քարից և կավից. քաղաքը ունի շատ դարպասներ, ինչպես՝ Բաբ-Կեյդար, Բաբ-Թիֆլիս և Բաբ-Անի։ Իր բոլոր արժանիքներով հանդերձ այնտեղ գերիշխում են քրիստոնյաները. իսկ այժմ պակասել է նրա բնակչությունը և բերդը քանդվել է»[1]։

Դվինից Տրապիզոն տանող ճանապարհի վրա այդ դարաշրջանում առաջացել են նոր քաղաքներ՝ Անին, Կարսը և Արծնը։

Անին հիշվում է դեռ 5-րդ դարում, իբրև նշանակալի բերդ Կամսարականների իշխանական տոհմի կալվածքում։ Հետագայում Շիրակի մարզը նրա հետ և Անի բերդը ձեռք է բերել Աշոտ Մսակերը (826)։ Հիմնավորվելով Արշարունիքում, Շիրակում և հարակից շրջաններում, Բագրատունիները ընտրել էին իրենց աթոռանիստ նախ Բագարանը, հետո Երազգավորք-Շիրակավանը և Կարսը, և միայն 10-րդ դարի 2-րդ կեսում, Աշոտ Ողորմածի (953—977) ժամանակ Բագրատունիների մայրաքաղաքը փոխադրված է եղել Անի։ Պաշտպանված լինելով արևելքից և հարավից Ախուրյան գետով, արևմուտքից՝ Ծաղկաձորի ձորով, և շրջապատված լինելով պատերով ու ամրություններով, որոնք շինել էին Աշոտ 3-րդը 963—964 թվերին և նրա որդի Սմբատ 2-րդը (977—990), նոր մայրաքաղաքը դառավ Հայաստանի ամենից ուժեղ քաղաքներից մեկը և միաժամանակ դառավ միջազգային և տարանցիկ առևտրի կենտրոնը։

Ներկայումս այդ քաղաքի մասին կա ակադ. Ն. Մառի կապիտալ աշխատությունը[2]։ Նրա կուլտուրական դեմքը որոշված է զգալի մանրամասնություններով Ն. Մառի սիստեմատիկ պեղումների մի-

---

[1] Տե՛ս Bibl. Geogr. Arab., հրատ. de Geoje, III, p. 377, նույնպես «Сборник материалов», вып. XXXVIII, Ал-Мукаддасий, թարգմ. Կարաուլովի, էջ 9—10։

[2] Н. Я. Марр, Ани, Книжная история города и раскопки на месте городища, Ленинград—Москва, 1934.

*ջացով, որոնք կատարվել են 19-րդ դարի վերջում և 20-րդ դարի սկզբում Անիի ավերակների տեղամասում։*

*Անիում գտնված իրերը տվել են առատ նյութ վերականգնելու այդ խոշոր առևտրական կենտրոնի կենցաղը իր զարգացած արհեստագործական-արդյունաբերական կյանքով, իշխաններով, կամուրջներով, բաղնիսներով, ջրմուղներով և ուրիշ աշխարհիկ բնույթ ունեցող շինվածքներով ու գեղատեսիլ եկեղեցական կառուցվածքներով։*

*Արհեստագործական և գեղարվեստական-արհեստագործական արդյունաբերության արտադրանքը, որ գտնված է պեղումների ժամանակ, միանգամայն պարզ ցույց է տվել, որ Անիի և Բագրատունյաց քաղաքների կուլտուրական կյանքը եղել է զարգացման ավելի բարձր աստիճանի վրա, քան Արևմտյան Եվրոպայի միջնադարյան քաղաքներում։*

*Անիից դեպի Արտանուջ և Արծն տանող ճանապարհի վրա գտնվում էր Կարսը, որը սկզբնական շրջանում եղել է բերդ, և սևծովյան նավահանգիստների հետ միջազգային առևտրի զարգացման ընթացքում հետզհետե մեծացավ և դարավ Բագրատունյաց Հայաստանի գլխավոր առևտրական կենտրոններից մեկը։ Աշոտ Երկաթի թագավորության ժամանակ (914—928) Կարսը եղել է նրա եղբոր Աբասին բաժին ընկած կալվածքը, և հետագայում երբ թագավորությունը անցավ Աբասին, Կարսը դարձավ նոր թագավորի աթոռանիստը։ Մայրաքաղաքի տեղափոխումը Անի, ինչպես հիշվում է վերևում, տեղի է ունեցել Աբասի որդի Աշոտ Ողորմածի ժամանակ։ Աբաս 1-ի մյուս որդին Մուշեղը, ինչպես հայտնի է, չճանաչեց Անիի թագավորի իշխանությունը և, այդպիսով, Անիի թագավորության կողքին առաջացավ Կարսի կամ Վանանդի նոր թագավորությունը։*

*Տրապիզոն տանող ճանապարհի վրա մյուս խոշոր քաղաքը եղել է Արծնը, որը գտնվում էր Թեոդոսուպոլսից (Կարին—Էրզրում) ոչ հեռու։ 11-րդ դարի բյուզանդական գրող Միքայել Ատտալիատի[1] վկայությամբ, Արծնը, որ հիմնադրված է եղել լքված և ամայացած Թեոդոսուպոլսի մոտ, եղել է չամրացված խոշոր քաղաք, հարմար տեղադրությամբ և այնտեղ վաճառվում էին ապրանքներ, որոնք բերվում էին Պարսկաստանից, Հնդկաստանից և Ասիայի այլ երկրներից։*

*Հայտնի բյուզանդական ժամանակագիր Գեորգի Կեդրենոսը հաղորդում է նույնպես, որ*

---

[1] J. Laurent, l'Arménie entre Byzance et l'Islam, p. 44; W. Heid, Histoire du commerce du Levant, I, p. 44 — 45; **Михаил Атталиат**, История, Бонн, 1853, *էջ* 148.

«Արծնը մի բաց քաղաք է բազմամարդ և շատ հարուստ, բազմաքանակ բնակչությամբ։ Այնտեղ բնակվում էին տեղական վաճառականներ, նաև մեծ թվով ասորիներ, հայեր և ուրիշ ժողովուրդներ։ Շատ լինելով իրենց թվով, նրանք անհրաժեշտ չէին համարում ապրել պարիսպների ներսում, թեև մոտ էր Թեոդոսուպոլիսը, որը մեծ ու հզոր քաղաք էր՝ անառիկ շրջապարիսպով»[1]։

Մենք արդեն տեսանք, որ Արծն քաղաքի միջազգային առևտրի և հարստությունների մասին, որոնք այնտեղ կուտակված են եղել «ծովից ու ցամաքից», վկայում է նաև Արիստակես Լաստիվերտցին։

Դեպի Սև ծովը տանող ճանապարհի վրա գտնվում էր Արտանուջ քաղաքը, որը 9—10-րդ դարերում եղել է Բագրատունյաց վրացական ճյուղի աթոռանիստը։

Այդ քաղաքի լայն առևտրական կապերի մասին հետաքրքիր տեղեկություններ է տալիս Կոնստանդին Ծիրանածինը[2] (913—959)։ Նրա հաղորդումներից երևում է, որ Արտանուջը եղել է խոշոր առևտրական կենտրոն՝ Տրապիզոնի, Իբերիայի, Աբխազիայի և Հայաստանի միջև տեղի ունեցող հարաբերությունների համար։ Այդ առևտրից, ասում է Կոնստանդինը, Արտանուջի Բագրատունիները ստանում էին զգալի մաքսեր։ Հայաստանի քաղաքները, համաձայն մեջ բերված տեղեկությունների, ունեցել են առևտրական հարաբերություններ ոչ միայն Տրապիզոնի հետ, այլև Սև ծովի արևելյան առափնյա մարզերի հետ։

Կուր գետի ավազանում գտնվող քաղաքների բարգավաճ դրության մասին հիշված է վերևում։ Անկասկած է, անշուշտ, որ Բագրատունյաց Հայաստանը ունեցել է առևտրական հարաբերություններ նաև այդ քաղաքների հետ։ Այդ հյուսիսային քաղաքներից ամենից խոշոր առևտրական կենտրոնը եղել է, անշուշտ, Բերդաա-Պարթավը։ 10-րդ դարում, ինչպես երևում է արաբական աղբյուրների հաղորդագրություններից, այդ քաղաքը իր մեծությամբ գերազանցում էր Անդրկովկասի և Ադրբեջանի մնացած բոլոր քաղաքները և բռնում էր մեկ ֆարսախ երկարություն ունեցող տարածություն և մի քիչ փոքր ըստ լայնության[3]։

«Ինչ վերաբերում է Բերդաաին,— գրում է ալ-Իստախ-

[1] J. Laurent, p. 44; Георгий Кедрин, Хроника Бонн, 1838, II, էջ 577.

[2] J. Laurent, p. 43; J. Markwart, Osteuropäische und ostasiatische Streifzüge, S. 183; Konst. Porfyr., De administrando imperio, cap. 46.

[3] Տես՝ В. Бартольд, Историко-географический обзор Ирана, СПб., 1903, էջ 151.

րին,— այդ քաղաքը մեծ է, ունի Փարաախից ավելի երկարություն և լայնություն, առողջ է, բարգավաճ և շատ առատ ցանքերով ու պտուղներով։ Իրաքում և Խորասանում Ռեյից և Իսպահանից հետո չկա քաղաք ավելի նշանակալի, ավելի բարգավաճ և իր տեղադրությամբ ու հանդերով ավելի գեղեցիկ, քան Բերդաան... Բերդաաից արտահանվում է շատ մետաքս։ Մետաքսի որդերին կերակրում են թթի ծառերի վրա, որոնք ոչ ոքի չեն պատկանում։ Այնտեղից շատ մետաքս է ուղարկվում Պարսկաստան և Խուժաստան... Բերդաայի դարպասների մոտ, որ կոչվում են «քրդերի դարպասներ», «ալ-Քյուրքի» շուկան, մեկ քառակուսի Փարսախ մեծությամբ։ Այնտեղ է հավաքվում ժողովուրդը յուրաքանչյուր կիրակի և այդտեղ են հավաքվում մարդիկ ամեն տեսակ երկրներից, նույնիսկ Իրաքից։ Այդ շուկան ավելի մեծ է «Կուլսերե»-ի շուկայից... Նրանց մոտ գանձապահեստը գտնվում է մայր մզկիթում, ըստ սիրիական սովորության, իսկ սիրիական գանձապահեստները միշտ մզկիթներումն են գտնվում։ Այդ գանձապահեստը ունի հարթ կտուր, արճիճով ծածկված, երկաթի դռնով ինը սյուների վրա։ Կառավարչի պալատը քաղաքում մայր մզկիթի կողքին է, իսկ շուկաները՝ քաղաքի արվարձաններում»[1]։

Բերդաայի առևտրական խոշոր նշանակությունը երևում է նաև նրանից, որ արաբական ալ-Մուկադդասի պատմագիրը անվանում է նրան այդ մարզի Բաղդադ։

«Բերդաան, հաղորդում է Մուկադդասին, գլխավոր քաղաքը, մեկ քառակուսի, տեղադրված է հարթավայրում, նրա մոտ գտնվում է հսկայական ամրություն. նրա շուկաները հաճախակի չարդախների հովանու տակ. շուկայի մյուս կողմը—մայր մզկիթը. այդ քաղաքը այդ մարզի Բաղդադն է. նրանց տները գեղեցիկ են՝ թրծված աղյուսից և գիպսից։ Հաճելի, գեղեցիկ և պտուղներով հարուստ քաղաք է։ Մայր մզկիթի սյուների մի մասը աղյուսից ու գիպսից է, իսկ մի մասը— փայտից»[2]։

---

[1] Տե՛ս B. G. A., հրատ. de Geoje, I, p. 182—184 և Կարաուլովի թարգմ. «Сборник материалов», вып. XXIX, 1901, էջ 7—9։ Նման տեղեկություն տալիս է Իբն-Հաուկալը իր՝ «Ճանապարհների և թագավորությունների գրքում», տե՛ս Կարաուլով «Сборник мат., XXXVIII, էջ 86—87։

[2] Տե՛ս Bibl. Geogr. Arab., III, p. 37. նաև Կարաուլովի ռուսերեն թարգմանությունը «Сборник материалов», вып. XXXVIII, 1908, էջ 7—8։

Ուշագրավ է նաև Մուկադդասիի և ուրիշ հաղորդագրությունը՝

«Բերդաաից,— գրում է նա,— արտահանում են ծածկոցներ և այնտեղ պատահում են հիանալի ջորիներ. Կյուրակի օրերը Բերդաաում կազմակերպվում է շուկա, որ կոչվում է «Կյուրկիյա»[1], որտեղ հավաքվում են այդ մարզի բնակիչները, նաև ուրիշ շրջաններից... Այդ շուկայում վաճառում են մետաքս և հագուստներ։ Չկա նմանը նրանց մոտ պատրաստվող մորթիների և գորգերի, կոշենիլի, ծածկոցների, ձեռկերի, մրգի, որ կոչվում է «զուկալ», կասբուլի և «տիրրիխ» ձկան։ Նրանց մոտ կա թուզ և շագանակ, շատ լավ որակի»[2]։

Մուկադդասիի այդ բերված վկայությունը շատ կարևոր է, որովհետև այնտեղ հիշվում է կոշենիլը (=հայ. որդան կարմիր) Արարատյան դաշտավայրի, կասբուլի (=հավանական է հայկ. «գազպեն» կամ «կազպին»)—Մուշի շրջանի առանձին տեսակ մանանա և Վանա լճի հայտնի տառեխ ձուկը, որոնք եղել են և վաճառվել են Բերդաաում։ Հիմնվելով Մուկադդասիի այդ հաղորդագրության վրա, կարելի է, ինձ թվում է, եզրակացնել, որ Հայաստանի և Անդրկովկասի հյուսիսային քաղաքների միջև գոյություն է ունեցել սերտ առևտրական կապ։

Բերդաաի ծաղկմանը ծանր հարված է հասցրել 943 թվին ռուսների արշավանքը։ Այնուհետև այդ քաղաքը չէր կարող այլևս ոտի կանգնել ավերածությունից։ Բերդը և շրջապատը քանդվել էին, բնակիչների թիվը պակասել էր և առևտրի մեջ գերակշռող դեր սկսեց խաղալ հետզհետե Գյանջան, որը 11-րդ դարում դառավ Առանի և հարևան շրջանների գլխավոր քաղաքը։

Միջազգային առևտրի հիմնական ուղեգիծը դեպի Տրապիզոն գնում էր Հայաստանի վերոհիշյալ քաղաքների վրայով։ Համաձայն արաբական պատմագիր Մասուդիի վկայության, Տրապիզոնում ամեն տարի կազմակերպվում էին տոնավաճառներ, որտեղ հաճախում էին չերքեզները և մահմեդական, բյուզանդական, հայկական ու այլ վաճառականներ[3]։

«Տրապիզոնը,— հաղորդում է Իստախրի աշխարհագիրը,— հույների սահմանային քաղաքն է. մեր վաճառականները բոլորն էլ

---

[1] Հայերեն կյուրակի բառից (փոխառություն հունարենից)։

[2] Տե՛ս Караулов, «Сборник материалов», XXXVIII, 1908, էջ 14—15 և Bibl. Geogr. Arab., III, p. 379.

[3] W. Heyd, Histoire du commerce du Lewant, I, p. 44; Masoudi. Les prairies d'or, texte et traduction par Barbier de Meynard et Povel de Conteville, Paris, 1861—1877, II, p. 3

գնում են այնտեղ. հունական արտադրության բոլոր կտորեղենը և դիպակը (փարչան), որոնք ներմուծվում են մահմեդական երկրները, անցնում են Տրապիզոնի վրայով»[1]։

Աղբյուրների՝ հիշված և ուրիշ վկայություններից պարզ երևում է, որ քննարկվող դարաշրջանում Տրապիզոնը եղել է Սև ծովի արևելյան առափնյա գլխավոր առևտրական կայանը և միջազգային առևտրում խաղացել է բացառիկ դեր։

Բացի վերև հիշված Հայաստանի խոշոր առևտրական կենտրոններից՝ Դվինից, Անիից, Կարսից և Արծնից, որոնք տեղավորված էին գլխավոր կարավանային ճանապարհի երկարությամբ, միջազգային առևտրում նշանակալի դեր էին խաղում նաև Հայաստանի ուրիշ առևտրական կայաններ, որոնք գտնվում էին, գլխավորապես, Հայաստանի հարավային ճանապարհների վրա։ Առևտրական կայանների այդ հարավային խումբը գտնվում էր կամ Արծրունիների թագավորության մեջ, կամ մահմեդական ամիրայություններում, որոնք առաջացել էին հին Հայաստանի տերիտորիայում 8-րդ դարի վերջում և 9-րդ դարում։ Այդ խմբի կարևորագույն առևտրական կայաններն էին՝ Վանը, Ոստանը, Բերկրին, Արճեշը, Մանազկերտը, Խլաթը, Բաղեշը, Արզնը, Մայաֆարկինը և Ամիդը։

Մեծ հետաքրքրություն է ներկայացնում այդ քաղաքների տիպի և բնորոշ առանձնահատկությունների ու նրանց բնակչության քանակի խնդիրը։ Վերևում մենք արդեն նշել էինք, որ Բագրատունյաց դարաշրջանի քաղաքները առաջանում էին սովորաբար հին բերդերի մոտ։ Ամենից առաջ նրանք հանդիսանում էին իբրև պաշտպանության միջոց և դրա համար շրջապատված էին ամուր պարիսպներով, որոնց հետևը պատերազմի դեպքում թաքնվում էր շրջակա բնակչությունը։ Աղբյուրների մի քանի ցուցմունքներից դատելով, քաղաքային կյանքը ինչպես միջակ, այնպես էլ մեծ քաղաքներում պտույտներ էր գալիս գյուղատնտեսական մթնոլորտում։

Ազգաբնակչության զգալի մասը կազմված էր հողատիրական ազնվականությունից՝ խոշոր և մանր, ու նաև քաղաքի բնակիչներից, որոնք ունեին իրենց այգիները, բանջարանոցները և հողագործական տնտեսություն[2]։ Խոշոր քաղաքները, որոնք գործոն մասնակ-

[1] W. Heyd, p. 44; Istachri, Livre des routes et des royaumes, éd. de Goeje, I, p. 148

[2] Որ Հայաստանի քաղաքներում գյուղատնտեսությունը կազմում էր զբաղմունքի կարևոր ճյուղերից մեկը, կան կողմնակի ցուցմունքներ հայկական պատմագիրների մոտ և Անիի արձանագրություններում։ Համեմ. Մատթեոս Ուռհայեցի

ցություն էին ունենում միջազգային առևտրում, միաժամանակ եղել են առևտրական և արհեստավոր բնակչության կենտրոններ։ Շնորհիվ իրենց տնտեսական լայն կապերի, այդ քաղաքները վարում էին ծավալուն առևտուր ոչ միայն բյուզանդական և խալիֆայության ապրանքներով, այլև իրենց արդյունաբերական արտադրանքներով, որոնք կարելի էր վաճառահանել Անդրկովկասի երկրամասերում և նրա սահմաններից դուրս գտնվող վայրերում։ Բագրատունյաց Հայաստանի քաղաքների արևելյան տիպի մասին բացատրություններ տրված են իմ աշխատության մեջ՝ «Հայաստանի քաղաքները 10 և 11-րդ դարերում»[1]։ Հիմնվելով Ն. Մառի և Թ. Թորամանյանի Անիում կատարած բազմամյա աշխատանքների վրա, կարելի է վստահորեն եզրակացնել, որ ինչպես Անին, այնպես էլ Բագրատունյաց Հայաստանի մյուս մեծ քաղաքները, քիչ էին տարբերվում Առաջավոր Ասիայի մահմեդականների քաղաքներից։

Պարսկաստանի և Միջին Ասիայի մեծ քաղաքները, ինչպես այդ երևում է ակադ. Վ. Բարտոլդի հաղորդագրություններից, կազմված էին երեք մասից, որոնք կոչվում էին «կուհենդուզ» (միջնաբերդ), «շահրիստան» (ինքը — քաղաքը) և «ռաբատ» (արվարձան)։ Քաղաքներում շահրիստանը շրջապատված էր հատուկ պարսպով և կազմում էր քաղաքի կենտրոնական մասը։ Այնտեղ մայր մզկիթի շուրջը տեղավորված էին գլխավոր շուկաները և հենց նրանում էլ գտնվում էր «կուհենդուզ»-ը, այսինքն — միջնաբերդը։ Շահրիստանի պարսպից դուրս գտնվում էր «ռաբատ»-ը այսինքն՝ արվարձանները կամ քաղաքամերձ մասերը, որոնք համարվում էին քաղաքի բաղադրիչ մասը և երբեմն շրջապատված էին լինում արտաքին պարսպով։ Շահրիստանում սովորաբար բնակվում էին տիրող դասերը և բարձր ազնվականությունը, իսկ ռաբադում՝ առևտրա-արդյունաբերական բնակչության մեծագույն մասը և քաղաքացիների ստորին խավերը։ Ռաբադը նույնպես ուներ իր շուկաները և այնտեղ էին գտնվում առանձին արհեստավորական թաղամասերը։

Ինչպես հայտնի է, ամայացած Անիի ավերակները պահել են մեզ համար միջնադարյան Հայաստանի մեծ քաղաքների բնույթը և յուրահատուկ տիպարը։ Եվ շատ հետաքրքրական է, որ այդ հայկական քաղաքները իրենց հատակագծով և արտաքին տեսքով համարյա ամբողջությամբ համապատասխանում են մուսուլմանական Արևելքի միջնադարյան քաղաքներին։ Դժվար չէ, ամենից առաջ,

Պատմութիւն, Երուսաղեմ, 1860, էջ 121 և 556 (Դավթակի մասին). Կ. Կոստանյան, Վիմական տարեգիր, ՍՊԲ., 1913, էջ 19 և 27 և ուրիշ։

[1] Երևան, 1940, էջ 20—22։

համոզվել, որ պարիսպներով շրջապատված Անիի ներքին մասը եղել է այդ քաղաքի շահրիստանը, և նա կոչվել է, իրապես, Արիստակես Լաստիվերտցու[1] պատմական աշխատության մեջ «շահրիստան»։ Շահրիստանի մեջ գտնվում էր ամրոցը և պալատը, որոնք համապատասխանում են վերև հիշված «կուխենդուզ»-ին։ Իսկ «ռաբադ» կոչվում էին Անիում, ակներևորեն, շահրիստանին կից գտնվող արվարձանները, որոնք կազմում էին քաղաքի ամենաընդարձակ մասը։

Բագրատունյաց Հայաստանի խոշորագույն քաղաքների բնակչության քանակի մասին—Դվինի, Անիի, Արծնի—աղբյուրները տալիս են անուղղակի տեղեկություններ։ Թովմա Արծրունին հաղորդում է, որ Դվինի երկրաշարժի ժամանակ այնտեղ զոհվել են 70.000 մարդ[2]։ Համաձայն Գ. Կեդրենոսի հաղորդագրության, Արծն քաղաքը 1049 թվին սելջուկները վերցնելու և այրելու ժամանակ, ոչնչացվել են այնտեղ սրով ու հրով 140.000 մարդ[3]։ Մատթեոս Ուռհայեցին Արծնում սպանվածների քանակը հաշվում է 150.000 մարդ[4]։ Անի քաղաքում պատմագիրների խոսքով, հաշվվում էր 100.000 բնակիչ և 10.000 տուն[5]։ Մատթեոս Ուռհայեցու վկայությամբ Անի քաղաքը Ալփ-Ասլանի կողմից պաշարելու ժամանակ (1064 թ.) այնտեղ պատարագի արարողություն էին կատարում հազար ու մի եկեղեցիներում[6]։

Մեջ բերված թվերը, իհարկե, շատ վիճելի են և քիչ հավանական, բայց նրանք, ինչպես ինձ թվում է, թույլ են տալիս այնուամենայնիվ ենթադրել, որ Բագրատունյաց Հայաստանի խոշոր քաղաքների բնակչության քանակը եղել է զգալի չափով ավելի (10—20 հազար) Եվրոպայի միջնադարյան քաղաքների միջին քանակից, և կարելի է, հետևաբար, կարծել, որ բնակչության քանակով նրանք զգալիորեն գերազանցել են այդ քաղաքներին։

Անիի բնակչության քանակը որոշելիս, սովորաբար ցույց են տալիս տարածության փոքր չափը, որ քաղաքը ունեցել է պարիսպների ներսում, ընդամենը 150 դեսյատին. այդ տարածության վրա

---

1 Արիստակես Լաստիվերտցի, Պատմություն, Տփխիս, 1912, էջ 63 (գլ. 10)։

2 Թովմա Արծրունի, 3-րդ, 22, էջ 231. Համեմատե Հովհաննես Կաթողիկոս, էջ 162—163։

M. J. Saint-Martin. Mémoires histortques et geografiques sur l'Arménie, Paris, 1819, II, p. 206

4 Մատթեոս Ուռհայեցի, 1-ին, 73, էջ 121։

5 И. Орбели, Развалины, Ани, СПб., 1911, էջ 27.

6 Մատթեոս Ուռհայեցի, 2-րդ, 88, էջ 177։

կարող էր, ինչպես տեղավորվել միայն աննշան բնակչություն։ Թ. Թորամանյանը[1], որը Անիում և նրա շրջակայքում կատարել է չափումներ, միանգամայն ճիշտ ցույց է տալիս, որ Անիի բնակչության մեծ մասը ապրել է ոչ թե ներսը, այլ քաղաքի պարիսպներից դուրս։ Պարիսպներին հարակից քաղաքի շրջակայքում գտնված են ամենուրեք ավերակներ և հետքեր՝ քաղաքային տների, եկեղեցիների, բաղնիսների և հայտնաբերված է ընդարձակ գերեզմանոց՝ տարածությամբ ավելի քան մեկ քառակուսի կիլոմետր։

Այսպիսով, բնակչության թիվը 50—100.000 Անիի համար հնարավոր է և միանգամայն թույլատրելի։

## ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ ՏՎՅԱԼՆԵՐԸ ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՐՀԵՍՏԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Բագրատունյաց Հայաստանի տնտեսական կյանքի և Հայաստանից խալիֆայության շրջանները արտահանվող իրերի մասին, որոշ պատահական, բայց շատ հետաքրքիր տեղեկություններ կարելի է գտնել արաբական աշխարհագիրների և պատմագիրների աշխատություններում։ Այդ տեղեկությունները բավական մանրամասն բերված էին Լորանի գրքում՝ L'Arménie entre Byzance et l'Islam (էջ 35—42)։

Տաբարիի պատմական աշխատության մեջ կա տեղեկություն, որ Հայաստանը իր հացը արտահանում էր Բաղդադ[2]։ Այդ վկայությունը չափազանց կարևոր է։ Նա ցույց է տալիս, որ Հայաստանի ֆեոդալական-գյուղատնտեսական տնտեսությունը ներգրավված է եղել միջազգային առևտրի շրջանառության մեջ։

Իբրև արտահանության գլխավոր առարկա, արաբական հեղինակների մոտ շատ հաճախ հիշվում է «տառեխ» Վանա լճի ձուկը և Արաքս ու Կուր գետերի «սուրմախի»-ն (surmachi)[3]։ Բնորոշ է, որ միջին դարերում՝ չորացրած և աղը դրած ձուկը եղել է լայն սպառման առարկա, ոչ միայն Արևմտյան Եվրոպայում, այլև Արևելքում։ Մենք արդեն վերևում տեսանք, որ «տառեխ»-ը վաճառ-

[1] Թ. Թորամանյան, Անին—քաղաք է թե ամրոց, տե՛ս журнал „Этнографическое обозрение" Тифлис, 1912, кн. XXII, էջ 61—84.

[2] Laurent, p. 38; Ghazarian M., Armenien unter der arabischen Herrsehaft. S. 68; Tabari, éd. de Goeje, Leiden, 1879—93, III, p. 272—275.

[3] Istachri, BGA, I, p. 183; Ibn Fakih, BGA, V, p. 296 (շուրմախի). Կարաուլովի կարծիքով «սուրմախի»-ն «շամայա»-ն է, այդ ձուկը շատ յուղոտ ու համեղ է և գործ է ածվում ծխով մշակված վիճակում. տե՛ս Караулов, Сборник материалов, XXIX. էջ 60։

վում էր Բերդաա քաղաքի շուկայում։ Այդ ձկան արտահանությունը՝ Միջագետք, Սիրիա և Իրաք հիշվում են Իբն-Հաուկալի, Իստախրիի և Յակուտի մոտ[1]։ Իբն-Հաուկալը հաղորդում է նաև «սուրմախի» ձկան արտահանությունը Իրաք և Ռեյ[2]։ Վանա լճում ձկնորսություն կատարելու իրավունքի մասին հետաքրքիր վկայություն կա Բելաձորիի մոտ։

«Ինչ վերաբերում է Տիրրիխի լճին,— հաղորդում է նա,— (Հաբիր իբն-Մասլաման) նրան ձեռք չտվեց, և նա (լիճը) մնում էր ազատ մինչև այն ժամանակը, մինչև որ Ջազիրի և Հայաստանի կառավարիչ նշանակվեց Մուհամմեդ իբն Մերվան իբն ալ-Հաքամը[3], որը ձեռք դրեց ամբողջ որսի վրա և այն վաճառում էր, ստանալով դրանից իրա համար մեծ շահույթ. հետագայում այդ իրավունքը նրանից խլեցին»[4]։

Պետք է նաև նշել, որ Իբն-Հալդունի հարկային ցուցակում նշանակված է, որ Հայաստանը բացի դրամական տուրքերից, պետք է ամեն տարի խալիֆայությանը տար բնաբերքով՝ 20 գորգ, 580 ֆունտ «ռակմ», 10000 ֆունտ աղը դրած ձուկ, 200 ջորի և 30 բազե[5]։

Չափազանց հետաքրքրական են արաբական աղբյուրների տեղեկությունները Հայաստանից շինարարական անտառանյութի արտահանության մասին։ Արաբական աշխարհագիր Իբն-ալ-Ֆակիհի վկայությամբ՝ Հայաստանի անտառներում աճում էին ծառեր ահագին հասակությամբ։ Հատկապես կարևոր դեր էր խաղում առևտրի մեջ ընկույզի ծառը[6]։ Արարատի լանջերում եղած մեծ անտառների մասին հաղորդում է նաև Իստախրին[7]։ Մեջ բերված տվյալների հիման վրա կարելի է, ըստ երևույթին, ենթադրել, որ Բագրատունյաց դարաշրջանում Հայաստանի անտառները բռնում էին դեռևս զգալի տարածություն։

---

[1] Laurent, p. 39; Ibn Haukal, BGA, II, p. 248; Istachri, BGA, I, p. 190; Jakout, Geografischer Wörterbuch, hrsg. v. Wüstenfeld, 1866—1873, II, S. 458

[2] Ibn Haukal, BGA, II, p. 241.

[3] Մուհամմեդ իբն Մերվանը եղել է Հայաստանի վարիչ 695—705 թ., տե՛ս Lauren, p. 338։

[4] Баладзори, Книга завоевания стран, перевод Жузе, Баку, 1927, էջ 10.

[5] A. Kremer, Culturgeschichte des Orients unter den Chalifen, I, S. 358; Ghazarian M. Armenien unter der arabischen Herrschaft, S. 68.

[6] Laurent, p. 40, Thopdschian, Die inneren Zustände von Armenien, 1904, S. 149; Ibn Fakih, BGA, V, p. 125.

[7] Laurent, p. 40; Thopdshian, Die inneren Zustände von Armenien, S. 150, Istachri, p. 191; Сборник Материалов, вып. XXIX, էջ 27.

*Դեռևս հնագույն ժամանակներում Հայաստանը հայտնի էր իր նժույգներով։ Հայկական նժույգները բարձր էին գնահատվում նաև արաբական ժամանակաշրջանում։ Համաձայն Իբն-Հաուկալի հաղորդագրության, հայկական ջորիների նկատմամբ, շնորհիվ նրանց ամրության և դիմացկունության, մեծ պահանջ է եղել ամբողջ Խորասանում, Իրաքում և Սիրիայում*[1]*։*

*Արաբական և հայկական աղբյուրները հիշատակում են նաև լեռնային արդյունաբերության արտադրանքի մի ամբողջ շարք, որոնք արդյունահանվում էին Բագրատունյաց Հայաստանում։*

*8-րդ դարի վերջին քառորդում, ինչպես երևում է Ղևոնդ պատմագրի հաղորդագրությունից, Հայաստանի լեռներում, հավանական է Սպերում, հայտնաբերված են եղել արծաթի հանքատեղեր։ Պատմելով առաջին Աբբասյանների ժամանակ ծանր դրամական հարկերի մասին և Հայաստանի թշվառության մասին, որը առաջացել էր փողի և ազնիվ մետաղների պակասության պատճառով, Ղևոնդը վկայում է, որ այդ սարերում արծաթի արդյունահանումը զգալի չափով նպաստեց վերացնելու դրամային սուր ճգնաժամը։*

*Հայտնի է, որ Հայաստանի հնագույն բնիկները ծանոթ են եղել երկաթի, պղնձի և ուրիշ մետաղների գործադրությանը և արդյունահանմանը։ Կասկածից դուրս է, իհարկե, որ երկաթի ու պղնձի հանքերի շահագործումը և հալումը կատարվել է Հայաստանում նաև Բագրատունյաց ժամանակաշրջանում։ Յակուտի պատմա-աշխարհագրական բառարանում երկաթի հանքատեղեր ցույց են տրըված՝ Տուրուբերան և Վարաժնունիք գավառներում, նաև Պալուի մոտ*[2]*։ Նույն Վարաժնունիքում. նաև Գուգարքում և ուրիշ տեղերում եղել է պղնձի հանք*[3]*։ Ուրիշ հանածոներից աղբյուրներում հիշվում են բորակ և զառիկ (մկնդեղ), որոնց արտահանումը տալիս էր շահույթ։*

*Վանա լճի շրջակայքում, վկայում է Իբն-Հաուկալը իր «Գիրք ճանապարհների և թագավորությունների» երկում, արդյունահանվում է նատրիումի աղ, որը արտահանվում է Իրաք և Ջազիր հացթուխների համար։*

*Այդ լճի մոտ են գտնվում զառիկի հանքերը, որը նույնպես*

---

[1] Laurent, p. 39; Ibn Haukal, BGA, II, p. 248; Сборн. мат., XXXVIII, էջ 97

[2] Ghazarian M., S. 74—75: Laurent, p. 41; Jakout, I, p. 455, 480, IV p. 92.

[3] Laurent, p. 41; Ghazarian M., S. 74–75; Jakout, I, p. 455; Hübschmann, Ortsnamen, S. 164,

արտահանվում է ուրիշ տեղեր, այդտեղ արդյունահանվում է կարմիր և դեղին զառիկ[1]։

Համաձայն Յակուտի և Իբն-ալ-Ֆակիհի տվյալների, Հայաստանում արդյունահանվում էին բացի այդ՝ լեռնային ձյութ, սնդիկ, պղնձարջասպ, արծաթ և արճիճ[2]։ Մի քանի շրջաններում հիշվող աղահանքերից, ամենից մեծ նշանակություն են ունեցել, անշուշտ, Կողբի աղահանքերը։

Մետաղների արդյունահանման և մշակման մասին տեղեկություններ են տալիս նաև հայկական աղբյուրները։ Մովսես Կաղանկատվացու «Աղուանից պատմութեան» մեջ հիշվում են վարպետներ, որոնք ունեցել են հասկացողություն ոսկու լվացման, արծաթի, երկաթի արդյունահանման և պղնձի մշակման մասին[3]։

Վերամշակող արդյունաբերության բազմատեսակ կերտվածքների մասին վկայում են ոչ միայն հին հայկական հեղինակները, այլև այն հնության առարկայական մնացորդները, որոնք գտնված են պեղումների ժամանակ, գլխավորապես Անիում։ Անիում կատարված պեղումների միջոցով, ինչպես հայտնի է, հայտնաբերված են մեծ քանակությամբ իրեր՝ կավագործական, ապակեգործական, զինագործական, ոսկերչական, մանածագործական և այլ արհեստագործական արտադրանքներ։

Այդ իրերը, որոնց մեծագույն մասը ունեցել է տեղական ծագում, ցույց են տալիս Հայաստանում բազմատեսակ արհեստների զարգացումը։ Դժբախտաբար միշտ չի կարելի տարբերել, թե այդ իրերից որոնք են վերաբերում Բագրատունյաց ժամանակին և ավելի ուշ դարաշրջաններին։

Հիշված արդյունաբերական ճյուղերից ամենից մեծ նշանակություն ուներ մանածագործական արդյունաբերությունը։ Արաբական աղբյուրների տվյալներով, Բագրատունյաց ժամանակաշրջանում այդ ճյուղը զարգանում էր անսովոր արագությամբ և օգտագործվում էր ոչ միայն տեղական պետքերի, այլև լայն արտաքին շուկայի համար։ Զանազան տեսակ հայկական գործվածքների և նրանցից պատրաստված կտորեղեն իրերի մասին, հատկապես, Դվին քաղաքի, տեղեկություններ կան՝ Իբն Հաուկալի, Իստախրիի և ուրիշ

[1] Ibn-Haukal, BGA, II, p. 248; Сборник материалов, XXXVIII, էջ 97

[2] Laurent, p. 41; Jakout. I, p. 455; Ibn Fakih, BGA, V, p. 297; համեմատե՝ Караулов, Сборник материалов, XXXI, 1902, էջ 39.

[3] *Մովսես Կաղանկատվացի, ռուս. թարգմ. Պատկանյանի, սպբ. 1861, 2-րդ, 16, էջ 131։*

արաբական հեղինակների մոտ[1]։ Այդ վկայություններում հիշվում են Դվինի գործվածքները, marizi անունով, գոտիները, 1—10 դինար արժողությամբ, շալմաները (տիուրան), ծածկոցները, բարձերը, բարձի երեսները, վարագույրները և բազկաթոռի կտորներ։ Ամենից արժեքավոր կտորները եղել են բրդից և մետաքսից։ Այդ կտորեղենները մանրամասն հիշվում են Իբն-Հաուկալի հետևյալ վկայություններում՝

1. «Դաբիլում պատրաստում են բմբուլի և բրդի գործվածքներ՝ գորգերի, բարձերի, նստելիքների, ժապավենների և հայկական ուրիշ տեսակ արտադրանքների համար, որոնք ներկված են լինում կարմիր ներկով»[2]։

2. «Այդ քաղաքներում և նրանց միջև գտնվող շրջաններում կան ապրանքներ, արտահանության իրեր, տարբեր տեսակի անհրաժեշտ անասուններ, ոչխարներ և կտորեղեն, որոնք արտահանվում են զանազան երկրներ, որտեղ նրանք հայտնի էին և հռչակ ունեին, ինչպես, օրինակ, ժապավենները, որ պատրաստվում էին Սալամասում և ծախվում էին՝ հատը մեկից մինչև տասը դինարով. և ոչ մի տեղում նմանը չկա։ Հիշված հայկական կտորեղենը պատրաստվում է Դաբիլում։ Մերանդում, Թավրիզում, Դաբիլում և հայկական շրջաններում պատրաստվում են հայկական նստելիքներ և գորգեր, որոնք հայտնի են հայկական «մեխֆուր» անվան տակ։ Դրանց նմանը շատ քիչ կա այն բոլոր երկրներում, որտեղ պատրաստվող գործվածքները նմանություն ունեն հայկական արտադրությանը։ Նմանապես Հայաստանում պատրաստվում են՝ հագուստներ, շալեր և ծաղկավոր ծածկոցներ, որոնք պատրաստվում են Մայաֆարկինում և Հայաստանի ուրիշ տեղերում»[3]։

Դվինում պատրաստվում էր նաև ծաղկավոր երփներանգ մետաքսե կտոր՝ bozjun[4]։ Հայաստանի մանածագործական ապրանքները արտահանվում էին ոչ միայն խալիֆայության արևելյան շրը-

[1] Laurent, p. 41; Ibn-Haukal, BGA, II, p. 244—246: Сборник материалов, XXXVIII, էջ 95—97; BGA., I, էջ 188 և ուրիշ։ Իստախրին հաղորդում է, որ «Դաբիլ քաղաքում պատրաստում էին բրդի հագուստներ և գորգեր, բարձեր, ժապավեններ և հայկական արտադրության այլ իրեր», տե՛ս Караулов, Сборник материалов, XXIX, էջ 19։

[2] Տե՛ս Сборник материалов, XXXVIII, էջ 92=BGA, II, p. 244։ Հմմտ ալ-Մուկադդասիի համապատասխան հաղորդումները, Сборник материалов, XXXVIII, էջ 14=BGA, III, էջ 380.

[3] Сборник материалов, XXXIII, էջ 94—95 = BGA, II, p. 246:

[4] Kremer Alf., Culturgeschichte des Orients, I, S. 342.

*չաններր, այլև Բյուզանդիա։ Կրեմերի ցուցմունքից, որը հիմնված է արաբական աղբյուրների վկայությունների վրա, երևում է, որ միջազգային առևտրի գլխավոր նավահանգստային կենտրոնում՝ Տրապիզոնում վաճառվում էին հայկական հիանալի մետաքսե կտորեղեններ՝* dybag *և* bozjun, *նաև ուրիշ կտորներ*[1]*։ Շքեղ, մետաքսով և ոսկով բանված, հագուստների, բազկաթոռների համար՝ պատկեռավոր և ծաղկազարդ հիանալի կտորների մասին կա վկայություն Հովհաննես կաթողիկոսի մոտ*[2]*։ Ոսկով (կլապիտոն) և մետաքսով կարված հագուստ գտնված է, ինչպես հայտնի է, Անիում 1908 թվի պեղումների ժամանակ*[3]*։*

*Այդ բոլոր տվյալները վկայում են ինչպես մանածագործական արդյունաբերության զարգացման, այնպես էլ նրա արտադրանքի արտահանումը արտաքին շուկաները։*

*Պետք է նաև հիշատակել, որ բրբև արտահանության կարևոր ապրանք եղել են, ըստ երևույթին, նմանապես հայկական գորգերը։ Վերևում ցույց էր տրված, որ Իբն-Հալդունի հարկային ցուցակում նշված է, որ խալիֆայությունը Հայաստանից ստանում էր տարեկան 20 գորգ։ Հայկական գորգերը, ինչպես երևում է ակադ. Վ. Բարտոլդի ցուցումից, ունեին մեծ հռչակ. նրա հիշվում են ընծաների թվում, որ ուղարկել էր Ղազնևիդյան սուլթան Մահմուդը Կաշգարի Կադըր խանին*[4]*։*

*Այդ վկայությունները հաստատում են, ինչպես ինձ թվում է, Հայաստանի գորգագործության նշանակությունը արտահանության համար։*

*Բագրատունյաց Հայաստանի մանածագործական արդյունաբերության զարգացմանը նպաստում էին, անշուշտ, հիանալի ներկերը, որոնք մեծ քանակությամբ գտնվում էին Հայաստանում։*

*Հունական, հռոմեական և հին-հայկական աղբյուրների հաղորդագրություններից մենք գիտենք, որ Հայաստանը դեռևս հին ժամանակներում հայտնի էր իր հանքային և բուսական ներկերով։ Ստրաբոնը իր աշխարհագրության մեջ (Գ-րդ, 14, 9) հաղորդում է, որ Սիսպիրիտիսում (Սպերում) կա «մետաղ սանդիկ* (sandix)*, որ կոչվում է նաև հայկական ներկ և նման է ծիրանին»։ Պլինիուսի մոտ հիշվում են խրիզոկոլլից պատրաստվող* orocitis *ներկը և* armenium

---

[1] Kremer Alf., Culturgeschichte des Orients, I, S. 342.

[2] *Հովհաննես կաթողիկոս, Տփխիս, 1912, էջ 198, 210։*

[3] И. Орбели, Развалины Ани, 1911, *էջ* 47:

[4] В. Бартольд, Историко-географический обзор Ирана, СПб., 1903, *էջ* 150.

քարը։ Մովսես Խորենացուն վերագրվող աշխարհագրության մեջ հիշվում է կխտարը[1]։ Արաբական ժամանակաշրջանում մեծ հռչակ ուներ հայկական որդան կարմիր ներկը, որը ստացվում էր Արարատյան հովտում։

Արաբական աղբյուրներում այդ ներկը կոչվում էր «կիրմիզ»[2]։ Հայկական որդան կարմիրը, ինչպես ցույց է տրված վերևում, վաճառվում էր Բերդաա քաղաքի շուկայում։ Համաձայն Իստախրիի հաղորդագրության, Բերդաաից արտահանվում էր Հնդկաստան և ուրիշ երկրներ մարենա ներկը[3]։ Որովհետև որդան կարմիրը և մարենան բարձր էին գնահատվում, կարելի է ենթադրել, որ այդ ներկերը, որոնք մեծ համբավ ունեին, եղել են Հայաստանի արտահանության ամենաշահավետ ապրանքներից մեկը։ Heyd-ի կարծիքով, որդան կարմիրը, ըստ երևույթին, գործադրություն ուներ նաև Բաղդադում, մետաքսե գործվածքները ներկելու համար, որոնք «կիրմիզ» անվան տակ արտահանվում էին Եվրոպա[4]։ Ներկարարական արհեստը, հատկապես, որդան կարմիրով ներկելը տարածված էր, իհարկե, նաև Հայաստանում։

Ներկարարական արհեստի ամենախոշոր կենտրոնը եղել է, ըստ երևույթին, Արտաշատը, որին Բելաձորին տալիս է Կիրմիզ անունը, այսինքն՝ որդան կարմիրի ներկատների քաղաք[5]։

Ինչպես տեսնում ենք, Բագրատունյաց Հայաստանում առևտրի և արդյունաբերության բարգավաճ դրության մասին ոչ մի կասկած լինել չի կարող։

## ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ՔԱՂԱՔՆԵՐԻ ՆԵՐՔԻՆ ԿՅԱՆՔԸ

Քաղաքների մեծանալու և այնտեղ արդյունաբերության զարգացման կապակցությամբ, բնականաբար, առաջ է գալիս հարց

[1] Մովսես Խորենացի, Վենետիկ, 1843, էջ 607։

[2] Istachri, BGA, I p. 188; Ibn Fakih, BGA, V, p. 297; համեմատե Караулов, Сборник материалов, XXIX էջ 19 և XXXI, էջ 39

[3] W. Heyd, Histoire du commerce du Levant, II, p. 609; Istachri BGA, I, p. 190; համեմատե Караулов, Сборник материалов XXIX, էջ 25 Heyd-ի մոտ Բերդաա-Պարթավից արտահանվող մարենան (rubia tinctorum), անվանված է կոչենիլ (որդան կարմիր)։ Հայաստանում մարենայի առատ լինելու մասին կա ցուցմունք նաև Իբն-ալ-Ֆակիհի մոտ, XXXI, էջ 39 = BGA, V, էջ 297։

[4] W. Heyd, p. 609.

[5] Laurent, p. 42; Баладзори, перевод Жузе, էջ 10.

*այդ քաղաքների ներքին կազմակերպության և քաղաքային բնակչության սոցիալական դրության ու, մասնավորապես, արհեստավորության մասին։ Դժբախտաբար, այդ խնդրին անհնարին է տալ ճիշտ ու որոշակի պատասխան, որովհետև Հայաստանի քաղաքների ներքին կյանքի մասին մենք համարյա տվյալներ չունենք։*

*Հետաքրքիր է այդ տեսակետից, որ դեռևս Մովսես Խորենացին, որը արտացոլել է ֆեոդալական-հողատիրական ազնվականության հայացքները, քաղաքացիներին դասել էր ֆեոդալական ազնվականությունից հետո երկրորդ տեղը, գյուղացիներից բարձր։ Գյուղական ազգաբնակությանը կարգադրված էր, ինչպես վկայում է Խորենացին, մեծարել քաղաքացիներին ազնվատոհմիկ իշխաններին հավասար չափով*[1]։

*Հովհաննես կաթողիկոսի մոտ ևս կա ցուցում, որ Ներսես 3-րդ կաթողիկոսը (641—661), երբ էջմիածնի մոտ շինեց Զվարթնոց եկեղեցին, բնակեցրեց այն տեղում բազմաքանակ բնակչություն «քաղաքային հիմունքներով»*[2]*։ Մեզ բերված հաղորդագրությունները վկայում են քաղաքային բնակչության ինչ-որ արտոնությունների և առանձնահատուկ իրավունքների մասին, բայց ինչում էին կայանում այդ արտոնությունները և ինչ կազմակերպություն ունեին այդ քաղաքները, դժվար է պարզել շնորհիվ աղքատիկ տվյալների։*

*Հիմնվելով 13-րդ դարի չհրատարակված արձանագրությունների վրա, որտեղ հիշվում են Անի քաղաքի «երիցանի» կամ «ավագանի»-ները, Մառը հնարավոր է գտել եզրակացնելու, որ Անի քաղաքում «կազմվում էր» կամ թերևս և կազմվել էր ինքնուրույն քաղաքային կյանք՝ քաղաքային ավագանու գլխավորությամբ, օրենսդրական իրավունքներով քաղաքի սահմաններում։ Նա ենթադրում էր, բացի այդ, որ «ամեն ինչ թեքում է այն բանին, որպեսզի կարելի լինի պնդել, որ հենց Անին է եղել այն բովը, որտեղ հայկական ֆեոդալիզմը վերածվել էր, դեռևս իր հայրենիքում, հայկական բուրժուական աշխարհի»*[3]։

*Պետք է նշել, որ ավագներ հիշվում են նաև Դվին քաղաքում 9 և 10-րդ դարերի արաբական աղբյուրներում։ Այսպես, Բելադորի պատմագիրը (9-րդ դարի վերջում), որը նկարագրել է Հաբիբ իբն-Մասլամայի հաղթական կռիվները Հայաստանում և Վրաստանում, հաղորդում է, որ «Դվին քաղաքի ավագները, այդ թվում Բարմակ իբն-Աբդուլլան», պատմել են իրեն, որ Հայաստանից Հաբիբը գնա-*

---

1 Моисей Хоренский, *թարգմ. Էմինի, II, 8, էջ 61։*

2 *Հովհաննես կաթողիկոս, էջ 88։*

3 Н. Я. Марр, Ани, Л—М., 1934, *էջ* 35:

ցել է իր զորքերով Վրաստան[1]։ Իսկ արաբական աշխարհագիր Իբն-Հաուկալը իր «Գիրք ճանապարհների և թագավորությունների» աշխատության մեջ, որը գրված է 977/8 թ., հաղորդում է նույնպես, որ Դաբիլ քաղաքը անցյալ ժամանակներում եղել է Բագրատունի թագավոր Սմբատ 1-ի և նրա նախորդների ձեռքում և «որ քաղաքը գտնվել է բնակիչներից ականավորների իշխանության տակ»։

Ջրացանելով մեջ բերված տեղեկությունների կարևորությունը, ես գտնում եմ, որ համենայն դեպս, ավելի քան հավանական է, որ Բագրատունյաց դարաշրջանի քաղաքները, որոնք պատկանում էին խոշոր ֆեոդալներին և մեծ մասամբ դառել էին նրանց աթոռանիստը, գտնվում էին այդ սենյորների իշխանության տակ և ունեին սենյորական վարչակարգ։ Կառավարվում էին նրանք, ինչպես և արևմտյան եվրոպական քաղաքները, սենյորային վարչարարությամբ, պաշտոնական անձնավորություններով, որոնք նշանակվում էին իրենց տերերի՝ Բագրատունի թագավորների և այլ խոշոր սենյորների կողմից։ Հայկական քաղաքների գլխավոր պաշտոնյաներից մեկը, ինչպես երևում է Անի քաղաքի արձանագրություններից, եղել է մուհթասիբը (արաբ. muhthasib), որը գանձում էր քաղաքային տուրքերը և հարկերը[2], ուներ բաժ երևույթին, հսկողություն շուկաների, կշիռների և չափերի վրա և կատարում էր նաև ոստիկանական ուրիշ պարտականություններ[3]։ Բագրատունյաց Հայաստանի քաղաքներում մուհթասիբների հիշատակումը, որ արաբական քաղաքների սովորական պաշտոնական անձինքն էին, կարող է ծառայել, ինչպես ինձ թվում է, իբրև անուղղակի ցուցում, որ իր տիպով և իր ներքին կազմակերպության էությամբ հայկական քաղաքները ունեցել են զգալի նմանություն խալիֆայության քաղաքներին։

Քաղաքների տնտեսական զարգացման և արհեստավոր բնակչության շատացման կապակցությամբ հարց է ծագում քաղաքային արհեստավորության սոցիալական դրության և Բագրատունյաց Հայաստանում արհեստավորների համքարային կազմակերպության մասին։ Կոնկրետ պատմական տվյալների բացակայության պատճառով, այդ խնդրի լուսաբանումը և չափազանց դժվար է։ Անուղղակի կերպով կարելի է միայն կռահել, որ հայ արհեստավորների

---

[1] Տես՝ Баладзори, Книга завоевания стран, перевод Жузе, Баку, 1927, էջ 11

[2] Сборник материалов, XXXVIII, էջ 92—93; տե՛ս նաև BGA, II, p. 245.

[3] Կ. Կոստանյանց, Վիմական տարեգիր, սՊբ. 1913, էջ 21. 221։

[4] J. Karst, Sempadscher Kodex, 1905, I, S. 162, և II, S. 233; Kremer, Culturgeschichte des Orients. I, S. 423—426,

կորպորատիվ համքարական կազմակերպությունը, որ գոյություն է ունեցել ուշ ժամանակներում, իր արմատներով հասնում է հին դարերի քաղաքների արդյունաբերական զարգացման դարաշրջաններին[1]։ Բյուզանդիայի և արաբական խալիֆայության ներքին կյանքի ուսումնասիրություններից երևում է, որ արհեստավորների խմբային միավորումներ գոյություն են ունեցել Բագրատունիների ժամանակաշրջանում՝ ինչպես բյուզանդական կայսրության, այնպես էլ խալիֆայության քաղաքներում[2]։

Ուրեմն կարելի է ենթադրել, որ արհեստավորների նման կազմակերպություններ եղել են, հավանորեն, և Բագրատունյաց Հայաստանում, որը գտնվում էր այդ պետությունների կուլտուրական ուժեղ ազդեցության տակ։ Այդ ենթադրությունը, իհարկե, միայն պարզ կռահում է, և կարելի է հուսալ, որ խնդրի ավելի հիմնավորված պարզաբանումը հնարավոր կլինի տալ միջնադարյան հայկական քաղաքների չհրատարակված արձանագրությունները հրապարակելուց հետո։

## ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆԻ ԳԼԽԱՎՈՐ ԱՌԵՎՏՐԱԿԱՆ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԸ

Հռոմեա-պարթևական և բյուզանդական-սասանյան դարաշրջաններում միջազգային տարանցիկ ճանապարհը, որ միացնում էր Եկբատանան Սև ծովի նավահանգիստների հետ, գնում էր Ալաշկերտի դաշտավայրի վրայով՝ Արտաշատ (կամ Դվին)— Փարախոտ — Զողկերտ — Բագավան — Արամանա—Գաղտառիճ — Սատաղ ուղեգծով։ Այդ ճանապարհից ոչ հեռու գտնվում էին հին հայկական քաղաքները՝ Երվանդաշատը և Զարեհավանը։ Բագրատունյաց ժամանակաշրջանում կարավանային երթի և միջազգային առևտրի համար գերակշռող նշանակություն ուներ ոչ թե այդ ճանապարհը, այլ նոր մագիստրալը, որը գնում էր խալիֆայությունից դեպի Տրապիզոն՝ Անի, Կարս և Արծն քաղաքների վրայով։

Հիմնական տարանցիկ ճանապարհի տեղափոխմամբ է հենց բացատրվում այդ նոր քաղաքների արագ բարձրացումը և այն աչքի ընկնող դերը, որպիսին նրանք ունեին միջազգային առևտրում։

---

[1] Ахвердов, Тифлисские амкары, Тифлис, 1883, էջ 4—9

[2] Christo M. Macri, L'organisation de l'économie urbaine dans Bysance sous la dinastie de Macédoine, Paris, 1925; Kremer Alf., Culturgeschichte des Orients, II, S. 186—188.

Կարսից նոր մագիստրալը գնում էր դեպի Արծն — Թեոդոսուպոլիս — Տրապիզոն, ամենայն հավանականությամբ, այժմյան Սաղիղամիշի վրայով։ Կարսը եղել է միաժամանակ կարևոր հանգուցային կայան և մշտական առևտրական կապ է ունեցել Արտանուշի վրայով՝ Սև ծովի արևելյան նավահանգիստների հետ, և Արտահանի շրջանի վրայով՝ Վրաստանի և Աբխազիայի հետ։

Բացի հիշված հիմնական մագիստրալից, եղել է նաև մյուս՝ հարավային ճանապարհը, որը գնում էր խալիֆայության հյուսիսարևմտյան մարզերից և այժմյան պարսկական Ադրբեջանից դեպի Միջագետք, Սիրիա, Փոքր Ասիա և Պոնտոս։ Այդ ճանապարհը, որ Բյուզանդիայի հետ միջազգային առևտրի համար ուներ համեմատաբար երկրորդական նշանակություն, նկարագրված է արաբական աղբյուրներում, գլխավորապես՝ Իստախրիի, Իբն-Հաուկալի և Մուկադդասիի մոտ։

## ՃԱՆԱՊԱՐՀԸ ԱՐԴԱԲԻԼԻՑ ԴԵՊԻ ԱՄԻԴ

1. *Ալ-Իստախրի*, «Сборн. мат.», *XXIX, էջ 33—35*=BGA, *I, p. 194*՝

Արդաբիլից մինչև Մարաղա 40 ֆարսախ. Մարաղայից մինչև Դահարրական [Դեհարկան], մզկիթով քաղաքը, երկու չվերթ. նրանից[1] մինչև Ուրմիա քաղաքը երկու չվերթ. Ուրմիայից մինչև Սալմաստ 2 չվերթ, Սալմաստից մինչև Խոյ 7 ֆարսախ. Խուվեյից [Խոյից] մինչև Բերկրի 30 ֆարսախ. Բերկրիից մինչև Արճեշ մեկ օր. Արճեշից մինչև Խիլաթ [Խլաթ] երեք օր[2]. Խլաթից մինչև Բիթլիս մեկ օր. Բիթլիսից մինչև Միաֆարկին [Մայաֆարկին] երեք օր[3] և Միաֆարկինից մինչև Ամիդ երկու օր։

2. *Իբն-Հաուկալ* «Сборник мат.», *XXXVIII, էջ 104*=BGA, *II, p. 253—254*՝

«Արդաբիլից մինչև Մարաղա մոտավորապես 40 ֆարսախ. Մարաղայից մինչև Ուրմիա լճի վրայով մոտ 20 ֆարսախ, իսկ լճափով մոտ 30 ֆարսախ. Ուրմիայից մինչև Սալմաստ 2 չվերթ. Սալմաստից

---

[1] Ավելորդ չեմ համարում նշել Կարաուլովի մոտ ցույց տրված ցուցակների ձական տարբերակները [Բոլոնի ցուցակը—A, Բեռլինի ցուցակը—B, Գոտայան հատվածները], որոնց պատճենները ավել է Միլլերը—C. C տարբերակում «նրանից» բառից հետո ունեն «նրանից մինչև Թավրիզ 2 չվերթ. այդտեղից մինչև Մարանդ 2 չվերթ և Մարանդից մինչև Սալմաստ 1 չվերթ»։

[2] A և B—«մեկ օր»։

[3] C—«Բիթլիսից մինչև Արզան—2 օր և Արզանից մինչև Միաֆարկին—1 օր»

*մինչև Խուվեյ [Խոյ]—9 փարսախ. Խոյից մինչև Բերկրի—30 փարսախ. Բերկրիից մինչև Արճեշ—երկու օրվա ճանապարհ. Արճեշից մինչև Խիլաթ [Խլաթ]—3 օր. Խլաթից մինչև Բիթլիս—3 օր. Բիթլիսից դեպի Արզան մինչև Միաֆարկին [Մայաֆարկին] 4 օր. Մայաֆարկինից մինչև Ամիդ—2 օրվա ճանապարհ։*

*3. Ալ-Մուկադդասի,* «Сборник матер.» *XXXVIII, էջ 18*=BGA, *III*՝




*«Արդաբիլից մինչև Մեյանիջ 2 չվերթ. ...Մեյանիջից մինչև Խոնաջ մի չվերթ. այնուհետև մինչև Կուր-սերե մեկ չվերթ. հետո մինչև Մարաղա մեկ չվերթ. այդտեղից մինչև Խարրական կամ մինչև Ուրմիա երկու-երկու չվերթ. հետո մինչև Սալմաստ նույնքան. այնուհետև մինչև Խուվեյ [Խոյ] մեկ չվերթ. այդտեղից մինչև Բերկրի 5 չվերթ. այնուհետև մինչև Արճեշ 2 չվերթ. հետո մինչև Խլաթ կամ մինչև Բիթլիս երեք-երեք չվերթ. Բիթլիսից Ամիդ կամ Միաֆարկին չորս-չորս չվերթ»*[1].

---

[1] *IX դարի կեսի գրող, Իբն-Խորդադբեյի մոտ տարածությունները Մարաղայից դեպի Խոյ ցույց են տրված փարսախներով. [Մարաղայից] դեպի Դեհարկան 11 փարսախ, այնուհետև դեպի Թավրիզ 9 փարսախ. հետո դեպի Մարանդ 10 փարսախ. հետո դեպի ալ-Խան 4 փարսախ, վերջապես, դեպի Խոյ 6 փարսախ, տե՛ս* «Сборн. мат.» XXXII, *էջ 9*=BGA, VI, *էջ 120։*

*Այդ հաղորդագրությունների ուշադիր քննությունը հնարավորություն է տալիս եզրակացնել, որ Արդաբիլից դեպի Մարաղա ճանապարհը գնում էր, ինչպես ցույց է տրված Մուկադդասիի մոտ, Միյանիջի, Խունաջի և Կուլ-սերեի վրայով. իսկ Մարաղայից դեպի Խուվեյ կամ Խոյ կարելի էր գնալ երեք ուղղությամբ՝ 1. Մարաղայից դեպի Դեհարկան, և հետո Ուրմիա լճով Ուրմիա քաղաքը և այդտեղից Սալմաստի վրայով դեպի Խոյ։ 2. Մարաղայից լճափով հարավային և ապա հյուսիս-արևմտյան ուղղությամբ Ուրմիա քաղաքը և այդտեղից Սալմաստի վրայով դեպի Խոյ և 3. Մարաղայից դեպի Դեհարկան և այդտեղից Թավրիզի և Մարանդի վրայով դեպի Խոյ։*

*Կարաուլովի կարծիքով, արաբների մոտ մեկ օրվա ճանապարհը հավասար էր 5—7 ֆարսախի, այսինքն՝ 30—40 կմ.*[1]*։ Առևտրական ճանապարհը Խոյից դեպի Ամիդ գնում էր դեպի Բերկրի, ըստ երևույթին, Կոթուրի լեռնանցքով և այդտեղից Վանա լճի հյուսիսային ծովեզրով դեպի Խլաթ և Խլաթից Բիթլիսի ու Ցարկինի վրայով, դեպի Ամիդ — այժմյան Դիարբեքիր։*

*Արճեշից սկսած, հիշված ճանապարհը ունեցել է ճյուղավորում, որ հայտնի է հայկական աղբյուրներից։ Այդ ճյուղը գնում էր դեպի Փոքր Ասիա հետևյալ կայարանների վրայով՝ Արճեշ — Մանազկերտ — Խնուս — Էրզերում — Երզնկա և Սիվազ։*

*Վերոհիշյալ աշխարհագիրների մոտ մանրամասն ցույց է տրրված նաև Մարաղայից դեպի Դվին գնացող ճանապարհի ուղղությունը։*

## ՃԱՆԱՊԱՐՀԸ ՄԱՐԱՂԱՅԻՑ ԴԵՊԻ ԴՎԻՆ

1. *Ալ-Իստախրի,* «Сборник матер.», *XXIX, էջ 35*=BGA, *I,* p. *194՝*

*«Մարաղայից մինչև Ուրմիա 30 ֆարսախ. Ուրմիայից մինչև Սալմաստ 14 ֆարսախ. Սալմաստից մինչև Խուվեյ [Խոյ] 7 ֆարսախ. Խուվեյից մինչև Նաշավա [Նախիջևան] 3 օր և Նաշավայից մինչև Դաբիլ [Դվին] 4 չվերթ»։*

2. *Իբն-Հաուկալ,* «Сборн. матер.», *XXXVIII, էջ 104*= BGA, *II,* p *254՝*

*«Ճանապարհը Մարաղայից դեպի Դաբիլ՝ Ուրմիայի և Սալմաստի վրայով դեպի Խուվեյ—53 ֆարսախ. Խոյից դեպի Նաշավա—5 օր. իսկ Նաշավայից դեպի Դաբիլ [Դվին]—4 չվերթ»։*

---

[1] *Տե՛ս* «Сборн. мат.», XXIX, *էջ 59, ծանոթ. 21։*

3. *Ալ-Մուկադդասի*, «Сборн. матер.», *XXXVIII, էջ 17*= BGA, *III*՝

*«Դաբիլից մինչև Նաշավա 4 չվերթ. մինչև Խուվեյ երեք օրվա ճանապարհ. մինչև Սալմաստ—2 չվերթ. այնուհետև մինչև*




*Ուրմիա 1 չվերթ. հետո Խարրականից 2 չվերթ. այնտեղից մինչև Մարաղա նույնքան»։*

*Իբն-Խորդադբեհի մոտ կա, բացի այդ, հաղորդագրություն Մարանդից Նաշավայի վրայով դեպի [Դվին] Դաբիլ գնացող ճանապարհի մասին՝*

*«Մարանդից մինչև [գետի] Հովիտը 10 ֆարսախ. այդտեղից մինչև Նաշավա 10 ֆարսախ. այնուհետև մինչև Դաբիլ 20 ֆարսախ»*[1]։

*«Չվերթը» կամ «մանզիլը», ինչպես ցույց է տվել Մարկվարտը իր պատմական-աշխարհագրական աշխատություններում, արաբական աշխարհագիրների մոտ նշանակում է ոչ թե մի օրվա ճանապարհ, այլ կայարանային տարածությունը — մոտավորապես 4 ֆարսախ*[2]*։ Սակայն, փաստորեն, բերված խոհնեղարիայում «չըվերթ»-ը կամ «մանզիլ»-ը եղել է հավասար ոչ թե 4, այլ 5 ֆարսախի։ Իբն-Խորդադբեյի և Կոդամայի մոտ «Նաշավայից մինչև Դաբիլ» հեռավորությունը ցույց է տրված 20 ֆարսախ, իսկ Իստախրիի, Իբն-Հաուկալի և Մուկադդասիի մոտ—4 չվերթ։ Ուստի, միանգամայն ակներև է, որ Նախիջևանից դեպի Դվին «չվերթ»-ը կամ «մանզիլ»-ը հավասար է եղել ոչ թե 4, այլ 5 ֆարսախի, ինչպես այդ ճիշտ ցույց է տվել Կարաուլովը։*

*Արաբական աշխարհագիրների՝ Իստախրիի, Իբն-Հաուկալի և Մուկադդասիի մոտ մանրամասն ցույց է տրված նաև Դվինից դեպի Բերդաա կամ Պարթավ գնացող ճանապարհը, որով Բագրատունյաց Հայաստանը կապված է եղել արևելյան Անդրկովկասի հետ, այժմյան Ադրբեջանի։ Այդ հյուսիսային գիծը, նրանց նկարագրությամբ, հանդիսանում է հետևյալ կերպով՝*

## ՃԱՆԱՊԱՐՀԸ ԴՎԻՆԻՑ ԴԵՊԻ ՊԱՐԹԱՎ

1. *Ալ-Իստախրի* «Сборн. матер.», *XXIX էջ 33*=BGA, *I*, p. *193*՝

*«Բերդաայից մինչև Կալկատուս 9 ֆարսախ. Կալկատուսից մինչև Մետրիս 13 ֆարսախ. Մետրիսից մինչև Դավմիս 12 ֆարսախ. Դավմիսից դեպի Կիլկույ 16 ֆարսախ. Կիլկույից մինչև Սիսաջան 16 ֆարսախ և Սիսաջանից մինչև Դաբիլ 16 ֆարսախ»։*

2. *Իբն-Հաուկալ*, «Сборн. матер.», *XXXVIII, էջ 101—102*=BGA, *II*, p. *251*՝

---

[1] *Տե՛ս* «Сборн. матер.», **XXXII**, *էջ* **11—13**=BGA, **VI**, p. **122**. *Համեմատե նաև Կոդամա*, «Сборн. матер.», **XXXII**, *էջ* **27**=BGA, **VI**, p. **213**՝ *«Մարանդից մինչև աս-Սաբի հովիտով 10 ֆարսախ. հովիտից մինչև Նաշավա 10 ֆարսախ. Նաշավայից մինչև Դաբիլ 20 ֆարսախ»։*

[2] *Տես* Markwart J. Eranschahr, Berlin, 1901, S. 188, 257, 288 *և* Osteuropäische und Ostasiatische Streifzüge, Leipzig, 1903, § 239:

«Բերդաաից մինչև Կալկատուս 9 փարսախ, Կալկատուսից մինչև Մետրիս 13 փարսախ, իսկ այստեղից մինչև Դավմիս 12 փարսախ. Դավմիսից մինչև Կայլակվին—16 փարսախ. Կայլակվինից մինչև Սիսաջան—16 փարսախ. Սիսաջանը հաճելի քաղաք է, միջին մեծության. Սիսաջանից մինչև Դաբիլ—16 փարսախ։

3. Ալ-Մուկադդասի, «Сборн. мат.» XXXVIII, էջ 17= BGA, III, p. 181՝

«Կալկատուսից մինչև Մետրիս 2 չվերթ. այդտեղից մինչև Դումիս 2 չվերթ. մինչև Կիլ-վեյ 2 չվերթ. իսկ այնուհետև կընկնես Դաբիլ հայկական երկիրը»[1]։

Կարաուլովը ենթադրում է, որ արաբական աղբյուրներում բերված հեռավորությունները միշտ ճիշտ չեն։ Նրա կարծիքով, «այդ հեշտությամբ բացատրվում է նրանով, որ տարածությունները չափում էին հեծնելու անասունի երթով։ Արաբները, ապրելով դաշտավայրում, անցնում էին իրենց հեռավորությունները ավելի շուտ, քան թե ճանապարհորդելով Կովկասի լեռնոտ տեղերում, որտեղ հեռավորությունը իսկապես կարող էր շատ ավելի մեծ երևալ, քան իրապես եղել է։ Ուրիշ եղանակով արաբները չափում էին հեռավորությունները հազվագյուտ դեպքերում»[2]։ Համաձայն Իստախրիի և Իբն-Հաուկալի Դվինի և Բերդաաի [Պարթավի] մեջ եղած տարածությունը եղել է 82 փարսախ. այսինքն մոտավորապես 470 կմ.[3]։ Այդ, իսկապես, կարծես մի քիչ շատ է։ Նույն տարածությունը Իբն-Խորդադբեյի և Կոդամայի մոտ ցույց է տրված ավելի քիչ։ Իբն-Խորդադբեյի մոտ 7—չվերթ, իսկ Կոդամայի մոտ—9 չվերթ[4]։

Մեջ բերված ճանապարհի ուղղությունը Կարաուլովը ենթադրում է Պարթավից [Բերդաա] դեպի հարավ-արևմուտք Թարթառ գետի հոսանքով. այնուհետև Մետրիսից դեպի հարավ. այդտեղից դեպի արևմուտք դեպի Արփա-չայ և այդ գետի երկարությամբ դեպի Սիսաջան Արաքս գետի մոտ, որը Կարաուլովը համադրում է այժմյան Կիսաջանին, որ գտնվում է Արաքսից և Արփա-չայից ոչ հե-

[1] Մուկադդասիի հիշված հաղորդագրության մեջ, ինչպես ճիշտ նկատել է Կարաուլովը, բնագիրը աղճատված է և բառ է բաց թողված։

[2] Տե՛ս «Сборн. мат.», XXIX, էջ 68, ծանոթ. 68։

[3] Մենք ներքևում կտեսնենք, որ մեր կողմից քննարկվող արաբական և հայկական խոխեմարաբիաների հիմքում եղել է արաբական մղոնը, որը հավասար էր 1917,6 մետրի և արաբական փարսախը, որ հավասար էր 5752,8 մ.։

[4] «Сбор. мат.», XXXII, էջ 11=BGA, VI, p. 122 և նույն տեղում նաև էջ 29=BGA, VI, p. 227։

ուլ[1]։ Կարաուլովի մոտ հաջող որոշված է միայն՝ Բերդաաից դեպի Կալկատուս և Սիսաջանից դեպի Դաբիլ գծերի ուղղությունները. իսկ մնացած գծերի ուղղությունները, ինչպես ներքևում կտեսնենք, նա սխալ է ցույց տվել։

Վերոհիշյալ ճանապարհը Դվինից դեպի Պարթավ մանրամասն քննարկված է իմ «Հայաստանի գլխավոր ճանապարհները» աշխատության մեջ[2]։ Այդ ճանապարհը, ինչպես ցույց է տրված իմ աշխատության մեջ, որոշվում է լիակատար պարզությամբ հին Կաղանկատույքի, Հաթերքի և այժմյան Զոդի լեռնանցքի վրայով դեպի Սոտք, այնուհետև Սևանա լճի հարավային ափերի երկարությամբ դեպի Գեղարքունիք և այնտեղից Սելիմի լեռնանցքի վրայով դեպի Սիսական և հյուսիս-արևմտյան ուղղությամբ դեպի Դվին։

Հիշված կայարանական կետերից Կալկատուսը, որ գտնվում էր Բերդաաից 9 ֆարսախ [մոտ 50 կմ.] հեռավորության վրա, անշուշտ, նույնական է հին Կաղանկատույքին[3], որ գտնվում էր Թարթառ գետի ձախ կողմը, այժմյան Մաղագիս գյուղից ոչ հեռու[4]։

Մյուս երեք կայարանների անունները որոշելիս պետք է նկատի առնել, որ այդ անունները անսովոր և անհասկանալի լինելով արաբական լսողության համար, ենթարկվել են խիստ աղճատման։ Գրիչները իրենց հերթին մտցրել են մեծ խառնաշփոթություն, իրար խառնելով նման արաբական տառերը և տեղափոխելով կետերը։

Կալկատուսից հետո հետևյալ կայարանը Մետրիսը գտնվում էր, ամենայն հավանականությամբ հայկական Հաթերք գավառում [տես. հոլ. Հաթերքս]։ Մետրիս անունը ես ենթադրում եմ, որ պետք է ուղղել Հաթրիսի և կարծում եմ, որ աղավաղումը տեղի է ունեցել արաբական h և m տառերի նմանության հետևանքով, ու նաև դրված կետերի պակասությունից։ Հաթրիս անունը համապատասխանում է գավառի անվանը, որտեղ գտնվում էր այդ կայարանը։

Հետևյալ Daumis կայարանը, որ գտնվում էր Հաթրիսից 12 ֆարսախ հեռավորության վրա, գտնվում էր Hatris-ին հարակից Սոտքի գավառում [Sauth, տես. հոլ. Sautiths]։ Daumis անունը անբռնազբոսիկ կերպով կարելի է ուղղել և դարձնել Zautis, որովհետև

---

[1] Տե՛ս Կարաուլովի, արաբական աշխարհագիրների հաղորդած տեղեկությունների հիման վրա, կազմած՝ Կովկասի, Հայաստանի և Ադրբեջանի քարտեզը, որը կցված է նրա, վերևում ցույց տրված հոդվածներին—«Сбор. мат.», XXXVIII [1908], էջ 128։

[2] Երևան, 1936, էջ 175—204 և 248—250։

[3] Markwart, Das Itinerar von Artaxata nach Armastica, Wien, 1920, S. 56.

[4] Մ. Բարխուդարյան, Պատմություն Աղվանից, Վաղարշապատ, 1902, էջ 31։




արաբական d և z, նույնպես և m և t տառերի շփոթումը սովորական են արաբական ձեռագրերում։ Ուստի կարելի է ենթադրել, որ Zautis-ը եղել է հին հայկական համապատասխան՝ Սոտք գավառի անունը։

Մոտակա Կիլ-Կուլ կայարանը Խոտախրիի մոտ և Կայլակվինը Իբն-Հաուկալի մոտ [կան նաև տարբերակներ «Կիլ-Կուրե», «Կ-Ն-Կլոփին» և «Կիլիկուն»][1] ինչպես ճիշտ ենթադրում է Մարկվարտը[2], համապատասխանում է հին-հայկական Գեղարքունի մարզի անվանը։ Այդ կայարանը, իսկապես, գտնվում էր Սոտքին հարակից Գեղարքունի գավառում։

Հետևյալ Սիսաջան կայարանը ևս համապատասխանում է հին-հայկական Սիսական[3] մարզի անվանը, որտեղ գտնվում էր այդ կայարանը։ Իսկ մոտակա Դաբիլ կամ Դվին կայարանը գտնվում էր, ինչպես հաղորդում են հիշված աշխարհագիրները, Սիսականից 16 ֆարսախ հեռավորության վրա։

Արաբական աշխարհագիրների տվյալներով՝ առևտրական ճանապարհների հանգուցային կայան Անդրկովկասում բացի Դաբիլ-

[1] Տե՛ս «Сборник мат.», XXIX, էջ 32 և 33։

[2] Das itinerar von Artaxata nach Armastica, S. 56:

[3] Նույն տեղում, էջ 56։

Դվինից եղել է նաև Բերդաան։ Իստախրիի և մյուս աշխարհագիրների մոտ մանրամասն ցույց են տրված այն ճանապարհները, որոնք Բերդաայից գնում էին դեպի Թիֆլիս, Արդաբիլ և դեպի Բաբ-ուլ-Աբվաբ, այժմյան Դերբենտ։

## ՃԱՆԱՊԱՐՀԸ ԲԵՐԴԱԱԻՑ [ՊԱՐԹԱՎԻՑ] ԴԵՊԻ ԹԻՖԼԻՍ

1. *Ալ-Իստախրի,* «Сборн. мат.», *XXIX, էջ 31—33*=BGA, *I,* p. *193։*

*«Բերդաաից դեպի Ջանզա, քաղաք, 9 ֆարսախ, Ջանզայից դեպի Շամքուր 10 ֆարսախ, Շամքուրից մինչև Խունան քաղաքը, 21 ֆարսախ. Խունանից մինչև Կալա-իբն Կանդաման 10 ֆարսախ և Կալաից մինչև Թիֆլիս 12 ֆարսախ»։*

2. *Իբն-Հաուկալ,* «Сборн. мат.», *XXXVIII, էջ 101*=BGA, *II,* p. *251—*

*«Բերդաաից մինչև Ջանզա, նշանավոր քաղաքը—9 ֆարսախ, Ջանզաից մինչև Շամքուր 10 ֆարսախ. Շամքուրից մինչև Խունան քաղաքը 11 ֆարսախ. Խունանից մինչև Կալա-իբն-Կանդաման 10 ֆարսախ. Կալաից մինչև Թիֆլիս 12 ֆարսախ. ընդամենը 52 ֆարսախ։*

3. *Ալ-Մուկադդասի,* «Сборн. мат.», *XXXVIII, էջ 17*=BGA, *III,* p. *381—382՝*

*«Բերդաաից մինչ Յունան, մինչև Բերդեոջ, մինչև Ջանզա և մինչև Կալկատուս մեկական չվերթ....*

*Ջանզայից դեպի Շամքուր մեկ չվերթ. այնուհետև դեպի Խունան 3 չվերթ. մինչև Կալա-իբն-Կանդաման մեկ չվերթ և ապա մինչև Թիֆլիս 2 չվերթ»։*

4. *Իբն-Խորդադբեհ,* «Сборн. мат.», *XXXII, էջ 11*=BGA, *VI,* p. *122՝*

*«Բերդաաից դեպի Թիֆլիս 10 չվերթ»։*

5. *Կուդամա,* «Сборн. мат.», *XXXII, էջ 29*=BGA, *VI,* p. *227՝*

*«Բերդաաից մինչև Մութնաքքիլիա քաղաքը [=Շամքուր] 6 չվերթ. Մութնաքքիլիա քաղաքից մինչև Թիֆլիս 10 չվերթ»։*

*Մարկվարտի կարծիքով, Կալա-իբն-Կանդաման կայարանը, որ գտնվում էր Թիֆլիսից 12 ֆարսախ հեռավորության վրա [=մոտ 70 կմ.], եղել է վրացական Գարդաբանի գավառում, որ հիշված է*

Վախուշտի[1] մոտ։ Նրա տեղադրությունը Մարկվարտը ենթադրում է Խրամ և Կուր գետերի միախառնման տեղում, այժմյան Ղըզ-Ղալա ամրոցի ավերակների մոտ[2]։ Իսկ հետևյալ Խունան կայարանի տեղադրությունը, որ գտնվում էր Կալա-իբն-Կանդամանից 10 ֆարսախ հեռավորության վրա [=մոտ 57 կմ.] և որը նա համադրում է հին-հայկական Հունարակերտին նա ցույց է տալիս մոտավորապես Շամքորի և Ղըզ-Ղալայի միջև՝ կես ճանապարհին[3]։




Արաբական ֆարսախներով բերված վերոհիշյալ հեռավորությունների մասին Կարաուլովը ճիշտ ցույց է տալիս, որ Իստախրիի մոտ ցույց տրված հեռավորությունները զգալի չափով տարբերվում են իրական չափերից, որ կարելի է ներկայումս հաշվարկել. օրինակ, Գյանջայի [Գանձակ] և Թիֆլիսի միջև իսկական հեռավորությունը

[1] Wachuscht, Description géographique de la Géorgie, éd. Brosset p. 179:

[2] Համեմատե Կարաուլովի նման կարծիքը, «Сборн. мат.», XXXVIII, էջ 22, ծանոթ. 7։

[3] Տե՛ս Das itinerar von Artaxata nach Armastica, S. 30—31։ Խունանի տեղադրությունը Կարաուլովը ենթադրում է «Աղ Թուր բլուրի վրա, Աղստաֆա գետից մի փոքր ներքև Կուր գետի աջ ափին», տե՛ս «Сборн. мат.», XXXVIII. էջ 22։

կազմում է 181 վերստ, իսկ Իստախրին տալիս է 300 վերստից[1] ավելի։ Այդ անճշտությունները մեծ մասամբ բացատրվում են, անշուշտ, Իստախրիի և Իբն-Հաուկալի բնագրերի անճշտություններից, որոնք, ինչպես ինձ թվում է, կարելի է հեշտությամբ վերացնել, նկատի առնելով ծանոթություններում Կարաուլովի կողմից նշված ձեռացուցակների տարբեր ընթերցվածքները։ Վերացնելով Իստախրիի և Իբն-Հաուկալի բնագրերում կոպիտ ու ակներև սխալները, ճանապարհը Բերդաաից դեպի Թիֆլիս կստացվի միանգամայն այլ կերպ, որը համապատասխանում է մոտավորապես իսկական հեռավորություններին։

Բերդաաից մինչև Գյանջա 9 ֆարսախ. Գյանջայից դեպի Շամքոր 4 ֆարսախ[2]. Շամքորից Խունան 11 ֆարսախ[3]. Խունանից դեպի Կալա-իբն-Կանդաման 10 ֆարսախ. Կալա-իբն-Կանդամանից դեպի Թիֆլիս 12 ֆարսախ. ընդամենը 46 ֆարսախ կամ մոտավորապես 276 կիլոմետր։

## ՃԱՆԱՊԱՐՀԸ ԲԵՐԴԱԱԻՑ ԴԵՊԻ ԱՐԴԱԲԻԼ

1. *Ալ-Իստախրի*, «Сборн. мат.», *XXIX*, *էջ 29*=BGA, *I*, p. *192*՝

*«Բերդաաից դեպի Յունան 7 ֆարսախ. Յունանից[4] դեպի Բայլական 7 ֆարսախ. Բայլականից դեպի Վարսան 7 ֆարսախ. Վարսանից դեպի Բալխաբ[5] 7 ֆարսախ. Բալխաբից դեպի Բերզենտ 7 ֆարսախ և Բերզենտից դեպի Արդաբիլ 15 ֆարսախ»։*

2. *Իբն-Հաուկալ*, «Сборн. мат.», *XXXVIII*, *էջ 101*=BGA, *II*, p. *251*՝

*«Բերդաաից մինչև Յունան 7 ֆարսախ. Յունանից մինչև Բայլական քաղաքը 7 ֆարսախ. Բայլականից,— իսկ այդ քաղաքը առողջ է, հարուստ է աղբյուրներով, անտառներով, այգիներով և պտուղներով. նա գտնվում է գետի բազուկների վրա,*

[1] *Տե՛ս* «Сборн. мат.», XXIX, *էջ 68, ծանոթ. 68*։

[2] «Сборн. мат.», XXIX, *էջ 31, ծան.* F—E *«շորս»* [E=*Իբն-Հաուկալի պարսկական վարիանտը*]։

[3] *Տե՛ս* «Сборн. мат.», *XXVIII, էջ 101—«11 ֆարսախ»*։

[4] *Կարաուլովի ծանոթություններում նշված են հետևյալ տարբեր ընթերցվածքները [վերև հիշված ցուցակների],* A — *առանց կետերի պարզ չէ.* B — *«նուման»,* C—*«Տուքան» և «Տուման»*։

[5] A—*«...լխաբ,* B—*պարզ չէ,* C—*տեգլաբ»*։

իսկ նրանց վրա իրենց ջրաղացները,— 7 ֆարսախ մինչև քաղաքը, որը Բայլականից մեծ է. ավելի ընդարձակ է և ավելի խիտ է բնակեցված։ Նա ունի մեծ քանակությամբ շուկաներ և ապրանքներ, և այնտեղ կա ամենը, ինչ որ լինում է մեծ քաղաքներում. նրա շուրջը պատ է, և նրանում կա առանձին թաղ քաղաքի շուկաների համար։ Վարսանից մինչև Բալխաբ 7 ֆարսախ։ Բալխաբը կայարան է և բնակելի վայր. նրանում կան ճանապարհին կից իջևաններ և կարվանսարայներ, որտեղ իջևանում են ճանապարհորդները։ Բալխաբից մինչև Բերզենդ քաղաքը, որը իր դրությամբ նման է Բայլականին, 7 ֆարսախ. Բերզենդից մինչև Արդաբիլ 15 ֆարսախ գյուղերի ու կայարանների միջև, ճանապարհի աջ և ձախ կողմում»։

3. Ալ-Մուկադդասի, «Сборн. мат.», *XXXVIII*, էջ 17= BGA, *III*, p. 381.

«Բերդաաից մինչև Յունան.... մեկական չվերթ. Յունանից մինչև Բայլական մեկ չվերթ. հետո մինչև Վարսան մեկ չվերթ. մինչև Բալխաբ — մեկ չվերթ. մինչև Բերզենտ մեկ չվերթ, և ապա մինչև Արդաբիլ երկու չվերթ»։

4. Իբն-Խորդադբեյ, «Сборн. мат.», *XXXII*, էջ 9—13= BGA, *VI*, p. 121—122.

Արդաբիլից մինչև Խուշշա 8 ֆարսախ. այնուհետև մինչև Բերզենտ 6 ֆարսախ... ճանապարհը Բերզենտից մինչև Բելասաջան անապատը, իսկ այդտեղից մինչև Վարսան, Ազերբայջանի ծայրամասը, 12 ֆարսախ.... Վարսանից մինչև Բերդաա 8 չվերթ.... Վարսանից մինչև Դարման 3 ֆարսախ։ Հետո մինչև Բայլական 9 ֆարսախ. այնուհետև մինչև Բերդաա 14 ֆարսախ»։

5. Կոդամա, «Сборн. мат.», *XXXII*, էջ 25—27=BGA, *VI*, p. 213՝

«Արդաբիլից մինչև Խան Բաբեկ 8 ֆարսախ. Խան Բաբեկից մինչև Բերզենտ 6 ֆարսախ. Բերզենտից մինչև Բախլաբ 12 ֆարսախ.... Վարսանից Բերդաա գնացողը պետք է գնա Վարսանից մինչև Կումամ 3 ֆարսախ, հետո մինչև Բայլական 7 ֆարսախ և ապա մինչև Բերդաա 3 ֆարսախ»։

Բերդաաից դեպի Արդաբիլ մեջ բերված ճանապարհի մասին մանրամասն բացատրություն է տալիս Կարաուլովը։ Նրա կարծիքով, Յունան կամ Դերման կայարանային կետը համապատասխանում է այժմյան Դեյրանին. այնուհետև Կուր և Արաքս գետերի միախառնման տեղից ոչ հեռու գտնվում էր Բայլականը. ավելի հեռու Արաքս

գետի հոսանքով դեպի վեր, այժմյան Կարա-սու գետի բերանում գտնվում էր Վարսանը. իսկ դեպի Արդաբիլ հետագա ճանապարհը գնում էր Կարա-սու գետի երկարությամբ[1]։




Այդ ուղղությունը ներկայումս համարվում է ավելի քան վիճելի։ Բայլականի ավերակները, ինչպես ցույց է տվել Մինորսկին, գտնվում են ոչ թե Կուր և Արաքս գետերի միախառնման մոտ, այլ այժմյան Ղարաբաղում, Շուշի քաղաքից դեպի հարավ-արևելք[2]։ Իսկ Վարսանի ավերակները, որի տեղադրությունը Կարաուլովի կող-

[1] Տե՛ս «Сборн. мат.», XXIX, էջ 67, ծանոթ. 59։
[2] Minorsky, Hudud al-Alam, London, 1937, p. 398.

միջ ցույց է տրված Կարա-սուի գետաբերանի մոտ, ինչպես ենթադրում է Մինորսկին, գտնվում են Արաքս գետի ափին և այժմ կոչվում են Ալղանի ավերակներ[1]։ Բայլականի և Վարսանի նոր տեղադրումը, ինչպես տեսնում ենք, վերացնում է Կարաուլովի ենթադրությունը այդ ճանապարհի հյուսիսային ուղղության մասին դեպի Կուր և Արաքս գետերի միախառնման տեղը։

## ՃԱՆԱՊԱՐՀԸ ԲԵՐԴԱԱԻՑ ԴԵՊԻ ԲԱԲ-ՈՒԼ-ԱԲՎԱԲ [ԴԵՐԲԵՆՏ]

1. *Ալ-Իստախրի*, «Сборн. мат.», *XXIX*, էջ *29—31*= BGA, *I*, p. *192*՝

*«Բերդաաից դեպի Բերդեճ 18 ֆարսախ. Բեդենջից դեպի Կուրի գետանցքի ծանծաղուտը դեպի Շեմախի 14 ֆարսախ. Շեմախիից դեպի Շարվան[2] երեք օրվա ճանապարհ. Շարվանից դեպի Աբխազ[3] երկու օրվա ճանապարհ. Աբխազից դեպի Ջասար-Սամուռ 12 ֆարսախ և Ջասար-Սամուռից[4] դեպի Բաբ-ուլ-Աբվաբ 20 ֆարսախ[5]։*

2. *Իբն-Հաուկալ*, «Сборн. мат.», *XXXVIII*, էջ *101*= BGA, *II*, p. *251*՝

*«Բերդաաից մինչև Բերդեճ, Կուրի վրայի նշանավոր առևտրական քաղաքը, 18 ֆարսախ. Բերդեճից, անցնելով Կուր գետի ծանծաղուտով, մինչև Շամախի 14 ֆարսախ. Շամախիից մինչև Շարվան երեք օրվա ճանապարհ. Շարվանից մինչև Աբխազ 2 օրվա ճանապարհ և Աբխազից մինչև Ջասար-Սամուռ 12 ֆարսախ. Ջասար-Սամուռից մինչև Բաբ-ուլ-Աբվաբ 20 ֆարսախ»։*

3. *Ալ-Մուկադդասի*, «Сборн. мат.», *XXXIII*, էջ *17*= BGA, *III*, p. *381*—

*«Բերդաաից մինչև Բերդեճ.... մեկական չվերթ.... Բերդեճից մինչև Շեմախի 2 չվերթ. մինչև Շարվան 3 չվերթ. մինչև Աբխազ 2 չվերթ. այնուհետև մինչև Ջասար-Սամուռ 2 չվերթ և ապա մինչև Բաբ-ուլ-Աբվաբ 3 չվերթ»։*

---

[1] Minorsky, Hudud al-Alam, London, 1937, p. 395

[2] *Կարաուլովի ծանոթություններում նշանակված են հետևյալ տարբեր ընթերցվածքները՝* A—*«Շաբարան»։*

[3] A—*«ալ-լա-խան»*, B—*«Ալ-լայջան»*.

[4] C—*«ևս-Սամուռ»*.

[5] C—*տալիս է «տասը ֆարսախից քիչ»։*

Մեջ բերված ճանապարհի ուղղությունը Բերդաաից դեպի Բաբ-ուլ-Աբվաբ [Դերբենտ] Կարաուլովը որոշում է Շիրվանի [Շեմախի], Աբխազի [Կուբա] և Ջասուր-Սամուռի [=«Սամուռի ամբարտակը»] վրայով։




Կարաուլովի մոտ բերված համադրությունները՝ Շիրվան=Շամախի և Աբխազ=Կուբա, ինչպես այժմ պարզված է, ակներև սխալ են[1]։ Այդ կայարանական կետերի մասին հետաքրքիր մեկնաբանություններ է տալիս Մինորսկին իր պատմական-աշխարհագրական

[1] «Сборн. мат.», XXIX, էջ 67, ծան. 60։ Այդ սխալը նկատել և ուղղել է ինքը՝ Կարաուլովը։ Տե՛ս «Сборн. мат.», XXXVIII, էջ 22, նաև նրա հիշված քարտեզը։

«Հուդուդ-ալ-ալամ» կապիտալ աշխատության մեջ։ Նա ենթադրում է, որ Բերդենջ կայարանական կետի անունը պետք է ուղղել և կարդալ Բարդեջ։ Հիմնվելով Մուկադդասիի վերևում հիշված վկայության վրա, Բարդեջի տեղադրությունը Մինորսկին ենթադրում է Բերդաայից ոչ թե 18 ֆարսախ հեռավորության վրա, այլ միայն մեկ օրվա չվերթի։ Ուստի այդ կայարանի տեղադրությունը նա ենթադրաբար դնում է Կուր գետի աջ ափին, այժմյան Քեփրի-Քենտի դիմացը, որ գտնվում է Բերդաայից դեպի արևելք, մոտավորապես 34 կմ. հեռավորության վրա[1]։

Շեմախիից հետո մոտակա կայարանը՝ Շիրվանը, որ գտնվում էր Շեմախիից երեք օրվա ճանապարհի հեռավորության վրա, ինչպես ենթադրում է Մինորսկին, համապատասխանում է, Շիրվանի մայրաքաղաք, հին Շաբարանին կամ Շավարանին[2]։

Բագրատունյաց դարաշրջանի ճանապարհների մասին, որոնք անցնում էին Հայաստանի վրայով, տեղեկություններ կան նաև Հայկական միջնադարյան ճանապարհացույցներում, որոնք, դժբախտաբար քիչ են ուսումնասիրված և նույնիսկ չեն հրատարակված բոլորը։ Այդ ճանապարհացույցներից մեկը տպված է այսպես կոչված «Աղվեսագրքում», որը հրատարակված է Ամստերդամում [1668—9 թվերին] և ապա Մարսելում [1676—8 և 1683 թվերին]։ 1683 թվի Մարսելի բնագրի ֆրանսերեն թարգմանությունը զետեղված է Սեն-Մարտենի մոտ նրա «Memoires historiques et géographiques sur l'Armènie» [*II*, p. 395—397]։ Այդ ճանապարհացույցը, ինչպես նորերս հաջողվել է պարզել, նույնական է այն ճանապարհացույցին, որը պահպանվել է էջմիածնի 971—981 թվերի ձեռագրում [№ 2679, ըստ Գևորգյան գրացուցակի № 102]։

Այդ հնագույն ցուցակի հայերեն բնագիրը հրապարակված է Մովսես Խորենացուն վերաբերող իմ ուսումնասիրության մեջ, իսկ այդ բնագրի ռուսերեն թարգմանությունը — իմ հոդվածում՝ «Средневековый итинерарий в армянской рукописи X столетия», որը տպագրված է գիտությունների Ակադեմիայի ժողովածուի մեջ, որ նվիրված է ակադ. Ն. Մառի[3] քառասունամյա հոբելյանին։ Այդ բնագիրը, անշուշտ, առանձնապես հետաքրքիր է, որովհետև նրանով որոշվում է ճանապարհացույցի ծագման վերջնական տարեթի-

[1] Տե՛ս «Hudud-al-Alam», էջ 403։

[2] Տե՛ս նույն տեղում, էջ 404։

[3] Տե՛ս իմ աշխատ. «Խորենացու առեղծվածի լուծումը», 1934, էջ 85—87 և «Академия наук акад. Н. Я. Марру» ժողովածուն, 1935, էջ 723—728։

վը — մինչև 971—981 թվերը։ Բացի այդ, այդ ցուցակը նախկին տպագիր հրատարակությունների համեմատությամբ ունի որոշ մանրամասնություններ, իսկ բնագրի սկզբում տալիս է շատ արժեքավոր տեղեկություններ հին մղոնաչափերի և ստադիոնների մասին, որոնք, ինչպես կտեսնենք, հանդիսանում են իբրև բանալի ճշգրիտ և անվիճելի կերպով որոշելու ճանապարհների հեռավորությունները։

Բերում ենք նոր ցուցակի բնագիրը «Աղվեսագրքի» Մարսելի հրատարակության [1683] այն տարբեր ընթերցվածքների հետ, որոնք կարևոր են ճանապարհացույցի բովանդակության համար։

## ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԱՑՈՒՅՑԸ

[Նշումներ՝ E=էջմիածնի ձեռագիրը, № 2679,
M=«Աղվեսագրքի» Մարսելի հրատարակությունը, 1683 թ.]

«Գիտելիք հեռավորությունների մասին մղոններով։ Ստադիոնը — 170 քայլ, քայլը—6 ոտք, ոտքը—16 մատ, մղոնը—7 ստադիոն. պարսկական հաշվարկմամբ ստադիոնը—143 քայլ, մղոնը—1000 քայլ, ֆարսախը—3 մղոն։

1. Դվինից դեպի Կարին 200 մղոն. Կարինից մինչև սահմանային խանդակը[1] 100[2]. այդտեղից դեպի Կոլոնիա 90. այդտեղից դեպի Նեոկեսարիա[3] 100. այդտեղից դեպի Ամասիա 80. այդտեղից դեպի Գանգրա 105[4]. այդտեղից դեպի Անգարա 80. այդտեղից դեպի Կոստանդնուպոլիս 120[5]. այդտեղից դեպի Հռոմ 3000[6]։

2. Դվինից դեպի Խլաթ 170 մղոն. այդտեղից դեպի Քղիմար 80. այդտեղից դեպի Ուռհայ 180. այդտեղից դեպի Եփրատ գետը 40. [այդտեղից դեպի Էմեսա 150][7]. այդտեղից դեպի Դամասկոս 120[8]. այդտեղից դեպի Թափոր լեռը 90. այդտեղից դեպի Երուսաղեմ 100։

3. Դվինից դեպի Բերդկունք 60 մղոն. այդտեղից դեպի Պարթավ 160. այդտեղից դեպի Կասպից ծովը 90։

---

1 M—«Մինչև խանդակը, որ բաժանում է հայերի երկիրը հույների երկրից». «Академия наук акад. Н. Я. Марру» ժողովածու, 1935, էջ 723—728։

2 M—«120».

3 M—«Դեպի Նեոկեսարիա, E սխալմամբ դեպի Նիկիա».

4 M—«130».

5 M—«320».

6 M—«6000». E—«90 փոխանակ=3000»։

7 Այդ տարածությունը, որ E-ում բաց է թողնված, կա M-ի մեջ.

8 M—«100»։

4. Դվինից դեպի Նախիջևան 70 մղոն. այդտեղից դեպի Գանձակ Շահաստան 120. այդտեղից դեպի Տիզբոն 370. այդտեղից դեպի Կուֆա 70. այդտեղից դեպի Բասրա 140. այդտեղից դեպի Պարսից ծոցը 20։

5. Գանձակից[1] դեպի Նինվե 120[2], այդտեղից դեպի Մծբին 120[3]. այդտեղից դեպի Ուռհայ 150։

6. Նախիջևանից դեպի Արդաբիլ 200 մղոն. այդտեղից դեպի Վարդանակերտ 70. այդտեղից դեպի Փայտակարան 60. այդտեղից դեպի Կասպից ծովը 50[4]։

7. Դվինից դեպի Կողբ 50. այդտեղից դեպի Կոտագյուղ 20[5]. այդտեղից դեպի Թիֆլիս 140. այդտեղից դեպի Հոմարակերտ 70. այդտեղից դեպի Պարթավ 100։

8. Երուսաղեմից դեպի Աղեքսանդրիա քաղաքը 500. այդտեղից դեպի Պենթապոլիս 1000. այդտեղից դեպի Տրիպոլիս 550[6]. այդտեղից դեպի Աֆրիկա 1500[7]. այդտեղից դեպի Սեպտա 900. այդտեղից դեպի օվկիանոս 2000[8]։ Հեռավորությունների վերջավորությունը մղոններով»։

Մեջ բերված հայկական ճանապարհացույցի տվյալներում կան, ինչպես տեսնում ենք, շատ հետաքրքիր տեղեկություններ այն ճանապարհների մասին, որոնք գնում էին Դվինից—Կարնո, Խլաթի և Նախիջևանի վրայով դեպի Բյուզանդական կայսրության և արաբական խալիֆատի խոշոր առևտրական կենտրոնները։

Պետք է նախ և առաջ նշել, որ այս ճանապարհացույցում, ինչպես մանրամասնորեն պարզված է իմ «Հայաստանի գլխավոր ճանապարհները»[9] աշխատության մեջ, Դվինից դեպի Պարթավ գնացող ճանապարհի սկզբնական մասը ցույց է տրված ո՛չ թե Շարուրի,

---

1 Գանձակի տակ հասկացվում է, անշուշտ, Գանձակ Շահաստան և Նինվեյի տակ—Մուսուլ։

2 M—«100»։

3 M-ի մեջ բաց է թողնված Նինվեի հեռավորությունը Մծբինից։

4 Այդ ամբողջ հատվածը [6] M-ի մեջ չկա։

5 M—«Դեպի Կոտ գյուղը 105»։

6 M—«300»։

7 M—«1030»։

8 M—«Դեպի անհայտ օվկիանոսը 1000»։ Սեն-Մարտենի ֆրանսիական թարգմանության մեջ Ամասիայի և Անկարայի հեռավորությունը իրարից ցույց է տրված 108 մղոն, Կոստանդնուպոլսի և Հռոմի միջև 3000 մղոն. Ղրիմից դեպի Եդեսիա 160 մղոն. Բերդկունքից դեպի Պարթավ 140 մղոն. և Պարթավից դեպի Կասպից ծովը 20 մղոն։

9 Երևան, 1936, էջ 194—195 և 249։

Սիսականի և Սելիմի լեռնանցքի վրայով, ինչպես արաբական աշխարհագիրների մոտ, այլ քոլորովին ուրիշ ուղղությամբ՝ Երևանի, Ելենովկայի և Ղարանլուղի վրայով։ Երկու ճանապարհները միանում էին Գեղարքունիքում և գնում էին դեպի Պարթավ Ջոդի լեռնանցքի վրայով։

Բերդկունքի տեղադրությունը, որ գտնվում էր Դվինից 60 մղոն [=115 կմ.] հեռավորության վրա, որոշվում է հին-հայկական Մազազ գավառում, Ելենովկայից դեպի հարավ-արևելք, մոտավորապես Աղկալայի տեղում, որի մոտ ներկայումս գտնվում են հին քաղաքի ավերակները։

Հատկապես կարևոր է հայկական ճանապարհացույցում Դվինից դեպի Կողբ գնացող ճանապարհի հիշատակումը և այդտեղից դեպի Կոտ-գեղ և Թիֆլիս։ Մարկվարտի կարծիքով, Կողբը նույնական է այժմյան Կողբին։ Կողբից ճանապարհը դեպի Թիֆլիս նա ենթադրում է այժմյան Լենինականի [Ալեքսանդրոպոլ] վրայով դեպի Կոտ-գեղ, որը նա համարում է սահմանային կետ Հայաստանի և Վրաստանի միջև։ Այդ ճանապարհի ուղղությունը Լենինականից Կոտ-գեղի վրայով դեպի Թիֆլիս Մարկվարտը դժվարանում է որոշել Կոտ-գեղի տեղադրությանը վերաբերող տվյալների բացակայության պատճառով[1]։ Այդ ճանապարհի որոշումը, ինձ թվում է, հնարավոր է, եթե նկատի առնվի Կողբի և Թիֆլիսի միջև եղած հեռավորությունը՝ Կողբից դեպի Կոտ-գեղ 120 կամ 105 մղոն և Կոտ-գեղից դեպի Թիֆլիս 140 մղոն։ Մարկվարտը ճիշտ ցույց է տվել, որ ճանապարհը Կողբից դեպի Լենինական գնում էր Արփա-չայի աջ կողմով։ Լենինականից դեպի Թիֆլիս գոյություն ունեն, ինչպես հայտնի է, երեք ճանապարհ՝ 1. արևելյանը — Փամբակ և Դեբեդ գետերի երկարությամբ. 2. մեջտեղի — այժմյան Վարանցովկայի և Եկատերինենֆելդի վրայով և 3. արևմտյանը — Ախալքալաքի—Բակուրիանիի—Բորժոմի վրայով և ապա Կուր գետի երկարությամբ։ Այդ ճանապարհներից վերև հիշված հեռավորությանը [260 կամ 245 մղոն=մոտավորապես 500 կամ 470 կմ.] համապատասխանում է հեռավոր արևմտյան ճանապարհը Ախալքալաքի—Բակուրիանիի—Բորժոմի վրայով։

Եվ, իսկապես, այդ ճանապարհի վրա Կողբից մոտավորապես 105—120 մղոն հեռավորության վրա[2] [=մոտավորապես 200—

---

[1] Markwart, Das Itinerar von Artaxata nach Armastica, S. 55—57:

[2] Պետք է նշել, որ իսկական թվերը վերականգնելու համար, պետք է համեմատել և քննարկման ենթարկել այդ ճանապարհացույցի գոյություն ունեցող բոլոր ցուցակները և օգտագործել այն բնագրի քննական հրատարակության համար։

230 կմ.] Ախալքալաքի և Գոտոլյար կայարանի միջև գտնվում է Կոտելիա գյուղը, որը ըստ Երևույթին նույնական է ճանապարհացույցի Կոտ-գեղին։ Մեր ենթադրությունը ավելի քան հավանական է, որովհետև Կոտելիայից դեպի Թիֆլիս հետագա ճանապարհի երկարությունը ևս համապատասխանում է ճանապարհացույցի մեջ ցույց տրված հեռավորությանը [140 մղոն=մոտ. 268 կմ.]։

Մեջ բերված հայկական ճանապարհացույցի հնագույն ցանկում հատկապես արժեքավոր է, ինչպես նշված է վերևում, վերնագրից հետո եղած հաղորդագրությունը մղոնների և ֆարսախների մասին։ Այդ հաղորդագրության մեջ հիշվում է ստադիոնը, որը հավասար է 170 քայլի, և ստադիոնը «ըստ պարսկական հաշվի», որ հավասար է 143 քայլի։ Այդ վերջին ստադիոնի տակ, ինչպես պարզված է իմ չափագիտական «Կշիռները և չափերը հնագույն հայկական աղբյուրներում»[1] աշխատության մեջ, հին հայկական հեղինակները նկատի են ունեցել պարսկական երկարության [գծային] չափերի ստադիոնը կամ ասպարեզը, որը եգիպտական-արաբական չափերի համակարգության մեջ կոչվում էր ghalva, որ հավասար էր 230,112 մ.[2]։

Մովսես Խորենացու «աշխարհացույցի» ընդարձակ օրինակի մեջ այդ պարսկական ստադիոնի երկարությունը որոշված է ոչ թե 143, այլ 144 քայլ։ Այդ 144 ընթերցվածքը 143-ի փոխարեն, ինչպես երևում է իմ «Կշիռները և չափերը» աշխատության մեջ բերված մանրամասն հաշիվներից, պետք է համարել ավելի ճիշտ։ Ուստի այդ քայլը հավասար կլինի 230,112:144=1,598 մետրի։

Ցուցակում եղած մյուս ստադիոնի որոշման համար պետք է նկատի ունենալ, որ նրա երկարությունը ցույց է տրված կլոր թվով։ Սակայն իրականապես այդ ստադիոնը, ինչպես դժվար չէ ուշադիր չափագիտական քննությամբ որոշել, հավասար է եղել ոչ թե 170, այլ $171^3/_7$ քայլի [$^{1200}/_7$]։

Մեջ բերված հատվածի երկարության [գծային] և ճանապարհային չափերը, համաձայն հիշված տվյալների կստացվեն հետևյալ հարաբերությամբ —

1. Քայլը $^1/_{114}$ պարսկական ստադիոնի=230,112:144=1,598 մ.
2. Ստադիոնը=$^{1200}/_7$ քայլ=1.598×$^{1200}/_7$=$273,9^3/_7$ մ.
3. Մղոն=7 ստադիոն=1200 քայլ=1,598×1200=1917,6 մ.
4. [Ֆարսախը=3 մղոն=1917,6×3=5752,8 մ.]

---

[1] Երևան, 1930, էջ 98—110։

[2] Համեմատել J. A. Decourdemanche, Traité pratique des poids et mesures, des peuples anciens et des arabes, Paris, 1909, p. 82 և 88.

5. Ստադիոնը «ըստ պարսից հաշվի»=144 քայլ=1.598×144=230,112 մ.

6. Մղոն պարսկական=1000 քայլ=1598 մ.

7. Ֆարսախ=3 մղոն=1598×3=4794 մ.

Այդ հաշվարկումները կասկածի ենթակա չեն, որովհետև բերված գծային և ճանապարհային չափերը միանգամայն իրական են և գտնվում են Դեկուրդեմանշի[1] համեմատական չափագիտության մեջ։

Առաջին մղոնը և նրան համապատասխան ֆարսախը արաբական ճանապարհային չափեր են, որոնցով ցույց են տրված վերևում հիշված հեռավորությունները արաբական ճանապարհացույցներում։ Իսկ երկրորդ մղոնը համապատասխանում է իսկապես պարսկական նոր մղոնին, որը նույնական էր հռոմեական մղոնին՝ 5000 քաբելոնյան ոտք [=0.3196×5000=1598 մ.]։

Անկասկած է նաև, որ բերված միջնադարյան հայկական ճանապարհացույցին հիմք է ծառայել արաբական մղոնը, որը հավասար է եղել 1917,6 մ.։ Դժվար չէ ստուգել այդ հենց իր ճանապարհացույցի տվյալներով։ Նրանում ցույց տրված Դվինի և Նախիջևանի միջև եղած տարածությունը 70 արաբական մղոն, որ կազմում է [1917,6×70=134,232] իսկապես համապատասխանում է Դվինի տեղում գտնվող այժմյան Արտաշատի և Նախիջևան քաղաքի միջև եղած հեռավորությանը։ Նախկին փոստային ճանապարհով Նախիջևանի հեռավորությունը Ղամարլու գյուղից, որը գտնվում է Արտաշատ—Դվինից մի քանի կիլոմետր դեպի հարավ, կազմում է նաև ներկայումս 127 կմ.։ Հետևաբար, վերևում հիշված մեր եզրակացությունները միանգամայն հաստատվում են նաև արդիական տըվյալներով։

Որովհետև բերված ճանապարհացույցը պահպանվել է 971—981 թվականների ձեռագրում և նրանում հեռավորությունները ցույց են տրված արաբական մղոններով, ուստի միանգամայն պարզ է, որ նրա երևան գալը պետք է ենթադրել VII—X դարերում։ Այդ ճանապարհացույցում, ինչպես պարզել են իմ ուսումնասիրությունները[2], կան Մովսես Խորենացուն վերագրվող «Հայկական աշխարհացույցի» հետ շփման կետեր, ուստի դժվար չէր եզրակացնել, որ բեր-

---

[1] Համեմատել J. A. Decourdemanche, Traité pratique des poids et mesures des peuples anciens et des arabes, Paris, 1909, p. 67, 68, 76, 82, 89, 133 և 135:

[1] Տե՛ս Сборник «Академия наук академику Н. Я. Марру», էջ 726—728։

ված ճանապարհացույցը հանդիսանում է Բագրատունյաց դարաշրջանի գործ և գրված է IX դարում։

Հին հայկական գրական հիշատակարանները ուսումնասիրելու և տարեթվերը որոշելու ընթացքում ինձ համար իբրև ուղեցույց ծառայել է Հայաստանի սոցիալական ու տնտեսական զարգացման այն ընդհանուր ըմբռնումը, որ նշված է իմ աշխատություններում։ Իմ համոզմունքով, այնպիսի հիշատակարաններ, ինչպիսիք «Հայկական աշխարհացույցն» է և «Հեռավորությունը մղոններով», որոնք առանձին հետաքրքրություն էին ներկայացնում հարուստ դասի և հայ վաճառականության համար, կարող էին երևան գալ Հայաստանում առևտրի և միջազգային հարաբերությունների զարգացման դարաշրջանում, հատկապես IX դարում։ Տանել նրանց արաբական տիրապետության առաջին դարերը կլիներ շատ կասկածելի, որովհետև VII—VIII դարերը եղել են Հայաստանի համար միջազգային առևտրի լճացման շրջան։

Արաբական և հայկական վերևում հիշված աղբյուրների տեղեկություններով, ինչպես տեսնում ենք, որոշվում են Հայաստանի և Անդրկովկասի հաղորդակցության հիմնական ճանապարհները Արաբական խալիֆայության դարաշրջանում։ Պետք է նշել, որ քննարկված ճանապարհները ավելի հանգամանորեն ուսումնասիրելու համար անհրաժեշտ է հետազոտել և հրատարակել նաև այն չհրատարակված ճանապարհացույցները, որոնք գտնվում են հին հայկական ձեռագրերում։

---

# ՔԱՂԱՔՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ 10—11-ՐԴ ԴԱՐԵՐՈՒՄ[1]

*10—11-րդ դարերը հայ ժողովրդի պատմական անցյալում տնտեսական և կուլտուրական մեծ ու անօրինակ վերելքի շրջան էին։ Այդ վերելքի հիմքը և առանցքը կազմում էին, ինչպես այժմ պարզված է, քաղաքների արագ բարգավաճումը, առևտրի ու ապրանքային տնտեսության բուռն զարգացումը և հարուստ ու ազդեցիկ առևտրական հայ բուրժուազիայի զորեղացումը։*

*Հովհաննես Դրասխանակերտցին տնտեսական այս վերելքի մասին գրում է.*

*«Իսկ այն օրերում Տերը բարեհաճ վերաբերվեց Հայաստան աշխարհին, պատսպարեց և աջողություն շնորհեց ամեն տեսակ բարի գործերում։ Ամեն մարդ բնակվեց իր ժառանգության մեջ և, սեփականելով իր երկիրը՝ տնկեց այգիներ և աճեցրեց ձիթենիների ու պարտեզների բուրաստաններ. հերկեցին հերկ փշերից հեռու և հավաքեցին պտուղ հարյուրապատիկ. լիքը լցվեցին հոմձը վերջանայուց հետո ցորենի ամբարները և լցվեցին այգեկութից հետո գինու հորերը. ցնծությունը տիրեց լեռներին, որովհետև նրանց վրա շատացան արածող տավարի նախիրները և ոչխարի հոտերը։ Եվ մեր գլխավոր նախարարները, ապահովվելով և հանգստանալով ասպատակների հարձակումներից՝ շինում էին մենաստաններում, ավաններում ու ագարակներում քարաշեն, հաստահեղույս, կրաձույլ եկեղեցիներ»։*

*«Իսկ աշխարհիս Հայաստանեայց յաւուրսն յայնոսիկ այց արարեալ Տեառն և պատսպարեալ և յաջողեալ ի բոլոր բարութիւնս՝ բնակեցան իւրաքանչիւրոք ժառանգութիւնս իւրեանց. և սեպհականեալ*

---

[1] *Տե՛ս առանձին գրքույկով, Արմֆանի հրատարակությամբ, Երևան, 1940 թ.։*

զերկիր՝ տնկեցին այգիս և արմատացուցին բուրաստանս ձիթենեաց և պարտիզաց. հերկեցին հերկս արտաքոյ փշոց և կթեցին պտուղս հարիւրաւորս. զեղան շտեմարանք ցորենոյ ի ժամանակի լրութեան հնձոց. լցան գուբք գինւոյ ի կութս այգեստանեայց և լերինք ցնծութիւն զգեցան, զի բազմացան ի նմա արօտականք անդեայք արջառոց և հօտք ոչխարաց։ Եւ գլխաւոր նախարարք մեր յապահովցեալք և հանգուցեալք ի հինից ասպատակաց՝ շինէին եկեղեցիս վիմարդ, հաստահեղոյս ձուլեալ կրով՝ ի մենաստանս և յաւանս և յագարակս»[1]։

Որ Բագրատունյաց թագավորության ժամանակաշրջանը, իրոք, մի նոր դարաշրջան էր Հայաստանի տնտեսական ու կուլտուրական մեծ զարգացման՝ այդ պարզ երևում է ոչ միայն հայ, այլև օտար աղբյուրների վկայություններից։

Ինչպես հայտնի է նորագույն աշխատություններից, արաբական մատենագիրները Բագրատունյաց Հայաստանը համարում էին իրենց ամենահարուստ երկրներից մեկը։ Տասներորդ դարի արաբական աշխարհագիր Իբն-Ֆակիհը իր «Գիրք երկրների մասին» գրվածքում մատնանշում է, որ միմիայն Արաքսի գետահովիտում նրա ժամանակ եղել են մոտ 1000 քաղաք ու գյուղ[2]։ Նմանապես և Յակուտն իր «Աշխարհագրական բառարանի» մեջ Հայաստանում գտնվող քաղաքների ու գյուղերի քանակի մասին տալիս է դարձյալ չափազանց մեծ թիվ՝ 18.000 մեծ և փոքր գյուղաքաղաքներ[3]։

Արաբական հեղինակների այս և նման տեղեկությունները, որ թվում են խիստ չափազանցված՝ ճիշտ են, ըստ երևույթին, միայն այն չափով, ինչ չափով որ նրանք համապատասխանում են Ստեփանոս Ասողիկի վկայության։ Տարոնեցի այս պատմիչը, որը Բագրատունյաց շրջանի պատմագիր է՝ մատնանշում է, որ Սմբատ Ա-ի (890/1—913/4 թ.) և Աշոտ Ա-ի (887—890/1 թ.) ժամանակ, ուրեմն, իններորդ դարի վերջերում և տասներորդ դարի սկզբներում՝

«Հայոց աշխարհում շենություն էր և խաղաղություն, և համաձայն մարգարեության ամեն մեկը հանգչում էր իր որթի ու թզենու տակ։ Եվ այսպես իրենց բազմամարդությամբ ու ընչեղությամբ ագարակները դառել էին ավաններ և ավանները քաղաքներ. մինչև

---

[1] Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 198—199։

[2] Տե՛ս Լոռան, «Հայաստանը Բյուզանդիայի և Իսլամի միջև» (ֆրանսերեն), Փարիզ, 1919, էջ 44։

[3] Նույնը, էջ 44։

*էսկ հովիվներն ու նախրապանները հագնում էին մետաքսե պատմուճաններ»։*

*(«Յաւուրս սորա և յիշխանութեան հօր իւրոյ էր շինութիւն և խաղաղութիւն յաշխարհիս Հայոց ըստ մարգարէութեանն՝ հանգչել իւրաքանչիւր ուրուք ընդ որթով իւրով և ընդ թզենեաւ։ Եւ այսպէս ագարակաց աւանացեալ և աւանաց քաղաքացեալ բազմամարդութեամբ և ընչեղութեամբ, մինչև հովուաց և անդէորդաց մետաքսեայս զգենուլ պատմուճան»)*[1]*։*

*Ասողիկի այս վկայության մեջ չափազանցված է, անտարակույս, նրա հաղորդած տեղեկությունը նախրապանների ու հովիվների մետաքսե շորերի մասին։ Մենք մատնացույց էինք արել «Հայաստանի առևտրի ու քաղաքների մասին» ռուսերեն մեր աշխատության մեջ, որ Բագրատունյաց թագավորության ժամանակաշրջանում բնակչության ստորին խավերի դրությունը ոչ միայն չէր թեթևացել, այլև խիստ ծանրացել էր*[2]*։ Սակայն, Ասողիկի մյուս կարևոր տեղեկությունները Հայաստանի բարգավաճման և ագարակների ավանացման ու ավանների քաղաքացման մասին, ինչպես տեսնում ենք, լիովին համապատասխանում են արաբական մատենագիրների վերոհիշյալ վկայություններին և, ուրեմն, կարող են միանգամայն հավաստի ու վստահելի համարվել։*

*Ասողիկի և արաբական աղբյուրների վկայություններին կարող է կռվան ծառայել, ըստ իս, նաև այն, որ հայ մատենագրական երկերը Բագրատունյաց Հայաստանում հիշատակում են, իբրպես, մեծ թվով «գյուղաքաղաքներ» և «քաղաքագյուղեր», որոնք, հավանորեն, հենց այն հին ավաններն էին, որ դառել էին քաղաքներ։ Հովհաննես Դրասխանակերտցու մոտ մատնանշված են, օրինակ, հետևյալ «քաղաքագյուղերը»՝ «Արուճ», «Աւան», «Բագարան», «Երազգաւորք», «Երևան», «Կողբ», «Մրեն», «Քարունջ», «Գառնոյ գիւղաքաղաք» ու «Թալնայ գիւղաքաղաք» են։*

*Դվին — Պարթավ հին ճանապարհի վրա, ինչպես մատնացույց էինք արել «Հին Հայաստանի գլխավոր ճանապարհները» մեր աշխատության մեջ*[3]*, նաև այժմ գտնվում են հին Բերդկունքի ու Մաքենիսի ընդարձակ ավերակները, որոնք կոչվում են «Ազատ քաղաք»-ներ*

---

[1] *«Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան, Պատմութիւն տիեզերական», Ս. Պետերբ., 1885, III գլ. Գ, էջ 161։*

[2] *Տես* «О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен», Эривань 1930, էջ 145։

[3] *Տե՛ս էջ 185—192։*

և որոնք նշանավոր կենտրոնավայրեր են եղել Բագրատունյաց թագավորության ժամանակաշրջանում։

Հավանորեն, թե այս «Ազատ քաղաք»-ները և թե Հովհաննես Դրասխանակերտցու մոտ հիշատակված վերոհիշյալ «գիւղաքաղաք»-ները հենց այն «քաղաքացեաց աւան»-ներն են, որ հիշված են նաև Ասողիկի մոտ։

Հայաստանի բարգավաճ վիճակը և քաղաքային կյանքի զարգացումը Բագրատունյաց շրջանում, 10—11-րդ դարերում, ինչպես տեսնում ենք, միանգամայն անժխտելի է և հաստատվում է մատենագրական բազմաթիվ վկայություններով։

* *
*

Արդ՝ ինչո՞վ պետք է բացատրել այդ արտակարգ բարգավաճումը 10—11-րդ դարերում։

Մեր նախորդ աշխատություններից մեկում մենք արդեն մատնացույց էինք արել[1], որ արաբական տիրապետության սկզբնական շրջանում՝ 7—8-րդ դարերում, Հայաստանի տնտեսական կյանքը ետ էր մղվել իր առաջավոր դիրքերից և զարգանում էր բնական տնտեսության հետադարձ հիմքերի վրա։

Օմայանների և առաջին Աբբասյանների ժամանակ Արևելքի առևտուրը Բյուզանդիայի հետ գրեթե անհնարին էր դառել շնորհիվ բյուզանդա-արաբական պարբերաբար կրկնվող համառ պատերազմների։

Այս դրությունը հետզհետե փոխվեց, սկսած իններորդ դարից և, գլխավորապես, 10—11-րդ դարերում։

Արաբական խալիֆայության աստիճանական թուլացման և Բյուզանդական կայսրության զորեղացման պատճառով Բագրատունյաց Հայաստանի քաղաքական ու տնտեսական զարգացման համար անսպասելի կերպով ստեղծվեցին այդ ժամանակ բացառիկ նպաստավոր պայմաններ։ Իններորդ դարի վերջերին Շիրակի Բագրատունիները, որոնք դառել էին արաբական խալիֆայությանը ենթակա, սակայն ինքնիշխան թագավորներ՝ աշխատեցին չեզոք մնալ ու չմասնակցել բյուզանդա-արաբական կռիվներին։ Նրանց երկիրը, որը Թեոդոսուպոլսի ու Արտանուջի վրայով հաղորդակցություն ուներ Տրապիզոնի և բյուզանդական այլ նավահանգիստների հետ՝ ոչ միայն մեծ նշանակություն ստացավ իբրև համաշխարհային առև-

[1] Տե՛ս «О торговле и городах Армении» էջ 130—140

*ուրի տրանզիտային ճանապարհ, այլև դառավ տնտեսական խղեալական բուֆեր երկիր և չեզոք վայր միջազգային առևտրի։*

*Ռուս գիտնական Գուրկո-Կրյաժինը, որը մասնացույց է արել կարևոր այս փաստը՝ Բագրատունյաց Հայաստանի առևտրական դերը համարում է բացառիկ ու արտակարգ այն պատճառով, որ այս ժամանակաշրջանում բոլորովին ընդհատված էին համաշխարհային առևտրական հարաբերությունները Ասորիքի ու Փոքր Ասիայի վրայով։*

*Պոնտական Տավրոսից սկսած մինչև Միջերկրական ծովը, ասում է Գուրկո-Կրյաժինը*[1], *մոտ 600 կիլոմետր երկարությամբ և 300 կիլոմետր լայնությամբ տարածվում էր սահմանային լայն գիծը, որը երկու կողմից էլ ծածկված էր ամրություններով և բյուզանդական սարատիոնների ու մուսուլմանական ղազիների զորական բնակավայրերով, որոնք դարերի ընթացքում վարում էին սահմանային կռիվներ։ Աշխարհագրական այս պայմաններում Բագրատունյաց Հայաստանը դառել էր, բնականաբար, գլխավոր ու միակ տրանզիտային ճանապարհը և միակ հարմար ու ապահով վայրը համաշխարհային առևտրի։*

*Բագրատունիների հովանավորության տակ զարգացող մեծ առևտրի վերակենդանացմանը պետք է վերագրել, անշուշտ, թե Հայաստանի տնտեսական բարգավաճ վիճակը և թե հոյակապ քաղաքների հիմնումն ու նրանց բուռն արագ աճումն այս ժամանակաշրջանում։*

* *
*

*Տնտեսական այս վերելքի շրջանում, տասներորդ դարում, հիմնվել են Հայաստանում, խալիֆայությունից Դվինի վրայով Տրապիզոն տանող տարանցիկ ճանապարհի մոտ՝ Անին, Կարսը և Արծնը, որոնք ամենակարճ ժամանակում դառան խոշոր ու փարթամ քաղաքներ։*

*Անին, որը հայ մատենագրության մեջ 10-րդ դարից առաջ հիշատակված է որպես ամրոց՝ շուտով հայտնի եղավ իբրև տիեզերահռչակ մեծ քաղաք։ Աշոտ Ողորմածի ժամանակ՝ 953 թվին, նա դառավ զահանիստ կենտրոն ու Շիրակի թագավորության մայրաքաղաք։ Նրա ընդարձակ պատմությունը և պեղումների միջոցով հայտ-*

[1] *Տես* В. Гурко-Кряжин, Прошлое и настоящее Советской **Армении,** «Новый Восток», **Москва,** 1927, кн. **16—17,** *էջ* **205—206**։

նաբերված հնությունների մանրամասն նկարագրությունը տվել են ակադեմիկներ Ն. Մառը և Հ. Օրբելին[1]։

Անիից Արծն և Արտանուջ տանող ճանապարհի վրա գտնվում էր Կարսը, որը նախքան տասներորդ դարը հիշվում է նույնպես որպես ամրոց՝ «ամուրն Կարուց», «Կարուց բերդն»։ Սրա արագ աճումը և վերածվելը տասներորդ դարում խոշոր քաղաքի կապ ուներ դարձյալ տրանզիտային ու միջազգային մեծ առևտրի զարգացման հետ։ Աշոտ Երկաթի եղբայրը և հաջորդը՝ Աբաս Ա-ը (928—953) ի նկատի ունենալով Կարսի ռազմական ամուր դիրքը՝ նրան դարձրեց իր թագավորության աթոռանիստ կենտրոնը։ Իսկ Աբաս Ա-ի մահից հետո՝ նրա որդին՝ Մուշեղը, չճանաչեց իր մեծ եղբոր՝ Անիի թագավոր Աշոտ Ողորմածի իշխանությունը և իր կուսակիցների կողմից ինքը ևս կարգվեց Կարսի մեջ թագավոր։ Եվ այսպիսով սկիզբ դրվեց Կարսի կամ Վանանդի թագավորության։ Նկարագրելով այս քաղաքի ավերումը Սելջուկյան արշավանքների ժամանակ՝ 11-րդ դարի հայ մատենագիր Արիստակես Լաստիվերտցին վկայում է, որ նա հարըստացել էր «բազում ընչեղութեամբ ի ծովէ և ի ցամաքէ ամբարեալ»[2]։ Լաստիվերտցու այս խոսքերը, ինչպես տեսնում ենք, պարզ կերպով ցույց են տալիս, որ Կարսի հարստացման աղբյուրը եղել է ծովային ու ցամաքային առևտուրը։

Կարսից միջազգային առևտրի տարանցիկ ճանապարհը գնում էր Թեոդոսուպոլսի մոտ գտնվող Արծն քաղաքը, որը նույնպես հիմնըված էր 10-րդ դարում։ Արիստակես Լաստիվերտցին վկայում է, որ Արծն քաղաքը

«Հոյակապ էր ու հայտնի էր բոլոր երկրներում, իբրև մի քաղաք որ լեռան վրա է. և ծովը և ցամաքը երկնում էին և առատաձեռն կրում էին նրան իրենց կարողությունը»։

(«Որ հոյակապ և ականաւոր էր ամենայն աշխարհաց, իբրև զքաղաք, որ ի վերայ լերինն կայցէ. և ծով և ցամաք երկնէր և առատանայր կրել ի սմա զզօրութիւն իւր)[3]։

Ինչպես մատնացույց է արել ֆրանսիական պատմագետ Լոռանը[4], Արծն քաղաքը հիշատակված է նաև բյուզանդական մատենագիրներ Ատտալիատեսի և Կեդրենոսի հետևյալ վկայություններում։

---

[1] Տե՛ս Н. Я. Марр, Ани, Ленинград, 1934 և Օրբելի, Անվո ավերակները, թարգմ. ռուսերենից, 1911։

[2] Տե՛ս «Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ», Թիֆլիս, 1912, գլ. ԺԵ, էջ 91։

[3] Տե՛ս նույնը, գլ. ԺԲ, էջ 78։

[4] «Հայաստանը Բյուզանդիայի և Իսլամի միջև», Փարիզ, 1919, էջ 44, ծան. 1։

*1. Միքայել Ասորի, Պատմություն, Բոնն 1853, էջ 148՝*

*«Թեոդոսուպոլիսը թողնված էր ու լքված տարիներ առաջ և գերադասություն էր տրված լավ դիրք ունեցող Հարկան Արծն քաղաքին, ուր ծավալվել էր մեծ անպարիսպ այդ քաղաքը և ուր վաճառվում էին այն ամենը, ինչ որ արտադրում էին Պարսկաստանը, Հնդկաստանը և Ասիայի մյուս երկրները»։*

*2. Կեդրենոս, Ժամանակագրություն, Բոնն 1838, II, էջ 577՝*

*«Սա (Արծնը) անպարիսպ քաղաք է, բազմամարդ և խիտ հարուստ։ Այստեղ բնակվում էին տեղական վաճառականներ և նաև մեծ թվով ասորիներ, հայեր և ուրիշ ժողովուրդներ։ Որովհետև սրանք շատ էին թվով, ուստի և անհրաժեշտ չէին համարում ապրել պարիսպների ետև, չնայած որ մոտ էր Թեոդոսուպոլիսը, որը մեծ ու հզոր քաղաք էր և ուներ անառիկ շրջապարիսպ»։*

Ինչպես տեսնում ենք, նաև Արծն քաղաքի միջազգային առևտրական կենտրոն լինելը պարզ երևում է մեջ բերված վկայություններից։

Կարս քաղաքից մի այլ գիծ գնում էր Արտանուջի վրայով դեպի Սև ծովի արևելյան նավահանգիստները։ Առևտրական այս ճանապարհագծի վրա խոշոր ու հարուստ քաղաք էր դառել Արտանուջը, ուր ութերորդ դարի վերջում հաստատվել էր Բագրատունիների Կղարջքի ճյուղը, որն իններորդ դարում հիմնադիր եղավ նոր հարստության Վրաստանում։ Արտանուջի առևտրական մեծ դերը մատնացույց է արել բյուզանդական Կոստանդին Ծիրանածին կայսրը (913—959) իր «Պետության կառավարման մասին» գրվածքում (գլ. 46)[1]։

«Վաճառականները,— ասում է նա,— գալիս են այստեղ Տրապիզոնից, Վրաստանից, Աբխազիայից և բոլոր կողմերից։ Այդ վաճառականներից ստացվում է բավական մեծ մաքս»։

Բացի Անիից, Կարսից, Արծնից և Արտանուջից, որոնք ամենակարճ ժամանակում զարգացել ու դառել էին շքեղ ու փարթամ քաղաքներ, 10—11-րդ դարերում զորեղացել ու հարստացել էին նաև Հայաստանի նախկին քաղաքները՝ Դվինը, Վաղարշապատը, Վանը, Արճեշը, Խլաթը և մյուս կենտրոնները։

Քաղաքների ու քաղաքային կյանքի արտակարգ մեծ զարգացումը 10—11-րդ դարերում, որ հետևանք էր միջազգային առևտրի բուռն վերակենդանացման, ինչպես տեսնում ենք, դարձյալ ակներև

---

[1] De administrando impio, ed. Bonn, էջ 208։

ու ցայտուն կերպով ցույց է տալիս, որ Բագրատունյաց թագավորության ժամանակաշրջանը տնտեսական մեծ վերելքի մի շրջան էր։

* *
*

Բագրատունյաց Հայաստանի բուռն այս վերելքը պայմանավորված էր, անտարակույս, նաև նրանով, որ Հայաստանը, 10-րդ դարի երկրորդ քառորդից սկսած, ավելի քան մեկ դար, գրեթե չենթարկվեց հարձակումների ու ավերածությունների և ապրեց խաղաղ ու հանգիստ մինչև 11-րդ դարի քառասնական թվականները՝ մինչև Սելջուկյան արշավանքները։

Քաղաքական անդորրության և տնտեսական բարգավաճման բարենպաստ պայմաններում ցայտուն կերպով արտահայտվեցին հայ ժողովրդի ստեղծագործական մեծ ընդունակությունները կուլտուրական շինարարության ու զարգացման բոլոր ասպարեզներում՝ գրականության ու գիտության, արվեստի ու արհեստների և, մանավանդ, ճարտարապետության մեջ։

Նյութական հարստությունների անընդհատ աճումը և դրամական մեծ միջոցների կուտակումը իշխանական տոհմերի, խոշոր առևտրականների և եկեղեցու ձեռին արտակարգ նպաստավոր պայմաններ ստեղծեցին համատարած շինարարության համար։ Թագավորները, խոշոր ֆեոդալները և հարուստ առևտրականները մրցում էին իրար հետ, և աշխատելով իրար գերազանցել՝ կառուցում էին շքեղ ու ճոխ եկեղեցիներ, պալատներ ու այլ շենքեր։

Անշուշտ, հսկայական միջոցներ էին հարկավոր կառուցելու համար ճարտարապետական այնպիսի գլուխգործոցներ, ինչպիսիներ են Բագրատունիների երկհարկանի պալատը Անիում, Անիի Հոյակապ կաթուղիկեն, Հովվի եռահարկ եկեղեցին, ինչպես և գեղեցիկ ու փարթամ մյուս շենքերը, որոնց ավերակները պահպանվել են Անիում, Կարսում և այլ տեղերում։

10—11-րդ դարերում, Սելջուկյան արշավանքներից առաջ, շինարարությունը խիստ զարգացել ու մեծ չափերի էր հասել ոչ միայն Անիի, Կարսի և Լոռիի Բագրատունյաց թագավորություններում, այլև Վասպուրականում, Սյունիքում, Տարոնում և Հայաստանի մյուս շրջաններում։

Բացի եկեղեցիներից ու ապարանքներից, այս ժամանակ կառուցվել են հոյակապ ու ընդարձակ քաղաքային պարիսպներ, ինչպես, օրինակ, Աշոտ Ողորմածի (953—977 թ.) և նրա որդու Սմբատ

Բ-ի (977—989 թ.) կառուցած Անիի պարիսպները, քարե մեծ կամուրջներ, օրինակ, հայկական մեծ կամուրջներն Ախուրյան գետի վրա, որոնք զարմանք են պատճառում այժմյան ճարտարապետներին, կուռ ու ամուր բերդեր, ջրմուղներ, իջևաններ և զանազան այլ շենքեր։ Հատուկ ուշադրության արժանի են զանազան տիպի ջրմուղները։ Նիկ. Մառի 1910 թվին Անիում կատարած պեղումներից հայտնի է, որ այստեղ կավե խողովակները ջրի ուժեղ ճնշումից պաշտպանելու համար անփոփված են եղել լավ շինված ու միմյանց պինդ հագցրած քարե խողովակների մեջ։

Գաղափար տալու համար, թե ինչպիսի մեծ ծավալ ու շքեղ բնույթ է ունեցել 10—11-րդ դարերի շինարարությունը՝ ավելորդ չեմ համարում հակիրճ կերպով մեջ բերել Թովմա Արծրունու վկայություններն Ախթամարի շինության մասին տասներորդ դարի սկզբներում։

«(Գագիկ Արծրունին),— պատմում է Թովմա Արծրունին,— հրաման տվեց բազմաթիվ արհեստավորների ու անթիվ մարդկանց, որ նրանք կտրեն ծանր ու դժվարակիր վեմ քարեր և գցեն ծովի անհնարին խոր հատակը։ Եվ որոշ ժամանակվա ընթացքում, շնորհիվ մեծ արքայի հանձն առած ջանքերի՝ հանկարծակի քարահատակ ամբարտակը վեր ելավ ու կանգնեց, բարձրանալով հինգ կանգուն ծովի երեսի վրա։ ...Նրա վրա նա շուրջանակի կառուցեց լարաձգությամբ պարիսպը մոտ հինգ ասպարեզ տարածությամբ։ Եվ պարիսպն էր հրաշակերտ, ահեղակերպ, զարդարված էր բարձրաբերձ լայնանիստ բուրգերով ու բարձր աշտարակներով և ուներ իր մեջ անկյունավոր, խորանանման, տախտակաձև հանգստանալու գահույքներ, ուր իր որդիների ու ազատակույտ զորքերի հետ միշտ ուրախանում էր արքան։ Իսկ պարսպի ծայրերը նա տարավ քարանձավի դժվարամած կիրճերը և սերտ կերպով միացրեց իրար։ Ծովի խորահատակ հիմքերի բերանին նա դրեց ահավորատես, հաստահեղույս, փակապինդ դռներ. և այսպիսով, ծովի մի մասն առնելով կղզու կողմը՝ նա հրաշալիք գործեց և ստեղծեց նավերի բազմության համար խաղաղ ու ապահով նավահանգիստ»։

(«Հրաման տուեալ բազում արուեստաւորաց և անթիւ մարդկան դհատեալ վէմս ծանունս և դժուարակիրս հոսել ընկենուլ յատակս ծովուն անհնարին խորութեանն. և ժամանակաւ ինչ այսպէս ջան յանձին կալեալ մեծի արքային՝ և յանկարծակի եկն եկաց կանգնեցաւ քարայատակն ամբարտակ կանգունս հինգ ի վերայ բարձրացեալ մկանաց ծովուն, ... յորոյ վերայ լար եդեալ ձգէ զպարիսպն շուրջանակի իբր ձիարշաւանօք հինգ և պարիսպն է հրաշակերտ,

ահեղակերպ, բարձրաբերձ լայնանիստ բրգամբք և բարձրացեալ աշտարակօք զարդարեալ, անկինաւոր խօրանանման տախտակաձև յինքեան ունելով գահոյք զբօսանաց, յորում հանդերձ որդւովք և ազատակոյտ զօրօք միշտ ուրախանայր արքայ։ Իսկ և զգլուխս պարսպին ածեալ ի կիրճս դժուարամածս քարանձաւին՝ ի համբոյրս միմեանց մերձեցուցանէ. ի շրթունս խորայատակ հիմանց ծովուն դնէ դրունս ահաւորատեսս, հաստահեղոյսս, բևեռապինդս. որով և զմասն ինչ ծովուն ի կղզին կոյս հատանելով՝ հրաշալիս իմն ներգործեաց, բազում նաւաց յօրինեալ խաղաղ և անքոյթ նաւահանգիստ»)[1]։

Այնուհետև, ինչպես վկայում է Թովմա Արծրունին, Գագիկ թագավորը կատարում է իր մոտ հավաքված իշխանների, ազնվականության, հոգևորականության ու ռամիկների խնդիրը և թույլ է տալիս, որ այդ տեղում, որը լինելու էր փրկև ապաստանի վայր հարձակվող թշնամիներից՝ նրանք կառուցեն շինություններ ու ձեռակերտներ։ Եվ հինգ տարվա ընթացքում արագ կերպով քաղաքը շինվում է և պայծառանում։

Առանձնապես հետաքրքրական է Թովմայի մոտ նաև թագավորական քառանկյունի պալատի կառուցման նկարագրությունը։

«Եվ որովհետև արքունիքում հավաքվել էին,— պատմում է Թովման,— բազմաթիվ արհեստավորներ, պատվավոր մարդիկ, ժողովված երկրի ամեն ազգերից, որոնք կարող էին անել արքայի ուզածը և գործը կատարում էին իսկույն համաձայն հրամանի՝ թագավորը հրամայեց նրանցից մի ումն ճարտարապետի, իմաստուն և հանճարեղ անձի, շինել քառանկյունի պալատ, որի լայնության ու երկարության չափը քառասուն կանգուն էր, նույնքան էր և բարձրությունը։ Սրա որմերի լայնությունն ուներ երեք մեծաքայլ չափ տարածություն, և նրանք անապակ կրի ու քարի զանգված էին, որ իրար էին խառնված ինչպես կապարի ու պղնձի ձուլվածքը։ Եվ պալատի շինությունը հիմքից մինչև օդի մեջ կախված նրա գլուխը մնում էր հաստատուն առանց սյուների. և այս, իրավի, մտքից վեր է ու արժանի է զարմանքի։ Պալատն ուներ և կամարակից խորաններ ու անկյուններ և գեղապաճույճ շրջապատեր, որոնք մտքի համար անթվարկելի էին և աչքերի համար անզննելի։ Նա ուներ նաև երկնքի պես բարձր, ոսկեզարդ և լուսաճաճանչ գմբեթներ, որոնց եթե մեկը ուզենար նայել, թագավորին իբր պատիվ անելով՝ նախ

[1] «Թովմայի վարդապետի Արծրունւոյ, Պատմութիւն տանն Արծրունեաց», 1887, IV, գլ. Է, էջ 293—294։

պետք է խույրը գլխից հաներ և ապա, տանջելով վիզը՝ հազիվ կկարողանար նշմարել զանազան ներկերով նկարված պատկերները»։

(«Եւ քանզի էին ի դրան արքունի գումարեալք արուեստաւորք բազումք, արք պատուաւորք ժողովեալք յամենայն ազգաց յերկրէ, որք ոչ վրիպէին առնել զոր խորհէր արքայ, այլ ըստ հրամանին վաղվաղակի և գործն առնույր զկատարումն՝ ումեմն ի նոցանէ ճարտարապետի առն իմաստնոյ և հանճարեղի հրամայէ թագաւորն շինել տաճար մի քառանկիւն, և կանգնաւ ունելով զչափ լայնութեան և երկայնութեան, նմանապէս և ի բարձրութիւնն. որոյ որմոյն լայնութիւնն երիւք մեծաքայլութեամբ չափով ունի զպարզուածսն, գունդ անապակ կրոց և քարի, իբրև «զհալուածս կապարի և պղնձոյ ընդ միմեանս խառնեալ. և շինուած տաճարին ի հիմանց անտի մինչև ցգլուխ նորին ի թուխս կազմեալ՝ առանց սեան ունի զհաստատութիւն. և է որ արդարև արժանի զարմանալոյ ի վեր քան զմիտս։ Ունի և խորանս կամարակիցս և անկիւնս և շրջապատս գեղապաճոյճս, անթիւ մտաց և անզննելի աչաց. ունի և գումբէթս երկնահարթս ոսկեզարդս և լուսաճաճանչս, յոր թէ նայել ոք կամիցի՝ իբր թագաւորի իմն պատիւ առնելով՝ նախ ի բաց առցէ զխոյր գլխոյն, և ապա տանջեալ զպարանոցն հազիւ թէ նշմարել կարիցէ զզանազան դեղոցն կերպագրութիւնս»[1]։

Թովմա Արծրունին, այս հոյակապ պալատի զարմանալի որմնանկարները և երկբացիկ ու գեղեցիկ դռները նկարագրելուց հետո՝ կարևոր տեղեկություն է հաղորդում պալատի շինության համար գործադրված երկաթի քանակի մասին։

«Պատմեց մեզ,— ասում է նա,— քաղաքի գործավարներից վստահելի մի վերակացու, որ պալատի շինության վրա բանեցվել է 200.000 լիտր երկաթ. և նա հավանորեն ու ճշմարտապես ավելի շուտ պակաս է ասել, քան թե առատությամբ ավելացրել է ու բազմապատկել։ Իսկ փառաց պալատի դիրքը քաղաքի մեջ երևում էր որպես մի մեծ բլուր գավառի բոլոր կողմերից։ Նա իր բարձրությամբ ավելի ցած չէր քան կղզու ծայրում գտնվող քարանձավը։

Անմերձենալի ամրություններով թագավորը պարսպել էր նաև ամրոցի ծայրերը և շինել էր նրա մեջ մեծամեծ շտեմարաններ և համբարանոցներ, նմանապես և գանձատներ և անհուն ու բազմաքանակ զենքերի ու ձիու զարդերի համար պահեստներ»։

(«Պատմեաց մեզ և հաւատարիմ ոստիկան մի ի գործավարաց քաղաքին, եթէ եմուտ ի շինուած տաճարին երկաթ լտերս իբրև ՄՌ.

[1] «Թովմայի վարդապետի Արծրունւոյ, Պատմութիւն տանն Արծրունեաց», 1887, IV, գլ. Է, էջ 295։

և հաւաստապէս ճշմարտութեամբ նուազեաց զասելն, քան թէ պատ-տութեամբն յաւելեաց ի բազումս. իսկ և նիստ փառաց տաճարին յամենայն կողմանց զաւառին ի մէջ քաղաքին երևի իբրև զմեծ մի բլուր. ոչինչ նուազեալ բարձրութեամբ քան զքարանձաւ ծայր կողզոյն։

Պարսպէ անմերձենալի ամրութեամբ և զծայրս ամրոցին, և շինեալ ի նմա շտեմարանս մեծամեծս և համբարանոցս, միանգամայն և տունս գանձուց և զինուց և ապազինաց անհուն բազմութեանց»)[1]։

Հարուստ ու հոյակապ այս շինարարությունը և ճարտարապետության ու արվեստների մեծ զարգացումը, որ մատնանշված են Թովմա Արծրունու մոտ, ընդհանուր ու համատարած երևույթ էին վերածնվող Հայաստանի բոլոր շրջաններում։

Ուշագրավ են մեջ բերված վկայությունների մեջ ոչ միայն արվեստի ու ճարտարապետության, այլև շինարարական տեխնիկային վերաբերող տեղեկությունները։ Թովմա Արծրունու մատնանշած կապարի ու պղնձի ձուլվածքի նման պինդ կրաքարային որմածքը, քառանկյունի հսկայական պալատը, որ կառուցված էր առանց սյուների, և այդ պալատի վրա բանեցված 200.000 լիտր կամ մոտ 5000 փութ[2] երկաթը՝ կարևոր ցուցումներ են, անշուշտ, որ կարոտ են դեռ ուշադիր քննության համապատասխան մասնագետների կողմից։

Շքեղ ու հարուստ շինարարության գլխավոր կենտրոններն էին 10—11-րդ դարերում, առավելապես, Հայաստանի վերոհիշյալ մեծ քաղաքները և հայկական մանր իշխանությունների նստավայրերը։ Սակայն այդ պատմական վայրերում գտնվող հուշարձաններն ու նյութական կուլտուրայի մնացորդները, դժբախտաբար, բավարարչափ դեռ չեն ուսումնասիրված։ Բացառություն են կազմում միմիայն Անին ու նրա հիշատակարանները, որոնք շնորհիվ ակադեմ. Նիկ. Մառի գիտական լուրջ ու երկարատև աշխատանքներին, ուսումնասիրված են և մեզ գաղափար են տալիս թե Բագրատունյաց դարաշրջանի քաղաքների և թե, ընդհանրապես, միջնադարյան հայ կուլտուրայի ու ներքին կենցաղի մասին։

Արդ՝ ամենից առաջ, պետք է պարզել, թե ինչ էին ներկայացնում հենց իրենք՝ Բագրատունյաց շրջանի քաղաքները։

Հիմնվելով Ն. Մառի և Թ. Թորամանյանի Անիում կատարած երկարամյա հնագիտական հետախուզումների վրա՝ դժվար չէ, իմ

[1] «Թովմայի վարդապետի Արծրունւոյ, Պատմութիւն տանն Արծրունեաց», 1887, IV, գլ. Է, էջ 296։

[2] Լիտրը Թովմայի վկայության մեջ, հավանորեն, Իրաքի լիտրն է, որը հավասար է 408 դրամի։

կարծիքով, համոզվել, որ Անին ու Բագրատունյաց Հայաստանի մյուս մեծ քաղաքները շատ քիչ էին տարբերվում Առաջավոր ու Միջին Ասիայի ժամանակակից քաղաքներից։

Պարսկաստանի ու Միջին Ասիայի մեծ քաղաքները, ինչպես երևում է ակադեմ. Բարտոլդի հաղորդած տեղեկություններից[1], բաղկացած էին երեք մասերից, որ անվանվում էին «կուհենդուզ», «շահրիստան» և «ռաբադ»։ «Շահրիստան»-ը, որը շրջապատված էր ճատուկ պարիսպով՝ քաղաքների ներքին մասն էր, և կարելի է ասել, որ նա հենց բուն քաղաքն էր։ Նրա կենտրոնում, մայր մզկիթի շուրջը, դետեղված էին մեծ շուկաները, և նրա մեջ էր գտնվում նաև «կուհենդուզ»-ը՝ քաղաքի միջնաբերդը կամ ամրոցը։ «Շահրիստան»-ին կից և նրա պարիսպներից դուրս գտնվում էին քաղաքի արվարձանները՝ «ռաբադ»-ը, որը համարվում էր նույնպես քաղաքի մասը և հաճախ շրջապատված էր, ինչպես և «շահրիստան»-ը, հատուկ պարիսպներով։ «Շահրիստան»-ում ապրում էին ազնվականությունը և իշխող դասերը, իսկ «ռաբադ»-ում, գլխավորապես, աշխատավոր ռամիկ բնակչությունը, որի մեջ մեծ թիվ էին կազմում հողից զրկված ու քաղաք գաղթած չքավոր գյուղացիները։ «Ռաբադ»-ը ևս ուներ իր շուկաները և նրա մեջ էին գտնվում, մեծ մասամբ, նաև արհեստավորական առանձին թաղերը։

Բագրատունյաց թագավորության նշանավոր Անի քաղաքը, ինչպես հայտնի է, իր ավերակներում պահպանել է հայկական մեծ քաղաքի բնույթն ու կերպարանքը։ Եվ դժվար չէ ըստ իս պարզել ու որոշել, որ նա ըստ իր հատակագծի միանգամայն համապատասխանում է արևելյան վերոհիշյալ երկրների քաղաքներին։ Պարիսպների մեջ գտնվող նրա ներքին մասը, որ մանրամասն ուսումնասիրել ու նկարագրել է ակադեմ. Նիկ. Մառը, պարզապես Անիի «շահրիստան»-ն է, որն Արիստակես Լաստիվերտցու պատմության մեջ անվանված է «շահաստան»[2]։ Սրա մեջ էին գտնվում Անիի միջնաբերդը և Բագրատունիների երկհարկանի ապարանքը, որոնք համապատասխանում են Պարսկաստանի ու Միջին Ասիայի «կուհենդուզ» անվանվող ամրոցներին։ Պարսպապատ Անին, որի տարածությունն ընդամենը մոտ 170 հեկտար է, ինչպես շատ ճիշտ նկատել

[1] Տես В. Бартольд, Историко-географический обзор Ирана, СПб., 1903, էջ 8, 9, 29, 35 ևն.։

[2] Տե՛ս գլ. Ժ, էջ 63. Համեմատե նաև «Մխիթարինէ շահաստան», Լաստիվ, գլ. ԻԱ, «շահաստան Բոնավէժ», «շահաստան Նիւշապուհ», Ղազար Փարպեցի, II, 48 և III 68, «շահաստան Բաղէշ», «շահաստան Դուին», Թովմա Արծրունի (Ս. Պետերբ. 1887), II 6, էջ 110 և III 22, էջ 230, ևն։

է Թորամանյանը[1], հազիվ կարող էր բավականանալ Բագրատունիների բնտանիքին, ազնվականությանը, պաշտոնեությանը և բարձրաստիճան եկեղեցականներին։ Ուստի և, նրա կարծիքով, մեծագույն մասն Անի քաղաքի, որի մեջ բնակվում էր հասարակ ժողովրդի բազմությունը, պետք է ենթադրել պարիսպներից դուրս շրջակա արվարձաններում։

«Անիի պարիսպի հիւսիսային կողմը տարածուած ընդարձակ դաշտավայրին մէջ,— ասում է Թորամանյանը,— քննական պտոյտ մը շատ բան կը բացատրէ պարիսպէն դուրս ապրող ժողովուրդի կեանքին և դիրքին վրայ։ Աւագ դռնէն մօտաւորապես կէս քիլօմեթր հեռու դէպի հիւսիս մեծ բաղնիքի մը կիսականգուն մնացորդը, մէկ քիլօմեթր աւելի անդին Հովիւի եկեղեցին, անկէց աւելի հեռուն դէպի հիւսիս դարձեալ մի ուրիշ մատուռի ու անոր կից գեղեցիկ մահարձանի մը մնացորդները պատահական կերպով աննպատակ չէին շինուած։ Եթէ մօտավորապէս մէկ ու կէս քիլօմեթր դէպի հիւսիս կարելի է այսպէս բնակութեանց մատուռներու ու դամբարաններու մնացորդներ տեսնել, նոյն բաները կարելի է տեսնել նաև դէպի արևելք, շատ քիչ ընդհատումներով մինչև Հոռոմոսի վանքը, և դէպի արևմուտք մինչև Անի գիւղի արևմտեան սահմանները»[2]։

Մատնանշելով և ուրիշ հիշատակարանների մնացորդներ Անիի շրջակայքում՝ Թորամանյանը ենթադրում է, որ

«պարիսպներէն դուրս էր բուն Անի քաղաքը և պարիսպը քաղաքին ամրոցն էր»[3]։

Թորամանյանի այս ենթադրություններից ճիշտ չէ, իհարկե, նրա կռահումը, որ իբր թե Անիի պարսպապատ մասը քաղաքի ամրոցն էր։ Այդ մասը, իրապես, ինչպես տեսանք, «շահրիստանն» էր կամ «շահաստան»-ը, որի հարավային անկյունում գտնվում էր բարձր տեղում Անիի միջնաբերդը կամ ամրոցը։

Սակայն միանգամայն ուղիղ է և համոզիչ Թորամանյանի հիմնական եզրակացությունը։ Անի քաղաքի մեծագույն մասը, ինչպես փաստական տվյալներով ցույց է տրված Թորամանյանի հոդվածում, կազմել են ակներևաբար ընդարձակ՝ ավերակներն Անիի արվարձաններում, որոնք, ինչպես տեսանք, միջնադարյան արևելյան քաղաքների կարևոր մասն էին և անվանվում էին «ռաբադ»։

---

[1] Տե՛ս նրա հոդվածը՝ «Անի քաղաք թե՞ ամրոց», Ազգագրական հանդես, XXII, № 1, Թիֆլիս, 1912, էջ 66։

[2] Տե՛ս նույնը, էջ 68։

[3] Նույնը, էջ 70։

* *
*

*Անիի մասին կարևոր այս եզրակացությունը բոլորովին նոր լույս է սփռում Բագրատունյաց Հայաստանի մեծ քաղաքների տարածության և ազգաբնակության թվի վիճելի խնդիրների վրա։*

*Արաբական մատենագիրները հաղորդում են, որ Առաջավոր ու Միջին Ասիայի քաղաքները, օրինակ՝ Մերվը, Ռեյը, Պարթավը և ուրիշները՝ ունեին ավելի քան մեկ փարսախ կամ մոտ 6 կիլոմետր երկարություն ու նույնքան լայնություն և գրավում էին մոտ 40 քառակուսի կիլոմետր տարածություն, այսինքն՝ մոտ 4000 հեկտար։ Միանգամայն հավանական է, իմ կարծիքով, որ նույն տիպի և մոտավորապես նույն մեծության քաղաքներ էին նաև Անին և 10—11-րդ դարերի հայկական մյուս մեծ քաղաքները։ Այս վերջինների մակերեսը որոշելիս անհրաժեշտ է, իհարկե, ի նկատի ունենալ ոչ միայն նրանց պարսպապատ «շահաստան» մասը, որն Անիում ընդամենը կազմում է մոտ 170 հեկտար, այլև նրանց արվարձանները։*

*Եվ եթե ճիշտ են մեր այս դիտողությունները, ինձ թվում է, կարող ենք նաև վստահորեն եզրակացնել, որ Բագրատունյաց շրջանի խոշոր ու նշանավոր քաղաքներն իրենց բնակչության քանակով շատ ավելի մեծ են եղել, քան միջնադարյան եվրոպական քաղաքները, որոնք առ առավելն ունեցել են 25.000 բնակիչ, իսկ, ընդհանուր առմամբ, ավելի եւս պակաս*[1]*։*

*Դվինի, Անիի ու Արծնի բնակչության թվի մասին մատենագրական աղբյուրների մեջ կան, մեծ մասամբ, անուղղակի վկայություններ։ Թովմա Արծրունին, օրինակ, նկարագրելով 893 թվի Դվինի մեծ երկրաշարժը՝ վկայում է, որ այդ երկրաշարժի ժամանակ Դվինում մահացել էին ավելի քան 70.000 մարդ*[2]*։ Բյուզանդական պատմագիր Կեդրենոսը հաղորդում է, որ Սելջուկյան 1049 թվի արշավանքի ժամանակ ավերված ու հրդեհված Արծն քաղաքում սպանվել ու այրվել էին մոտ 140.000 բնակիչ*[3]*։ Անի քաղաքի մեջ, պատմիչների ասելով, հաշվվում էր 10.000 տուն և 100.000 բնակիչ*[4]*։*

*Մեջ բերված այս կլոր թվերը կարող են, իհարկե, համարվել*

---

[1] Տես Карл Бюхер, Возникновение народного хозяйства, вып. второй СПб. 1907, էջ 131:

[2] *Տե՛ս «Պատմութիւն տանն Արծրունեաց», Ս. Պետերբուրգ, 1887, III, 22, էջ 230—231։*

[3] *Տե՛ս Հրատարակ. Բեկկերի, Բոն, 1839, հատոր II։*

[4] *Տե՛ս Հ. Օրբելի, Անվո ավերակները, հայեր. թարգմ. Վաղարշապատ, 1911, էջ 26։*

վիճելի ու անհավասարի։ Սակայն ի նկատի առնելով Անիի և մյուս մեծ քաղաքների ընդարձակ արվարձանները, ինձ թվում է, կարող ենք վստահորեն ենթադրել, որ Բագրատունյաց Հայաստանի խոշոր քաղաքներն ունեցել են, հավանորեն, ավելի քան 50.000 և նույնիսկ մինչև 100.000 բնակիչ։

Քաղաքների բնակչության իրավական դրության մասին մենք դրեթե չունենք տեղեկություններ։ Մատենագրական մի քանի վկայություններից կարելի է միայն կռահել, որ իրենց սոցիալական դրությամբ քաղաքացիներն ավելի բարձր են եղել դասված, քան գյուղացիները։

Խոսելով Վաղարշակ թագավորի սահմանած կարգերի մասին՝ Խորենացին հատկապես մատնանշում է, որ քաղաքացիներին պետք է ավելի հարգել ու պատվել քան գյուղացիներին։

«Հրաման է տալիս (Վաղարշակը),— ասում է Խորենացին,— որ քաղաքացի մարդիկ ավելի հարգված ու պատված լինեն քան գյուղացիները և որ գյուղացիները պատվեն քաղաքացիներին ինչպես իշխաններին, իսկ քաղաքացիները շատ չպարծենան գյուղացիների մոտ, այլ նրանց հետ վարվեն եղբայրաբար, որպեսզի պահպանվի բարեկարգությունը և աննախանձ կյանքը, որ պատճառ են բարեկեցության և կենաց խաղաղության»։

(«Հրաման տայ՝ և քաղաքացեաց մարդկան արգոյ և պատիւ լինել առաւել գեղջկաց. և գեղջկաց պատուել զքաղաքացիս որպէս զիշխանս. և քաղաքացեաց մի կարի առ գեղջկօքն պերճանալ, այլ եղբայրաբար վարիլ, վասն բարեկարգութեան և աննախանձու կենաց, որ է շինութեան և խաղաղութեան կենաց պատճառք»)[1]։

Խորենացու այս վկայության մեջ կարևոր է ոչ թե նրա պատմական կողմը, այլ այն, որ Խորենացու ժամանակ, հինգերորդ դարի երկրորդ կիսում, քաղաքացիներն ավելի հարգված ու արտոնված դաս են համարվել, քան գյուղացիները։

Քաղաքացիների այս արտոնյալ դրությունը մատնացույց է արված նաև Հովհաննես Դրասխանակերտցու ուշագրավ մի վկայության մեջ։ Խոսելով Զվարթնոց եկեղեցու շինության մասին՝ նա հաղորդում է, որ Ներսես Գ. Կաթողիկոսը՝

«Ազատ ժամանակ գտնելով՝ իր շինած հրաշակերտ եկեղեցու դրսի կողմը փակում ու ամրացնում է պաշտպանող շրջապարիսպով և բնակվելու տուն է կառուցում իրեն համար սրա ներսում կոփած

---

[1] Տե՛ս «Մովսիսի Խորենացւոյ, Պատմութիւն Հայոց», Տփղիս, 1913, II, գլ. Ը, էջ 117—118։

հաստահեղույս քարերից։ Այլև նույնպես հաստատում ու բնակեցնում է այնտեղ երդերի մարդկանց բազմությունը քաղաքների բնակչության պայմանով»։

(«Բայց հայրապետն Ներսէս պարապ անձին գտեալ՝ զարտաքոյս հրաշակերտ եկեղեցւոյն, զոր իւր իսկ էր շինեալ՝ շուրջանակի պատուար պարսպով փակեալ ամրացուցանէր, յօրինեալ ի նմա յարկս բնակութեան ինքնեան հաստահեղոյս կոփածոյ քարամբք։ Այլ և կարգեալ կացուցանէր ի նմա ամբոխութիւնս երդումարդաց ըստ պայմանի քաղաքականաց»)[1]։

Թե ինչպիսի ներքին կազմակերպություն են ունեցել և թե ինչպես են կառավարվել վերոհիշյալ քաղաքները՝ այդ մասին ևս մենք, դժբախտաբար, պարզ տեղեկություններ չունենք։ Որոշ է միայն, որ նրանք, լինելով թագավորական կամ իշխանական երկրների կենտրոնավայրեր, գտնվել են Բագրատունիների, Արծրունիների և աշխարհիկ կամ հոգևոր ֆեոդալների իշխանության տակ։

Մատենագրական աղոտ ու պատահական վկայություններից երևում է նույնպես, որ հայկական մեծ քաղաքները նման են եղել արևելյան հարևան երկրների մեծ քաղաքներին ոչ միայն ըստ իրենց տիպի, այլ մասամբ նաև ըստ իրենց վարչական ներքին կարգերի։ Անիի արձանագրություններում հիշատակված է, օրինակ, Անի քաղաքի կարևոր պաշտոնյաներից մեկը՝ «մութսիբ»-ը կամ «մուսայիպ»-ը[2], արաբական հայտնի «մուխթասիբ»-ը, որին թե խալիֆայության և թե Բագրատունյաց քաղաքներում հանձնարարված է եղել վերահսկողությունն առևտրի, արհեստների, շուկայի, կշիռների և չափերի վրա ու գանձումը քաղաքային հարկերի։

Աղբյուրների որոշ ցուցումներից ու ակնարկներից դժվար չէ նաև հետևցնել, որ քաղաքային կյանքում կարևոր տեղ է ունեցել երկրագործությունը և քաղաքների բնակչության զգալի մասը կազմել են հողատեր ազնվական կամ ռամիկ քաղաքացիները, որոնք քաղաքի արվարձաններում ունեցել են այգիներ, բանջարանոցներ և հողագործական այլ տնտեսություններ։ Բայց մեծ քաղաքների հարստության գլխավոր աղբյուրը ոչ թե գյուղատնտեսությունն էր, այլ, ինչպես վերև տեսանք, միջազգային ու ներքին մեծ առևտուրը։ Ուստի և հասկանալի է, որ քաղաքային տնտեսության մեջ մեծ կշիռ ու նշանակություն էին ստացել հայ վաճառականությունն ու բուր-

---

[1] Տե՛ս «Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտցւոյ, պատմութիւն հայոց», Թիֆլիս, 1912, էջ 88։

[2] Տե՛ս Կ. Կոստանյանց, Վիմական տարեգիր, Ս. Պետերբ. 1912, էջ 27 և 221։

ժուազիան և խոշոր դեր էին կատարում նմանապես և արհեստավորները։

Արհեստավորության մասին Կովկասում և Հայաստանում խիստ հետաքրքրական են ակադեմ. Ն. Մառի դիտողությունները։ Մառը ենթադրում է, որ արհեստներով զբաղվել են այս երկրներում տարբեր ցեղեր և որ այդ որոշ տեղերում պահպանվել է մինչև մեր օրերը։ Նա ընդունում է նույնպես արհեստագործության ժառանգական լինելը, արհեստակցական եղբայրությունների գոյությունը և ընտրական սկզբունքի կիրառումն այս կազմակերպություններում, որոնք հետագայում վերածվել են համքարությունների[1]։

Ակադեմ. Մառի այս ենթադրությունները միանգամայն հնարավոր կռահումներ են, և ավելի քան հավանական է, որ նորագույն դարերի արհեստավորական համքարությունների ծագումը շատ հին է և որ նրանք գոյություն են ունեցել դեռ Բագրատունյաց Հայաստանում, և, հավանորեն, նաև ավելի հին ժամանակներում։ Համքարությունները հայերի մոտ, ինչպես շատ ճիշտ մատնանշել է Ախվերդովը[2], իրենց ծագումը պարտական են արևելյան կյանքի ինքնուրույն հիմունքներին և գոյություն են ունեցել մինչև իսկ հին Պարսկաստանում։ Եվ իրավի, Սասանյան Պարսկաստանի և արաբական խալիֆայության ներքին կյանքին վերաբերող նորագույն ուսումնասիրություններից հայտնի է, որ արհեստավորների խմբական միավորություններ գոյություն են ունեցել ինչպես արաբական խալիֆայության, նույնպես և ավելի առաջ Սասանյան Պարսկաստանի քաղաքներում։

* *
*

Դառնալով հարմար ու չեզոք տերիտորիա տրանզիտային ու միջազգային առևտրական հարաբերությունների համար՝ Բագրատունյաց շրջանի Հայաստանը և նրա քաղաքային կենտրոններն իրենք ևս մեծ չափով մասնակից եղան համաշխարհային այդ առևտրին սեփական իրենց արտադրության ապրանքներով։ Այդ մասին ուշագրավ տեղեկություններ հաղորդում են, գլխավորապես, արաբական աղբյուրները, որոնց վկայությունները բավական ընդարձակ

[1] Տես Марр Н., Кавказский культурный мир и Армения, Петроград, 1915, էջ 16—17:

[2] Տես Тифлисские амкары, из записок Ю. Ф. Ахвердова, Тифлис, 1583, էջ 6—7:

մեջ են բերված ֆրանսիական գիտնական Լոռանի «Հայաստանը Բյուզանդիայի և Իսլամի միջև» աշխատության մեջ։

Արաբական մատենագիր Տաբարին, օրինակ, իր պատմության մեջ վկայում է, որ Հայաստանը հարուստ է եղել հացաբույսերով և իր ցորենն արտահանել է Բաղդադ[1]։ Այս կարևոր վկայությունից պարզ երևում է, որ ապրանքային լայն շրջանառության մեջ մտած է եղել մինչև իսկ Հայաստանի ֆեոդալական-երկրագործական մշակույթը։

Առանձնապես հետաքրքրական են նաև արաբական մատենագիրների հաղորդած տեղեկությունները Հայաստանի մեծ անտառների և Հայաստանից արտահանվող շինարարական փայտի մասին[2]։ Արաբական աշխարհագիր Իբն ալ-Ֆակիհի վկայությամբ՝ Հայաստանի անտառներում կտրում էին ծառեր 20 թիզ հաստությամբ և համեմատաբար մեծ քանակությամբ վաճառում էին ընկուզենիներ։ Ուշադրության արժանի է և այն, որ Իստախրիի մոտ մատնացույց են արված մեծ անտառներ՝ հատկապես Արարատ լեռան լանջի վրա։ Այս վկայություններից պարզ երևում է, որ Բագրատունյաց շրջանում անտառային տարածությունը եղել է Հայաստանում անհամեմատ ավելի ընդարձակ, քան հետագա ավելի ուշ ժամանակներում։

Իբրև վաճառքի ու արտահանության կարևոր առարկաներ արաբական մատենագիրների մոտ հաճախ հիշատակված են Հայաստանի ձկները՝ Վանա լճի տառեխը, Սևանա լճի իշխանը և Կուր գետի շամային։ Ուշագրավ է, որ միջին դարերում չորացրած ու աղած ձուկը լայն սպառման առարկա էր ոչ միայն Արևմտյան Եվրոպայում, այլև Արևելքում։ Տառեխը և շամային, ինչպես հայտնի է արաբական աղբյուրներից, վաճառվում էին մինչև իսկ Հայաստանից դուրս՝ Ադրբեջանում, Իրաքում և այլ երկրներում։ Իբն Հալդունի հարկացուցակից հայտնի է նույնպես[3], որ բացի դրամական մեծ հարկերից, արաբական խալիֆայությունը վերցնում էր Հայաստանում իբրև բնահարկ մեծ քանակությամբ աղած ու թթու դրած ձուկ։

Իբն Հալդունի հարկացուցակի մեջ մատնանշված է առանձնապես, որ իբրև բնահարկ Հայաստանը յուրաքանչյուր տարի խալիֆայությանը տալիս էր 200 ջորի։ Ըստ երևույթին, Հայաստանի ջորիները, ինչպես և ձիերը, շատ բարձր էին գնահատվում ոչ միայն հին

---

[1] Տե՛ս Լոռան, «Հայաստանը Բյուզանդիայի և Իսլամի միջև», Փարիզ, 1919, էջ 38։

[2] Նույնը, էջ 40։

[3] Տես A, Kremer. Culturgeschichte des Orients unter den Chalifen, I էջ 358

*քսենոֆոնյան, այլ արաբական այս ժամանակաշրջանում։ Հայկական ձիերի պահանջը, ինչպես վկայում է Իբն Հաուկալը, նրանց պնդակազմության ու դիմացկանության պատճառով, շատ մեծ էր ամբողջ Խորասանում, Իրաքում և Ասորիքում*[1]*։*

*Արաբական և հայկական աղբյուրները նույնպես հիշատակում են մի շարք լեռնային արդյունաբերության արտադրանքներ, որոնք արդյունահանվում էին Բագրատունյաց Հայաստանում։ 8-րդ դարի վերջին քառորդում, ինչպես հայտնի է Ղևոնդ պատմագրի վկայությունից*[2]*, Հայաստանի լեռներում, հավանորեն Սպերում, գտնվել էին արծաթի հանքեր։ Յակուտի աշխարհագրական բառարանում մատնանշված են երկաթի հանքեր Վարաժնունիք գավառում և Բալուի մոտ*[3]*։ Պղնձի հանքեր կային դարձյալ այս Վարաժնունիք գավառում*[4] *ու նաև Գուգարքում և Ապահունիքում։ Մյուս հանածոներից աղբյուրների մեջ հիշատակվում են բորաքս և զառիկ, որոնց արտահանությունը, տալիս էր, ինչպես վկայում է Իբն Հաուկալը*[5]*, մեծ վաստակ։ Համաձայն Յակուտի և Իբն ալ-Ֆակիհի վկայությունների, Հայաստանում արդյունահանվում էին նաև լեռնային ձյութ, սնդիկ, պղնձարջասպ և արճիճ*[6]*։ Աղահանքերից, որ հիշատակված են մի քանի շրջաններում, ամենից նշանավորն էր Կողբի աղահանքը։*

* *
*

*Ավելի մեծ է եղել Բագրատունյաց Հայաստանի մասնակցությունը միջազգային ու տեղական մեծ առևտրին արհեստագործական իր արտադրություններով։*

*Աղբյուրների վկայություններից երևում է, որ վերածնության այս ժամանակաշրջանում արագությամբ զարգացել էր մանածագործական արդյունագործությունը։ Այդ արդյունագործության և հատկապես Հայաստանում պատրաստվող բրդե, բամբակե ու մե-*

---

1 *Տե՛ս Լոռան, «Հայաստանը Բյուզանդիայի և Իսլամի միջև», էջ 39։*

2 *Տե՛ս Հրտ. Մալխասյանցի և Եղյանցի, Ս. Պետերբ. 1887, գլ. ԼԷ, էջ 155։*

3 *Մկր. Ղազարյան, «Հայաստանը արաբական տիրապետության տակ» (գերմ.), Մարբուրգ, 1903, էջ 74։*

4 *Նույնը, էջ 74։*

5 *Տե՛ս Լոռան, էջ 41։*

6 *Համեմատե* Н. А. Караулов. Сведения арабских писателей о Кавказе, Армении и Азербайджане Сборник материалов для описания местностей и племен Кавказа, 1902, XXXI, *էջ* 39։

7 *Տես Լոռան, էջ* 41, Караулов, Сборник материалов, XXIX, Kremer, Culturgeschichte des Orients, I *հտ։*

տաքսե զանազան գործվածքների ու կտորների մասին կարևոր տեղեկություններ հաղորդում են արաբական մատենագիրները՝ Իստախրին, Իբն Հաուկալը, Յակուբին, Մասուդին և ուրիշները։ Սրանց վկայություններում հիշատակվում են Դվինի կտորներն ու հագուստները, որոնք անվանվում էին «մարիզի» (marizi), գոտիները, որոնք արժեին 1-ից մինչև 10 դենար (=մոտավորապես 5-ից մինչև 50 ոսկի ռուբլի), գլխի փաթթոցները, ծածկոցները, բազմոցների ու բարձի երեսները, թիկնոցները և վարագույրները։ Հիշատակվում է նաև Դվինում պատրաստվող երփներանգ ու ծաղկավոր «բոզյուն» (bozjun) կոչվող մետաքսե ծանր կտորը։

Հայաստանի մանածագործվածքներն արտահանվում էին ոչ միայն խալիֆայության արևելյան երկրները, այլև Բյուզանդիա։ Գերմանական գիտնական Կրեմերի ցուցումներից[1], որոնք հիմնված են արաբական աղբյուրների վրա՝ հայտնի է, որ Տրապիզոնում, որը բյուզանդա-արաբական առևտրի գլխավոր նավահանգստային կենտրոնն էր՝ վաճառվում էին մետաքսե հիանալի հայկական գործվածքներ՝ դիպակ (dubag) և «բոզյուն» (bozjun) ու նաև այլ կտորներ։ Հայկական գորգերը համարվում էին ընտիր ու արժեքավոր, և Հայաստանը յուրաքանչյուր տարի խալիֆայությանը տալիս էր իբրև բնահարկ 20 գորգ[2]։ Թանկարժեք հայկական գորգերը հիշատակված են նվերների թվում, որ ուղարկել էր Ղազնևիդյան Մահմուդը Կաշգարի Կադըր-խանին[3]։

Շքեղ ու ոսկեզարդված մետաքսե հագուստների ու նաև բազմոցների փարթամ ու նկարազարդված երեսների մասին, որ նվիրել էր Սմբատ Ա-ը (890/1—914 թ.) Ատրպատականի Յուսուֆ ոստիկանին՝ հետաքրքրական են նույնպես Հովհաննես Դրասխանակերտցու հետևյալ վկայությունները.

1. «Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտւոյ, Պատմութիւն Հայոց», Թիֆլիս 1912, էջ 198՝

«Իսկ արքան, ուրախանալով նրա (Յուսուֆի) առատաձեռն պարգևների վրա և ընդունելով մեծ շնորհակալությամբ՝ նրանից ոչ պակաս, այլ ավելի դեռ շատ ինքը նրան ընծայեց հանդերձանքների բարեվայելուչ, շքնաղատես ու երևելի զարդարանքներ և բազմոցների նկարազարդված ու կարմիր որդանաներկ գործվածքներ, և ըմպանակներ ու գավաթներ, և ամբողջովին ոսկուց շինված քամար՝

---

[1] Տես Culturgeschichte des Orients unter den Chalifen, I, էջ 342։

[2] Նույն տեղում, էջ 358։

[3] Տես Бартольд, Историко-географический обзор Ирана.

*գործ հռոմ վարդապետների, տեսակ տեսակ ապակու գույներով...»։*

*(«Իսկ արքայի խորախ լեալ ի բարեձիր պարգևս նորա՝ և ընկալեալ մեծաւ շնորհակալութեամբ, ոչ սակաւ ինչ քան թէ բազմամասնաքար յիւրմէն ևս նմա ընծայէր բարեվայելուչ և չքնաղատես և երևելի զարդս հանդերձանաց, և նկարակերտ կազմուածս քազմականաց կարմրութեամբ որդանց, և ըմբակս և նուագս և կամար ի համակ ոսկւոյ՝ գործ հռոմայական ճարտարաց, յերանգս գունակ գունակ ապակւոյ...»)։*

*2. Նույնը, էջ 210՝*

*«Իսկ երբ պատրվակը բացվեց և հասկանալի եղավ մեզ հագարացի վայրագ գազանի մոլությունն ու սպառնալիքը՝ ըստ բարի կամեցողության արքա Սմբատի ու նաև այլ նախարարների հանձնարարությամբ՝ ես ճանապարհվեցի ու գլուխս քաշ գնացի պարսկական Ատրպատական դաժանաբարո ոստիկանի մոտ և արքունի թանգարաններից նրան տարա բազմազան ընծաներ ու նվերներ՝ ոսկեկար երևելի զգեստներ և շատ բազմոցներ, որ գործել էին նկարազարդող կանայք, և շատ ձիեր ու ջորիներ, որ հարդարված էին զենքերով ու զարդերով, նաև ոսկու և արծաթի գանձեր»։*

*(«Իսկ արդ իբրև բացաւ պատրուակն՝ զեկուցաւ մեզ մոլութիւն և սպառնութիւնն վայրագն գազանի Հագարացւոյն, ըստ բարոյականի կամեցողի արքային Սմբատայ և այլոց ևս նախարարացն սադրելոյ, դէմ եդեալ ես տարադէմ գնացի և Պարսս Ատրպատականի առ ոստիկանն դառնացող ընծայիւք և պատարագօք բազմօք յարքունի թանգարանաց երևելի ոսկեճամուկ զգեստուք և ի նկարակերտ կանանց ոստայնանկութեանց բազում բազմականս կազմեալ, և բազում ձիս ու ջորիս ի զարդս և ի զէնս յարդարեալ, այլ և գանձս ոսկւոյ և արծաթոյ»)։*

*Միջնադարյան հայ մանածագործության ուսումնասիրության ու գնահատման համար առանձնապես կարևոր են, իհարկե, նաև այն մանածագործվածքները, որոնք ձեռք են բերված պեղումներով։ Այս տեսակետից կարևոր գյուտեր են արված Անիում կատարված պեղումների ժամանակ։ Ակադեմիկ Հ. Օրբելու «Անվո ավերակները» աշխատության մեջ[1] մատնացույց է արված, որ 1908 թվին Անիում*

*«Գտնված է մետաքսե ամբողջ հագուստ ոսկե բանվածքներով ու մետաքսով, և ոսկով նուրբ հյուսած քող և մետաքսե ժապավենից գոտի»։*

---

[1] *Տե՛ս Հայերեն թարգմ., Վաղարշապատ, 1911, էջ 46։*

* *

*

Մանածագործական արդյունաբերության զարգացման համար Հայաստանը ոչ միայն ուներ հումք՝ բուրդ, բամբակ ու մետաքս, այլև ամեն տեսակ ներկեր, որոնց պահանջը չափազանց մեծ էր միջին դարերում։

Ինչպես հայտնի է հունական, հռոմեական և հին հայկական աղբյուրներից, Հայաստանը դեռ հին ժամանակներում խիստ հարուստ էր հանքային և բուսական ներկերով։ Ստրաբոնն իր «Աշխարհագրության» մեջ հաղորդում է[1], որ Սպերում կար «սանդիկ» (sandix) մետաղը, որն անվանվում էր նաև «հայկական ներկ» և նման էր ծիրանի ներկին։ Պլինիուսը նույնպես իր «Բնական պատմության» մեջ[2] հիշում է Հայաստանում պատրաստվող մի ներկ, որ նկարիչներն անվանում էին «որոբիտիս» (orobitis), նաև Հայաստանից արտահանվող մի քար, որ կոչվում էր «արմենիում» (armenium) և ներկում ոսկեբորակի (chrysocolla) նման։ Խորենացու «Աշխարհագրության» մեջ[3] Աղձնիք նահանգում հիշատակված է «գղթոր»-ը, որը, ըստ երևույթին գործադրվում էր սև ներկի համար։

Բայց ամենից հռչակավոր ու մեծագին ներկը Հայաստանի «որդան կարմիրն» էր, որն արդյունահանվում էր Արարատյան դաշտում։ Այս ներկի մասին կարևոր տեղեկություն է տալիս Ղազար Փարպեցին.

«Նաև իզուր չէ,— ասում է նա,— Արարատյան ամենաբաղձալի դաշտն իրեն մեջ սնուցանում է եղեգնասեռ բույսերի արմատներ, այլ նա, ծնելով նրանցից որդեր իբրև կարմրատեսիլ գույների զարդ՝ ընծայում է օգուտ սիրողներին որպես շահ և շքեղություն»։

(«Նաև զարմատս եղէգնասեր բուսոցն ոչ ընդունայն սնուցանէ յինքեան ամենաբաղձ դաշտն Այրարատոյ, այլև ի նմանէ ծնեալ որդունս, ի զարդ կարմրատեսիլ գունոց, ընծայէ օգտասիրացն շահս և շքեղութիւնս»)[4]։

Արաբական աղբյուրների մեջ այս ներկն անվանված է «կիրմիզ»։ Նա մեծ քանակությամբ ծախվում էր Պարթավում, Բաղդադում և արևելյան մեծ քաղաքներում և, ինչպես մատնանշում է գերմանական գիտնական Հայդը[5], նրանով Բաղդադում ներկում էին

1 Տե՛ս հայերեն թարգմ., Վաղարշապատ 1911, XI, 14, 9։

2 XXXIII, 27, 1 և XXXV, 28, 1 (հրատ. Լիտրեյի, Փարիզ, 1883)։

3 Տե՛ս «Մատենագրութիւնք», Վենետիկ, 1843, էջ 607։

4 «Ղազարայ Փարպեցւոյ, Պատմութիւն հայոց», Տփղիս, 1904, I գլ. 7, էջ 10։

5 Տես Heyd, Histoire du commerce du Levant, հատ. II, էջ 609:

մետաքսե գործվածքներ, որոնք «կիրմիզ» անունով արտահանվում էին նույնիսկ Եվրոպա։ Հայաստանում ներկարարության ամենախոշոր կենտրոնն էր Դվինի մոտ գտնվող Արտաշատը, որն արաբական մատենագիր Բելազորին անվանում է «կիրմիզ»-ի, այսինքն՝ «որդան կարմիրի գյուղ»[1]։

Արհեստագործական արտադրության մյուս ճյուղերից մեծապես զարգացած էր Հայաստանում բրուտությունը։ Սրա զարգացման պարզ ապացույց է այն ամանեղենը, որ ձեռք է բերված պեղումներով և պահվում է թանգարաններում։ Անիի ու Դվինի պեղումների ժամանակ, ինչպես հայտնի է, գտնված են ոչ միայն սովորական կավեղեններ, այլ մինչև իսկ շքեղ հախճապակի։ Մասնավորապես Անիում գտնված հախճապակյա ամանների մասին, որոնք, մեծ մասամբ, Անիում են շինված, ուշագրավ են ակադեմ. Օրբելու հաղորդած տեղեկությունները։

«Զարմանալի են,— ասում է Օրբելին,— հախճապակյա ամանները իրենց թափանցիկ կողերով և ուռուցիկ ու խոր գծած նկարներով, և ճենապակիից ամանները՝ իրենց հարուստ և բազմազան ոսկեզօծ ու բազմերանգ նկարներով, նույնպես և ուռուցիկ ու ներս ընկած զարդարանքներով. դրանք գտնված են թագավորական ապարանքի պեղումներում։ Բեկորներից երևում է, որ ամանների մեծագույն մասը թափովի է, և աչքի են ընկնում թափման (որ հինգ տեսակից ավելի է) բարձր կատարելությամբ, նույնպես և գեղարվեստորեն կատարված լինելովն ու ներկերի պայծառությամբ»[2]։

Մետաղների արդյունահանման և մշակման մասին պատմական ու հարևանցի տեղեկություններ տալիս են հայկական աղբյուրները։ Մետաղագործությունը, ինչպես մատնացույց է արել ակադեմ. Ն. Մառը, կովկասյան ժողովուրդները ժառանգել էին հաբեթական բնիկներից, որոնց մոտ մետաղագործական արհեստները զարգացած էին դեռ հնագույն ժամանակներում։ Հատկապես Բագրատունյաց շրջանում Մովսես Կաղանկատվացու մոտ հիշված են արհեստագործներ, որոնք ունեին գիտություն «ոսկեգործության, արծաթահալության, երկաթահանության և պղնձագործության»[3]։

Անիի և Դվինի պեղումների ժամանակ հայտաբերված են մի շարք իրեր, որոնք գաղափար են տալիս նաև Բագրատունյաց ժա-

---

1 Баладзори, перев. П К. Жузе, Баку, 1927, էջ 10։

2 Տե՛ս «Անվո ավերակները», Հայեր. թարգմ., Վաղարշապատ, 1911, էջ 48—49։

3 «Պատմութիւն Աղուանից աշխարհի», Մոսկվա, 1860, II, 16, էջ 131։

մանակաշրջանի դարբնության, զինագործության, ոսկերչության ու այլ արհեստների մասին։

Ակադեմ. Օրբելու վերոհիշյալ աշխատության մեջ հիշատակված են, օրինակ, Անիի պեղումների ընթացքում գտնված մետաղե հետևյալ իրերը՝ մեծ սուր, եռաժանի տեգ, նիզակների ծայրեր, արույրե ու պղնձե սափորներ, պղնձե սկավառակ, արծաթե գավաթներ, երկաթե ճրագակալներ և այլն։ Պետք է սակայն մատնանշել, որ շատ դժվար է ճշտիվ որոշել այդ իրերի ծագման դարաշրջանը։

* *
*

Քաղաքների ու քաղաքային տնտեսության թռիչ ու արագ զարգացումը 10—11-րդ դարերում արժանի է առանձին ուշադրության։ Լինելով կենտրոններ արհեստների, արդյունաբերության և փողային ու ապրանքային տնտեսության՝ Բագրատունյաց Հայաստանի քաղաքները իրենց մեջ պարունակում էին ֆեոդալական կազմակերպությանը ներհակ ու ընդդիմադիր նոր ուժեր, որոնք, ինչպես և Արևմտյան Եվրոպայում, հետզհետե ծնունդ էին տալիս տնտեսական ու սոցիալական նոր հարաբերությունների։

Տնտեսական կյանքում պարզ նկատելի էր այս ժամանակաշրջանում բացահայտ հեղաբեկումը փողային շրջանառության զարգացման ուղղությամբ։ Արձանագրությունների տեղեկություններից երևում է, որ դրամական շրջանառությունը տարածվել էր ամբողջ երկրում ամենամեծ չափերով։ Մեր նախորդ աշխատություններից մեկում մենք արդեն ցույց էինք տվել, որ 10-րդ և 11-րդ դարի առաջին կիսի տուրքերից շատերը եղել են դրամական[1]։

Սյունյաց Սուփան իշխանի 901 թվի Մաքենոցք վանքի արձանագրության մեջ ասված է՝

«Ես Սուփան, Սյունյաց իշխան, շինեցի Մաքենոցքի եկեղեցիները և առատորեն զարդարեցի պատվական կահույքով և աստվածային գրքերով. և տվի սրան, որ եկեղեցու անունով կոչվում է Աստվածածին, մեր սեփական հողը բոլոր սահմանով՝ լեռ ու դաշտով. և տվի ձկան որսատեղին Բողաշենը սեղանին, և 700 դրամ Դեղձանագետի կալալից, 200 դրամ Կաթուկից, 350 Անմեռից, որ միասին կանե 1250 դրամ»։

(«Ես Սուփան, Սինեաց իշխան, շինեցի զՄաքենոցաց եկեղեցիս, և անխնայաբար զարդարեցի պատուական սպասուք և աս-

[1] Տե՛ս «Հայաստանի պատմությունը թուրք-թաթարական արշավանքների շրջանում», Երևան, 1922, էջ 93—94։

*տուածային կատակարանաւք և ետու զանփական տեղն մեր ի սա, որ ըստ անուան եկեղեցւոյս Աստուածածին ասի, ամենայն սահմանաւք՝ լերամբ և դաշտիւ, և ետու որս ձկանց՝ զԲողաշէն, սեղանոյն և ութն հարիւր դրամ ի Դեղձանագետոյ ղապալէն, երկու հարիւր դրամ ի Կաթկայ, երեքհարիւր յիսուն յԱնմեռէն, որ լինի ՌՄԾ. դրամ...»)*[1]։

*Նմանապես՝ Շապուհ Բագրատունին, հայոց Աշոտ թագավորի որդին, 903 թվի Վանեվանի արձանագրության մեջ ասում է.*

*«Եվ տվի (Վանեվանի եկեղեցուն) հինգ գյուղի սահման՝ Կոթաքարը, Աղաբո վանքը, Շավառնահողը, Գետամեջը, Կթանոցը, Գետավանաց ծովը՝ 260 դրամ Կոթաքարից, 530 Բրտենիքից, 660 Աղաբո վանքի ծովից, 990 Կարբի գետերից և նավերից»։*

*(«Եւ ետու հինգ գեղոց սահման՝ Կոթաքարն, Աղաբոյ վանսն Շաւառնահողն, Գետամէջն, Կթանոցն, Գետավանաց ծովն, երկու հարիւր վաթսուն դրամ ի Կոթաքարէն, հինգհարիւր երեսուն ի Բըրտենեացն, վեց հարիւր վաթսուն յԱղաբոյ վանացն ծովէ, իննհարիւր իննսուն ի Կարբին գետերէն և նաւերէն»)*[2]։

*Գագիկ Շահնշահը 1010 թվի Մաստարայի արձանագրության մեջ հայտնում է՝*

*«Ես Գագիկ Շահնշահս, Աշոտի որդին, հայտնեցի իմ կամքը՝ Թողի Մաստարայի հարկի ավելորդը, 6000-ը դարձրի 5000»։*

*(«Կամ եղև ինձ Գագկայ Շահինշահի, որդւոյ Աշոտոյ, Թողուլ զՄաստարայի հարկին զաւելորդն ՋՌ. և ածի ԵՌ.»)*[3]։

*Մեջ բերված արձանագրությունների բովանդակությունից երևվում է, որ 10—11-րդ դարերում նույնիսկ գյուղական հարկերը ստացվել էին դրամով։*

*Միանգամայն բնական է ու հասկանալի, որ Բագրատունյաց Հայաստանում ևս, ինչպես և ֆեոդալական այլ երկրներում, դրամական տնտեսության աճման ու խորացման հետ զուգընթաց ուժեղանալու էր վաշխառուական կապիտալի դերը և ծանրանալու էր ռամիկ բնակչության դրությունը, որը հարկադրված էր վաշխառուներից դրամ վերցնել ահագին տոկոսներով։ Ժողովրդի այս ստորին խավերի անողոք շահագործումը և ծանր դրությունը ցայտուն կերպով նկարագրված է Արիստակես Լաստիվերտցու պատմության մեջ։*

*Խոսելով Արծն քաղաքի ավերման մասին 1049 թվին՝ Լաստիվերտցին վկայում է, որ այստեղ*

---

[1] *Տե՛ս «Վիմական տարեգիր», կազմ. Կ. Կոստանյանց, Ս. Պետերբ. 1913, էջ 5։*

[2] *Նույնը, էջ 6։*

[3] *Նույնը, էջ 13։*

*«սահմանվել էին վաշխի և տոկոսների օրենք և ցորենի բազմապատկություն, որով երկիրը պղծվում է և խանգարում է արդանդին իր ժամանակին պտուղ տալ որպես մարդկանց ուտելիք։ Ով խաբում էր ընկերոջը՝ պարծենում էր, որ իմաստուն է, և ով հափշտակում էր՝ ասում էր,— Ես հզոր եմ։ Մեծատուները հափշտակում էին բնտանեկից աղքատների տները ու նաև նրանց անդաստանների սահմանները»։*

*(«Վաշխից և տոկոսեաց օրէնք եդան, և ցորենոյ բազմապատկութիւն, որով երկիր պղծի և արգելու զարգանդ առ ի տալոյ զպտուղ ի ժամու իւրում առ ի կերակուր մարդկան։ Որ խաբէր զընկերն՝ պարծէր իմաստուն զոլ, և որ յափշտակէր՝ ասէր,— Ես հզօր եմ։ Զտունս տնակից աղքատացն, և զսահմանս անդաստանաց նոցա յափշտակէին մեծատունքն...»)*[1]։

Նույն հեղինակը, նկարագրելով Անի քաղաքի ավերածությունը և կոտորածը 1064 թվին՝ վաշխի մասին տալիս է դարձյալ հետևյալ տեղեկությունը.

*«Այլև նրա մեջ կատարված անիրավության ճարպից այրվեց բարձրաշեն ու գեղեցկահարմար ապարանքը և բոլոր բնակարանները դառան սոսկ մի հողաբլուր. և վաշխն ու նենգությունը, որ նրա մեջ տեղի էին ունենում, դադարեցին։ Այս է անիրավ քաղաքների բաժինը, որոնք շինվում են դրսեցիների արյունով և փարթամանում են տնանկների քրտինքով և իրենց տներն ամրացնում են վաշխով ու անիրավություններով»։*

*(«Այլ և ի ճարպոյ անիրաւութեան ի նմա գործելոյն տոչորեցաւ բարձրաշէն և գեղեցկայարմար ապարանքն, և եղև ամենայն բնակութիւնն իբրև հողաբլուր. և վաշխն և նենգութիւնն, որ ի նմա խափանեցաւ։ Այս է բաժին անիրաւ քաղաքաց, որ շինեն զինքեանս արեամբ օտարաց, և ի քրտանց տնանկաց փարթամանան, և ի վաշխից և յանիրաւութեանց զտունս իւրեանց ամրացուցանեն»)*[2]։



11-րդ դարի առաջին կիսում, Սելջուկյան արշավանքներից առաջ, Ֆեոդալական Հայաստանի կյանքը, ինչպես շատ ճիշտ մատնանշել է ակադեմ. Նիկ. Մառը[3], իրենից ներկայացնում էր հակա-

[1] «Պատմութիւն Արիստակէս վարդ. Լաստիվերտցւոյ», 1912, ԺԲ, էջ 79։

[2] Նույնը, ԻԴ, էջ 166—167։

[3] Տե՛ս Ани, էջ 29։

դրում, մի կողմից, աշխատավոր հայ ժողովրդի կեղեքվածության և, մյուս կողմից, հարստությունների կուտակման իշխող դասերի փոքրաթիվ խմբի ձեռին։

Թե ինչպիսի մեծ հարստություններ հավաքվել էր նույնիսկ հայ եկեղեցու և հոգևորականության մոտ՝ այդ պարզ երևում է, օրինակ, Մատթեոս Ուռհայեցու կարևոր մի վկայությունից։

Խոսելով Արծն քաղաքի ավերման մասին 1049 թվին՝ Ուռհայեցին պատմում է, որ կողոպտված

«ոսկու, արծաթի ու դիպակների մասին ավելորդ է խոսել, որովհետև անկարելի է այդ գրի առնել։ Բայց ես շատերից հաճախ լսել եմ քորեպիսկոպոսի մասին, որին անվանում էին Դավթուկ, որ նրա գանձանոցը վերցրել էր Աբրիհիմ-ը և նրա գանձերը բեռնել էին քառասուն ուղտի վրա. նրա տնից դուրս էին եկնում (հերկի) ութ հարյուր գութան, որոնցից յուրաքանչյուրին լծված էին վեց լուծ եզ»։

(«Այլ զոսկւոյ և զարծաթոյ և զդիպակաց աւելորդ է ասել, վասն զի ոչ արկանի ընդ գրով. բայց զայս բազում անգամ լուեալ է մեր ի բազմաց յաղագս քորեպիսկոպոսին՝ որ ասէին Դաւթուկ, եթե զգանձատունն նորա Աբրիհիմն էառ և քառասուն ուղտ բարձան զգանձարանն նորա, ութ հարիւր վեցկի եզանց ելանէին ի տանէ նորա»)[1]։

Որ Բագրատունյաց թագավորության ժամանակ Հայաստանի տնտեսական կյանքը վերակառուցվում էր նոր հիմքերի վրա և որ այդ հեղաշրջումը կատարվում էր փողային ու ապրանքային տնտեսության զարգացման, դասակարգային հակասությունների խորացման և բնակչության ստորին խավերի անողոք շահագործման ուղղությամբ՝ այդ երևում է Արիստակես Լաստիվերտցու կրոնա-բարոյական դատողություններից նախկին ժամանակների առաքինի բարքերի ու երջանիկ կյանքի մասին, որ նա հակադրում է իր ժամանակվա անիրավ ու արծաթասեր բարքերին և փարթամ ու շվայտ կենցաղին։

Խոսելով Արծն քաղաքի կործանծի մասին 1049 թվի Սելջուկյան արշավանքի ժամանակ՝ Արիստակես Լաստիվերտցին այդ քաղաքի հին արդարակյաց նիստուկացը հակադրում է նրա նոր անիրավ կյանքին։

---

[1] Տե՛ս Մատթէոս Ուռհայեցի, «Ժամանակագրութիւն», Վաղարշապատ, 1898, էջ 103։

«Արդ՝ առաջվա ժամանակները,— ասում է նա,— երբ սա առատորեն բարի գործերով էր զարդարված՝ ամեն ինչ սրա ուզածի պես էր լինում. և սա նման էր նորահարս կնոջ, որն ամենքին ցանկալի էր վայելուչ գեղեցկության ու պայծառ զարդերի պատճառով... Բայց երբ մեր եկեղեցիները մուտք գործեցին Սեքստացիք և Պիհոռնացիք և արդարության օրենքները վերածեցին անիրավության ու հարգվեց ավելի արծաթասիրությունը, քան աստվածասիրությունը և մամոնան քան Քրիստոսը՝ այն ժամանակ բոլոր համեստ կարգերը փոխվեցին և վերածվեցին անկարգության։ Սրա (Արծն քաղաքի) իշխանները դառան գողերի ընկերակիցներ, չարագործներ ու արծաթի ծառաներ։ Սրա դատավորները դառան կաշառակերներ և կաշառքի համար խարդախում էին իրավունքը...»։

(«Արդ սա յառաջինսն՝ մինչդեռ բարեացն առատութեամբ պսակեալ էր, ամենայն ինչ ըստ մտի էր սորա. և նման իմն էր նորահարսն կնոջ, որ գեղոյն վայելչութեամբ և զարդուցն պայծառութեամբ՝ ցանկալի գոլ ամենեցուն։ ...Բայց յորմէ հետէ մտին յեկեղեցիս մեր Սեքստացիք[1] և Պիհոռնացիք, և արդարութեան օրէնքն յանիրաւութիւն դարձաւ, և յարգի եղև արծաթսիրութիւն քան զաստուածսիրութիւն և մամոնայն քան զՔրիստոս. յայնժամ ամենայն համեստութիւն կարգաց զառածեալ՝ յանկարգութիւն դարձաւ։ Իշխանք սորա գողակիցք եղեն գողոց, վրիժագործք և արծաթոյ ծառայք. դատաւորք սորա կաշառառուք և վասն կաշառաց գողանային զիրաւունս...»)[2]։

* *
*

Բագրատունյաց Հայաստանի տնտեսական զարգացումը 10—11-րդ դարերում մեզ հիշեցնում է Արևմտյան Եվրոպայի զարգացումը ռեֆորմացիայից առաջ 14—15-րդ դարերում։ Արդյունագործական արտադրության և ապրանքային ու դրամական տնտեսության զարգացման զուգընթաց, ինչպես հայտնի է, Եվրոպայում սկսվել էին հեղաքեկվել ֆեոդալական հին կարգերը և այդ հեղաքեկումը կատարվում էր դասակարգային սուր պայքարի պայմաններում։ Նույնը նկատելի է ըստ իս գերմանական ռեֆորմացիայից մոտ չորս դար առաջ՝ Բագրատունյաց Հայաստանում։

Արաբական տիրապետության ժամանակ, ինչպես մատնանշել

[1] Ուղղել ենք Սեքստացիք փխ. «Սեքարայիք»։
[2] Տե՛ս դլ. ԺԲ, էջ 78—79։

*ենք մեր նախորդ ուսումնասիրություններում[1], Հայաստանի տնտեսական կյանքը մեծապես հետադիմել էր և զարգանում էր բնական տնտեսության հետադարձ հիմքերի վրա։ Բայց 10—11-րդ դարերում ապրանքա-դրամական տնտեսության բուռն զարգացումը Հայաստանում ևս, ինչպես և Արևմտյան Եվրոպայում, հետզհետե քայքայելով նախկին բնատնտեսությունը, սկսել էր արդեն անդրադառնալ ֆեոդալական կարգերի վրա և, նպաստելով տնտեսական ու սոցիալական նոր հարաբերությունների գոյացման՝ ուժեղացրել էր դասակարգային պայքարը։*

*Այս ժամանակաշրջանում վաշխառուական կեղեքումների պատճառով խիստ սաստկացել էր գյուղացիության հողազրկումը և ռամիկ ժողովրդի աղքատացումը։ Արիստակես Լաստիվերտցին, ինչպես վերև տեսանք, պարզ մատնանշում է, որ մեծատուները հափշտակում էին աղքատների տները ու նրանց անդաստանները, և որ քաղաքները շինվել էին տնանկների արյունով ու քրտինքով, վաշխով ու անիրավություններով։*

*Ինչպես ֆեոդալական արևմտյան երկրներում, նույնպես և Արևելքում, հողազուրկ ու աղքատ ռամիկ բնակչությունը կուտակվում էր, մեծ մասամբ, քաղաքների արվարձաններում։ 10-րդ դարի արաբական մատենագիրները մատնանշում են, որ ընչազուրկ մասսաները, որոնք ապրում էին «ռաբադ»-ներում, այսինքն՝ շահաստան քաղաքների արվարձաններում, պետության ամենաանհանգիստ տարրն էին և մեծ դեր էին կատարում քաղաքացիական կռիվներում[2]։ Ն. Մառը, հիմնվելով իր կատարած պեղումների վրա՝ մատնացույց է արել, որ ժողովրդի ստորին այս խավերն Անիում ապրում էին մուրացկանային հյուղերում և քարքարոտ գետնում փորված որջերում[3]։*

*Միանգամայն բնական է, որ քաղաքներում խմբված թշվառ ու անգործ այս բնակիչների գլխավոր զբաղմունքը պետք է լիներ կամ մուրացկանությունը կամ գողությունն ու ավազակությունը։*

*Այդ տեսակետից բնորոշ է ու հետաքրքրական Ասողիկի վկայությունը գիշերային կողոպուտների ու ավազակությունների մասին Կարս քաղաքում։*

*«Եվ սկիզբ դնելով ամեն տեսակ բարեգործությունների,— պատմում է Ասողիկը,— Կարսի Աբաս թագավորը (984—1029 թ.)*

---

[1] *Տե՛ս* «О торговле и городах Армении», էջ 133—137։

[2] *Համեմատե* А. Ю. Якубовский, Махмуд Газневи, „Фердовси", Сборник статей, էջ 63։

[3] *Տե՛ս* Ани, Ленинград, *1934*, էջ *29*։

ամենից առաջ իր երկրում վերացրեց ավազակությունը և մարդասպանությունը, որ Վանանդի ժողովուրդը, ինչպես ասում է պատմագիրը[1], համարում էր իբր հայրենի գործ։ Սրա հոր ժամանակ ոչ միայն ճանապարհներին ու բաց տեղերում էին թալանում, այլև հենց քաղաքի մեջ երեկոյան ժամերին ու ամբողջ գիշերը լսվում էին կողոպուտների անվերջ ճիչեր ու ձայներ։ Իսկ սա ինքը վրեժխնդիր եղավ և բռնված գողերին անաչառ կերպով մահվան դատապարտեց, առանց խնայելու մեծերին կամ փոքրերին, իշխաններին կամ շինականներին։ Եվ նա այնպես խաղաղեցրեց իր երկիրը, որ բոլորը նույնիսկ գիշերները ման էին գալիս ինչպես ցերեկը և անգամ անմարդաբնակ տեղերում շրջում էին որպես ապարանքում։ Ամենքը պարապում էին շինության ու աշխատանքի գործերով և ուղղվել էին արդարադատ դատաստանի միջոցով»։

(«Եւ սկիզբն արարեալ ամենայն բարեգործութեանց՝ նախ և առաջին եբարձ նա յաշխարհէն իւրմէ զաւազակութիւն, զմարդասպանութիւն, զոր ազգն Վանանդայ իբրև զհայրենիք ունէին, ըստ ասելոյ պատմագրին։ Եւ յաւուրս հօր սորա ոչ միայն ի ճանապարհս և ի բացեայ տեղիսն կողոպտէին՝ այլ ի նոյն ինքն ի քաղաքին՝ յերեկոյացեալ ժամուն և զգիշերն ամենայն ճիչք և ձայնք կողոպտանաց լինէին։ Այլ սա ինքնին վրէժխնդիր եղեալ, և զգտեալ գողսն անաչառ մահու դատապարտեալ՝ ոչ խնայելով ի մեծս կամ ի փոքունս, յիշխանս կամ ի շինականս. և այնպէս խաղացոյց զաշխարհն իւր՝ մինչ զի ի գիշերի իբրև ի տունջեան, և յանապատի իբրև յապարանս շրջէին ամենեքեան, շինութեան և աշխատութեան գործոց պարապէին, արդարադատ իրաւամբք ուղղեալք»)[2]։

* *
*

Քաղաքների ու ապրանքա-դրամական հարաբերությունների զարգացման այս ժամանակաշրջանում Բագրատունյաց Հայաստանում էլ, ինչպես ռեֆորմացիայից առաջ Արևմտյան Եվրոպայում, դասակարգային պայքարի սատկացման պարզ ցուցանիշներ էին գյուղացիական ապստամբական շարժումները։

Գտնվելով տնտեսական ծանր դրության մեջ, հայ գյուղացիությունը, որն այժմ ամենամեծ չափերով շահագործման էր ենթարկ-

[1] Տե՛ս «Մովսիսի Խորենացւոյ, Պատմութիւն Հայոց», Տփղիս, 1913, III, գլ. 44, էջ 313։

[2] «Ստեփանոսի Տարոնեցւոյ Ասողկան, Պատմութիւն տիեզերական», Ս. Պետերբ. 1885, III, գլ. ժէ, էջ 196—197։

վում, ապստամբել էր իշխող հողատեր ազնվականության դեմ տասներորդ դարի սկզբներում։ Այդ ապստամբությունը, որ տեղի էր ունեցել Սմբատ Ա-ի մահից (914 թ.) և Ատրպատականի Յուսուֆ ոստիկանի աշխարհավեր արշավանքներից հետո՝ հիշատակված է Հովհաննես Դրասխանակերտցու պատմության հետևյալ հատվածում.

«Ստորները,— ասում է կաթողիկոս պատմիչը,— աշխատում էին ավելի առաջ անցնել քան մեծամեծները, և ծառաները, խրոխտանալով, փքվելով ու մեծ ապստամբություն բարձրացնելով՝ Սողոմոնի նման հերյուրում էին, որ տերերը տրեխ հագնեն և գետնի վրա ման գան, իսկ իրենք բարձրանան երկարավիզ և ոտնատակ տրորող ձիերի վրա։ Իսկ մեր թագավորներին, պետերին և իշխաններին, որոնք ի բնե մեր նախարարություններն էին, աշխատում էին հանել և դուրս քշել նրանց բնակություններից և ուզում էին ըստ իրենց ցանկության կարգել պատահական ու նոր պալյաղատներ և սպասալարներ»։

(«Վասնզի նուազունքն քան զմեծամեծսն ձեռներէց լինել ջանային և ծառայքն ըստ Սողոմոնի հնարէին, զի զտեարս տրեխաւորեալ՝ ի գետնի գնացուսցեն և ինքեանք ելցեն յերիվարս ահիպարանոցս և առաթուր հարողս՝ խրոխտացեալք և ամբարձեալք մեծաւ ապստամբութեամբ։ Իսկ թագաւորք մեր և պետք և իշխանք, զորս ի բնէ նախարարութիւնքն էին՝ ջանային վարատել և խլել յիւրաքանչիւրոցն բնակութեանց, և ըստ ախորժից իմն ձեռական և նոր ստեղծանել պալյաղատս և սպասալարս»)[1]։

Դասակարգային հակասությունների սրման ու ֆեոդալական կարգերի դեմ մղվող պայքարի ուժեղացման արտահայտություններից մեկն էր 10—11-րդ դարերում նաև Թոնդրակեցիների աղանդի լայն տարածումը, որն ուներ ոչ միայն կրոնական, այլև սոցիալական բնույթ։ Այս շարժումը պարզապես դեմոկրատական էր և սրա հետևորդը գրեթե բացառապես աշխատավոր հասարակ ժողովուրդն էր։

Թոնդրակեցիները, որոնք, հավանորեն, հաջորդներն էին հայ Պավլիկյանների՝ ամենախիստ քննադատության էին ենթարկում պաշտոնական հայ եկեղեցին, նրա դավանաբանությունը, ծիսակատարությունները և ֆեոդալական բնույթ ունեցող նրա երարխիական կազմակերպությունը։ Թոնդրակյան աղանդավորների գաղափարախոսությունը հիմնականում մի սուր բողոք էր ոչ միայն հղփացած

[1] «Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ, Պատմութիւն Հայոց», Թիֆլիս, 1912, էջ 258—259։

ու այլասերվող տիրող եկեղեցու դեմ, այլ նաև հայկական ֆեոդալիզմի և իշխող դասերի հարստահարությունների ու ճնշման դեմ։

Հայ երկրում և հայ միջավայրում ծագած ու սնած Պավլիկյան ու Թոնդրակյան աղանդավորները, որոնք դաժան հալածանքների էին ենթարկվել Հայաստանում, ինչպես հայտնի է, վտարվել էին, մեծ մասամբ, Ասորիք, Փոքր Ասիա և մասամբ նաև Բուլղարիա։ Եվ հենց այս աղանդավորները եղան, ինչպես այժմ ենթադրում են, հիմնադիրները և նախահայրերը բուլղարական բոգոմիլների և հարավային Ֆրանսիայի ալբիգեցիների, որոնք նախակարապետներն էին գերմանական ռեֆորմացիայի և եվրոպական պրոտեստանտիզմի։

* *
*

Տնտեսական ու սոցիալական այն երևույթները, որ վերև մենք մատնանշեցինք, ցուցանիշներ են, իհարկե, որոշ տեղաշարժի ու փոփոխությունների, որ տեղի էին ունենում Հայաստանի ներքին կյանքում 10-րդ և, մանավանդ, 11-րդ դարերում։ Այդ երևույթները հատկանշական են ու բնորոշ քայքայվող ֆեոդալիզմի համար, որի սկիզբը կարելի է, ըստ իս, Հայաստանում ենթադրել հենց այս ժամանակաշրջանում։

«Ֆեոդալիզմը Հին Հայաստանում» մեր ընդարձակ աշխատության մեջ մենք ուսումնասիրել էինք Հայաստանի նախարարական կազմակերպությունը միմիայն Արշակունյաց թագավորության և մարզպանության շրջաններում։ Հայկական ֆեոդալիզմի լրիվ ուսումնասիրության համար անհրաժեշտ է, իհարկե, նաև նրա անկման այս շրջանի մանրամասն պարզաբանումը, որը կարոտ է դեռ լուրջ ու ուշադիր քննության։

Թողնելով այդ ապագային՝ մենք ավելորդ չենք համարում տալ այժմ ֆեոդալիզմի այս շրջանի մասին մի քանի թռուցիկ դիտողություններ։

Մատենագրական աղբյուրների քննությամբ, իմ կարծիքով, ընդհանրապես որոշվում է, որ 10-րդ և, գլխավորապես, 11-րդ դարի առաջին կիսում, տնտեսական ուժեղ ու արագ զարգացման հետ միասին, ֆեոդալական կյանքի աստիճանական վերասերումը տեղի էր ունենում հիվանդագին կերպով՝ իշխող դասերի հուսալքման ու անկումային տրամադրությունների մթնոլորտում։ Այս հոռետեսությունը, մելամաղձությունն ու միստիկան նկատելի են, ըստ իս, 11-րդ դարի գրականության ու գաղափարախոսության մեջ, որ հետագա-

յում պետք է մանրամասն լուսաբանվեն պատմական-գրական հատուկ ուսումնասիրությունների միջոցով։

Ուշագրավ է նախ և առաջ այն, որ սոցիալական հակասությունների սրման ու հին կյանքի աստիճանական կազմալուծման այս ժամանակաշրջանում դժգոհությունը չար ու անիրավ կյանքից իր գործնական արտահայտությունն էր գտել վանական՝ ու ճգնավորական կյանքի մեջ, որը խիստ զարգացել էր հատկապես 10-րդ դարում։ Այս ժամանակվա իդեոլոգիայի մեջ իշխում էր աշխարհի ու կյանքի ունայնության գաղափարը և փրկությունը բոլոր չարիքներից համարվում էր մարմնի ոչնչացումը և խորշումը զգալի աշխարհից։ Հուսահատական փախուստը կյանքից և միստիկական մռայլ այդ աշխարհայեցողությունը, ինչպես հայտնի է, իրենց կատարյալ արտահայտությունն են գտել մեծագույն հայ բանաստեղծի, Գրիգոր Նարեկացու, ճգնավորական ողբերգության մեջ։

Հուսաբեկումը և իր ժամանակվա չվայտ ու ամբարտավան կենցաղի դատապարտումը, ինչպես վերև տեսանք, մեծ տեղ է գրավում Արիստակես Լաստիվերտցու պատմական երկում։

Առանձնապես հետաքրքրական են այս շրջանում նաև այն ներհակությունները, որոնք աճել ու խորացել էին ոչ միայն իշխող ու շահագործվող դասակարգերի, այլև սրանց հակադիր գաղափարախոսությունների մեջ։ Մի կողմից խիստ զարգացել էր այս դարերում եկեղեցական սխոլաստիկական ու միստիկական գրականությունը, որի մեջ բնորոշ էին տխուր մարգարեությունները աշխարհի վերջը մոտենալու մասին, իսկ մյուս կողմից հետզհետե փարատվում էր թանձր միջնադարը և արդեն ծնունդ էր առնում աշխարհիկ ու ժողովրդական գրականությունը, որի մեջ մարմնավորվում էին ռամիկ ու աշխատավոր ժողովրդի ակնկալությունները և ձգտումները։ Ժողովրդական նոր մտածողության և աշխարհայեցողության արտադրություններ պետք է համարվեն, անտարակույս, մասնավորապես Թոնդրակեցի կոչված վերոհիշյալ հայ աղանդավորների գրվածքները, որոնցից, դժբախտաբար, մեր ձեռքը հասել են միմիայն աննշան մնացորդներ։

Մեր վերոհիշյալ փաստական դիտողություններից Հայաստանի տնտեսական ու սոցիալական զարգացման առանձնահատկությունների մասին 10—11-րդ դարերում, կարելի է, ըստ իս, հետևցնել, որ առևտրի, քաղաքների, արդյունագործության և դրամական ու ապրանքային տնտեսության բուռն ու արագ աճմամբ Հայաստանում ևս ֆեոդալիզմը սկսել էր քայքայվել և որ հասարակական կյանքն այստեղ ևս կարող էր վերակառուցվել առաջադեմ նոր հիմքերի վրա,

*ինչպես այդ հինգ դար հետո տեղի ունեցավ Արևմտյան Եվրոպայում։ Բագրատունյաց Հայաստանի տնտեսական բնական ու առաջադեմ ընթացքը, ինչպես հայտնի է, շուտով ընդհատվեց թուրք-թաթարական աշխարհավեր արշավանքների պատճառով, և նրա զարգացումը ետ շպրտվեց իր առաջավոր դիրքերից ու վերսկսվեց բնական տնտեսության զարգացման հետադարձ հիմքերի վրա։*

*Հայաստանի քաղաքների ու տնտեսության բուռն ու ուժգին վերելքը 10—11-րդ դարերում, մինչև սելջուկյան արշավանքները, որ մենք ուրվագծեցինք վերև համառոտ ու ընդհանուր կերպով, պետք է, իհարկե, ապագայում ենթարկվի քննադատական ու մանրազննին հետազոտության։*

*Հանրամատչելի ու հակիրճ մեր այս տեսությունը նախապատրաստական մի փորձ է միայն, որի մեջ մենք անհրաժեշտ համարեցինք տալ նախնական ընդհանուր մեր դիտողությունները կարևորագույն այս ժամանակաշրջանի մասին։*

---

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ԱՂՅՈՒՍԱԿ

**Հայ ժողովրդական պատմության՝**
**սկսած մարզպանության հաստատումից Հայաստանում մինչև**
**Բագրատունյաց թագավորության անկումը:**

| | |
|---|---|
| *428—485* | *Պարսկաստանի ձգտումը և միջոցառումները Հայաստանը կուլտուրապես անջատել արևմտյան ազդեցությունից* |
| *438/39—457* | *Հազկերտ Բ՝ թագավոր պարսից* |
| *441* | *Ատտիլայի արշավանքը* |
| *446—449* | *Գորգասալ՝ վրաց թագավոր* |
| *450—451* | *Վարդանանց ապստամբությունը* |
| *451 փետրվ. 17* | *Ավարայրի կռիվը* |
| *451* | *Քաղկեդոնի ժողովը* |
| *457—459* | *Հորմիզդ III՝ թագավոր պարսից* |
| *457—474* | *Լևոն Ա՝ կայսր Բյուզանդիայի* |
| *459—484* | *Պերոզ՝ թագավոր պարսից* |
| *465* | *Կալանավորված և աքսորված նախարարների վերադարձը Պարսկաստանից* |
| *477—491* | *Զենոն՝ կայսր Բյուզանդիայի* |
| *478—490* | *Հովհան Մանդակունի* |
| *481* | *Սահակ Բագրատունի՝ մարզպան հայոց* |
| *481—484* | *Վահան Մամիկոնյանի ապստամբությունը և պարտիզանական կռիվները* |
| *484* | *Պերոզ պարսից թագավորի ծանր պարտությունը հեփթաղների դեմ մղած կռվում և նրա անհայտացումը* |
| *484—488* | *Վաղարշ՝ թագավոր պարսից [Պերոզի եղբայրը]* |
| *485—505* | *Վահան Մամիկոնյան՝ Հայաստանի մարզպան* |
| *488—531* | *Կավատ Ա՝ թագավոր պարսից* |
| *491—518* | *Անաստաս՝ կայսր Բյուզանդիայի* |
| *497—499* | *Զամասպ՝ որը Կավատ Ա-ի փոխարեն գահ է բարձրացել խռովությունների ժամանակ և 2 տարի թագավորելուց հետո գահընկեց է եղել* |

| | |
|---|---|
| 502—505 | Կավատ Ա-ի առաջին պատերազմը Բյուզանդիայի դեմ |
| 503, 10/I | Ամիդ-Դիարբեքիրի գրավումը պարսիկների կողմից |
| 505/6 | Դվինի ժողովը, Բաբկեն կաթողիկոսի հրավերով |
| 505—509 | Վարդ՝ [Վահան Մամիկոնյանի եղբայրը] մարզպան Հայաստանի |
| 506 | Խաղաղության կնքումը Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև 7 տարով |
| 518—527 | Յուստին I՝ թագավոր Բյուզանդիայի |
| 521 | Քրիստոնեության ընդունումը Լազիստանում և Կոլխիդայում և նրանց ենթարկումը Բյուզանդիայի գերիշխանությանը |
| 526 | Բյուզանդական զորքերի արշավանքը Պարսկական Հայաստան Վելիսարի առաջնորդությամբ |
| 527—565 | Յուստինիանոս՝ կայսր Բյուզանդիայի |
| 527—532 | Պարսկական երկրորդ պատերազմը Բյուզանդիայի դեմ |
| 528/29 | Բյուզանդական զորքերի վերակազմությունը |
| 529 | Վասակ Մամիկոնյան՝ սպարապետ ստորին Հայոց |
| 530 | Բյուզանդիայի հաղթությունը Դարայի մոտ |
| 531—578/9 | Խոսրով I Անուշիրվան՝ թագավոր պարսից |
| 532—540 | Խաղաղության ժամանակաշրջանը—8 տարի |
| 536, 18/III | Բյուզանդական Հայաստանի բաժանումը չորս առանձին մասերի և չորս կառավարիչների հաստատումը |
| 536, 31/III | Բյուզանդական Հայաստանի քաղաքական վերակազմությունը, որ Հայկական շրջանները ոչ մի բանում չտարբերվեն կայսրությունից |
| 540—545 | Պարսկական երրորդ պատերազմը Բյուզանդիայի դեմ |
| 541 | Լազերի դեսպանության դիմումը Խոսրով պարսից թագավորի օգնությանը |
| 541 | Բյուզանդիայի կռիվները և Լազիկայի նվաճումը |
| 542 | Խոսրովի արշավանքը Բյուզանդիայի դեմ |
| 543 | Բյուզանդացիների արշավանքը պարսկական Հայաստան |
| 544 | Խոսրովի նոր արշավանքը և կռիվներ Միջագետքում բյուզանդացիների հետ փոփոխակի հաջողությամբ |
| 545 | Զինադադարի կնքում պարսից և Բյուզանդիայի միջև |
| 548 | Արշակ և Արտավան Արշակունիների դավադրությունը Յուստինիանոս կայսեր դեմ |
| 548/9—556/7 | Ներսես Բ՝ կաթողիկոս Հայոց |
| 549 | Լազյան պատերազմի վերսկսումը և Լազիկայի վերագրավումը Բյուզանդիայի կողմից |
| 551 | Պետրայի վերագրավումը բյուզանդացիների կողմից |
| 554/3 | Հարկահավաքման գործի հանձնարարումը Խոսրով Ա-ի կողմից Ներսես Բ կաթողիկոսին և հոգևորականությանը |
| 554/5 | Դվինի ժողովը |
| 562 | Բանակցություններ և խաղաղության դաշնագրության կնքում պարսից և Բյուզանդիայի միջև |

| | |
|---|---|
| 564 | Սուրենի նշանակումը պարսկական Հայաստանի մարզպան |
| 565—578 | Հուստինոս II՝ կայսր Բյուզանդիայի |
| 571 | Մահմեդի ծնունդը |
| 572 | Բյուզանդիայի կողմից կռիվների վերսկսումը Պարսկաստանի դեմ |
| 572, 22/II | Նոր ապստամբություն (III) Վարդան Մամիկոնյանի առաջնորդությամբ և նախարարների մասնակցությամբ, և Սուրեն մարզպանի, մոգերի ու պարսիկների կոտորածը, և Դվին քաղաքի առումը |
| 573 | Դարայի նվաճումը Խոսրովի կողմից |
| 574 | Զինադադար Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև |
| 575 | Բանակցություններ բյուզանդացիների և պարսիկների միջև զինադադարը երկարացնելու մասին |
| 576 | Խոսրովի նոր արշավանքը և Կարինի անհաջող պաշարումը |
| 577 | Խաղաղության բանակցությունների վերսկսում |
| 578—582 | Տիբերիոս՝ կայսր Բյուզանդիայի |
| 579—590 | Որմիզդ՝ թագավոր պարսից |
| 580 | Մավրիկիոս զորավարի կռիվը պարսիկների դեմ Կալինիկումի մոտ և պարսիկների պարտությունը |
| 582—602 | Մավրիկիոս՝ կայսր Բյուզանդիայի |
| 582—589 | Կռիվներ պարսիկների և բյուզանդացիների միջև Աղձնիքում և Միջագետքում |
| 589 | Մարտիրոսաց քաղաքի գրավումը պարսիկների կողմից |
| 590 | Վահրամ Չուբինի ապստամբությունը |
| 590—602 | Խաղաղ ժամանակաշրջան |
| 590—628 | Խոսրով II՝ թագավոր պարսից |
| 596 | Ապստամբական զորահավաք պարսկական Հայաստանում |
| 602—610 | Փոկաս՝ կայսր Բյուզանդիայի |
| 604—628 | Քսանչորս տարվա կռիվներ պարսիկների և Բյուզանդիայի միջև |
| 606 | Խոսրով II-ի արշավանքը և Դարայի նվաճումը |
| 607—616 | Սմբատ Բագրատունի՝ մարզպան Վրկանայ |
| 607—610/11 | Աբրահամ կաթողիկոս և վրաց ու հայոց եկեղեցիների բաժանումը |
| 608 | Կռիվներ Հայաստանում |
| 610—641 | Հերակլ՝ կայսր Բյուզանդիայի |
| 611—617 | Պարսիկների հաղթական արշավանքները և Ասորիքի նվաճումը ու Կեսարիայի, Դամասկոսի, Երուսաղեմի, Եգիպտոսի և Քաղկեդոնի գրավումը |
| 622—624 | Հերակլ կայսեր արշավանքը Պարսկաստան և Հայաստան և զինվորական գործողություններ Հայաստանում |
| 623 | Սլավների նավատորմիղի հարձակումը Կրետե կղզու վրա |

